Govrikean, Grigor

# ԸՆԴՀԱՆՈՒՐ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱՌՕՏ

ԱԶԳԱՅԻՆ ԴՊՐՈՑԱՑ ՀԱՄԱՐ


ԳՐԵՑ

Հ. ԳՐԻԳՈՐ Վ. ԳՕՎՐԻԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ


302p.




ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1879.



UNIVERSITY OF MICHIGAN LIBRARIES

GRAD
EREY
3275
11·01·93

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Թերեւս ոմանց համար տարօրինակ գործքի մը ձեռք զարկած երեւամ՝ առաջիկայ երկասիրութեամբ։ Բայց տեսանկ քայլ մ'առնելու ստիպեց զիս փորձառութիւնը։ — Ցասուերկու տարի յառաջ (1866-1869) Վիէննա, ու ետքէն 1873ին եւ 1874ին Կոստանդինուպոլիս Ընդհանուր պատմութեան դասատուութիւն ընելու ստիպուած ըլլալով, ո՛չ հոն եւ ո՛չ հոս տեսայ աշկերտաց վրայ սպասուած պտուղը։ Աս երեւոյթին պատճառն անտարակոյս դասագրքի մը պակսութիւնն էր։ Իրաք ալ, ունեցած Ընդհ. պատմութիւններնէս, ոմանք՝ շատ ընդարձակ բռնուած են. ոմանք՝ թէեւ մեծ հմտութեամբ գրուած են, բայց ամբողջ չեն. ոմանք ալ բոլորովին անյարմար են։ — վերջիններուն մէջ՝ ամէն բան կայ, բաց ի պատմութեան հարկաւոր ու էական մասէն։ Ասանկ գրքէ մը, աշկերտը՝ առասպելէ ու զուարճալիքէ զատ բան չի սորվիր։*

*Այս մեծ պակսութիւնն ըստ մասին լեցընելու համար, Ընդհ. Պատմութեան՝ խել մը դասագրքերուն մէջէն, իր համառօտութեամբն ամենայարմարն, ու*

ժամանակիս հմտութեամբ ու հոգւով զգածեալ գտայ Պերլինի, Գէօնիկշդէտեան դպրոցին վերատեսչին ու Ընդհ. Պատմութեան դասատուին, Թէոդոր Ցիլիցի, պատմութեան քաններորդ հրատարակութիւնը. զոր ինծի առաջնորդ առնելով՝ շատ համառօտած, բայց տեղ տեղ ալ — ու մանաւանդ ազգին համար աւելի նշանակութիւն ունեցող դէպքերն — ընդարձակած եմ։ Ձեռագիրը գործածեցի, իբրեւ դասագիրք երեք տարի (1875-1877) ու փնտռած եւ բաղձացած պտուղս գտայ։

Գիրքս՝ տարւան մը մէջ լմննալու նպատակաւ, 133 օրւան կամ դասի բաժնեցի։ Իւրաքանչիւր դասին առաջեւն ալ հարցումներ դրած եմ, ուսուցչաց դիւրութեանը համար։ — Սակայն, ինչպէս կը կարծեմ, գործքը՝ քիչ մ’ամփոփ գրուելուն, մեկնութեան կարօտութիւն ունի. անոր համար, մեծ դիւրութիւն կ’ըլլայ աշկերտաց, եթէ ուսուցիչը՝ իւրաքանչիւր դասն աւելի ընդարձակէ ու մէկ երկու խօսքի մէկ ամփոփուածը՝ լուսաւորէ ու մեկնէ։ Թէպէտ եւ մէկալ կողմանէ ան ալ փորձուած բան է, որ աշկերտին միտքը, դասագրքէն հեռանալուն պէս, շատ հեղ կը շփոթի ու հարկաւորն՝ օգտակարէն չի զանազաներ։

Բնական է, որ Ընդհանուր Պատմութեան մէջ չէր կրնար միացութեան թող տուիլ մասնաւորապէս տոհմային մասը։ Աս վախճանաւ ամփոփած եմ գործքիս մէջ — որչափ տեղն ու դիտած վախճանս ինծի կը ներէր — նաեւ Հայոց Պատմութիւնը՝ ժամանակագրութեան կարգաւ՝ իրեն պատշաճ տեղը զետեղելով։ Մէկ դիէն աս ըրած ժամանակս, զանց չեմ ըրած մէկալ դիէն՝ մտադիր հայեցուած մ’ընել նաեւ ազգային մատենագրութեան՝ զանազան դարերու մէջ ընդունած փոփոխութեանը վրայ։

Վախճանին դիմելու ջանացած՝ բայց կատարելապէս անոր հասնելու տարակուսած ատենս, կը յիշեմ մեծ մարդու մը խօսքերը. Զարգացման էութեան եւ յառաջադիմութեան օրէնքին մէջն է, որ եթէ ձեռնարկութիւն մը — քանի մը բանի մէջ իր ժամանակին նախապաշարմունքներէն խոտորելով — յուսացուած արդիւնքն անմիջապէս չգտնէ, պէտք է սպասել հետագայ զարգացման շրջանի մը, որուն ճշդիւ համեմատ ըլլայ այն ձեռնարկութիւնը. որպէս զի զանիկայ պսակէ։

Նպատակին կը հասնինք անով, որով մինչեւ հիմակ հասնելու ջանացած ենք:

Վիէննա. 19 Հոկտ. 1878:

# ՆԱԽԱԾԱՆՈՒԹ

1. Ի՞նչ է ընդհանուր պատմութիւնը։ — 2. Քանի՞ կը բաժնուի։ — 3. Քանի՞ կերպ կառավարութիւն կը զանազանենք.

1. Ընդհանուր կամ տիեզերական պատմութիւնն՝ այն անգիր աւանդութիւններէ ու երգերէ, գրաւոր ու անգիր յիշատակարաններէ եւ մանաւանդ ժամանակակից պատմագիրներէ հաւաքուած իրական դէպքերուն բովանդակութիւնն է, որոնք մարդկային ընկերութեան վիճակը կերպարանաւորեցին։

2. Ընդհանուր Պատմութիւնն երեք կը բաժնուի. — Հին, Միջին ու Նոր։

Ա. Հին պատմութիւնը (հնագոյն ժամանակներէն մինչեւ արեւմտեան հռոմէական պետութեան կործանումը, 476 Ք. Ե.) կը պարունակէ Արեւելեան ազգաց, Յունաց ու Հռոմայեցւոց պետութիւններուն պատմութիւնը։

Բ. Միջին պատմութիւնը (արեւմտ. հռոմէական պետութեան կործանումէն մինչեւ Նորոգողութիւն 1517 Ք. Ե.) կ՚աւանդէ գերմանական ազգերուն եւ անոնց՝ քրիստոնէութեան ձեռօք կրթուելուն պատմութիւնը։ — Իսկ

Գ. Նոր պատմութիւնը (Նորոգողութենէն մինչեւ մեր ժամանակը), մտաւորապէս ազատ եղող գերմանական ազգաց պատմութիւնն եւ անոնց երկրիս վրայ տարածուիլը կը պատմէ։

կառավարութեան առաջին կերպը կը գտնենք գերդաստանի մէջ։ Անկէ ելած է Հովուական ազգաց նահապետական կառավարութիւնը։ — Թէպէտ ամենէն հին ազգերը՝ այս կերպ կառավարութեամբ, ամենահարկաւոր գիւտերն (ինչպէս է տնային կենդանիներն ընտանեցընել, կրակի ու մետաղի գործածութիւնն եւ այլն) ըրած են, սակայն աս սահմանադրութեամբ բարձրագոյն մտաւորական զարգացում մը կարելի չէ. ինչպէս յայտնի կը ցուցընեն, Ասիայի ու Ափրիկէի ամայի արօտաստաններուն թափառական բնակիչները։

3. Մարդկային ազգին մանկութեան շրջանին վերաբերող **նահապետական պետութիւններէն** զատ, երեք կերպ կառավարութիւն կրնանք զանազանել։

Ա. **Միապետութիւն** (Monarchie). որուն մէջ կը տիրէ իշխանը, բայց ժողովրդեան գործակցութեամբը տրուած օրինաց շրջանին մէջ։ **Բռնակալութեան** (despotisme) կ'երթայ այս կերպ կառավարութիւնը, թէ որ իշխանին կամքը կ'ըլլայ օրէնք։

Բ. **Ազնուապետութիւն** (Aristocratie) է, հին (ազնուական, հարուստ) ազգատոհմերուն տիրապետութիւնը։ Ասիկայ կը դառնայ **Սակաւապետութեան** (oligarchie), եթէ առանձին գերդաստաններ՝ այս իշխանութիւնն իրենց կը յափշտակեն։

Գ. **Ռամկապետութիւն** (Democratie) է, ամէն քաղաքացւոց վերին իշխանութիւն բանեցընելը։— Ուր որ բոլոր երկրին (նաեւ քաղաքացի չըլլող) բնակիչներն այս իշխանութիւնը ձեռուընին ունին, կամ ուր որ իշխանութիւնը՝ ժողովրդէն ռամկին կ'անցնի, հոն կը տիրէ **Ամբոխապետութիւն** (ochlocratie)։

# ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Քանի՞ հատուած կը բաժնուի հին պատմութիւնը։

Հին պատմութիւնը չորս հատուած կը բաժնուի։ Այսինքն՝

1. Պատմութիւն Արեւելեան ազգաց.

2. Պատմութիւն Յունաց.

3. Պատմութիւն Յունական-մակեդոնական պետութեան.

4. Պատմութիւն Հռոմայեցւոց։

---

## Ա. ՀԱՏՈՒԱԾ

## Պատմութիւն արեւելեան ազգաց

### 1. Ասիայէ հին երկրագործութեանը վրայ միջին տեսութիւն մը։

Ի՞նչ երկիրներ կան 1. Ինդոսի անդիի դին։ — 2. Ինդոսի ու Տիգրիսի մէջ։ — 3. Տիգրիսի ու Եփրատի մէջ։ — 4. Եփրատի արեւմ. դին։

1. Միջին ու հիւս. Ասիա հիներուն գրեթէ բոլորովին անծանօթ էր։ Ասիայի արեւելեան ամենէն ծայրն էր Սէրիկա (Չենաստան).ասոր արեւմ. դին՝ մինչեւ կասպից ծով, Սկիւթիա։ Ինդոս գետով՝ Պարսկաստանէն բաժնուած Հնդկաստանը՝ Աղեքսանդր Մեծէն ետքն աւելի ծանօթացաւ։

2. Ինդոս ու Տիգրիս գետերուն մէջ կան.

*Ա. Իրանի Բարձրագաւառն*, որ ըստ մասին լեռնային ու պտղաբեր է. ըստ մասին անապատ ու

անմարդաբնակ։ Իր հիւս. դին էր Կասպից ծովը. իսկ հարաւէն իրեն սահման ունէր Երիթրէական (արաբական) ծովն ու Պարսից ծոցը։

Այս բարձրագաւառը կը պարունակէր իր մէջը՝ դէպ ի հիւսիսային արեւմուտք.

1. Պտղաբեր ու լեռնաշատ **Մարաստանը**՝ Կասպից ծովուն հարաւային դին. Եկբատան (հիմայ Համատան) գլխաւոր քաղքով։ — Դէպ ի հարաւային արեւմուտք.

2. **Պարսկաստան**. Պերսեպոլիս մայրաքաղքով ու Պասարգադա գլխաւոր քաղքով։

3. **Պարթեւաստան**։ Եւ աւելի դէպ ի հիւսիս.

4. **Բակտրիա**. Բակտրա գլխաւոր քաղքով։

*Բ. Ասորեստան* (հիմայ Քիւրտիստան), Տիգրիսի արեւելեան դին. Նինուէ մայրաքաղքով ու Արբելա գլխաւոր քաղքով։

3. Տիգրիս ու Եփրատ գետերուն մէջը կան.

Ա. **Հայաստան** լեռնագաւառը. Կասպից ծովուն, Պոնտոսի, Եփրատի ու Տիգրիսի մէջ։ Գլխաւոր քաղաքներն են. Տիգրանակերտ, Աշտիշատ, Արմաւիր, Վաղարշապատ, Երուանդաշատ։ — Հայաստանի հիւսիսային դին, Պոնտոսի ծովուն արեւը. ծովեզրին վրայ.

Բ. **Կողքիս**։

Գ. **Միջագետք**. Հայաստանի հարաւային դին. տեղիս տեղիս լճերով ու բարեբեր դաշտերով ընդմիջահատած խոպան ամայի երկիր մը։

Դ. **Բաբելոն**. Միջագետաց հարաւ. դին, ցած դաշտավայր մը. երկայն ժամանակ Ասիայի ամենէն պտղաբեր ու հարուստ երկիրն էր։ Մայրաքաղաքն է Բաբելոն, Եփրատի քով. գլխաւոր քաղաքը Կունաքսա, մարական պատէն քիչ մ՚անդին։

4. Եփրատի արեւմտեան դին են.

Ա. Արաբիա. Համանուն ծովածոցին քով. ունի խել մը առեւտրոյ քաղաքներ:

Բ. Պաղեստին. Արաբիայի ու Փիւնիկէի մէջ, Երուսաղէմ մայրաքաղքով:

Գ. Փիւնիկէ. Պաղեստինի հիւս. արեւմտեան դին եղող ծովեզրը. Սիդոն եւ Տիւրոս գլխաւոր քաղաքներով:

Դ. Ասորիք. Լիբանանու, Տաւրոսի ու Եփրատի մէջ, դէպ ի հիւսիս հարթյատակ, դէպ ի հարաւ լեռնային ու պտղաբեր: Գլխաւոր քաղաքներն են. Դամասկոս, Պալմիրա, Անտիոք:

Ե. Փոքր Ասիա. Հալիս, Հերմոս ու Մէանդրոս գետերէն ոռոգուած՝ լեռնային ու պտղաբեր երկիր մըն է: Իր մէջը կը պարունակէ.

Ա. Դէպ ի արեւմուտք.

1. Միւսիա. գլխաւոր քաղաքներն են. Իլիոն ու Պերգամոն.

2. Լիւդիա. Սարդիկէ ու Մագնեսիա գլխ. քաղաքներով.

3. Կարիա: —

Բ. Դէպ Հիւսիս.

1. Բիւթանիա. Նիկիա գլխ. քաղքով.

2. Պափլագոնիա. Սինոպ գլխ. քաղքով.

3. Պոնտոս. Տրապիզոն գլխ. քաղքով.

Գ. Դէպ ի Հարաւ.

1. Լիկիա.

2. Պամփիլիա.

3. Կիլիկիա. Տարսոն եւ Իսսոս գլխաւոր քաղաքներով:

Դ. Միջնավայրը.

1. Փռիւգիա. Իբսոս գլխաւոր քաղքով.

2. Գաղատիա. գլխ. քաղաքն է Անկիւրա։

3. Կապադովկիա. գլխ. քաղաքն է Մաժակ կամ Կեսարիա։ — Փոքր Ասիայի Հար. դին է.

Կիպրոս կղզին։

## 2. Առաջին մարդիկ.

1. Ի՞նչ տեսակ կեանք կը վարէին առաջին մարդիկ։ — 2. Ի՞նչ տեղեկութիւն ունինք Ճենաց ու Հնդկաց վրայ։ Ո՛ւր կը գտնենք մտաւոր կրթութեան առաջին քայլը։ — 3. Ի՞նչ բնաւորութիւն ունին Ճենացիք. ի՞նչ կարգեր՝ Հնդիկք — 4. Ի՞նչ է Հնդկաց կրօնը։

1. Աշխարհքիս ստեղծման վրայ զանազան ազգաց քով գտնուած այլեւայլ աւանդութեանց մէջ՝ ստոյգը միակ եբրայականն է։ Ասոր նայելով՝ մարդկային ազգին օրրոցը Գաշմիրի լերանց կողմերը պէտք ենք փնտռել։

Երբ մարդիկ նոյեան մեծ ջրհեղեղէն ետքը, երկրիս զանազան կողմերը ցրուեցան. իրենց երկրին (ինչպէս նաեւ լեզուին ու կրօնին) որպիսութեանը համեմատ, այլեւայլ կերպով սկսան զարգանալ։ — Բարձրագաւառներու եւ ամայի երկիրներու բնակիչքը՝ թափառական կեանքը շարունակեցին. իսկ այն ազգերն, որոնք պտղաբեր, ցած դաշտավայրերը գաղթեցին՝ բնակչաց հետզհետէ բազմանալովը, իրենց հաստատուն բնակութիւն շինեցին եւ մշակութեան պարապելու սկսան։

2. Երկրագործութեան վրայ հիմնուած առաջին տէրութիւնները՝ Հոանկօ ու Գիանկ, Գանգէս եւ Ինդոս, Տիգրիս ու Եփրատ եւ Նեղոս գետերուն մէջ եղած ցած դաշտավայրերու վրայ կը գտնենք։ Ասոնց մէջէն առաջինները՝ տիեզերական պատմութեան մէջ մեծ նշանակութիւն մը չունեցան։ Վասն զի՝ թէպէտ եւ սրամտութեամբ ու արուեստի ճարտարութեամբ երեւելի Ճենացիները, խիստ հին ատենները տէրու-

թիւն մը կանգնած էին, որ մեր թուականին առաջին դարերուն մէջ՝ Ասիայի մեծագոյն մասը կը պարունակէր, սակայն իրենք զիրենք՝ միշտ մէկալ ազգերէն զատուած ու ամէն օտար ազդեցութենէն ազատ պահելով չկրցան մարդկեղէն ազգին ընդհանուր զարգացմանը մասնակից ըլլալ։

Նոյնպէս Հնդիկք ալ, — որոնց շատ հին քաղաքակրթութեան յայտնի վկայութիւն կու տան իրենց նուիրական մատեաններն ու հրաշալի շինութիւնները — պատմական ժողովրդոց վրայ շատ քիչ ազդեցութիւն ունեցան։

Բարձրագոյն մտաւոր զարգացման առաջին քայլը՝ Ասիայի հարաւ. արեւմտեան դին եղած կը գտնենք։ Հոս հիմնեցին Ասորեստանեայք, Բաբելացիք, Մարք, Պարսիկք, Հայք, Հրեայք ու Փիւնիկեցիք իրենց յաղթ տէրութիւնները։ Այս միջոցին՝ դեռ հիւս. ու միջին Ասիա, ինչպէս նաեւ բոլոր Եւրոպա միայն ասդին անդին թափառող հովուական ու որսորդ ժողովուրդներ ունէին։

3. Չինացիք, մոնղոլական ցեղին հասած կրթութեան ամենաբարձր աստիճանը կը ցուցընեն։ Իրենց յատուկ նկարագիրն է յատակ միտք. բայց մէկ անգամ սովորածին ու ընդունածին վրայ հաստատ մնալ. դարձեալ զգացման ու երեւակայութեան պակասութիւն։ Չինաց սահմանադրութիւնը նահապետական է եւ տոհմային բարեպաշտութեան վրայ հիմնուած։ Կայսրը՝ տէրութեան միջնակէտը, ժողովրդեան հայրն է, որուն առջեւ բոլոր հպատակներն անչափահաս կը համարուին։

Հնդիկներն արդէն հնագոյն ժամանակները՝ մինչեւ հիմայ դեռ կեցած չորս գլխաւոր կարգերու բաժնուած էին։ 1. Բրահմինները (քահանաները, ուսուցիչները, դատաւորները, բժիշկներն ու արքունական խորհրդականները)։ 2. Գշադրիաները (զինուորները)։ 3. Վաիսիաները (արուեստաւորներն, երկրագործներն ու վաճառականները)։ 4. Սուտրաները (գործավարներն ու ծառաները)։ — Աս կարգերու միաւորութենէն կ՚ելլէին զանազան պիղծ կարգեր, որոնք ամենաստորին գործքերը կը կատարէին։ Բայց ամենէն անարգները Պարիաներն էին։

4. Հնդկաց շատ հին կրօնն է, զաշխարհք ստեղծող ու կառավարող Բրահմայի պաշտօնը։ Ետքէն ելաւ Սիվայի (հրոյ) ու Վիշնուի (օդոյ եւ ջրոյ) պաշտօնը. եւ վերջապէս՝ Բրահմա, Վիշնու եւ Սիվա՝ իբրեւ մի միայն բարձրագոյն Աստուծոյ մը՝ ստեղծող, պահող, եւ աւերող զօրութիւններ՝ իրարու հետ միացան։ Այս աստուածութիւններէն զատ՝ բազմաթիւ երկրորդ կարգի աստուածներ ալ կան։ — Հնդկաց նուիրական գրքերը, վետաները, սանսգրիտ լեզուաւ գրուած են, եւ միայն երեք առաջին կարգերը կրնան զանոնք կարդալ։ Հաւատոյ վարդապետութեան կեդրոնն է հոգեփոխութեան եւ վերածնութեան վարդապետութիւնը։ — Քրիստոսէ վեց դար յառաջ ելաւ Բուդդայութիւնը, որ կարգերու զանազանութիւնը եւ վերածնութեան վարդապետութիւնը մերժեց. եւ կ՚աւանդէր իբրեւ բարձրագոյն առաքինութիւն՝ սէր եւ ողորմութիւն ամէն արարածոց։ Բուդդայի (Իմաստնոյն) ուսումը, բոլոր Հնդկաստան շուտ մը տարածուեցաւ. բայց որովհետեւ ամէն մարդիկներու հաւասարութիւն կը քարոզէր, Բրահմիններէն սաստիկ հալածանք կրեց. եւ յառաջակողմեան Հնդկաստանէն բոլորովին ջնջուեցաւ։ Քրիստոնէութենէ դար մը յառաջ, բուդդայութիւնն (իբրեւ Ֆօյի կրօն) Չենաստան ալ մտաւ. եւ հոն Քրիստոսէ 500 տարի յառաջ ապրող Կոնփուկիոսի բարոյական վարդապետութեան հետ խառնուեցաւ։ Շամանութիւնը (մոգակրօնութիւն) կործանելով, նաեւ Մղուլիստանի ու Դիպէթի մէջ մտաւ եւ մինչեւ ցայսօր (լամայութիւն անուամբ) կը տեւէ։ — Բրահմանութիւնը կը դաւանին հիմայ իբր 200, իսկ Բուդդայութիւնը շուրջ 450 մլ. մարդիկ։

## 3. Բաբելոն, Ասորեստան.

1. Ի՛նչպէս սկսաւ բաբելական պետութիւնը։ — 2. Ո՛վ հիմնեց Ասորեստանեայց պետութիւնը. երբ սկսաւ իյնալ։ — 3. Ի՛նչպէս ելաւ նոր բաբելական պետութիւնը։ — 4. Ի՛նչ կրօն ունէին Բաբելացիք։

1. Հին բաբելական պետութիւնը. (2000-1250 Ք. Յ.) շատ հին ժամանակները սեմական ցեղին մէկ ճիւղին՝ Քաղդէացւոց, Ներբրովթի առաջնորդութեամբ Հայաստանի լեռներէն, Եփրատ ու Տիգրիս գետերուն պտղաբեր կողմանքը գաղթելովը հիմնուած կ՚երեւայ։ Տէրութեան մայրաքաղաքը, Բաբելոն, վաճառականութեամբ, արուեստիւ ու

գիտութեամբ շատ շուտ յառաջացաւ։ Երկրին նախնական քաղաքակրթութեանը վկայ են հիմայ ալ մեծագործ շինութիւններու (Բելայ տաճարին, բաբելոնական աշտարակին, արուեստական ջրմուղներու, թումբերու եւ այլն) բազմաթիւ աւերակները։

2. Ասորեստանեայց պետութեան (1250-606 Ք. Ց.) հիմնադիրն եղաւ՝ Բաբելոնը, Մարաստանն ու Հայաստանը աշխարհակալող Նինոսը. որ նաեւ Նինուէ մայրաքաղաքը հիմնեց։ Իր մահուանէն ետքը, իւր ամուսինը, զրոյցներով համբաւաւոր Շամիրամը, Ասորեստանեայց պետութիւնը՝ պատերազմներով մինչեւ Ինդոս ընդարձակեց. Բաբելոնն ու Նինուէն հսկայագործ շինութիւններով զարդարեց եւ բոլոր տէրութեան մէջ ջրանցքներ, ու արքունական ճամբաներ շինեց։

Շամիրամի թուլամորթ յաջորդներուն ժամանակը Ասորեստանեայց պետութեան զօրութիւնն ինկաւ։ Բայց նորէն ելաւ Սաղմանասարի ժամանակ, որ Ասորիքը նուաճեց եւ (722 ին Ք. Ց.) Իսրայելի թագաւորութիւնը կործանեց։ Իր յաջորդովը՝ Սենեքերիմով, սկսաւ տէրութեան կործանումը։ 606 ին Նինուէն առնուեցաւ. եւ Նաբուպաղասար Ասորեստանի կուսակալն եւ Կիւաքսար Մարաց իշխանը տէրութիւնը մէջերնին բաժնեցին։ — Վերջին թագաւորը Սարդանապաղ ինք զինքը կիներովն ու գանձերովը թագաւորական պալատին մէջ այրել տուաւ։

3. Մարք՝ Ասորեստանեայց պետութեան, Տիգրիսի արեւելեան դին եղող երկիրներուն տիրելուտեն, Նաբուպաղասար Տիգրիսի արեւմ. դին եղած երկիրներն առաւ եւ հիմնեց Նոր Բաբելոնական պետութիւնը (606-538)։ Իր որդին Մեծն Նաբուքոդոնոսոր (604–561), հօրը կենդանութեան

ատեն, զարկաւ (Կարկեմիշի քով 605) Նեքաւով Եգիպտոսի թագաւորը, որ բոլոր Ասորիքը՝ մինչեւ Եփրատ իրեն յափշտակած էր. 13 տարի պաշարելէն ետեւ՝ առաւ Տիւրոսը. նուաճեց Երուսաղէմ (586ին) եւ տարաւ Հրեաները (70 ամեայ) բաբելոնական գերութեան։ Իր ժամանակ Բաբելոն աշխարհքիս ամենաշքեղ քաղաքն էր։ — Նաբուքոդոնոսորի մահուանէն (561) ետեւ տէրութիւնն ինկաւ։ Նաբոնիդի (Բելշազարի) ատեն, Կիւրոս Բաբելոնն առաւ (538ին) ու երկիրը պարսկական նահանգ ըրաւ։

4. Բաբելացիք, երկնային մարմինները նշմարելու հետ սերտ կապակցութիւն ունեցող աստեղաց պաշտօն մ'ունէին (սաբէականութիւն)։ Իրենց քով մեծ պատուոյ մէջ էր ի մասնաւորի, երկինքն ու լոյսն ստեղծող եւ պահպանող տէրը՝ Բահաղը կամ Բէլը (արեւը), եւ Միլիտան (լուսինը)։ Բայց ասոնցմէ զատ կը մեծարէին նաեւ հինգ մոլորակներն ու կենդանակամարի նշանը, ինչպէս նաեւ Եփրատ ու Տիգրիս գետերն. եւ այլն։ Աստուածային պաշտամունքնին բիրտ ու զգայական էր. եւ քաղդէացիները (քուրմերը) միայն, բարձրագոյն գիտութեանց տեղեակ էին։ Ասոնք շատ մեծ ազդեցութիւն ունէին՝ ժողովրդեան վրայ անոր համար որ ընդհանուր ամէնուն հաւատքն էր, թէ երկնային մարմնոց դիրքէն ապագան կրնան գուշակել։

## 4. Մարք, Պարսիկք.

1. Ո՞վ հիմնեց Մարաց թագաւորութիւնը։ — 2. Ի՞նչպէս սկսաւ Պարսկական պետութիւնը։ — 3. Ի՞նչպէս թագաւորեցին Կամբիւսէս. Դարեհ։ — 4. Ի՞նչ կրօն, կրթութիւն ունէին պարսիկք։ — 5. Ո՞րոնք յաջորդեցին Դարեհի։ Ո՞վ եղաւ վերջին թագաւորը։

1. Դէիոկէս Մարաց առաջին թագաւորը, կը համարուի Մարաց թագաւորութեան հիմնադիրը, որ եօթնպարիսպ Եկբատան մայրաքաղաքն ալ շինեց։ Անոր յաջորդը Փրաօրտէս ցեղակից պարսիկներն ալ նուաճեց։ Բայց ամենէն հզօր թագաւորն եղաւ Կիաքսար, որ Սկիւթացիներուն յաղթելէն ետեւ,

Նինուէն կործանեց (606)։ Ասոր յաջորդին՝ Աժդահակին ատեն՝ երկիրը պարսկական նահանգ եղաւ (558 Ք. Յ)։

2. Պարսիկք՝ իրենց անունովը կոչուած ծագին հիւսիսային դին մշակութեամբ եւ հովուութեամբ կ՚ապրէին։ Երկայն ատեն ցեղակից մարաց իշխանութեան տակ մնալէն ետեւ, վեցերորդ դարուն կէսերը՝ զօրաւոր տէրութիւն մը կանգնեցին, որ շուտ մը Ինդոս գետին ու Եգէական ծովուն մէջ եղած երկիրները մէջն առաւ։ Կիւրոս՝ պետութեան հիմնադիրը, նուաճեց Բասարգադայի քով Մարքը (558). աշխարհակալեց ասոր վրայ Բակտրիան, յաղթեց (549ին) Կրիւսոսի, հպատակեցուց յունական գաղթականութիւնները, առաւ (538ին) Բաբելոնն եւ Հրէից 70 ամեայ գերութեան վերջ տուաւ։ Մեռաւ զրուցին նայելով՝ Մազքեթաց դէմ ըրած պատերազմին մէջ։

3. Կամբիւսէս. (529-522) Կիւրոսի որդին ու յաջորդը, Եգիպտոս 525ին պարսկական նահանգ ըրաւ. Շմերդ եղբայրը նախանձէն սպաննեց ու մեռաւ Եգիպտոսէն դարձած ատեն։

Դարեհ Ա. Վշտասպեան, սուտ Շմերդի սպանուելէն ետքը, գահ ելաւ (521-485)։ Նուաճեց ապստամբած Բաբելոնը (Զոպիւրոս) 513ին։ Սկիւթացւոց դէմ ըրած անյաջող արշաւանքովը հարկատու ըրաւ Թրակիան ու Մակեդոնիան։ Փոքր Ասիայի յունաց ապստամբութիւնը պատճառ տուաւ պարսկական-յունական պատերազմներուն։ (Առաջին արշաւանքը 492. Մարաթոնի ճակատը 490ին)։

4. Այսօրուան Իրանին վրայ՝ Արիներէն սերած եւ զանազան իրարու ազգակից ցեղերու բաժնուած ժողովուրդ մը տարածուած էր. որ՝ իր Զենդ աւեստա նուիրական գրքերուն լեզուէն, Զանդիկ ժողովուրդ ալ

կը կոչուի։ — Զենդ աւեստան (կենդանի բանը)՝ Ժ Գ․ դարուն մէջերը Բակտրիայի մէջ ապրող Զրադաշտի (Զարաթուստրայի) վարդապետութիւնը կը պարունակէ։ Աստ նայելով՝ Որմիզդը (Ահուրամազդան, ամենագէտը) կը թագաւորէ լուսոյ մէջ՝ իբրեւ արարիչ տիեզերաց եւ տուիչ ամենայն բարեաց։ Իրեն հետ անընդհատ պատերազմի մէջ է Ահրեման (չարամիտ), մթութեան ու չարեաց Աստուածը։ Ասոնց ստորակարգեալ են, բարի եւ չար ոգիներ, որոնք նոյնպէս իրարու հետ շարունակեալ պատերազմի մէջ են, մինչեւ որ Որմիզդ՝ Ահրեմանին յաղթէ։ Մարդ՝ պէտք է մտաց եւ գործոց մաքրութեամբ եւ գլխաւորաբար վնասակար անասունները ջնջելով, ծառեր տնկելով, դաշտերը մշակելով եւ այլն Որմիզդի արքայութիւնն ընդարձակել. եւ հուրը՝ իբրեւ մաքրութեան նշան, պաշտել։

Պարսիկք՝ արդէն Կիւրոսի ժամանակ մարտական կրթութիւն ու շռայլութիւնն ընդունած էին։ — Փառաւոր արքունիքը կը պահէին՝ գաւառներէն եկած հարկերը։ Բաբելոն, Եկբատան ու Շօշ, արքայանիստ քաղաքներ էին. Պերսեպոլիս թագաւորաց գերեզմանատեղին։ — Դարեհ՝ պետութիւնը 20 նախարարութեան բաժնեց։ Նախարարներն՝ որ ի սկզբան գաւառաց քաղաքական կուսակալներն էին, կամաց կամաց զինուորական իշխանութիւնն ալ առին եւ երթալով մեծ անկախութիւն ստացան։ Ասոնց գործքն էր, հարկերն արքունիք խրկել, բանակները հոգալ, երկրին յառաջադիմութեան եւ հասարակաց ապահովութեանը նայիլ։ — Բանակը կը բաժնուէր՝ տասնեակներու, հարիւրեակներու եւ հազարեակներու։ Ամէն հպատակ՝ պատերազմի ծառայութեան մտնելու պարտական էր։

5. Քսերքսէս Ա. (485-465) հօրը՝ Յունաց դէմ սկսած դժբախտ պատերազմը նոյն անյաջողութեամբ շարունակեց։ Չպատմուելու կորուստներ ունեցաւ 480ին՝ Սալամինայի, եւ 479ին Պղատէայի քով։ — Սպանուեցաւ բռնաւորական կառավարութենէ մ'ետեւ։

Քսերքսէսի յաջորդներէն, Արտաշէս Երկայնաձեռն (465-424) Յունաց ու ապստամբ նախարարներու հետ կռուելով անցուց կեանքը։ — Դարեհ Բ. Նոթոսի ժամանակ (424-405) արքունեաց անգթութիւնները շատցան, եւ նախարարներու ապստամբութիւնները յաճախեցին։ Թողո-

վուրդն՝ օր քան զօր շռայլութեան եւ մեղկութեան մէջ կ'ընկղմէր։ — **Արտաշէս Բ. Ոռշէղ** (405-362) դէմ ելաւ, Կիւրոս՝ իր եղբայրը. բայց Կունաքսայի ճակատին մէջ 401ին ինկաւ։ — Անգութ **Արտաշէս Գ. Ոխոս** (362-338) Փիւնիկէն ու Եգիպտոսը նորէն նուաճեց։

**Դարեհ Կոդոմանոս** (336-331) ի զուր աշխատեցաւ, ինկած պետութեան նոր հոգի տալու։ Աղեքսանդր Մեծ՝ Մակեդոնացին, Գրանիկոսի (334), Իսոսի (333) ու Արբելայի (331) ճակատներովը պարսկական պետութիւնն իրեն հպատակեցուց։

## 5. Հայք.

1. Ո՞ւր կ'իյնայ Հայաստան, ո՞վ է ազդութեան հիմնադիրը։ Որո՞նք են Հայկայ յաջորդները։ Ե՞րբ եղաւ երկիրը մակեդոնական նահանգ։ — 2. Ո՞վ է Արշակունի հարստութիւնը հիմնողը։ Ի՞նչպէս կառավարեց Վաղարշակ։ — 3. Ո՞վ է Տիգրան Մեծ։ Որո՞նք են հայոց՝ Միջագետք նստող թագաւորները։ — 4. Ի՞նչ կառավարութիւն ունեցան Խոսրով, Տրդատ, Վռամշապուհ։ — 5. Ի՞նչ վիճակի մէջ էր այս միջոցին հայոց մատենագրութիւնը։ — 6. Մարզպաններու ժամանակ ինչպէս էր երկիրը։ Պարսիկք ինչո՞ւ համար հայոց դէմ հալածանք հանեցին։ Ե՞րբ պատահեցաւ Վարդանանց նահատակութիւնը։ Որո՞նք են գլխաւորները։

1. Մէկ կողմանէ Պոնտոսի ու Կովկասի եւ միւս կողմանէ Միջագետաց մէջ ինկող բարձրավանդակ Հայաստանն, ազգային աւանդութեանց համեմատ, իրեն նահապետ ունի զնեբրոթը սպանող Հայկը։ Ասոր վեցերորդ յաջորդը՝ **Արամ**, երկիրը չէ թէ միայն օտար յարձակումներէն ազատ պահեց, հապա աշխարհակալութիւններով նաեւ մինչեւ Փոքր Ասիա ընդարձակեց։

**Արա** "**Գեղեցիկն**" ժամանակ Հայաստան նինուէական պետութեան նահանգ եղաւ (1200°)։ Սակայն **Պարոյր**՝ երկիրը նինուէական լուծէն ազատելով (890), ինք զինք թագաւոր անուանեց։ **Տիգրան Ա.** (580-535) երկիրն աւելի ընդարձակեց ու ներքին

յառաջադիմութեան ալ միտ դնելով՝ քաղաքներ հիմնեց ու մեծագործ շէնքեր շինեց։

Թէպէտ եւ Հերակղեսի հաւասար համարուած Վահագնը՝ Դարեհի ամէն յարձակումները պարապի հանեց ու Հայաստանի գոնէ հիւսիսային մասին անկախութիւնը պահեց, սակայն Աղեքսանդր Մեծ՝ զՀայաստան մակեդոնական նահանգ ըրաւ 330ին. եւ վերջ տուաւ գրեթէ 18 դար տեւող Հայկազանց հարստութեան։

Հայոց կրօնն ի սկզբան զրադաշտական էր՝ զոր ետքէն Ասորեստանեայց եւ Յունաց դիցաբանութեանը հետ խառնեցին։ Մեհենաշատ քաղաքներն էին, Արմաւիր, Աշտիշատ, Թիլ, Բագաւան։

2. Աղեքսանդրի մահուանէն ետքը, երկպառակութեամբ քայքայած Հայաստանին տիրեց Արշակ Վեցերորդ, կամ Միհրդատ Ա. Պարթեւը (150). եւ իր վերին իշխանութեանը տակ՝ դրաւ Հայաստանի վրայ թագաւոր, իւր Վաղարշակ եղբայրը։ —

Աս ատենէն կը սկսի՝ Հայոց Արշակունեաց Հարստութիւնը (146 Ք. Յ. — 428 Ք. Ե.)։ — Վաղարշակ՝ իր 22 տարուան վարչութեան ատեն, (146-124) երկիրը մէկ կողմանէ արտաքին թշնամիներէն զէնքով ապահովցուց, մէկալ կողմանէ ներքին կարգադրութիւններով շտկեց։ — Իր գործոց պսակն եղաւ, Մար Աբաս Ասորւոյն՝ Բաբելոնի մատենադարանէն, Հայոց պատմութիւնը գրել տալը։

Թագաւորաց իշխանութիւնն ի սկզբանէ հետէ, նախարարաց չափազանց արտօնութիւններովը շատ ամփոփուած էր։ Ասոնք՝ սեպհական զօրք ու պաշտօնեաներ ունենալով եւ թագաւորին չափաւոր հարկ մը տալով՝ անոր վերին իշխանութիւնը միայն կը ճանչնային։ — Վաղարշակ այս բանս ճարտարութեամբ կարգի դրաւ. Նախարարներն արքունիք ժողովեց ու անոնց զանազան պաշտօններ բաժնեց։

3. Արտաշէս Ա. (111-86) Հայաստանի անկախ իշխանները նուաճելը յառաջ տարաւ. փոքր

Ասիայի տիրեց ու Պարթեւներէն ինք զինք բոլորովին անկախ ըրաւ։ — Իւր որդին Տիգրան Մեծ (86-53) "Արքայից արքայն", Սելեւկեան Թագն (Ասորիքը՝ Բաբելաստանը, Պաղեստինն եւ այլն) առնելով՝ Ասիայի ամենամեծ Թագաւորն եղաւ։ Նուաճեց Պարթեւաստանը, տիրեց Փիւնիկիայի՝ Կապադովկիայի ու Գաղատիայի մէկ մասին։ Յաղթուեցաւ Ղուկուղղոսէն Տիգրանակերտի քով (69). ու Պոմպէոսի հետ դրած դաշինքովը՝ Հայաստանէն դուրս ունեցած երկիրներէն հրաժարեցաւ (64)։ Որդին՝ Արտաւազդ Անտոնիոսէն բռնուեցաւ, Կղէոպատրայէն սպանուեցաւ ու Հայաստան հռոմէական նահանգ եղաւ։

Ասկէ ետքը խաղալիկ եղաւ Հայաստան Հռոմայեցւոց ու Պարթեւաց ձեռքը, որոնք գրեթէ երկու դար իրենց ներքեւն եղած իշխաններովը կը կառավարէին երկիրը։

Այն միջոցին որ բուն Հայաստանի մէջ գահակալութեան կռիւներ կ'ըլլային (33 Ք. Ց. 55 Ք. Ե.) քանի մը հայ նախարարներ Միջագետք երթալով հիմնեցին Հայոց՝ Միջագետաց Թագաւորութիւնը։ — Հոն՝ իրարու յաջորդող Թագաւորներն եղան Աբգար, Անանուն, Սանատրուկ ու Երուանդ։

4. Խոսրով Ա. (217-239) թէպէտ պարսիկները Հայաստանէն վռնտեց, բայց դաւաճանութեան մը զոհ ըլլալով՝ երկիրը պարսկական նահանգ եղաւ (239)։ Իւր որդին՝ Հռոմէն դարձած Տրդատը՝ (284-337) խել մը յաջող պատերազմներէ ետեւ, երկիրը խաղաղցուց ու կարգաւորեց։ Մեռաւ ինչպէս կը կարծուի, նախարարներէն թունաւորուելով (337)։

Աս ժամանակները մտաւ Հայաստանի մէջ քրիստոնէութիւնը Գրիգոր Լուսաւորչի ձեռօք։

Տրդատայ որդւոյն՝ Խոսրովի ատեն, Պարսիկք նորէն Հայաստան մտան։ Տիրան (345-355) անոնց-

մէ յաղթուեցաւ եւ աշուրնները հանուեցան: Թէպէտ քիչ մը ետքը՝ Վաղեսի օգնութեամբ Պարսիկք վռնտուեցան (370). բայց ասոր հետեւութիւնն ան եղաւ, որ Հայաստան, Պարսից եւ Յունաց մէջ բաժնուեցաւ (384):

**Վռամշապուհի** խաղաղ կառավարութեանն ատեն (391-414) Հայաստան քիչ մը ոգի առաւ. եւ Մեսրոպայ ու Սահակայ ձեռօք հայերէն մատենագրութիւնը շատ ծաղկեցաւ: Սակայն խաղաղութիւնն երկայն տեւողութիւն չունեցաւ: Հայք՝ **Արտաշէս** Ե. էն ձանձրացած՝ Վռամէն պարսիկ մարզպան մ՚ուզեցին: Վռամի ուզածն ալ աս ըլլալով՝ իրենց վրայ Վեհմիհրշապուհը դրաւ. որով վերջացաւ Արշակունեաց հարստութիւնը՝ 428ին:

5. Հայոց քաղաքական կեանքը շիջանելու վրայ եղած ատեն, եղաւ հայերէն մատենագրութիւնն իր ամենամեծ պայծառութեանը: Մեսրոպ հայերէն գիրեր հնարելով՝ վարժոցներ բացաւ եւ Ս. Հարց գործքերը թարգմանելու սկսաւ: Յունական գիտութեանց ճաշակն առնելու համար՝ աշակերտաց դաս մըն ալ Կոստանդինուպոլիս, Աթէնք ու Աղեքսանդրիա խաւրեց:

Աս միջոցիս յատուկ (406-451), ուստի եւ **Ոսկեդարու** ընտիր լեզուաւ գրուած են ի մասնաւորի. **Աստուածաշունչը**. Ոսկեբերանի՝ **Մատթէոսի Աւետարանին** եւ **Պօղոսի թղթոց մը Մեկնութիւնները**. Եզնիկայ Կողբացւոյ **Եղծ աղանդոց** կոչուած գիրքը. Կորիւնի՝ **Մեսրոպայ վարքը**. Կիւրղի **Կոչումն ընծայութեան** անուն մատենագրութիւնը. Եւսեբիոսի **Քրոնիկոնը**. Ագաթանգեղոս եւ այլն:

Ասոնց պէս ընտիր չեն, անոր համար ալ **Արծաթի դարուն մատենագրութեան** կը վերաբերին, Մովս. Խորենացւոյն **Հայոց Պատմութիւնը**. Եղիշէի **Վասն պատերազմին Վարդանանց** անուն գրուածքը. Ղազարու Փարպեցւոյն պատմութիւնն եւ այլն:

6. **Մարզպաններու** ժամանակ անտէրունչ Հայաստանը թշուառութեան ասպարէզ մ՚եղաւ: Պարսիկք՝ Հայոց թագաւորութիւնը վերցընելէն զատ, ուզեցին ջնջել նաեւ անոնց կրօնը՝ որպէս զի ազգը բոլորովին իրենց մէջ ընկղմեն: Յազկերտ՝

Վռամի յաջորդը, քանի մը յաջող պատերազմներէ ետեւ, քրիստոնէութեան դէմ ալ պատերազմ հրատարակեց։ Ուստի եւ պատրուակաւ մը Հայոց զօրքերը Հայաստանէն հեռացուց եւ Հոնաց դէմ խաւրեց. բայց անյաջող պատերազմէն դարձողները երկիրնին չխաւրեց։ Երկու հայ զօրավարներ (Ատոմ Գնունի եւ Մանաճիհր Ռշտունի) որ Հայաստան դառնալ կ'ուզէին, իրենց զօրքովը ջարդուեցան։

Ասոր վրայ հալածանքը սաստկացաւ։ Հայաստանի Նոր մարզպանը, Շապուհ, եկեղեցիներուն վրայ հարկ դրաւ, կրօնաւորները ցրուեց, հարկերը կրկնապատկեց։ Եկեղեցական առաջնորդներն ու իշխանք Պարսից արքունիքը պատասխանատուութեան կանչուեցան, բանտ դրուեցան. եւ արտաքուստ հաւատքնին ուրացող մէկ քանի իշխանաց հետ խեղճ մը մոգպետ Հայաստան խաւրուեցաւ։ Բայց հասարակ ժողովուրդն ասոնց դէմ զէնք առաւ ու մոգերը հալածեց։ Իսկ Նախարարք, Վասակէն զատ՝ ուրացութիւններնուն վրայ զղջացած՝ միաբանեցան Պարսից դէմ ելլելու։ — Հայք՝ Յունացմէ օգնութիւն գտնելէն յոյսերնին կտրելով՝ զօրութիւննին ժողովեցին, Վարդան Մամիկոնեանին առաջնորդութեամբն Աղուանից երկիրը մտան եւ Կուր գետին քով Սեբուխտ Պարսից զօրավարին յաղթեցին։

Յաջորդ տարին Միհրներսէհ, Փայտակարան բանակեցաւ։ Վարդան 66.000 զօրքով՝ Արտազու դաշտին վրայ, Մուշկան Նիւսալաւուրտի առաջնորդութեամբ եղած քառապատիկ պարսկական զօրաց դէմ ճակատեցաւ։ Հայք թէպէտ քաջութեամբ պատերազմեցան, բայց առաւել զօրութեան չդիմանալով՝ մանաւանդ սպարապետին դիւցազնական մահուանէն ետքը, ասդին անդին ցրուեցան (451)։

Աս պատերազմը Վարդանանց կը կոչուի։ Նահատակուող իշխաններուն գլխաւորներն են Վարդանէն զատ, Խորէն Խորխոռունի, Արշակ Պալունի, Տաճատ Գնթունի, Համայեակ Դիմաքսեան, Ներսէհ Քաջբերունի, Վահան Գնունի, Արսէն Ընծայեցի, Գարեգին Սրուանձտեան. զորոնք Հայոց եկեղեցին իբրեւ սուրբ կը տօնէ։

Քիչ մը ետքը՝ Պարսկաստան կանչուող նախարարներն ու եկեղեցական աւագանին բանտարկուեցան։ Ղեւոնդեան Ս. Քահանաները (454) Նիւշապուհի մէջ նահատակուեցան։ Իսկ նախարարները հազիւ Պերոզի (Յազկերտի յաջորդին) ժամանակ (461) կրցան Հայաստան դառնալ.

## 6. Հրեայք. 6

1. Ո՞ւր կը բնակէին Հրեայք. Ո՞վ է իրենց նախահայրը. Ի՞նչպէս էր կենցաղավարութիւննին։ — 2. Ո՞վ եղաւ առաջին թագաւորը. Ի՞նչ կերպարանք առաւ երկիրը Սողոմոնէն ետեւ։ — 3. Ո՞ր ազգաց տակ մնան Հրեայք թագաւորութիւննին վերնալէն ետեւ։ Մէջերնին ինչ կողմնակցութիւններ կային։

1. Միոյն Աստուծոյ պաշտօնը՝ միայն Լիբանանու, Արաբական անապատին եւ ծովեզերեայ Փիւնիկէի մէջ տեղը բնակող հրէական պզտիկ ազգին մէջ մնաց։ Ասիկայ ու իր սաստիկ հին աւանդութիւնները ժողովուրդը տիեզերական պատմութեան մէջ անուանի կ՚ընեն։ Ազգին նախահայրն՝ Աբրահամ, 2000ին՝ ջրհեղեղէն գրեթէ 1200 տարի ետքը՝ Միջագետքէն, Քանան գաղթեց։ Յակոբայ որդիքը՝ սովի մը ժամանակ Եգիպտոս գացին, ուր իրենց սերունդը մնաց մինչեւ 1500։

Այս միջոցիս ազատեց Մովսէս Եգիպտոսէն, հարստահարեալ ժողովուրդը. եւ տարաւ, 40ամեայ պանդխտութենէ ետեւ, Աւետեաց երկիրը։ Հրեայք Յեսուայ ձեռօք՝ Քանանու հեթանոս բնակիչները՝ ջնջելէն ետեւ, գրեթէ մինչեւ 1095, անընդհատ դրացի ազգաց հետ պատերազմելով անցուցին։

Իսրայելացւոց՝ Աստուծոյ ընտրեալ ժողովրդեան քով՝ Եհովան, երկրին ճշմարիտ Տէրն ու թագաւորն էր։ Կռապաշտութիւնն իրենց մէջ սաստիկ արգելուած էր։ — Օտար ժողովուրդներէն հեռանալ, բազմաթիւ զո-

հեր, մշակութիւն եւ հաստատուն բնակութիւն՝ օրինաց ձեռօք հրամայուած էին։ Ժողովուրդն՝ ինչպէս նաեւ երկիրը, 12 ցեղերու բաժնուած էր։ Եհովայի ծառայութեանը նուիրուած ղեւտացիները՝ օրինաց եւ աւանդութեանց պահապաններն էին։ Անոնց գլուխը կը կենար քահանայապետը՝ Ահարոնի ցեղէն։ Ցեղերը կը բաժնուէին գերդաստաններու (տուներու), որոնք մասնաւոր գլուխներու տակ էին։ Բայց հարկաւորութեան ատեն՝ բոլոր ազգին գլուխը կ'անցնէին մարդիկ, որոնք՝ իբրեւ դատաւոր ժողովրդեան վրայ կ'իշխէին։

2. Վերջին դատաւորը՝ Սամուէլ, 1095ին **Սաւուղը** թագաւոր օծեց։ Ասիկայ Փղշտացւոց դէմ ըրած անյաջող պատերազմին մէջ՝ իւր անհանգիստ կենացը վերջ տուաւ։ Իւր յաջորդին՝ **Դաւիթի** ժամանակ (1055-1015), հրէական ժողովուրդն իր զօրութեան ծագը հասաւ։ Դաւթի կը հնազանդէին Ասորիք ու Արաբիա՝ մինչեւ Կարմիր ծով։ Երուսաղէմ եղաւ պետութեան մայրաքաղաք ու Եհովայի պաշտաման միջնակէտ։— Փառասէր ու փափկակեաց **Սողոմոն** (1015-975) շինեց շքեղ տաճար մը, հարստահարեց ժողովուրդն ու եղաւ ծերութեան ատեն կռապաշտ։ Իր ժամանակը Ասորիք՝ ապստամբութեամբ մը կորսուեցաւ։

Սողոմոնի մահուանէն ետեւ, տէրութիւնը երկու բաժնուեցաւ։ Հիւսիսային 10 ցեղերը Յերոբովամին առաջնորդութեամբը կազմեցին **Իսրայէլի** թագաւորութիւնը՝ Սամարիա մայրաքաղաքով։ Ասիկայ շուտ մը կռապաշտութեան մէջ իյնալովն ու Ասորիքի եւ Յուդայի հետ ունեցած շարունակեալ պատերազմներովը տկարացաւ։ 722ին Սաղմանասար Ասորեստանցին երկիրը նուաճեց ու բնակչաց մէկ մասը գերի տարաւ։

**Յուդա** (Յուդայի եւ Բենիամինի ցեղերը՝ Երուսաղէմ մայրաքաղաքով) ի սկզբան քանի մը լաւ թագաւորներ ունեցաւ։ Բայց 700էն ետքը հա

ալ մտաւ կռապաշտութիւնն ու բարոյից ապականութիւն։ Նաբուքոդոնոսոր առաւ 586ին Երուսաղէմ ու Հրեայքը բաբելոնական գերութեան տարաւ։ (Այս միջոցին էին Եսայի 700, Երեմիա 600)։

8. Կիւրոս՝ Դանիէլի միջնորդութեամբը, Հրէից հրաման տուաւ Քանանու երկիրը դառնալու։ Հրեայք մինչեւ 332 Պարսից հաւատարիմ մնացին. 320-200 եգիպտական, 200-167՝ ասորական իշխանութեան տակ էին. 167-39 Մակաբայեցւոց իշխանութեանը տակ եղան ազատ։ — Գահակալութեան ու կողմնակցութեան երկայն կռիւներէ ետեւ, Հերովդէս Մեծ 39ին Քրիստոսէ յառաջ՝ Հռոմայեցւոց ձեռնտուութեամբը թագաւոր եղաւ. 70ին Քրիստոսէ ետքը, կործանեցաւ Երուսաղէմ Տիտոսի ձեռօք, եւ հրէական ազգը ցիր ու ցան եղաւ։

Գերութենէն ետեւ նորոգուած մովսիսական օրէնքները, Եգիպտացւոց ու Ասորւոց թագաւորաց տակ ալ՝ քիչ փոփոխութեամբ մնացին։ Ժողովրդեան գլուխը կեցած էր քահանայապետը, որուն օգնական տրուած էր ծերերու խորհրդարանը (sinedrium)։ — Հրէից ազգը վերջին խռովութիւններու ժամանակ, երեք կողմնակցութեան բաժնուած էր։ 1. Փարիսեցիք՝ հին հաւատոյ ու աւանդութեանց սաստիկ յարեալ՝ մովսիսական օրէնքները ճիշդ գրաւոր իմաստին համեմատ կը մեկնէին եւ բարեպաշտութիւնն արտաքին արարողութեանց պահպանութեանը վրայ կը դնէին։ 2. Յունական կրթութեան տեղեակ Եսսենացիները՝ Մովսիսի օրէնքները՝ յունական գաղափարներու հետ միաւորել կ'ուզէին, եւ կրօնական կրթութեանց պարապելու համար տեսակ մը միաբանութիւն կազմած էին։ 3. Սադուկեցիք՝ թէպէտ Մովսիսի օրէնքները կ'ընդունէին, բայց անոր՝ ըստ աւանդութեան մեկնութիւնը չէին ընդունէր. Հոգւոյ անմահութեան, ինչպէս նաեւ հրեշտակաց եւ դիւաց գոյութեան չէին հաւատար։

## 7. Փիւնիկեցիք.

1. Ո՞ւր կ'իյնայ Փիւնիկէ. ինչ բանով անուանի էր ազգը. — 2. Ինչ պատմական տեղեկութիւն ունինք Փիւնիկեցւոց վրայ։

1. Պաղեստինի հիւս. արեւմտեան դին եղած լեռնային, անբարեբեր բայց նաւարկութեան խիստ յարմար ծովեզրը բռնած էր, վաճառականութեան մէջ անուանի Փիւնիկեցւոց փոքրիկ ազգը։ — Փիւ-

նիկեցիք՝ նոյն իսկ ամենէն հին ժամանակները՝ իրենց առեւտրական ճամբորդութիւններովը Միջերկրական ծովուն ամէն եզերացը վրայ պտըտած եւ ի մասնաւորի Ափրիկէի մէջ 814ին մեծ Կարքեդոնի հիմը դրած, ետքէն Անգղիա գացած ու 600ին առեններըը նաեւ Ափրիկէի բոլորտիքը նաւագնացութիւն մ'ըրած էին։ Փիւնիկեցւոց կարաւանները մինչեւ Պարսից ու Արաբացւոց ծովածոցները կ'երթային։ — Գիր ու դրամ գտնելովնին՝ ամէն ժողովրդոց վրայ արտաքոյ կարգի ազդեցութիւն մ'ստացան։ — Իրենց կը տրուի նաեւ ապակւոյ ու ծիրանւոյ գիւտն ու բրդի պատրաստութիւնը։

2. Փիւնիկեցւոց ամենէն հին քաղաքն էր Սիդոն, բայց ետքէն (1000ին) սկսաւ Տիւրոս զօրանալ, զոր շուրջ 600ին երկայն պաշարմանէ մ'ետեւ, Նաբուքոդոնոսոր առաւ։ — 538էն վեր կը գտնենք Փիւնիկեցիները՝ Պարսից հաւատարիմ դաշնակից։ Բայց ասոնց իյնալովն ու Տիւրոսի կործանելովը (332), Փիւնիկեցիք պատմութեան մէջէն անհետ կ'ըլլան։

Փիւնիկէի առանձին առանձին քաղաքները ժառանգական թագաւորներ ունէին. բայց ամէնը մէկտեղ դաշնակցութիւն մը կը կազմէին որուն գլուխն էր Տիւրոս։ — Փիւնիկեցիք՝ ըստ մասին բնութեան առարկաներն ու ի մասնաւորի աստղները (Բէլ, Աստարտէ) եւ ըստ մասին աստուածացած մարդիկը (Մելկարթ) պաշտող կրօն մ'ունէին։

## 8. Եգիպտացիք.

1. Ի՛նչ երկիր է Եգիպտոս. Ո՛ր միջոցին կ'իյնայ Մեմփիսի հին պետութիւնը. Ի՛նչ են Հիւքսոս քուրմերը։ — 2. Ե՛րբ կանգնուեցաւ Թեբէի հարստութիւնը. Ի՛նչ է երկոտասանից պետութիւնը։ — 3. Ո՛վ է Փսամմետիքոս. Իրեն ով յաջորդեց. Որուն ժամանակ կործանեցաւ տէրութիւնը։ — 4. Ի՛նչ կրօն ունէին եգիպտացիք. Ի՛նչ բաժանում, բնաւորութիւն ունէր ժողովուրդը. քանի՛ տեսակ նշանագիր։

1. Հատաքարի ժայռերով եւ աւազի անապատներով շրջապատած ու Նեղոս գետով ոռոգուած եգիպտական ձորադաշտը կը բաժնուէր՝ Վերին

Եգիպտոս, (Թեբէ մայրաքաղաքով), Միջին Եգիպտոս, (Մեմփիս գլխաւոր քաղաքով) ու Ստորին (Նեղոսի եօթը բերաններուն մէջ, Սաիս ու Պեղուսիոն քաղաքներով)։

Եգիպտացիք՝ հողագնդիս պինդ հին ու քաղաքակիրթ ժողովուրդներէն մէկը, Նեղոսի տէլդայի մուտքին վրայ անծանօթ ժամանակները տէրութիւն մը կանգնած էին, Մեմփիս գլխաւոր քաղաքով։ Հիմնադիրը կը համարուի Մէնէս։ Իրեն յաջորդող թագաւորներուն մէջէն՝ Քէֆրէն, Քէոպս, ու Միկէրինոս կանգնեցին աշխարհահռչակ բիրամիտները։

Ամենէն բարձրը Քէոպսինն է (146 մէթր)։ Ասոր վրայ գործեցին 36 տարի 100.000 մարդ։

Մէրիս թագաւորը (Ամենէմհա Գ.) Նեղոսի ջրաններուն առջեւն առնելու համար՝ խորեց իր անունովը կոչուած լիճը. հիմ դրաւ Արսինոէ քաղաքին ու կանգնեց անոր մօտերը՝ Յոյներէն լաբիւրինթոս կոչուած արքունական ահագին պալատը։

Ասորիքէն ու Հիւսիսային Արաբիայէն սեմական հովիւ (Հիւքսոս) ժողովուրդներ, Եգիպտոսի հարստութենէն հրապուրուած, Սուեզի պարանոցէն Նեղոսի երկիրը մտան ու բոլոր Եգիպտոս հարկատու ըրին (2100)։ Հինգհարիւրամեայ բռնաւորական իշխանութենէ մ'ետեւ, Թեբէի Ամասիս կամ Ամէս թագաւորը զիրենք վերին Եգիպտոսէն վռնտեց։ Առաւ ասոր վրայ ձեռքերնէն Տուտմէս կամ Տութմովսէս Գ. Նաեւ ստորին Եգիպտոսն ու զիրենք Ասիա հալածեց։

2. Փարաւոնեանց նորէն կանգնուած թագաւորութիւնը (1660-740), որ Նուպիան առնելով ընդարձակած էր, ունէր իրեն մայրաքաղաք հարիւրադուռ Թեբէն։ Այս հարստութիւնն՝ իր ամենամեծ

բարձրութեանը հասաւ Սեթոսի եւ իւր որդւոյն Ռամսէս Բ. Մեծի (Սեսոստրի) ատենը: Սեսոստր աշխարհակալեց Եթովպիան. պահեց յաղթութեամբ Ասորիքը, Բաբելոնը, Միջագետքն ու Փոքր Ասիոյ մէկ մասը. զարդարեց Եգիպտոսի եւ Նուպիոյ քաղաքները պալատներով, տաճարներով ու սփինքսներով եւ յառաջացուց երկրին պտղաբերութիւնը կանոնաւորեալ ջրանցքով մը: — Բայց ԺԳ. դարու մէջերը՝ Ասիա ըրած աշխարհակալութիւնները մէկիկ մէկիկ կորսուեցան եւ պետութեան մայրաքաղաքը Ստորին Եգիպտոսի Տանիս ու ետքէն Սայիս քաղաքները փոխադրուեցաւ:

Ատեն մը եգիպտացւոց տակ նուաճուած Եթովպացիքը՝ Սաբակով թագաւորին ժամանակ, Եգիպտոսի վերին իշխանութիւնն իրենց ձեռքն անցընելով (740-670) զանիկայ 50 տարի պահեցին: Բայց կամաց կամաց գաւառները՝ օտարականներուն լուծը կրցան վրաններնէն թօթուել, եւ ինքնակաց տէրութիւններ հիմնել: Այսպէսով ելան 12 անկախ տէրութիւններ (670,) որոնց իշխանները իրարու հետ դաշնադրութիւն մ'ըրին. եւ ասոր յիշատակին համար Լաբիւրինթոսը նորէն շինեցին, ուր միաբան ժողովներ կ'ընէին ու զոհեր կը մատուցանէին:

3. Երկոտասանից պետութիւնը միայն 15 տարի տեւեց: Փսամմետիքոս տասուերկու իշխաններէն մէկը, յոյն եւ փիւնիկեցի վարձկանազօրին ձեռօք իշխանութեան հասած ըլլալով՝ ջանաց իր տէրութիւնն անով ամրացընել, որ յոյն եւ փիւնիկեցի ծովահէններու երկիրներ բաշխեց. Յունաց՝ Եգիպտոսի մէջ ազատ վաճառականութիւն ընելու հրաման տուաւ եւ օտար զինուորներ իր ծառայութեան առաւ: Աս նորութեանց համար՝ 200.000

քուրմ ու զինուոր Եթովպիա գաղթեցին։ — Փսամմետիքոս երկայն պատերազմէ ետեւ Փղշտացիքը հարկատու ըրաւ։

Իր որդին Նեքաո՝ հօրն սկսած աշխարհակալութիւնները յառաջ տարաւ եւ վաճառականութիւնն ու նաւագնացութիւնը յառաջացուց։ Փիւնիկեցւոց՝ Ափրիկէի բոլորտիքը նաւարկել տուաւ. եւ ուզեց Նեղոսը՝ ջրանցքով մը արաբական ծովուն հետ կապել։ — Բայց 605ին Կարկեմիշի քով Նաբուքոդոնոսորէն յաղթուեցաւ ու Ասորիք եւ Պաղեստին ըրած աշխարհակալութիւնները կորսնցուց։ Իր յաջորդացը (Փսամմիսի ու Ապրիէսի) ժամանակ տէրութիւնը շատ ինկաւ։

Ամասիս մէյ մ՚ալ կենդանացուց տէրութիւնը՝ առուտուրն ու արուեստները յառաջացընելով։ Սակայն իր որդին Փսամմենիտ, Պելուսիոնի քով, Կամբիւսէսէն յաղթուելով (525), Եգիպտոս, Պարսից նահանգ եղաւ։ — Պարսկական մարզպաններու խիստ հարստահարութեանց հետեւութիւններն եղան ժողովրդեան ապականութիւնն, եւ ասկէ յառաջ եկած յաճախ (Ինարոսի 460, Ամիւրտէոսի 414, Նեկտանեբոսի 374) ապստամբութիւնները։

4. Եգիպտացիք կը պաշտէին լոյսը իբրեւ կենսատու զօրութիւն, զանազան ձեւերու տակ, եւ գլխաւորաբար իբրեւ Ոսիրիս (Արեւ)։ Իրեն քով դրուած էր իգական աստուածութիւն մը՝ Իսիս (նշան պտղաբեր երկրի կամ լուսնի)։ — Ասկէ զատ եգիպտացիք կենդանացուցիչ զօրութիւնը կը պաշտէին նաեւ կենդանեաց, օրինակի աղագաւ, Ապիսի, հեառահանի (ichneumon), տիտռան, կատուի, քաջահաւի (ibis) մէջ եւ այլն։ Հոգւոյն անմահութիւնը՝ որուն տեւականութիւնը մարմնոյն անապական մնալուն հետ կապուած էր, պատճառ եղաւ մեռելները զմռսելու եւ զանոնք՝ ստորերկրեայ ընդարձակ գերեզմաններու մէջ պահելու, որոնք ըստ մասին դեռ մինչեւ հիմայ կեցած են։ — Ասոնց պէս մեծագործ շինուածներ էին՝ Եգիպտացւոց տաճարները, բիրամիտներն ու կոթողները։

Երկիրն՝ սկզբան խել մը տաճարավիճակներու բաժնուած էր։ Անոնց վերին իշխաններն էին քուրմերը, որոնց ստորակարգեալ էին նաեւ Թագաւորք։ Սակայն ետքէն, երբ որ Թագաւորներն, այս վիճակներէն շատերը նուաճեցին, եղան քուրմերէն անկախ։ — Ժողովուրդը իրարմէ խիստ անջատուած զանազան կարգերու բաժնուած էր։ Առաջին կարգը կը կացուցանէին Քուրմերը, որ միայն՝ բարձրագոյն գիտութիւններ կը սորվէին եւ էին միանգամայն բժիշկ, դատաւոր ու ճարտարապետ։ Անոնք՝ ամէն մեռելներու՝ նոյն իսկ Թագաւորաց վրայ ըրած մահուան դատաստանովը՝ բոլոր ժողովրդեան վրայ մեծ ազդեցութիւն ունէին։ Երկրորդը՝ Զինուորները. որոնց կարգէն էր նաեւ Թագաւորը։ Բոլոր կալուածները քուրմերու ու զինուորաց սեպհական էր, եւ իրենք մէկալ կարգերուն վարձու կու տային։ Երրորդը՝ Արուեստաւորները ու Վաճառականները։ Չորրորդը՝ Հովիւները, որոնք մէկալ կարգերուն առջեւ շատ արհամարհ էին ու չէին կրնար տաճար մտնել։ Փսամմետիքոսի ժամանակ եղաւ նաեւ Թարգմանչաց ու Նաւորդաց կարգը։

Եգիպտացիք՝ տխուր, հլու եւ ժուժկալ ժողովուրդ մըն էին։ Երեք տեսակ նշանագիր ունէին. 1. Մեհենական (hieroglyphe), գլխաւորաբար յիշատակարաններու վրայ. 2. Քրմական (hiératique), կրճատուած նոտր գրի տեսակ մը՝ քուրմերու համար ու 3. Ժողովրդական (démotique), հաւանականագոյնս Փսամմետիքոսի ատենէն։ — Եգիպտացիք շատ յառաջացած էին աստեղաբաշխութեան ու երկրաչափութեան մէջ։ Իսկ արուեստի քանի մը ճիւղերու մէջ, այն աստիճանի յառաջադիմութիւն ընելնուն պատճառը, որդւոց՝ իրենց հարց արուեստը վարելու պարտաւորութիւնն էր։

# Բ. ՀԱՏՈՒԱԾ

## Պատմութիւն Յունաց

### 9. Հին Յունաստանի Երկրագրութեանը վրայ տեսութիւն մը.

1. Ո՞ւր կ'իյնայ Յունաստան. Քանի՞ մաս ունի: — 2. Յունաց պատմութիւնը քանի՞ շրջանի կը բաժնուի:

1. Հեմոս լերանց ու Եգէական ծովուն մէջ են. 1. Թրակիա, 2. Մակեդոնիա ու 3. Նոր Եպիրոս:— Յունաստան կը բաժնուի հետեւեալ երկիրներու:

*Ա. Հիւսիսային Յունաստան.* զոր Պինդոս լեռը կը բաժնէ 1. Քիչ մշակուած Եպիրոսի (դէպ ի արեւմուտք) ու 2. պտղաբեր Թեսսաղիայի (դէպ ի արեւելք:)

*Բ. Միջին Յունաստան կամ Հելլաս* կը պարունակէ իր մէջը՝ հիւսիսային արեւմտքէն դէպ ի արեւելք.

1. Շատ քիչ մշակուած Ակառնանիան.

2. Եգոդիան, կէս մը բարբարոս ու պատերազմասէր բնակչով.

3. Լոկրիսը.

4. Փոկիսը.

5. Դորիան, Յունաստանի ամենէն պզտիկ երկիրը.

6. Լեռնոտ ու ճախնային Բէովտիան.

7. Ձիթաշատ Ատտիկէն, Աթէնք մայրաքաղաքով. եւ

8. Մեգարան, համանուն գլխաւոր քաղաքով:

*Գ. Պեղոպոնէսոսը,* որ Կորնթոսի պարանոցովը Հելլասի հետ կապուած է, կը պարունակէ.

1. Արկադիան, Թերակղզւոյն մէջտեղը, Մանտինէա գլխաւոր քաղաքով.

2. Լեռնոտ Լակոնիան, Սպարտա գլխ. քաղաքով
3. Մեսսենիան.
4. Նուիրական Եղիսը, ուր է Ողիմպոս լեռը.
5. Աքայիան.
6. Սիկիոնը.
7. Կորնթոսն ու
8. Արգողիսը, Արգոս ու Միկենէ երեւելի քաղաքներով:

*Դ. Յունաստանի կղզիներն են.*

1. Արեւմտեան եզերքին քով.

Յոնիական կղզիները. (Կորկիւրա, Իթակա, Կեփալոնիա եւ այլն): —

2. Արեւելեան ծովեզրին քով. Եւբէա.
3. Եգէական ծովուն մէջ. Կիկլադները (Պարոս, Նաքսոս, Դելոս եւ այլն):
4. Թրակիայի ու փոքր Ասիայի ծովեզրին քով Սփորադները (Թասոս, Սամոթրակէ, Լեմնոս եւ այլն):
5. Դէպ ի հարաւ. Կրետէ:

Չկար երկիր մը, որ բնութենէն այնպէս օժտուած ըլլայ, ինչպէս Յունաստան: Սաստիկ արգաւանդութիւն, բերքերու զանազանութիւն, մեղմ օդաբաժին, ընդարձակ ծովեզերք, լաւ նաւահանգիստներ՝ էին իր առաւելութիւնները: Ասով հարկ էր, որ բնականապէս քաղաքակրթութիւն ու առուտուր շուտ յառաջանային:

2. Յունաց պատմութիւնը երեք շրջանի կը բաժնուի.

Ա. Յունաց պատմութեան սկիզբէն՝ մինչեւ Դորիական գաղթականութիւնը. +-1104 Ք. Ց:

Բ. Դորիական գաղթականութենէն մինչեւ պարսկական պատերազմը. 1104-500 Ք. Ց:

Գ. Պարսկական պատերազմէն՝ մինչեւ Քերոնիայի ճակատովը յունական ազատութեան վերնալը. 500-338 Ք. Ց:

## ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ

### 10. Յոյնոց պատմութեան սկիզբէն մինչեւ դորիական գաղթականութիւնը Ք.-1104.

1. Ո՞վքեր էին Յունաստանի հին բնակիչները։ Ի՞նչ բանի մէջ տեսնուեցաւ նախ հելլենական աշխոյժը։ — 2. Ո՞վ է Հերակլէս, Թեսէոս. Ի՞նչ է Տրովական պատերազմին պատճառը։ — 3. Ի՞նչ կրօն ունէին Յոյնք. Ի՞նչ տեսակ կառավարութիւն՝ դիւցազանց ժամանակ։

1. Յունաստանի ամենէն հին բնակիչներն՝ երկրագործ ու բնութեան զօրութիւնները պաշտող Պելասգեաններն էին։ Աս հին ժողովրդեան տեղն անցան ետքէն, պատերազմասէր Հելլէնները, որ չորս գլխաւոր ցեղերու բաժնուած էին։

1. Եոլեացիք՝ կը բնակէին հիւս. Յունաստան.

2. Դորիացիք՝ Իրպյի քովերը.

3. Յոնիացիք՝ Ատիկէ ու Պեղոպոնեսի հիւսիսային ծովեզերքին վրայ. (Աս երկիրն ետքէն Աքայիա կոչուեցաւ). ու

4. Աքայեցիք՝ Պեղոպոնէսի մնացած գաւառներուն մէջ։

Հելլենական աշխոյժը ամենէն աւելի առանձնական դիւցազուններու (Հերակղէսի, Մինոսի, Թեսէոսի եւ այլն) քաջութեանցն եւ միաբան յանդուգն ձեռնարկութեանցը մէջ տեսնուեցաւ։ Խաքիններուն մէջէն ամենէն անուանիներն եղան Արգոնաւորդաց (բոլորովին առասպելական) արշաւանքը, չուրջ 1250ին Ք. Յ. Թեբէի պատերազմը 1225ին. Տրովական պատերազմը (1184ին). առաջին ձեռնարկութիւնն որուն բոլոր Յոյնք մասնակից եղան։

2. ա. Հերակլէս դորիացին, ազատեց Յունաստանը ապականող հրէշներէն, գազաններէն, անիրաւ թագաւորներէն, եւ իրեն յանձնուած 12 հռչակաւոր գործքերը կատարելէն ետեւ, աստուածոց կարգը դասուեցաւ։

բ. Թեսեւս յոնիացին, ազատեց շուրջ 1250ին Աթէնքը Մինոսի տուած հարկէն (Մինոտաւրոս — Արիադնէ) ու միացուց Աթէնքի 12 հասարակութիւնները։

գ. Արգոնաւորդաց արշաւանքին դիւցազունքն էին. Յասոն եւողացին (Կողքիսէն ոսկեգեղմը բերողը). Կաստոր, Հերակլէս, Որփէոս երգիչը, Ադմետոս ու Մեդեա։

դ. Թեբէի սփինքսն սպաննող դժբախտ Ոդիպոսի մահուանէն ետեւ, իր որդիքն սկսան իշխանութեան համար իրարու հետ կռուիլ։ Երկայն պատերազմներէ ետեւ Պոլինիկէսի որդիներէն մէկը, Թեբէ առնելով՝ երկիրը խաղաղցուց։

ե. Հեղինէի՝ Մենեղաւոսի կնկան, Պարիսէն յափշտակուիլը պատճառ տուաւ տրովական 10ամեայ պատերազմին։ Յունաց առաջնորդներն էին Ագամեմնոն ու Ոդիսեւս։ Անոնք 1200 նաւով Տրովադայի վրայ քալեցին. ու խարդախութեամբ քաղաքին տիրելէն ետեւ, տրովական պետութեան վերջ տուին։ (Տրովական կէս մ'առասպելեալ պատերազմը, նիւթ մատակարարեց Հոմերոսի Իլիականին ու Ոդիսականին)։

3. Յոյնք՝ պեղասգացւոց պաշտած բնութեան զօրութիւններն անձնաւորեցին եւ ոլիմպիական մարգակերպ գեղեցիկ աստուածներու դարձուցին (anthromorphismus)։ Զեւս՝ (երկինքը), եղաւ տէրութեան օրինաց աստուածը։ Հերա՝ իր կողակիցը, ամուսնութեան ու ընտանեկան կենաց պաշտպան։ Հեփեստոս ու իր ամուսինը Պերսեփոնէ, տարտարոսի իշխաններն էին։ Պոսիդոն՝ ծովու աստուած էր, իսկ Աթենաս քաղաքաց ու քաղաքին գործառնութեանց պաշտպան ու հիմնադիր։ — Մեծ պատուոյ մէջ էր ի մասնաւորի՝ Դորիացւոց քով Արամազդայ Ապողոնը (Phöbus Apollo)։ Ասիկայ, ի սկզբան՝ գարնայնոյ աստուած էր. ետքէն եղաւ տէրութեանց վրիժառու եւ պաշտպան։ Իրեն օգնական էր, իր քոյրը՝ Արտեմիս, որուն պաշտօնն էր վնասակար գազանները ջնջել։ Դեմետրէ (երկիր) երկրագործութեան, ամուսնութեան եւ ստացուածոց հիմնադիրն էր։ Բաքոս, գինւոյ եւ ամէն տեսակ ուրախ ընկերութեանց աստուածը. որուն տօնը՝ շքեղ, բայց լկտի թափօրներով ու խաղերով կը կատարուէր։

Դիւցազանց ժամանակը տէրութեանց գլուխը կեցած էին ժառանգական թագաւորներ։ Թագաւորին իշխանութիւնը միայն իր հարստութեան եւ անձնական առաւելութեանը վրայ էր. որովհետեւ միշտ իրեն օգնական էին՝ մեծ ազդեցութիւն ունեցող ազնուականները։ Ժողովուրդը՝ հասարակաց իրողութիւններուն մէջ քիչ մասնակցութիւն ունէր։ — Յոյնք հին ժամանակներն արդէն մետաղագործութեան եւ արուեստական բաներ շինելու մէջ ճարտար էին։

## ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### 11. Դորիական գաղթականութենէն, մինչեւ պարսկական պատերազմին սկիզբը 1104-500.

1. Դորիացւոց գաղթականութիւնն ինչ հետեւութիւն ունեցաւ. ինչպէս էր յունական քաղաքակրթութիւնը դորիական գաղթականութենէն ետեւ։ — 2. Ի՞նչ էր որ յունական երկիրները նորէն միութեան մէջ կը բռնէր։ — 3. Որո՞նք եւ ո՛ւր էին յունական գլխաւոր գաղթականութիւնները։

1. Դորիացիք 1104ին Պեղոպոնէս գաղթեցին. նուաճեցին Աքայեցիքը ու զանազան տէրութիւններ կանգնեցին։ Նուաճուած Աքայեցիները՝ կէս մը Դորիացւոց հպատակեցան, կէս մ'ալ Պեղոպոնէսի հիւսիսային եզերքը գաղթեցին, որ անկէ ետքն Աքայիա կոչուեցաւ։ — Այս յեղափոխութիւնը պատճառ եղաւ փոքր Ասիայի եւողական, յոնիական ու դորիական գաղթականութեանց հիմնարկութեանը, որոնք՝ կրթութեան ամէն ճիւղին, եւ ի մասնաւորի լեզուի մշակութեան, արուեստից ու գիտութեանց մէջ՝ մայր երկիրը գերազանցեցին։ — Աս գաղթականութիւններէն ելան յունական բանաստեղծութիւնն (Հոմերոս) ու փիլիսոփայութիւնը (Թաղէս Միլետացի)։

Դորիական գաղթականութենէն ետեւ, յունական ցեղերուն մէջ՝ Դորիացիք ու Յոնիացիք ամէնէն զօրաւորներն եղան։ Առաջիններուն գլուխ անցած կը տեսնենք Սպարտացիներն. իսկ երկրորդներուն՝ Աթենացիները։ — Սակայն հազիւ թէ իրենց գաղթելէն ետեւ դար մ'անցաւ, շատ տեղերը՝ քանի մը երեւելի ու հարուստ ազգատոհմերն իշխանութիւնը իրենց յափշտակելով՝ ցեղական իշխանաց տէրութիւնը կործանեցին ու հասարակապետական սահմանադրութիւններ խօթեցին։ Իսկ եթէ ազդեցութիւն ունեցող քաղաքացի մը յաջողցընէր ոաք

եղած ժողովրդեան գլուխն անցնելով՝ ազնուականաց ճոխութիւնը կոտրել ու իշխանութիւնն իրեն գրաւել՝ թէեւ արդար ու պատուաւոր կառավարութիւն մը վարէր, Բռնաւոր անունը կը կրէր։

Ամենէն երեւելի բռնաւորներն եղան Պերիանդր Կորնթացին ու Պոլիկրատէս Սամոսացին, որ երկայն ու փառաւոր կառավարութենէ մ'ետեւ, Պարսից կուսակալէն Մագնեսիա կանչուեցաւ եւ հոն խաչ հանուեցաւ։

2. Ներքին կապը, որ յունական երկիրները միութեան մէջ կը բռնէր, էին. 1. Բարոյից նոյնութիւն. 2. Լեզուի, կրօնի ու պատմական յիշատակաց միութիւն։ Բայց ասոնցմէ աւելի զգալի կ'ըլլային 3. յունական միութեան՝ ա Դելփեան պատգամը՝ բ Ամփիկտիոններն ու գ Հասարակաց տօներն ու խաղերը։

ա. Դելփեան պատգամը, թէպէտ ի սկզբան արիւնահեղ պատերազմները խափանելու, բռնակալները ճնշելու եւ Յունաց բարքն ազնուացընելու մեծապէս օգնեց. բայց ետքէն իր սրբազան ազդեցութիւնն ու շահախնդրութիւնը յառաջ տանելու նայեցաւ։

բ. Ամփիկտիոններուն կամ ժողովներուն մէջ՝ Յոյնք կրօնական եւ քաղաքական խնդիրները կ'որոշէին ու աստուածոց տօները միաբան կը կատարէին։ Ամփիկտիոններուն ամենէն անուանին է Ապողոնինը, որուն գրեթէ ամէն յոյն մասնակից կ'ըլլար։ Երկու հասարակաց նուիրական տեղեր ունէր. Դելփիոսի պիւթեան Ապողոնի՝ ուր գարնան, եւ Թերմոպիլէի Դեմետրեայ մեհեաններն, ուր աշնան ժողովները կ'ըլլային։ Այս ժողովքներուն գլխաւոր վախճանն էր, զրացի ցեղերուն մէջ խաղաղութիւնը պահել, եւ Դելփիոսի Ապողոնը՝ օտար յարձակմանց դէմ պաշտպանել։

գ. Հասարակաց տօներուն ու խաղերուն մէջ՝ Ողիմպիականներն ամենէն նշանաւորներն էին։ Ասոնք Եղիսի Ողիմպոս լերան քով՝ ամէն չորս տարի մէյ մը կը կատարուէին։ Ամէն յունական ժողովուրդներն ալ հանդէսներուն մասնակից կ'ըլլային. որ միջոցին ընդհանուր զինադադար կ'ըլլար։ Խել մը տօնախմբութիւններու կը յաջորդէին Ձիարշաւ, կռփամարտ, հնգամարտ եւ տեսակ տեսակ մարմնավարժ կրթութիւններ։ Բանաստեղծք ու արուեստաւորք ալ մրցութեան կ'ելլէին։ Ողիմպիական թուականը կը սկսի 777ին, որ տարին Իփիտոս այս խաղերը նորոգեց եւ առաջին անգամ յաղթողներուն անուններն սկսան գրուիլ։

3. Վաճառականութեան, բարօրութեան ու քաղաքակրթութեան նկատմամբ մեծ նշանակութիւն ունեցան Գաղթականութիւնները։ Ասոնց մէջ աճող հարստու-

թեան պատճառաւ շատ յառաջացան արուեստք ու գիտութիւնք: Յունաց Եգէական ծովուն արեւել. եւ հիւս. արեւել. դին հիմնուած գաղթականութեանց մէջ ամենէն զօրաւորներն էին Յոնիականները: Ի մասնաւորի Միլէտ եւ Փոկիա, ժամանակ մը ամենէն անուանիներն էին: Նաեւ Քիոս ու Սամոս առեւտրոյ հարուստ քաղաքներ էին: Աղեքսանդրի ու հռոմէական տիրապետութեան ժամանակ երեւելի էին Բիւզանդիոն, Կիւզիկոս, Եփեսոս եւ (408 ին հիմնուած) դորիական Ռոդոսը: — Արեւելեան ծովեզրին վրայ յոնիական գաղթականութիւնները զարգանալու ատեն, Յունաստանի հարաւ. ու արեւմ. դին կը ծաղկէին Դորիական բազմաթիւ գաղթականութիւնները: Ասոնց մէջ անուանի էր ի մասնաւորի Կրետէ. որովհետեւ ամէն յունական երկիրներուն մէջէն հոս ամենէն յառաջ հաստատուն օրինաց վրայ տեւական կառավարութիւն մը (Մինոս) դրուեցաւ: Ափրիկէի ծովեզերքին վրայ կը ծաղկէր Կիւրենէ. Սիկիլիայի մէջ՝ Ակրագանտ ու Սիրակուսա, որ երկայն ատեն յունական գաղթականութեանց ամենէն զօրաւորն էր (Թ. 28): Ստորին Իտալիայի դորիական (Տարենտ), աքայեան (Սիբարիս, Կրոտոն) եւ յոնիական (Ռեգիոն, Կումէ, Նէապոլիս) քաղաքներն ալ՝ արգաւանդ երկրին ու ընդարձակ առեւտրին պատճառաւ շատ յառաջացան: Սակայն մեծ հարստութիւնն ու բարեկեցութիւնը՝ յառաջ բերին ջղատիչ շռայլութիւն մը:

## 12. Սպարտա:

1. Քանի՞ մաս բաժնուած էր Սպարտայի ժողովուրդը: Ո՞վ էր Լիկուրգոս. ինչ տեսակ էին իր օրէնքները: — 2. Ե՞րբ եղաւ առաջին ու երկրորդ Մեսսենական պատերազմը:

-1. Սպարտայի ժողովուրդը բաժնուած էր, տիրող Դորիական Սպարտացւոց, ազատ կալուածատէր Լակեդեմոնացւոց ու գերի Հելոտացւոց: — Լիկուրգոս՝ սպանուած Եւնոմոս թագաւորին որդին շուրջ 810 ին կարգի խոթեց, անընդհատ պատերազմներով վայրենացած ժողովուրդը՝ իր մեծ ճամբորդութեանը մէջ սորված կարգաւորութիւններով: Ջանաց միանգամայն՝ նոր օրէնքներով եւ խիստ կրթութեամբ՝ քաղաքացւոց այնպիսի ոգի մը ազդել, որ իրենք զիրենք ինչքով ու արեամբ հայրենեաց նուիրեն: Երբ Սպարտացիք՝ այս

սահմանադրութիւնն ընդունեցան, թողուց Լիկուրգոս քաղաքն եւ մեռաւ կամաւոր աքսորանաց մէջ։

Սպարտական կառավարութեան գլուխը կեցած էին երկու թագաւորներ, որոնք պատերազմի ատեն բացարձակ իշխանութիւն ունէին բանակին վրայ, իսկ խաղաղութեան ատեն իբրեւ քրմապետ զոհերը կը մատուցանէին եւ ծերակուտին մէջ գահերէց կը նստէին։ Ծերակոյտը (gerusia) կը բաղկանար 28՝ գոնէ 60 տարուան, հասարակութենէն ընտրուած ծերերէ։ Ասիկայ տէրութեան գործոցը վրայ կը խորհէր՝ այնպիսի կերպով մը, որ ժողովրդեան ժողովոյն կը մնար միայն այո կամ ոչ ըսելով որոշում ընել։

Ժողովրդեան ժողովները՝ հասարակօրէն լուսնոյ լրման ժամանակ կ'ըլլային։ Ծերակուտին քով դրուած էին՝ իբրեւ հսկող՝ հինգ Եփորները, որոնք ամէն պաշտօնեայ՝ նոյն իսկ թագաւորները պատասխանատուութեան կրնային կանչել։ Ամէն սպարտացի՝ կրնար հասարակաց պաշտօններու ընտրուիլ ու ժողովրդեան ժողովներուն մասնակից ըլլալ։ — Հարկատու Լակեդեմոնացւոց երկիրը՝ 30.000, իսկ Սպարտացւոցը՝ 9000 հաւասար մասերու բաժնուած էր. վերջիններունը՝ Հելոտացիք կը գործէին։ Միաբանասիրութիւնը աճելու եւ շռայլութիւնը խափանելու համար՝ հասարակաց հացկերոյթներ (syssitia) որոշուած էին, որոնց համար ամէն սպարտացի բան մը կը վճարէր։ Ոսկւոյ եւ արծաթի ստակ ունենալն արգելուած էր եւ անոնց տեղ պղնձի դրամ կը գործածուէր։ Սպարտացի մը ուրիշ երկիր չէր կրնար երթալ. ինչպէս նաեւ օտարական մը, առանց որոշեալ գործքի՝ Սպարտայի մէջ երկայն ատեն չէր կրնար մնալ։ — Կրթութիւնը՝ տէրութեան ձեռքն էր։ Տղաք եօթը տարուան եղած ատեննին կրթանոց կը դրուէին, եւ հոն մարմնավարժութեան, հնազանդութեան, եւ զրկմանց տանելու կը վարժէին, ու քիչ խօսքով շատ բան ըսելու կը կրթուէին։

2. Սպարտա՝ Լիկուրգոսի օրէնքներով ստացած զօրութիւնը ցուցուց երկու Մեսսենական պատերազմներուն մէջ։ — Առաջին պատերազմին մէջ (743-724), պաշարեցին ու առին Սպարտացիք Իթոմէ դղեակը։ Մեսսենացւոց ազնուականները օտար երկիր գաղթեցին. իսկ հոն մնացողները կորսնցուցին իրենց քաղաքային ազատութիւնը։ Երկրորդ պատերազմին մէջ (685-668), Թէպէտ եւ Մեսսենացիք իրենք զիրենք քաջութեամբ պաշտ-

պանեցին Իրա բերդին մէջ, սակայն վերջապէս հպատակեցան։ Հատերը Ջանկլէ քաղաքը գացին, որ անկէ ետքը Մեսսենա կոչուեցաւ։

Սպարտացիք՝ Մեսսենացիները հպատակեցընելով ստացած առաւելութեամբ ջանացին Պեղոպոնեսի մնացած դորիական տէրութիւններուն մէջ բռնաւորները նուաճելու եւ ազնուապետական կառավարութիւնն ամրացընելու։ Ասով վաստկեցան երկայն ատեն վերին իշխանութիւն մը (hégémonie) դորիական տէրութեանց վրայ։–

## 13. ԱԹԷՆՔ.

1. Ի՞նչ տեսակ վարչութիւն էր Աթենացւոցը. Ո՞վ էր Կիլոն։ — 2. Ինչպէս երեւան ելաւ Սողոն. Ի՞նչ տեսակ էր իր օրէնսդրութիւնը։ — 3. Ինչպէս բաժնուած էր ժողովուրդը. Որո՞նց յանձնուած կրթութիւնը։ — 4. Տէրութեան բարձրագոյն իշխանութիւնը որո՞ւ ձեռքն էր. Ի՞նչ էր Արիոսպագոսը։ — 5. Ի՞նչպէս կառավարեց Պիսիստրատ։

1. Աթէնք՝ մինչեւ դորիական գաղթականութիւնը թագաւորներ կը տիրէին։ (կեկրոպս՝ ինչպէս կը կարծուի՝ 1500ին, Ատտիկէի մէջ կարգաւորեալ քաղաքական կենաց սկիզբ ըրաւ. եւ Թեսէոս՝ առասպելեալ Եգէոսի որդին, շուրջ 1250ին 12 հասարակութիւնները միացուց)։

Կոդրոսի մահուամբ (1068) թագաւորութիւնը վերցուեցաւ ու սկզբան ցկեանս պատասխանատու արքոններ դրուեցան. ետքէն (752) տասը տարուան համար ու վերջապէս (682) ամէն տարի ինը արքոն ընտրուեցան, որոնք Արիոսպագին հետ հարստահարիչ ազնուապետութիւն մը կազմեցին։ Ասկէ յաճախ խռովութիւններ ելան, զորոնք՝ նոյն իսկ Դրակոնի (624) խիստ օրէնքներն չկրցան դադրեցընել։

Կիլոն ընդհանուր տհաճութիւնը օգտի գործածելով՝ 612ին Ակրոպոլիսը (Աթէնքի միջնաբերդը) ուզեց գրաւել։ Բայց ըրած փորձը չյաջողեցաւ.

ինք փախաւ, իսկ իր կողմնակիցները՝ իրենց եղած խոստման դէմ նուիրական տեղերն սպաննուեցան։

2. Այս շփոթութեանց ժամանակ Մեգարացւոց՝ Աթենացիներէն առած Սաղամիս կղզին՝ Սողոնի յորդորելովը նորէն ետ առնուեցաւ 598ին։ Ինք պատճառ եղաւ նաեւ Աթենացւոց նուիրական կամ դեղփեան պատերազմին մասնակից ըլլալուն, զոր կը վարէին Ամփիկտիոնները՝ 595ին դեղփիսի ստացուածները յափշտակող Կրիսա քաղքին դէմ։

Սողոն՝ իբրեւ առաջին արքոն, 594ին Աթենացւոց օրէնքներ տուաւ, աղքատ քաղաքացիները՝ հարուստ կալուածատէրներուն ճնշումէն ազատելու, պարտքերն ու տուրքերը՝ ի նպաստ աղքատաց կարգաւորելու եւ հակառակորդ կողմնակցութիւնները միաբանելու համար։

3. Ատտիկէի ժողովուրդը՝ հին յոնիական բաժանման համեմատ, երեք դաս կը բաժնուէր. 1. Ազնուական կալուածատէրներու (eupatrides). 2. Հարկատու քաղաքացւոց ու վարձակալաց (geomores) եւ 3. արուեստաւորաց (demiurges)։ Թագաւորութեան վերցուելէն ետքը՝ իշխանութիւնն առաջին դասուն անցաւ։ Բայց երբ որ մէկալ դասերն հարստացան եւ տէրութեան գործոց մէջ մասնակից ըլլալ պահանջեցին, խել մը շփոթութիւններ ելան։ Այս խառնակութեանց ատեն Սողոն, տէրութեան անանկ սահմանադրութիւն մը տուաւ, որ Աթէնքի շուտով պայծառանալուն հիմ եղաւ։ Դրակոնի անգութ օրէնքները վերցընելէն, աղքատ քաղաքացւոց պարտքը չափաւորելէն, դրամին արժէքն իջեցընելէն ու պարտապանին եւ անոր գերդաստանին անձնական ազատութիւնն ապահովցընելէն ետեւ, ժողովուրդը՝ ստացուածոց համեմատ չորս կարգ բաժնեց։ Առաջին կարգը կը կազմէին Հինգհարիւրաքառնները (pentacosiomedimnes), մեծ կալուածատէրներն, որոնց տարեկան եկամուտը 500 քառ. գարի, կամ նոյնչափ արժէք ունեցող ձէթ կամ գինի էր։ Երկրորդը՝ Երեքհարիւրաքառնները (triacosiomedimnes) կամ ասպետները։ Երրորդը՝ Զեւկիտները (որոնք՝ մինչեւ 150 քառ. եկամուտ ունէին) եւ Չորրորդը Թետերն, որոնք՝ ատկէ ալ նուազ եկամուտ ունէին։ Չորրորդ կարգի քաղաքացիները՝ հարկէ ազատ էին. բայց պաշտօնի ալ չէին կրնար հասնիլ։

Կրթութիւնն առանձնականութեան թող տրուած էր. բայց տէրութիւնն հրապարակական վարժոցներ ունէր։ Պատանին՝ 18 տարուան հասակին ընկերութեան (phratria) մը մէջ կը գրուէր. եւ 20 տարեկան եղած ատեն կրնար քաղաքական իրաւունք գործածել։ Աթէնքի մէջ վաճառականութիւն ու արուեստ բանեցընող օտարականները՝ մետոիքոս կը կոչուէին. ու չէին կրնար ստացուածք եւ քաղաքացւոց իրաւունք ունենալ. բայց տէրութեան ամէն ծանրաբեռնութիւններէն ազատ չէին։ Դատաստանի առջեւ ալ միայն փոխանորդի (προστάτης) ձեռքով կրնային ելլել։

4. Տէրութեան բարձրագոյն իշխանութիւնը ժողովրդեան ժողովոյն (ἐκκλησία) ձեռքն էր, որուն ամէն Աթենացի կրնար մասնակից ըլլալ։ Այս ժողովը օրէնքներ կու տար, պատերազմի եւ խաղաղութեան վրայ որոշում կ'ընէր, քրէական յանցանքներու վրայ դատ կը կարէր, պաշտօնեաները կ'ընտրէր, եւ տուրքերը կ'որոշէր։ Ժողովոյն մասնաժողովը՝ կը կացուցանէին չորսհարիւրոց խորհուրդը (βουλή). որուն գործքն էր, հասարակաց իրողութիւնները հոգալ, ժողովրդեան ժողովոյն առջին հանուելի նիւթերը պատրաստել եւ անոր գահերիցութիւն ընել։ Ասոր անդամները՝ երեք առաջին կարգերու քաղաքացիներէն կ'ընտրուէին, որոնք 30 տարին անցած պիտ'որ ըլլային։ — Գործադրիչ իշխանութիւնն արքոններուն ձեռքն էր, որոնք տարուէ տարի առաջին կարգի քաղաքացիներէն՝ վիճակաւ կ'ընտրուէին։

Դատաստանարաններու մէջ՝ առաջին տեղին ունէր Արիոպագոսը։ Ասոր անդամները՝ պաշտօննին անստգիւտ վարած արքոններ էին։ Արիոպագոսին գործքն էր, օրէնքներու եւ բարոյից վրայ հսկել եւ գլխաւոր յանցանքները դատել։ Արիոպագոսը կրնար ժողովրդեան ժողովոյն եւ խորհրդարանին՝ վնասակար եւ օրինաց հակառակ երեւցած կարգադրութիւնները, արգելիչ ձայնով մը (veto) խափանել։

5. Սողոնի կամաւոր աքսորմանէն ետեւ, որ եօթն իմաստուններէն մէկն էր, եւ իբրեւ բանաստեղծ եւ ժողովրդեան մտերիմ շատ կը մեծարուէր, Պիսիստրատոս Աթէնքի տիրապետեց (560-528)։ Ասիկայ՝ թէեւ երկու անգամ աքսորուեցաւ, սակայն իւր մեղմ ու արդար կառավարութեամբը, Սողոնի սահմանադրութիւնը հաստատեց, եւ Աթէնքի ժողովրդեան նոր կենդանութիւն տուաւ։ Իր բարեգործութիւններովն ալ ինք զինք այնպէս սիրելի ըրաւ,

*որ իւր իշխանութեանը առանց ընդդիմութեան յաջորդեց որդին Հիպպիաս. բայց երբ որ Աթենացիք 510ին Սպարտացւոց օգնութեամբը զինք մերժեցին՝ Պարսկաստան փախաւ։*

## ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

*Պարսկական պատերազմէն մինչեւ Հելլենական ազատութեան վերջը. 500—338:*

### 14. Պարսկական պատերազմ 500-469.

**1. Ի՞նչ է պարսկական պատերազմին պատճառը։ Ի՞նչ հետեւութիւն ունեցաւ Պարսից առաջին ու երկրորդ արշաւանքը։ — 2. Ի՞նչպէս լմնցաւ երրորդ արշաւանքը. Աթէնք ինչպէս առաւ յունական առաջնորդութիւնը։ — 3. Ի՞նչ վախճան ունեցան Թեմիստոկլէս ու Պաւսանիաս։**

1. *Պարսկական պատերազմին առիթ տուաւ Դարեհի՝ Սկիւթացւոց դէմ ըրած արշաւանքը։ Հիստիէոս Միլետացին, (որ 513ին Իստէրի կամուրջը բռնելով Թագաւորն ազատած էր,) երբ ամբաստանուելով Շօշ կանչուեցաւ, Յոնիացիներն ապստամբութեան գրգռեց։ Յոյները (500) Սարդք այրելէն, բայց Լատէ կղզւոյն քով յաղթուելէն ետեւ, Միլետ Պարսիկներէն առնուեցաւ ու կործանուեցաւ։ Բոլոր էրիկ մարդիկ սպանուեցան ու Յոնիացիք նուաճուեցան. միայն Փոկիացիք գաղթեցին ու Մասսիլիա քաղաքը հիմնեցին։ — Ասոր վրայ Դարեհի դեսպաններն՝ որ եւրոպական Յոյներէն իբրեւ հպատակութեան նշան, հող ու ջուր կը պահանջէին՝ ազգաց իրաւանց դէմ, 493ին Աթենացիներէն ջրհոր ու Սպարտացիներէն փոս նետուեցան։*

*Աս բանս Դարեհը շատ կատղեցուց ու Մարդոնիոսի զօրավարութեամբը 492ին նաւատորմիղ ու բանակ մը խաւրեց Յունաստան (Առաջին արշաւանք)։ Բայց ցամաքային զօրքը Փռիւգացիներէն,*

Թրակիայի մէջ ջարդ մը կերաւ, փճացաւ. իսկ նաւատորմիղը Աթոս հրուանդանին քով խորտակեցաւ։ Դարեհ՝ խորհրդէն ետ չկեցաւ. Դատի ու Արտափեռնի առաջնորդութեամբ 490ին ահագին զօրք ու նաւատորմիղ մը խաւրեց (Երկրորդ արշաւանք)։ Թէպէտ 150.000ի մօտ բանակը Երետրիան կործանեց, բայց Միղտիադեսի առաջնորդութեամբը 10.000 Աթենացիներէ ու 1000 Պղատէացիներէ Մարաթոնի քով ահագին հարուած մը կերաւ (Սեպտ. 29)։

Միղտիադես, (որ ի սկզբան շատ պատիւ գտաւ Աթենացիներէն, բայց ետքէն Պարոս կղզին առնուլ չկարենալուն, ամբաստանուեցաւ ու բանտի մէջ մեռաւ). յաջորդեցին Արիստիդէս ազնուապետն ու Թեմիստոկղէս ռամկապետը։ — Վերջինը Աթենացւոց ծովային զօրութիւնն աճեցուց։

2. Երկայն պատրաստութենէ ետեւ, Քսերքսէս՝ ահագին նաւատորմղին (1200 նաւ) ընկերացած բանակը (1½ միլ.), եօթը օրուան ու եօթը գիշերուան մէջ Հելլեսպոնտոսէն անցուց. (Երրորդ արշաւանք 480) եւ նուաճեց Թրակիան, Մակեդոնիան ու Թեսսաղիան։ — Այն միջոցին՝ որ 300 Սպարտացիք եւ 700 Թեսպիացիք Լեւոնիդասի առաջնորդութեամբ՝ Թերմոպիլէի կիրճը դիւցազնաբար կը պաշտպանէին — բայց Եփիաղտեսի ցած մատնութեամբն ամէնքը մեռան — երկու անորոշ նաւամարտ եղաւ Արտեմիսիոնի քով։

Աս եղած ժամանակ՝ Աթենացիք Թեմիստոկղեսի խորհրդովը քաղաքնին թողուցին։ Եւ երբ ասոր վրայ Քսերքսէս՝ Փովկիս, Բէովտիա եւ Ատիկէ անապատ դարձուց եւ Աթէնքն այրեց՝ յունական նաւատորմիղը Սաղամիսի քով ճակատեցաւ։ Թեմիստոկղէս ճարտարութեամբ մը Յոյները պատերազմի ստիպելէն ետեւ, Պարսից վրայ անանկ փառաւոր

յաղթութիւն մը կանգնեց (480ին), որ Քսերքսէս հարկադրեցաւ Ասիա փախչիլ։ — Մարդոնիոսի առաջնորդութեամբ Թեսսալիա մնացած պարսկական զօրքը 475ին գարնան, Աթէնք երկրորդ անգամ առաւ. բայց (Պաւսանիասի եւ Արիստիդեսի առաջնորդութեամբ՝ միացեալ Սպարտացիներէն ու Աթենացիներէն Պղատէայի քով յաղթուեցաւ՝ այն օրը (Սեպտ. 25), որ օրն որ ջնջուեցաւ պարսկական նաւատորմիղը Քսանթիպպոս աթենացիէն ու Լեւոտիքիդէս սպարտացիէն Միկաղէի հրուանդանին քով (Սամոսի դիմացը)։ Այս յաղթութեամբ Ասիայի յունական գաղթականութիւններն ազատ եղան։

Աթէնքի պարիսպներն ու Պիրէոս՝ Թեմիստոկղեսի ձեռքով շինուելէն ետեւ, Աթէնք՝ Յունաստանի առաջին ծովային զօրութիւնն եղաւ։ Յոյնք՝ Պաւսանիասի, Կիմոնի (Միլտիադեսի որդւոյն) եւ Արիստիդեսի առաջնորդութեամբ 477ին Կիպրոս ու Բիւզանդիոն առնելէն ետեւ, Պաւսանիասի ամբարտաւանութեամբ վշտացած դաշնաւորք՝ Աթէնքի հետ միացան. որ այսպէսով՝ սպարապետութիւնն (hégémonie) եւ Դեղոսի հասարակաց գանձարանին վերատեսչութիւնն առաւ։ Զարկաւ ասոր վրայ Կիմոն Եւրիմեդոնի քով (Պամփիւլիայի մէջ) ծովու եւ ցամաքի վրայ 469ին Պարսիկներն. որով առանց կարգաւորեալ դաշինքի մը լմընցաւ պարսկական պատերազմը։

3. Թեմիստոկղէս՝ Սպարտացւոց հալածմունքէն ու իր աթենացի թշնամիներէն ապահովութիւն գտնելու համար (466) Պարսկաստան փախաւ եւ հոն մեռաւ։ Իսկ Պաւսանիաս՝ իբրեւ մատնիչ՝ 467ին, Սպարտայի՝ Աթենասայ տաճարին անօթութեամբ մեռաւ։

Պարսկական պատերազմին ժամանակ, Աթէնքի մէջ ռամկապետական կառավարութիւնն երթալով կերպարանաւորուեցաւ: Կղիսթենէս 510ին ժողովուրդը 10 ցեղերու բաժնելէն ետեւ՝ խեցեկոյտ վճռովը (ostracisme) միջոց մը գտաւ, բռնակալութեան ետեւէ ինկող երեւելի մարդիկը հեռացընելու: Իսկ Արիստիդէս, նաեւ քաղաքացւոց՝ տէրութեան պաշտօններու հասնելու մուտքը բացաւ:

## 15. ԱԹԷՆՔԻ ԱՄԵՆԱՄԵԾ ԲԱՐԳԱՒԱՃՈՒԹԻՒՆԸ 469-431.

1. Ե՞րբ հասաւ Աթէնք իր ամենամեծ բարգաւաճութեանը: — 2. Ի՞նչ վիճակի մէջ էր այն միջոցին յունական մատենագրութիւնը:

1. Երբ մէկ դիէն Կիմոն՝ ազնուապետական կողմնակցութեան գլուխը՝ Աթէնքի զօրութիւնն աշխարհակալութիւններով կը մեծցընէր, կը վաստըկէր մէկալ դիէն Պերիկղէս անշահախնդիր առաքինութեամբ, մեծանձնութեամբ եւ անդիմադրելի ճարտարախօսութեամբ՝ ժողովրդեան վրայ մեծ ազդեցութիւն մը: Իր կառավարութեան ատեն՝ Աթէնքի սպարապետութիւնը, գրեթէ վերջին տիրապետութեան մը կը հասնէր, ինչու որ յունական կղզեաց, Թրակիայի ու Փոքր Ասիայի ծովեզերեաց մեծ մասը՝ Աթէնքի հարկատու էր: — Նախանձորդ Սպարտան միշտ պատրաստ էր՝ Աթէնքի տժգոհ դաշնակիցներուն ու թշնամիներուն օգնելու: Երկու տէրութեանց մէջ՝ միաբանութիւնն առ ժամանակ մը անով հաստատուեցաւ, որ Աթենացիք՝ երկրաշարժով ու Հելոտացւոց ապստամբութեամբ (երրորդ Մեսսենական պատերազմ 464-455) նեղն ինկած, Կիմոնի խորհրդովը Սպարտացւոց օգնութեան գունդ մը խաւրեցին (461ին): Երբ սպարտացիք օգնութիւնը մերժեցին՝ Կիմոն խեցեկոյտ վճռով աքսորուեցաւ. բայց 456ին նորէն Աթէնք դարձաւ: Աթենացիք նոյն տարին՝ Կորնթացիներէն պաշտպանուած Եգինա կղզին, փառաւոր նաւամարտէ մ'ետեւ առին: Բայց

Երբ որ ասոր վրայ, Փոկիացւոց՝ Դորիացիներուն հետ ունեցած կռուին մէջ, Սպարտացիք ու Թեբացիք ետքիններուն կողմը բռնեցին, Աթենացիք Տանակրայի քով 457ին ետ դարձող Սպարտացիներուն առջեւն առին. բայց յաղթուեցան: Սակայն յաջորդ տարին՝ Բէովտացւոց վրայ յաղթութիւն մը կանգնեցին. որով ասոնք՝ ինչպէս նաեւ Փովկիս ու Լոկրիս աթենական դաշնակցութեան մէջ մտան: — Կիմոն՝ Պարսից հետ պատերազմը նորոգելու համար, Սպարտացւոց հետ զինադադար մ'ըրաւ ու մեռաւ Կիպրոս առնելու ատեն 449ին: Իր մահուանէն ետքը, Պերիկղէս նորէն նուաճեց դաշնաւոր տէրութիւններն, (445ին Եւբէան ու Մեգարան, 440ին Սամոսն ու Բիւզանդիոնը) որոնք Սպարտայէն գրգռուած՝ աթենական լուծը վրաններնէն թօթուել կ'ուզէին:

2. Պերիկղէս, Ազնուապետականաց գլխաւորներուն (ի մասնաւորի Կիմոնի եւ ծերն Թուկիդիդէսի) դէմ կռուելու ատեն՝ մէկ կողմանէ Արիսպագին զօրութիւնը կտրելով, եւ մէկալ կողմանէ զինուորաց ու դատաւորաց թոշակ կապելով, նոյնպէս ժողովրդեան ժողովին եկողներուն տակ տալով, ժողովրդեան սիրտն առաւ: — Աթէնքի մէջ ամէն քաղաքացի կրնար իր սեպհական արուեստը բանեցընելէն զատ, տէրութեան գործքերուն ալ զբաղիլ, եւ աւելորդ ժամանակները, կրօնական հանդիսութեանց, թատերախաղութեանց եւ ուրիշ կրթական զբօսանքներու ներկայ գտնուիլ: Անկէ զատ հայրենասիրութիւն, բարեպաշտութիւն ու համեստութիւն ընդհանուր հասարակաց առաքինութիւններ էին: Այսպիսի ժողովրդեան մը մէջ, հարկ էր որ արուեստք ու գիտութիւնք շուտ ծաղկէին: Եւ իրօք ալ Պերիկղէս, դաշնաւորաց գանձէն, անուանի ճարտարապետներու եւ քանդակագործներու (Փիդիաս, Իկտինոս, Մնեսիկղէս) ամենափառաւոր շէնքեր շինել տուաւ:

Նոյնպէս կը ծաղկէր նաեւ մատենագրութիւնը: Դիւցազնական (épique) արդէն Հոմերոսի ժամանակ իր կատարելութեան ծայրը հասած էր: Ասոր Իլիականն ու Ոդիսականը՝ թերեւս 900ին ատենները՝ Փոքր Ասիայի յոնիական գաղթականութեանց մէջ երեւան ելած ըլլան: Հեսիոդոսի, երկու դիւցազնականները. Աստուածոց Ազգահամարն

(Théogonie) եւ ''Գործքերն ու Օրերը'', կրօնական վարդապետական նկարագիր մ'ունին։

Քնարերգութիւնն (lyrique) ի սկզբան քաղաքական ու պատերազմական էր. այսպէս Տիրտէոսի, Սոլոնի եւ Թէոգնեսի երգերգութեանցը մէջ։ Պարսկական պատերազմին դիւցազնական գործքերը հուշակեց երգերգութիւններով ու պարսաւական տողերով (épigramme) Սիմոնիդէս։ Արքիլոքոս Պարոսացին (700) ճամբայ բացաւ Երգիծական Կծուաձեւ (satirique-ïambique) բանաստեղծութեան։ — Մեղեդական (mélique) կամ երգով բանաստեղծութեան գլուխներն եղան. Աղկէոս Լեսբոսացին ու սորա կրտսերագոյն ժամանակակիցը Սափփով (600) եւ Անակրէոն։ Դորիական քնարերգութիւնն իր ամենէն մեծ բարձրութեանը հասաւ պարսկական պատերազմներուն ժամանակ Իբիկոսի, Սիմոնիդեսի եւ մանաւանդ Պինդարոսի ձեռքով (522-442)։

Նոյն կերպով կը պայծառանար՝ հելլենական առասպելաց մտածմունքներն, ամենագեղեցիկ կերպով բացատրող Թատերական (dramatique) բանաստեղծութիւնն ալ։ Եսքիղոս (525-456) հնարեց վեհ եւանդով մը ողբերգութիւնը (tragédie), որ Սոփոկղէսի (497-406) ձեռօք՝ իր կատարեալ գեղեցկութեանը հասաւ. իսկ Եւրիպիդեսի (480-406) հանճարեղ մտածութիւններովը ազնուացաւ։ — Կատակերգութիւնը (comédie), որուն ներուած էր, ժամանակակից դէպքերուն վրայ ազատ դատաստան ընել՝ Արիստոփանեսի (427-388) ձեռօք, իր ամենաբարձր կատարելութեանը հասաւ։ — Ճարտարախօսութիւնն, որ ի սկզբան խորհրդոց մեծութեան բացատրութիւն մըն էր, ետքէն Սոփեստից (Գորգիաս) եւ 10 ատտիկեան ճարտարախօսաց (Լիւսիաս, Իսոկրատէս, Եսքինէս, Դեմոսթենէս) ձեռօք՝ ուսման նիւթ եղաւ։ — Իբրեւ պատմագիր՝ նշանաւոր եղան Հերոդոտոս Ալիկառնացին (480-428), որ իր մեծ ճամբորդութեանը մէջ ժողոված լուրերը՝ գեղեցիկ լեզուաւ մը գրեց։ Թուկիդիդէս (471-396) իր պելոպոնեսական պատերազմին պատմութեանը մէջ յունական ինկած բարոյականութեան ճիշդ պատկերը կ'ընծայեցնէ. եւ Քսենոփոն։ — Հելլենական կրթութեան շրջանը կը լրացընէր Փիլիսոփայութիւնը. որուն մէջ անուանի են Սոկրատէս, Պղատոն (429-347) ու Արիստոտէլ (384-322)։

## 16. Պելոպոնեսեան պատերազմ 431-404.

1. Ի՞նչ է Պելոպոննեսական պատերազմին պատճառը. Ի՞նչպէս սկսաւ։ 2. Ի՞նչ ելք ունեցաւ Սիկիլիայի արշաւանքը։ 3. Ի՞նչպէս լմնցաւ Պելոպոննեսական պատերազմը։

1. Երբ Աթենացիք, Կորնթացւոց կամաց հակառակ, Կորկիւրա քաղաքն իրենց պաշտպանութեանը

տակ առին, Կորնթացիք՝ Սպարտացւոց դիմեցին։ Ասոնք՝ զՅունաստան Աթենացւոց լուծէն ազատելու պատրուակաւ, ոտք ելան, եւ իրենց հետ բոլոր Յունաստանի տէրութիւններն, ու Աթէնքի դէմ պատերազմ հրատարակեցին։

Աթէնքի դաշնակիցներն էին, Մակեդոնիա, Պղատէա քաղաքը, Արքիպեղագոսի կղզիներն (որոնց մեծ մասը պատերազմի ատեն գրաւեցին) ու ասիական գաղթականութիւնները։ Բայց Աթէնք՝ Յունաստանի ամենահարուստ տէրութիւնն էր. իր եկամուտը (դաշնաւորաց հարկերը, մաքսերն ու բովերն եւ այլն) 2000 տաղանդ (գրեթէ 11½ միլ. ֆրանք) էր։

Թեբացիք՝ Պղատէայի վրայ պարապ յարձակում մ՚ընելէն ետեւ, Արքիդամոս՝ Սպարտացւոց թագաւորը, 60.000 դաշնակից զօրքով՝ 431ին գերփելով ու աւերելով Ատտիկէ մտաւ։ Աթենացիք՝ վրէժնին առին, ծովու կողմանէ Պեղոպոնէսի եզերքներն ապականելով։ Այս միջոցին Աթէնքի մէջ՝ զարհուրելի ժանտախտ մ՚ելաւ, որուն Պերիկղէս ալ զոհ եղաւ (429ին)։ Իր մահուանէն ետքը, Կղէոն խաղախորդէն առաջնորդուած ռամիկն իշխանութիւնը ձեռքն առաւ (427). երբ Սպարտացիք ու Թեբայցիք՝ Պղատէան կործանեցին։ Թէպէտ ասոր վրայ Աթենացիք (425) Սպարտացւոց երեւելիները գերի բռնեցին, սակայն Թեբացիներէն (424 ին) Դեղիոնի քով յաղթուեցան։ Թրակիայի ու Մակեդոնիայի մէջ ալ Բրասիդաս սպարտացին զիրենք շատ նեղը խոթեց, մինչեւ որ թէ ասիկայ եւ թէ Կղէոն (422) Ամփիպոլսոյ ճակատին մէջ ինկան։ Այն ատեն՝ Նիկիաս ազնուապետականաց գլուխը՝ կրցաւ Սպարտայի հետ 50 տարուան խաղաղութիւն մ՚ընել։

2. Նիկեան յիսնամեայ խաղաղութիւնը հազիւ քանի մը տարի տեւեց. ան ալ երկու կողմանէ իրարու դէմ շարունակ գանգատներ ընելով։ Տաղան-

դաւոր՝ բայց Թեթեւամիտ Աղկիբիադեսի ազդեցութեամբ, Աթենացւոց եւ Պելոպոնեսացւոց մէջ, դաշնակցութիւն մը կազմուեցաւ՝ Սպարտացւոց դէմ. սակայն Սպարտացիք այս դաշնակցութիւնն ալ փըճացուցին Մանտինէայի յաղթութեամբ (418 ին)։ Ասոր վրայ Աղկիբիադէս, Աթենացիները՝ զօրաւոր Սիրակուսայի դէմ արշաւանք մ'ընելու գրգռեց ու փառաւոր նաւատորմղով մը 415 ին Սիկիլիա նաւեց (իրեն օգնական ունենալով Լամաքոսն ու Նիկիասը)։ Իրեն հեռաւորութեան ատեն, իր թշնամիները զինք ամբաստանեցին, որով ստիպուեցաւ Սպարտա փախչիլ։ — Թէպէտ Դեմոսթենէս Աթենացւոց օգնութեան հասաւ. սակայն եւ այնպէս Սիրակուսացիք՝ Գիլիպպոս Սպարտացիէն օգնութիւն գտած, Աթենացիները զարկին 413 ին։ Նիկիաս ու Դեմոսթենէս Սիրակուսայի մէջ գլխատուեցան. իսկ զօրքը՝ քարահատութեան խաւրուեցաւ։ Այս եղած ժամանակ՝ Սպարտացիք Ատտիկէի Դեկեղէա բերդն ամրացուցին եւ Պարսից հետ դաշնակցեցան։✗

3. Աթենացիք նոր նաւատորմիղ մը պատրաստեցին ու Սպարտայէն Տիսափեռնէս պարսիկ մարզպանին քով փախչող Աղկիբիադը (412 ին) ետ կանչեցին։ Ասիկայ՝ Կիւզիկոսի քով 410 ին յաղթեց Պարսից հետ դաշնակից եղող Սպարտացւոց. նուաճեց 408 ին Փոքր Ասիայի ծովեզերեններն ու Բիւզանդիոնը. եւ փառաւոր ձաղանքով Աթէնք մտաւ։ Բայց իր ստորակարգեալ զօրավարներէն մէկուն (Անտիոքոսի) անխոհեմութեամբը (407 ին) նորէն աքսորուեցաւ։ Աթենացիք՝ Արգենուսի քով (Լեսբոսի քովերը) ըրած յաղթութեամբն (406 ին) անհոգ եղած, կորսնցուցին՝ 405 ին Եգոսպոտամոսի քով իրենց վերջին նաւատորմիղը։ Յաղթող Սպար-

տացինները՝ Լիւսանդրի առաջնորդութեամբ, պաշարեցին առին 404ին Նաեւ Աթէնքը՝ կործանեցին անոր պարիսպներն եւ 30 բռնակալ դրին. որոնք ամենալաւ քաղաքացիները կ'աքսորէին կամ կը գլխատէին։ — Քիչ ընդհատութեամբ 27 տարի տեւող Պեղոպոնեսական պատերազմը ջղատեց Յունաստանի զօրութիւնը։

## 17. Սպարտայի ու Թեբէի տիրապետութիւնը 404-362.

1. Թրասիբուլի վերանորոգութիւնն օգուտ մ'ունեցաւ։ — 2. Ինչպէս վարեց Սպարտա յունական տիրապետութիւնը։ — 3. Ինչպէս եղաւ Թեբէ։

1. Թէպէտ 403ին Թրասիբուլոս 30 բռնաւորները վռնտեց, ընդհանուր թողութիւն տուաւ ու Սողոնի սահմանադրութիւնը նորոգեց, բայց մէյ մ'անհետ եղած հոգին ա՛լ չկրցաւ դառնալ։ Այնիւն Սոկրատէս, ատտիկեան փիլիսոփայութեան հիմնիչը, պէտք եղաւ որ Աթէնքի մէջ 399ին՝ թոյն խմելով մեռնի։

Աս միջոցին էր, որ Յոյնք՝ իրենց վարձկանազօրովը Կիւրոսի օգնեցին, իւր Արտաշէս Ուշեղ եղբօրը դէմ. եւ Կունաքսայի ճակատէն ետեւ (401ին) 10.000 հոգի Քսենոփոնի առաջնորդութեամբ, շատ վտանգներէ անցնելով՝ հայրենիքնին դարձան։

2. Սպարտացիները (որոնց պատգամաւորին ձեռօք Աղկիբիադէս 403ին, փախուգիայի մէջ սպանուեցաւ), բոլոր Յունաստանի սպարապետութիւնն առնելէն ետեւ՝ ամբարտաւանութեամբ, ընչաքաղցութեամբ ու նուազապետութեամբ՝ բոլոր Յունաց ատելութիւնն իրենց դէմ գրգռեցին։ Անոր համար երբ իրենց Ագեսիղայոս թագաւորը 396-394 Փոքր Ասիայի մէջ յաջողութեամբ Պարսից դէմ կը կռուէր՝ Կորնթոս, Թեբէ, Արգոս ու Աթէնք

Սպարտայի զօրութեան դէմ դաշնակցութիւն մ՚ըրին։ Թէպէտ Լիւսանդր (394) Թեբացւոց դէմ ըրած պատերազմին մէջ ինկաւ եւ Կոնոն, 393ին պարսկական ու աթենական միացեալ նաւատորմիղով՝ Կնիդոսի քով Սպարտայի ծովական զօրութիւնը ջնջելէն ետեւ՝ Աթէնքի պարիսպները կանգնեց, սակայն Ագեսիղայոսի (Կորնթէայի քով) ըրած յաղթութեամբը՝ Սպարտացիք ապահովցուցին իրենց առաւել զօրութիւնը՝ ցամաքի վրայ։ Անտալկիտասայ ամօթալի խաղաղութեամբը (387) յառաջակողմեան Ասիայի Յոյները Պարսից իշխանութեան տակ ձգուեցան. իսկ Յունաստանի բոլոր քաղաքները ազատ հրատարակուեցան։

3. Սպարտական գունդ մը՝ Թեբէի միջնաբերդը բռնելով (382), Սպարտայի սպարապետութեան կործանումը յառաջ բերաւ։ Պելոպիդաս (378) Սպարտացիներն անկէ վռնտելէն ետեւ, Թեբէի իշխանութիւնը հաստատուեցաւ եւ Աթէնքի հետ դաշինք դրուեցաւ։ Այն միջոցին որ Աթենացիք Քաբրիասայ եւ Տիմոթէոսի առաջնորդութեամբ՝ ծովու վրայ յաղթութեամբ յառաջ կը քալէին, Եպամինոնդաս նուիրական գնդին քաջութեամբը 371ին Լեւկտրայի փառաւոր յաղթութիւնը վաստըկեցաւ։ Ասոր վրայ ազատեց Մեսսենիան սպարտական լծէն ու ապահովցուց Թեբէի սպարապետութիւնը։

Բայց երբ Պելոպիդաս, Թեսսաղիայի Աղեքսանդրոս բռնաւորին դէմ (365) ու Եպամինոնդաս Մանտինէայի յաղթական ճակատին մէջ ինկան, կորսընցուց Թեբէ իր շուտով ստացած մեծութիւնը։ — Ասկէ ետքը տիրեց Յունաստանի մէջ ընդհանուր խաղաղութիւն մը, որ բոլորովին ուժաթափ ըլլալուն հետեւութիւնն էր։

## 18. Յունական ազատութեան վերջը 338.

1. Ե՛րբ եղաւ երկրորդ ու երրորդ նուիրական պատերազմը. Ինչպէս վերջացաւ յունական ազատութիւնը։

Ի. Փիլիպպոս՝ Մակեդոնիայի թագաւորը (360-336) պատերազմի նոր կարգ մը խորհելով (փաղանգ), իր պզտիկ տէրութիւնը շատ ընդարձակեց։ Աթենացիները՝ կաշառակեր ճարտարախօսներու ձեռօք (Եսքինէս)՝ որոշիչ ձեռնարկութիւններէ ետ կեցուց եւ առթի մը կը սպասէր քայքայած Յունաստանը նուաճելու։ Աս միջոցին էր, որ (347) Թեբացիք զինք յանկարծ Դեղփեան տաճարը կողոպտող Փոկիացւոց դէմ, (երկրորդ) Նուիրական պատերազմին օգնութեան կանչեցին։ Փիլիպպոս նուաճեց Փոկիացիները եւ 346ին անոնց երկու ձայնը՝ Ամփիկտիոնեան ատենին մէջ ընդունեցաւ։

Թէպէտ Դեմոսթենէս կը զգուշացընէր Աթենացիները Փիլիպպոսի աճող զօրութենէն, բայց եւ այնպէս՝ խաբուած Ամփիկտիոններն, զՓիլիպպոս՝ Լոկրացւոց դէմ մղած (երրորդ) Նուիրական պատերազմին սպարապետ ընտրեցին։ Երբ Փիլիպպոս Լոկրացիները նուաճելէն ետեւ, Ելատէան՝ Աթէնքի դուռը բռնեց, Դեմոսթենեսի ճարտարախօսութենէն արթնցած Աթենացիք, Կորնթացիք ու Թեբացիք իրեն դէմ դաշնակցեցան. բայց Քերոնիայի քով 338ին յաղթուեցան, եւ Փիլիպպոս՝ Կորնթոսի ժողովոյն մէջ Պարսից դէմ ընդհանուր հրամանատար անուանուեցաւ։ Այսպիսով սպարապետութիւնը Մակեդոնիայի անցաւ։

## Գ. ՀԱՏԱԾ

## Յունական-Մակեդոնական պետութիւն

### 19. Աղեքսանդր Մեծ 336-323.

1. Աղեքսանդր ի՞նչպէս նուաճեց Յունաստան. Ե՞րբ սկսաւ Պարսկաստանի արշաւանքը: — 2. Ի՞նչպէս տէր եղաւ պարսկական պետութեան. Ի՞նչ ելք ունեցաւ Հնդկական արշաւանքը:

1. Աղեքսանդր՝ որ իբրեւ տղայ, արդէն իր ապագայ մեծութիւնը ցուցուցած էր, Հօրն սպանմանէն ետքն՝ իւր քսաներորդ տարուան հասակին մէջ (336), Մակեդոնական գահն ելաւ: Ասոր վրայ շուտ մը նուաճեց ապստամբած Լիւրիկեցիքը. Թեբէն կործանելով՝ զարհուրեցուց բոլոր Յունաստան. եւ Կորնթոսի մէջ 335ին՝ ինք զինք Յունաց ընդհանուր սպարապետ անուանել տուաւ Պարսից դէմ:

Աղեքսանդր 334ին, Պարսից դէմ արշաւանքն սկսաւ 35.000 բանակով մը. Գրանիկոսի քով (Միւսիայի մէջ) յաղթեց Պարսից մարզպաններուն. նուաճեց փոքր Ասիան ու նորէն հաստատեց ռամկապետութիւնը յունական քաղաքներուն մէջ: Այն միջոցին որ Պարսիկք յառաջ կը քալէին, Աղեքսանդր Տարսոնի մէջ գետ մտնելով՝ հիւանդացաւ: Բայց իր Փիլիպպոս բժշկին ձեռօք առողջանալէն ետեւ (Կիլիկիայի) Իսսոս քաղքին քով փճացուց (333) Դարեհի առաջնորդութեան տակ եղած Պարսից երկրորդ բանակը. Դարեհի կինն, աղջիկները, զօրաց մեծ մասն ու բանակը Աղեքսանդրի ձեռքն ինկան:

2. Ասորիքը՝ Փիւնիկէն (ուր Տիւրոս եօթը ամսուան պաշարմանէն ետեւ 332ին կործանեցաւ) ու Պաղեստինը նուաճելէն ետեւ, Եգիպտոս անցաւ. ուր սիրով ընդունուեցաւ: Հոս հիմնեց Աղեքսանդրիա քաղաքն, որ շուտ մը տիեզերական վաճառա-

*կանուԹեան կեդրոն եղաւ։ Անկից անցաւ Արամազդայ Ամմոնի տաճարը, ետքէն Ասիա դարձաւ ու Արբելայի ճակատումը (Գաւգամելա գեղին քով ուր 100.000 պարսիկք ինկան) ու Բաբելոնի, Շօշի եւ Պերսեպոլսոյ առումը՝ տէր եղաւ Պարսից բովանդակ պետուԹեանը 331 ին։ — Դարեհ, Աղեքսանդրի առջեւէն փախած ատեն՝ Բակտրիայի Բեսոս նախարարէն սպանուեցաւ։*

*Արեւելեան ծովուն հասնելու եւ բովանդակ Ասիան նուաճելու յուսով, Աղեքսանդր 327 ին Ինդոս գետն անցաւ։ Բայց երբ Հիւփասիս անցնելով՝ դէպ ի Գանգէս յառաջանալ կ'ուզէր, զօրաց մէջ ապստամբուԹիւն մ'եղաւ, որ զինք ետ դառնալու ստիպեց։ — Դարձն եղաւ, վայրենի Մալլիացւոց երկրին, Կեդրոսիայի (Պելուճիստանի) անապատին ու Կրմանի մէջէն. ուր անդիէն Նէարքոս՝ բանակին մէկ մասովը Ինդոս գետէն՝ Պարսից ծովածոցն անցաւ նաւերով։ Աղեքսանդր 323 ին Բաբելոնի մէջ մեռաւ այն միջոցին, որ նորանոր ձեռնարկուԹիւններու մեծամեծ պատրաստուԹիւններ կը տեսնէր։*

*Ստոյգ է, Աղեքսանդրի հիմնած մեծ պետուԹիւնը քայքայեցաւ իր մահուամբը, բայց իր ձեռքով յունական լեզուն, սովորուԹիւնները, արուեստներն ու գիտուԹիւնք Ասիա տարածուեցան։ Նոր հիմնուած քաղաքներուն պահակապան զօրքը, երկրին բնիկ ժողովրդոցը հետ խառնուելով՝ երեւան ելան հելլենական կրԹուԹիւնն ու լեզուն, զոր չկրցան անհետ ընել նոյն իսկ իրարու յաջորդող արիւնահեղ պատերազմները։*

## 20. Աղեքսանդրի յաջորդները 323-301.

1. Աղեքսանդր Մեծին ո՛վ յաջորդեց։ — 2. Ի՞նչ եղաւ Աղեքսանդրի դերդաստանը։ Ի՞նչպէս բաժնուեցաւ իր պետուԹիւնը։

*1. Որովհետեւ Մակեդոնական պետուԹեան Թագաժառանգը՝ Աղեքսանդր, իր հօրը մահուանէն ետքը ծնած էր, եւ տկարամիտ Փիլիպպոս Արիդէոս՝*

Մեծն Աղեքսանդրի եղբայրը, բովանդակ պետութեան վարչութիւնը չէր կրնար ընել, անոր համար զօրավարք՝ գաւառները մէջերնին բաժնեցին. իսկ Պերդիկկաս առաւ վերին խնամակալութիւնը: — Այոր մահուանէն ետեւ (321) Անտիպատրոս՝ Մակեդոնիայի ու Յունաստանի կուսակալը, տէրութեան կառավար դրուեցաւ: Ասիկայ մեռնելու ատեն (318) իրեն յաջորդ անուանեց զՊողիսպերքոն:

Անգին՝ Ասիայի մէջ, Եւմենէս՝ Կապպադովկիայի ու Փռիւգիայի կուսակալը, Աղեքսանդր կրտսերին իրաւանցը վրայ կը պատերազմէր՝ անկախութեան ետեւէն ինկող կուսակալաց հետ. սակայն քանի մը յաջող պատերազմներէ ետեւ (315ին) Պամփիւլիայի, Լիւկիայի ու Մեծ Փռիւգիայի կուսակալին՝ Անտիգոնոսի յանձնուեցաւ ու գլխատուեցաւ:

2. Այս եղած ժամանակ, Ողիմպիա՝ Աղեքսանդրի մայրը (317) զՓիլիպ. Արիդէոսն ու անոր կինը Եւրիդիկէն մէջտեղաց վերցընել տուաւ: Սակայն ինքն ալ (315) Կասանդրէն բռնուելով՝ սպանուեցաւ: Ասիկայ՝ 310ին Աղեքսանդրն ու անոր մայրը Ռոքսանէն ալ սպաննել տալէն ետեւ, բոլոր կուսակալք թագաւորի անուն առին: Այոր վրայ՝ Անտիգոնոսի դէմ դաշնակցեցան Կասանդր ու Սելեւկոս Ասորին, Լիւսիմաքոս Թրակացին ու Պտղոմէոս Եգիպտացին:

Իփսոսի (Փռիւգիայի) ճակատով (որուն մէջ Անտիգոնոս ինկաւ 301ին) արիւնահեղ պատերազմներուն վերջ տրուեցաւ: Սելեւկոս ու Լիւսիմաքոս մէջերնին բաժնեցին փոքր Ասիայի երկիրները: — Այսպէսով՝ Աղեքսանդրի պետութենէն, շատ մը փոքր իշխանութիւններէն զատ՝ ելան Մակեդոնական, Ասորական ու Եգիպտական տէրութիւնները.

որոնք ամէնը մինչեւ 31 Քրիստոսէ յառաջ՝ Հռոմայեցիներէն նուաճուեցան։

## 21. Մակեդոնիա եւ Յունաստան.

1. Ո՞վ առաւ Մակեդոնիան։ — 2. Ի՞նչպէս լմնցաւ Լամեան պատերազմը. Ետոլեան դաշնակցութիւնը։ — 3. Ի՞նչ վախճան ունեցաւ Յունաստան։

1. Մակեդոնիա՝ շատ անգամ իր իշխանները (Կասանդր, Դեմետրիոս Պողիորկետէս, Պիւռոս Եպիւռացին, Լիւսիմաքոս Թրակացին) փոխելէն ետեւ՝ Սելեւկոս Ասորւոյն ինկաւ։ — Գաղղիացւոց երեք աւերիչ արշաւանքներէն ետեւ՝ — 280-278 որ կէս մը Դեղփիսի քով ջարդուեցան, կէս մըն ալ Մեծ Փռիւգիա (Գաղատիա) դաղթականութիւն խաւրուեցան — Անտիգոնոս Գոնատաս* 278ին գահն ելաւ։ Իր ցեղն իշխեց Մակեդոնիայի վրայ մինչեւ 168՝ Յունաստանի հետ շարունակ կռուելով։

Անտիգոնոսի յաջորդներն եղան, Դեմետր Բ. 243. Անտիգոնոս Բ. 233. Փիլիպպոս Բ. 221 (Հռոմայեցւոց հետ պատերազմ. Կիւնոսկեփաղեսի ճակատը 197). Պերսէոս (179)։ Ասիկայ 168ին Պիւդնայի քով Հռոմայեցիներէն յաղթուեցաւ. Մակեդոնիա չորս հասարակապետութեանց բաժնուեցաւ եւ 148ին հռոմէական նահանգ եղաւ։

2. Աղեքսանդրի մահուան լուրին վրայ, ազատութեան պատերազմը պատերազմելու համար ոտք ելլող Յոյները՝ զարկին Լեւոսթենեսի առաջնորդութեամբ Անտիպատրոսն ու պաշարեցին զինք Լամիայի մէջ, որով պատերազմը Լամեան ըսուեցաւ։ Սակայն՝ երբ Անտիպատրոս Ասիայէն օգնութիւն ընդունեցաւ, Թեսսաղիայի Կրանոն քաղաքին քով յաղթուեցան ու մէկիկ մէկիկ Մակեդոնացւոց հպատակեցան։

Վերջապէս՝ հեղ մըն ալ Յոյնք անկախութիւննին ձեռք բերին Ետոլեան ու Աքայեան դաշնակցու-

թեամբ։ Ամենէն յառաջ Ետողացիք մակեդոնական թագաւորներուն սաստիկ հարստահարութենէն ճնշուած՝ 280ին զօրաւոր դաշնակցութիւն մը կազմեցին, որ 100 տարի մը իր ազատութիւնը պահեց։ Այս ժամանակն էր, որ Աղեքսանդրի ատեն ջնջուած աքայեան հին դաշնակցութիւնն ալ չորս քաղաքներու ձեռքով նորոգեցաւ։ Ասոր վախճանն էր, միացեալ զօրութեամբ, օտար յարձակմանց դէմ ինք զինք պաշտպանել։

3. Փիլիպպոս Բ. Մակեդոնացին՝ Կինոսկեփաղեսի քով 197ին յաղթուելէն ետեւ, Հռոմ՝ ամէն յունական տէրութիւններն ազատ հրատարակեց։ Բայց եւ այնպէս 167ին հազարի չափ երեւելի Աքայեցիք (ատոնց մէջ նաեւ Պողիբիոս պատմագիրը) Հռոմ գերի տարուեցան։ Աքայեցւոց մէկ ապըստամբութիւնն առիթ տուաւ 146ին Կորնթոսի կործանմանը։ — Յունաստան՝ Աքայիա անուամբ հռոմէական նահանգ մ'եղաւ (թ. 31)։

Յունաց քաղաքական ազատութիւնը՝ Փիլիպպ. Մակեդոնացիէն ետքը աւելի անհետացաւ։ Այս պատճառաւ էր որ Կղէոմենէս պարապ տեղ ջանաց Լիկուրգեան օրէնքները նորէն Սպարտա խօթել։ — Բայց Յունաց քաղաքական կեանքը շիջանելու ատեն, կը ծաղկէին անդին գեղեցիկ արուեստներն եւ ի մասնաւորի նկարչութիւնն ու ճարտարապետութիւնը։ — Աթէնք փիլիսոփայից ու գիտնականաց ժողովատեղին եղած էր։

## 22. Ասորիք ու Եգիպտոս.

1. Ի՞նչպէս կառավարեց Սելեւկոս։ Ի՞նչ կերպարանք առաւ տէրութիւնն իր յաջորդացն ատեն։ — 2. Ո՞ր միջոցին հասաւ երկրորդ եգիպտական տէրութիւնն իր ամենամեծ բարձրութեանը։ — 3. Ե՞րբ սկսաւ տէրութիւնն իյնալ. Ի՞նչ վիճակի մէջ էին այն միջոցին գիտութիւնք։

1. Սելեւկոս Ա. (312-280) իր ատենը՝ Եգէական ծովէն մինչեւ Ինդոս գետ տարածուող Ասորական պետութիւնը՝ 72 կուսակալութիւններու բաժնեց։ Բայց տէրութեան անկումն արդէն իր յա-

ջորդացն (Անտիոքոս Ա. Անտիոքոս Բ. Սելեւկոս Բ.) առեն սկսաւ. որոնք Եգիպտոսի, Պերգամոնի եւ Պարթեւաց դէմ անյաջող պատերազմներ ունեցան։ Անտիոքոս Գ. Մեծ (224-187) Հռոմայեցւոց դէմ ըրած պատերազմներովը (192-189)՝ կորսնցուց Փոքր Ասիան, մինչեւ Տաւրոս ու Հալիս։ Իր յաջորդաց առեն՝ անընդհատ ապստամբութիւններով, գահակալութեան կռիւներով եւ անգթութիւններով քայքայած տէրութիւնը՝ բուն Ասորիքի եւ Փիւնիկէի վրայ ամփոփուեցաւ։ Ասորւոց թագաւոր ընտրուած (85) Տիգրանը՝ հարկադրեցաւ 64ին երկիրը Հռոմայեցւոց տալ։

2. Եգիպտոս՝ ամենէն ծաղկեալ տէրութիւնն էր, երեք առաջին Պտղոմէոսներուն առեն, Աղեքսանդրիա մայրաքաղաքով՝ որ համաշխարհական վաճառականութեան եւ գիտութեան կեդրոնն եղած էր։

Պտղոմէոս Ա. Լագոս կամ Փրկիչ (323-284) աշխարհակալեց Փիւնիկէն, Հրէաստանը, Կիպրոսն ու Լիբիան։

Պտղոմէոս Բ. Փիլադելփոս (284-246) պատերազմ չըրաւ։ Բայց իր առենը Եգիպտոս ամենէն մեծ ծովային տէրութիւնն էր։ Առուտուրը, արուեստներն ու գիտութիւնք շատ ծաղկեալ վիճակի մէջ էին։

Պտղոմէոս Գ. Եւերգետէս (246-221), առանց արուեստներն ու գիտութիւններն երեսէ ձգելու, աշխարհակալեց Ասորիքը, Փոքր Ասիան, Արաբիան ու Եթովպիան։

3. Յաջորդ թագաւորներու ժամանակ պետութիւնը՝ բուն Եգիպտոսի վրայ ամփոփուեցաւ։ Այս միջոցիս խիստ տարածուած վաճառականութեան պատճառաւ, հարստութիւնն անհաւատալի կեր-

պով ածելով՝ ժողովուրդը վերջի աստիճանի զեղխութեան ու անառակութեան մէջ ընկղմեցաւ։ Գահակալութեան կռիւներն ու ազգականներն սպաննելը՝ նոյն իսկ այն ատեն չվերջացան, երբ Հռոմայեցիք (200էն վեր) երկիրն իրենց պաշտպանութեան տակ առին։ Անառակութեանց մէջ ինկած Պտղոմեանց վերջին թագուհին, Կղէոպատրա՝ Ակտիոնի ճակատէն ետեւ 30ին ինք զինքն սպաննեց. ու Եգիպտոս հռոմէական նահանգ եղաւ։

Երբ գիտութիւնք ու արուեստք Յունաստանի ժողովրդեան զբաղում ըլլալէն դադրեցան, սկսան ծաղկիլ յունական-մակեդոնական պետութեան մէջ՝ միայն իշխանաց խնամք տանելովը. որոնք բնական բաղձանքէ կամ փառասիրութենէ դրդուած՝ գիտնականներն ու արուեստագէտներն արքունիք կը բերէին, անոնց առատաձեռնութեամբ օգնական կ'ըլլային, մատենադարաններ կը հիմնէին եւ արուեստական ձեռագործներու ժողովածոյքներ կ'ընէին։ Ասոր մէջ նշանաւոր են Պերգամոնի, Մակեդոնիայի ու Ասորիքի թագաւորները։ — Սակայն՝ յունական մատենագրութեան գանձերը պահելու մէջ ամենամեծ արդիւնքն ունեցան առաջին Պտղոմեանները։ Պտղոմեանք հիմնեցին Աղեքսանդրիայի մէջ հին աշխարհքին ամենամեծ մատենադարանն ու մուսէոնը։ Ետքինն ունէր իր մէջն աշխարհքիս առաջին գիտնականները, բանաստեղծները, բժիշկներն ու մաթեմատիկոսները. որոնք՝ առատաձեռն թագաւորներուն շնորհիւն ազատ կեանք կը վարէին, իրենք զիրենք բոլորովին ուսման նուիրել կարենալու համար։

## Գ. ՀԱՏՈՒԱԾ

## Պատմութիւն Հռոմայեցւոց

### 23. Հին Իտալիայի վրայ երկրագրական տեսութիւն մը.

1. Քանի՞ մաս կը բաժնուէր Իտալիա։ — 2. Քանի՞ շրջանի կրնանք բաժնել Հռոմայեցւոց պատմութիւնը։

Իտալիա երեք մաս ունէր.

*Ա. Հիւսիսային Իտալիա կամ Գաղղիա յայսկոյս Ալպեան* (Gallia cisalpina) պտղաբեր դաշտավայրը։ — Ասիկայ կը պարունակէր իր մէջը.

1. Պադոսէ անդիէ գաւառները (Transpadana). գլխաւոր քաղաքներն են. Պադաւիոն, Վերոնա, Մանտուա ու Մեդիոլանոն։

2. Պադոսէ ասդիէ գաւառները (Cispadana). գլխաւոր քաղաքներն են. Ռաւեննա, Բոնոնիա, Պղակենտիա։

3. Լիգուրիա, Գենուա, Վերկելլէ գլխաւոր քաղաքներով.

*Բ. Միջին Իտալիա.* Ռուբիկոն ու Փրէնտոն գետերուն մէջ։ — Ասոր արեւմտեան դին են.

1. Ետրուրիա՝ պտղաբեր դաշտավայրը, 12 տրուսկեան կամ ետրուսկեան քաղաքներով։ Ասոնք երեւելի են իրենց շատ հին քաղաքակրթութեամբը, առեւտրովը ու ծովագնացութեամբը։

2. Լատիոն, լատին բնակիչներով. գլխաւոր քաղաքներն են. Հռոմ՝ Տիբերիսի ձախ դին, եօթը բլրոց վրայ. Ալբալոնգա։

3. Կամպանիա. Սամնիացի բնակիչներով բերրի դաշտավայր մը. գլխաւոր քաղաքներն են. Կա-

պուա, Նէապոլիս, Հերկուլանոն, Պոմպէի, Նոլա: — Արեւելեան կողմն էին

4. Ումբրիա. Հարթ ու քիչ մշակուած:

5. Պիկենոն. բերրի դաշտավայր մը. Անկոնա գլխաւոր քաղքով:

6. Սամնիոն. լեռնային է. գլխաւոր քաղաքն էր, Բենեւենտ:

*Գ. Հարաւային Իտալիա կամ Մեծ Յունաստան:* — Ասոր արեւմտեան դին էին.

1. Լուկանիա. Սիբարիս ու Հերակլէա գլխաւոր քաղաքներով:

2. Բրուտիոն (Հիմայ Գալապրիա). Կրոտոն ու Ռեգիոն գլխաւոր քաղաքներով: — Դէպ ի արեւելք են

3. Ապուլիա պտղաբեր դաշտավայրը. գլխաւոր քաղաքներն են. Կաննէ եւ Ասկուղոն:

4. Կալաբրիա (Հիմայ Աբուլիա). Բրունդուսիոն ու Տարենտոն գլխաւոր քաղաքներով:

2. Հռոմայեցւոց պատմութիւնը հինգ գլխաւոր շրջաններու կը բաժնուի. որ են:

Ա. Հռոմայ հիմնարկութենէն, մինչեւ թագաւորութեան վերնալը. 753-509 Քրիստոսէ յառաջ:

Բ. Թագաւորութեան վերնալէն՝ մինչեւ Պունիկեան պատերազմները. 509- 264:

Գ. Պունիկեան պատերազմներէն՝ մինչեւ Գրակքեանց շփոթութիւնները. 264-133:

Դ. Գրակքեանց շփոթութիւններէն, մինչեւ Աւգոստոս. 133-30. ու

Ե. Աւգոստոսէն մինչեւ արեւմ. Հռոմէական պետութեան կործանումը. 30էն Ք. Յ.-476 Ք. Ե:

# Ա. ՇՐՋԱՆ

*Հռոմայ հիմնարկութենէն մինչեւ թագաւորութեան վերնալը. 753-509 Ք. Ց.*

## 24. Հռոմ Թագաւորաց տակ (Հռոմէական զրոյ-ցաց համեմատ).

1. Ի՞նչպէս ու երբ կ՚իյնայ Հռոմայ հիմնարկութիւնը: — 2. Ի՞նչպէս թագաւորեց Հռոմուլոս. Որո՞նք են իր յաջորդները: — 3. Ո՞վ է Տարկուինիոս Պրիսկոս. Վերջին թագաւորն ո՞վ եղաւ: — 4. Ի՞նչչափ ստուգութիւն ունին զրոյցները. Ի՞նչ բաժանում ունէր ժողովուրդը. Ուսկից կ՚ընտրուէր թագաւորը. Ի՞նչպէս կը բաժնուէր բանակը: — 5. Ի՞նչ տեսակ էր Հռոմայեցւոց կրօնը:

1. Զրուցաց նայելով՝ տրովական պատերազմէն քիչ մը ետքը, Ասկանիոսէն հիմնուած Ալբալոնգա քաղաքը՝ Հռոմայ հիմնարկութեան սկիզբն եղած է: Ամուլիոս, Ալբայի թագաւորը, մերժեց իր Նումիտոր եղբայրն՝ որուն, Վեստայի նուիրուած Ռէա-Սիլուիա դուստրը՝ Ռոմուլոս ու Ռեմոս երկուորեակները ծնաւ: Ասոնք Տիբերիս նետուելով՝ բայց փաւստուլոսէն ազատելով՝ հովիւներու մէջ մեծցան. պապերնին, Նումիտորը՝ նորէն գահ հանեցին եւ պալատինեան բլրին վրայ Հռոմ քաղաքը հիմնեցին 753ին:

2. Ռոմուլոս (753) Ռեմոսն սպաննելէն ետեւ՝ առանձին թագաւորեց. ընդարձակեց քաղաքը՝ զանիկայ ամէն կերպ յանցաւորաց ապաստանարան ընելով եւ Սաբինացիները — անոնց աղջիկները յափշտակելէն ետեւ — մէջն առնելով: Ռոմուլոս տէրութիւնը կարգաւորեց օրէնքներով. ծերերու խորհրդարան մը (ծերակոյտ) դրաւ, որուն անդամներն էին ի սկզբան հին լատինական հասարակութենէն 100 ծերեր, որոնց վրայ աւելցան ետքէն Սաբինացիներէն ալ 100 ծեր: Ռոմուլոս՝ իր հրաշքներով զարդարուած մահուանէն ետեւ, իբրեւ Կուիրինոս աստուած պաշտուեցաւ:

**Նումա Պոմպիլիոս** Սաբինացին (715) յօրինեց (իր ամուսնոյն Եգերիա դիցուհւոյն խորհրդովը) կրօնական սահմանադրութիւն մը, դրաւ քուրմեր ու շինեց մեհեաններ։ — Անոր յաջորդը՝

**Տուլլոս Ոստիլիոս** (672) Որատեանց ու Կուրիատեանց կռուէն ետեւ, առաւ ու կործանեց Ալբալոնգան, Ալբացիները կեղխեան բլուրը բնակեցուց. Հռոմ եղաւ գլուխ լատինական դաշնակցութեան։

**Անկոս Մարկիոս** (640) առաւ խել մը լատինական քաղաքներ, որոնց ժողովուրդը պետութեան հետ միացուց իբրեւ քաղաքացի, բայց առանց քուէի իրաւունք ունենալու։ Այսպէս Անկոս եղաւ հիմնիչ հռոմէական ռամկին (plebs)։ Հիմ դրաւ Ոստիայի նաւահանգստին, կանգնեց սիւնակամուրջը (pons sublicius) Տիբերիսի վրայ ու ամրացուց Յանիկուլոնը։

3. **Տարկուինիոս Պրիսկոս** Ետրուրացին (616), Կորնթոսէն գաղթած յոյնի մը որդին, իշխանութեան հասնելով՝ նուաճեց բոլորովին Լատինները, եւ Ետրուսկացւոց դէմ յաջող պատերազմներ ըրաւ։ Ծերակուտի անդամները 300ի հանեց. իսկ ասպետացը 600ի՝ ռամկին երեւելիները (իբրեւ minores gentes) պատրկութեան բարձրացընելով։ Տարկուինիոս շատ շինութիւններ ըրաւ. եւ սպանուեցաւ Անկոսի որդիներէն։

**Սերվիոս Տուլլիոս** (578, Տարկուինիոսի փեսան, տուաւ տէրութեան նոր սահմանադրութիւն մը, որով հարուստ ռամիկը՝ վարչութեան մէջ մաս ընդունեցաւ։ Եսկուիլինեան եւ վիմինալեան բլուրներն քաղաքին պարսպին մէջ առաւ եւ զՀռոմ՝ լատինական քաղաքներու դաշնակցութեան գլուխ ըրաւ։

**Տարկուինիոս Ամբարտաւան** (534) Սերուիոս Տուլլիոսն սպաննեց ու բռնաւորական վարչու-

թեամբն ինք զինք ժողովրդեան ատելի ըրաւ։ Թէպէտ նուաճեց Տարկուինիոս Վոլսկացիները — հակառակորդ Գաբի քաղաքը՝ նենգութեամբ առնուեցաւ իր Սեքստոս որդիէն — բայց ետքինը, Լուկրետիայի բռնաբարութիւն ընելով՝ Տարկուինիոս գերդաստանովը Հռոմէն վռնտուեցաւ Բրուտոսի ու Կոլլատինոսի ձեռօք 509ին։

4. Հռոմայեցի պատմագրաց, Հռոմայ հիմնարկութեանը եւ եօթը թագաւորաց ատեն մնալուն պատմութիւնը բոլորովին զրուցաց կը վերաբերի։ — Հռոմ՝ անծանօթ ժամանակ ու անծանօթ հանգամանքներով երեւան ելած կ'երեւայ։ Այսչափս ստոյգ է, որ հին ատենները՝ Տիբերիսի քով, լատինական գաղթականութիւն մը կար, որ հաւանականաբար Լատիոնի վաճառաց դուռն էր։ Կարելի է թէ ասիկայ ի սկզբան նահապետական թագաւորներ ունեցած ըլլայ, բայց ետքէն ասոնց տեղ ցկեանս իշխանութիւն ունեցող կառավարներ (reges) յաջորդած ըլլան, որոնք Հռոմի մէջ գերագոյն վարչութիւն ի գործ կը դնէին։ Բայց զրուցաց մեզի աւանդած թագաւորաց ոչ թիւը, ոչ անոնց անունը եւ ոչ ալ ամէն մէկուն ընծայուած գործքերը պատմական ստուգութիւն ունին։

Հռոմայ ամենէն հին հասարակութիւնն երեք ցեղերու բաժնուած էր. Ռամնեանք, Տիտեանք եւ Լուկերեանք։ Ասոնց ամէն մէկը դարձեալ կը բաժնուէր 10 կուրիաներու, ամէն մէկ կուրիան ալ 10 ազգատոհմի։ Այս երեք ցեղերուն անդամները՝ որոնք Պատրիկ կը կոչուէին, կը կազմէին Հռոմայ ժողովուրդը կամ նիզակակիրները, որոնք կուրիաներու ժողովոյն մէջ օրէնսդիր իշխանութիւնն ունէին եւ ի սկզբան մի միայն երկրատէրներն էին։ Ասոնցմէ կ'ընտրէր թագաւորը ցկեանս ծերակուտի անդամները (senatores)։

Ռամիկը դեռ երեւան չելած, կային՝ ազատ ու իրաւանց տէր չեղող պաշտպանեալներ։ Ասոնք պէտք էին պատրիկ պաշտպան մ'ունենալ, որ ամէն իրաւանց եւ քաղաքական իրողութեանց մէջ իրենց ներկայացուցիչն ըլլար։ Ռամիկն ազատ եւ ըստ մասին ունեւոր էր. իրաւունք ունէր երկիր գնելու եւ ստանալու. բայց իրաւունք չունէր ծերակուտի անդամ ընտրելու եւ ոչ ալ ընտրուելու (ius suffragii). եւ չէր կրնար պատրիկներու հետ վաւերաբար ամուսնանալ (ius connubii)։ Բայց ուրիշ կողմանէ տէրութեան ամէն ծանրաբեռնութեանց մասնակից էր։

Թագաւորը պատրիկներէն ընտրուած բարձրագոյն պաշտօնեայ մըն էր, որ իբրեւ վերին դատաւոր՝ կամ

անձամբ դատաստան կ'ընէր եւ կամ դատաւորներ կը դնէր, ժողովրդեան ժողովը կը կանչէր եւ իբրեւ քրմապետ որոշ զոհեր կը մատուցանէր ու պատերազմի ատեն վերին հրամանատարութիւնն ունէր։

Ռոմիկը, Սէրուիանեան սահմանադրութեամբ, երկրատէր ըլլալուն պէս, սկսաւ տէրութեան վարչութեան մէջ ալ մաս ունենալ։ Վասն զի ամբողջ հռոմէական երկիրը՝ 30 ցեղի (tribus) եւ բոլոր ժողովուրդը՝ 193 հարիւրեակներու (centuria) բաժնուեցաւ։ Ամէն մէկ հարիւրեակը՝ ժողովրդեան ժողովոյն մէջ ձայն մ'ունէր. եւ պատերազմի ատեն՝ առանձին բաժին մը կը կազմէր։

ա. Հեծելազօրը (equites) 18 հարիւրեակի բաժնուած էր։ Վեցը՝ հին, հարազատ պատրիկներուն ցեղէն էր, որոնց վրայ աւելցան աս ատենները 12 հարիւրեակ՝ քաղաքացւոց երեւելիներէն (primores)։

բ. Ոտանաւորը (pedites) բաժնուած էր հինգ դասու եւ 170 հարիւրեակի։ Առաջին դասը կը պարունակէր 80 հարիւրեակ (սաղաւարտով, վահանով, զրահով ու բարձապանով) լաւ զինաւորուած մարդիկ։ Երկրորդ դասն ունէր 20 հարիւրեակ, եւ կը ծառայէր առանց զրահի։ Երրորդը՝ 20 հարիւրեակ, եւ կը ծառայէր առանց զրահի ու առանց բարձապանի։ Չորրորդը՝ 20 հարիւրեակ թեթեւազէն ու Հինգերորդը՝ 30 հարիւրեակ պարսաւոր։

գ. Մնացած ամէն քաղաքացիները կը կոչուէին անինչ (proletarii)։ Ասոնք՝ հինգ հարիւրեակի բաժնուած էին, եւ կը ծառայէին իբրեւ գործավար (fabri), խաղացող (tubicines եւ carnicines) եւ այլն։

Ժողոված հարիւրեակները կը կազմէին հարիւրեկաց ժողովները (comitia centuriata)։ Ասոնք՝ ի սկզբան՝ թագաւորներէն ու ետքէն բդեշխներէն կը կանչուէին. ու ծերակուտին ըրած ամէն առաջարկութիւններուն (պատերազմի, խաղաղութեան եւ այլն) վրայ որոշում կ'ընէին։ Այս ժողովներուն մէջ կը յայտնուէր բոլոր ժողովրդեան վեհապետութիւնը, որ այս ատենները՝ պատրիկներէ ու ռամկէ կը բաղկանար, եւ յառաջագոյն Կուրիաներու ժողովներուն իրաւունքներն, ասոր անցան։

5. Հռոմայեցիք՝ թէ իրենց դրացիներուն ու թէ ետքէն իրենցմէ նուաճուած ազգերուն քով գտած ամէն աստուածները կը պաշտէին. որովհետեւ ամենուն վրայ զօրութիւն մը կը ճանչնային, զոր զոհերով պէտք էին շահիլ։ Անոր համար էր, որ իրենց աստուածներուն թիւը յանսահմանս կը շատնար։ Այսպէս՝ օրինակի աղագաւ, առին Լատիններէն Յանուս (Արեգական աստուածը). տարւոյն՝ պատերազմի ու խաղաղութեան առաջնորդը. Դիանան (Լուսնի աստուածուհին). Սատուռնուս, (պտղաբեր երկիրը) ու Վեստան (հրոյ աստուածուհին)։ — Սաբինացիներէն՝ Մարս (Արէս՝ պատերազմի աստուածը), Յուպիտեր (Արամազդը՝ տէրութեան աստուածը) եւ Յունոն

(ամուսնութեան աստուածուհին). Հաւատքը (fides), Բախտը (fortuna) եւ այլն։ — Տուսկիացիներէն՝ Մինեւրվան (Աթենասը՝ պատերազմի ու քաղաքական գործառնութեանց աստուածուհին). տնային ու գերդաստանի աստուածներն (lares եւ penates) եւ այլն։ Վեհ արարողութիւններով ճոխացած աստուածային պաշտամունքը՝ Նումա կարգի դրաւ։ Աստուածային պաշտամանց վրայ հսկողներն էին քուրմերը, որոնց գլխաւորն էր Մեծ քրմապետը (pontifex maximus)։ Սալեանք՝ Արէսի քուրմերն էին։ Վեստեանք՝ Վեստայի տաճարին մէջ նուիրական հուրն անշէջ պիտ՚որ պահէին։ Երեւելի դէպքերու մէջ աստուածոց կամքն իմանալու համար, բարձրագոյն պաշտօնէից ձեռօք ըղձութիւններ (auspicies) կ՚ապսպրուէին. եւ հաւահմայք (augures)՝ թռչնոց սաւառնելէն, կարկաչելէն եւ ուտելէն, իսկ լերդահմայք (haruspices)՝ զոհուած կենդանիներուն ընդերքներէն գուշակութիւններ կ՚ընէին։ Հարկաւորութեան ատեն՝ կը հարցուէին նաեւ պատգամներն ու սիբիլեան գրքերը։

## ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### Թագաւորութեան վերնալէն մինչեւ պունիկեան պատերազմները 509—264 Ք. Ե.։

### 25. Հռոմ՝ հասարակապետութիւն.

1. Ի՛նչպէս երեւան ելաւ Հռոմայ հասարակապետութիւնը. ի՛նչ հետեւութիւն ունեցաւ Պորսեննայի արշաւանքը։ — 2. Ռամիկն ինչո՞ւ նուիրական լեռն ելաւ։ — 3. Կորիոլանոս ինչո՞ւ աքսորուեցաւ. ի՛նչ է պատրիկին ու ռամիկին մէջի կռուին շարունակուելուն պատճառը։ — 4. Ի՛նչ է երկոտասան տախտակաց օրէնքը. ինչպէս միացան պատրիկն ու ռամիկը։

1. Տարկուինիոսի աքսորուելէն ետեւ, թագաւորի տեղ, տարուան մը համար երկու բդեշխ ընտրուեցաւ, պրետոր անուամբ։ Բրուտոս ու Կոլլատինոս եղան առաջին բդեշխները։ Բրուտոս՝ ժողովրդեան երդում ընել տուաւ, ո՛ր երբեք թագաւոր յանձն չառնելու։ Բայց եւ այնպէս Տարկուինիոսի կողմնակիցները՝ նոր սահմանադրութեան դէմ, դաւակցութիւն մը հանելու փորձ փորձեցին։ Բանը յայտնուեցաւ. ու Բրուտոս՝ դաւակցութեան մասնակից եղող որդիներն ալ գլխատել տուաւ։ Վկայեցէք որ զՏարկուինիոս՝ բռնութեամբ Հռոմայ վրայ թագա-

ուրեցընել կ՚ուզէին, Արսիա անտառին քով յաղթուեցան, ուր Բրուտոս ինկաւ։

Հռոմէական պետութեան՝ այս շփոթութիւնները՝ Ետրուսկեան զօրաւոր դաշնակցութիւնն, որուն գլուխն անցած էր Պորսենա, յօգուտ ուզեց գործածել եւ զՀռոմ իրեն հպատակեցընել։ Թէպէտ Ովրատիոս Կոկլէս եւ Մուկիոս Սկեւողա զարմանալի քաջագործութիւններ ըրին. այսու ամենայնիւ Հռոմայեցիք հարկադրեցան իրենց երկրին մէկ մասը Պորսենայի յանձնել, պատանդներ տալ ու խոստանալ անկէ ետքը, երկաթը՝ միայն արօրի գործածել։

Այս միջոցին հասաւ Ռամիկը՝ Վալերիոս Պուբլիկոլայի ձեռօք, այն իրաւանց՝ որով ատենակալաց ժողովոյն որոշմանցը դէմ, հարիւրեականներու ժողովին կրնար բողոքել։

2. Պատրիկներուն խիստ հարստահարութիւններն եւ արշաւանքներէն ու պատերազմի տուրքերէն յառաջ եկած ժողովրդեան սաստիկ աղքատութիւնը ռամկին 494 ին՝ Նուիրական լեռն ելլելու պատճառ տուաւ (Մենենիոս Ագրիպպա)։ Ասոր հետեւութիւնն ան եղաւ, որ տարուէ տարի հինգ (ետքէն 10) անբռնաբարելի ցեղապետ ընտրուեցաւ։ Ասոնք՝ իրենց արգելիչ ձայնովը (veto) ծերակուտին՝ ժողովրդեան վնասակար ամէն որոշումները խափանել եւ քաղաքացիները պատրիկներու բռնութեանցը դէմ պաշտպանել կրնային։

3. Երբ Մարկիոս Կորիոլանոս, սովի մը ատեն ժողովրդեան՝ կռուով ստացած իրաւունքներն յափըշտակել ուզեց, տեղական ժողովը (comitia tributa) զինք 491 ին աքսորք խրկեց։ Թէպէտ դառնացած պատրիկը՝ Հռոմի վրայ բերաւ վոլսկեան բանակ մը, բայց մօրը թախանձանօքը քաղքէն հեռանալու ստիպուեցաւ։

Պատրիկներու եւ ռամկին մէջ եղած կռիւը՝ տեւեց մինչեւ 300։ — Ագարակային օրէնքը (486), որուն համեմատ, պատերազմի մէջ առնուած երկիրներն՝ աղքատ ժողովրդեան պիտի բաժնուէր, չընդունուեցաւ։ Օրէնքը հնարող Կասսիոսը՝ պատրիկներէն ամբաստանուելով՝ գլխատուեցաւ։ Պուբլիոս Վոլէրոյի օրէնքը (473, որուն զօրութեամբ, ռամկին պաշտօնեաներուն ընտրութիւնը՝ ցեղական ժողովքին մէջ պիտի ըլլար,) երկու կարգերու մէջ եղած անմիաբանութիւնն աւելի շատցուց. այնպէս որ նոյն իսկ Կուինտիոս Կինկինատոս բդեշխին ու հրամանատարը (458) չփոթութիւնները չկրցաւ խաղաղցընել։

4. Տերենտիլոս Արսա տրիբունին առաջարկելովը, Յունաստան դեսպանութիւն մը խրկելէն ետեւ՝ որոշուեցաւ որ տասը հոգի ընտրուին, գրաւոր օրէնք մը յօրինելու։ Տասնպետները՝ շինեցին 12 տախտակաց օրէնքը. բայց որովհետեւ զեղծան իրենց իշխանութեամբը՝ 449ին պաշտօննէն վար առնուեցան։

Ասկէ ետքը ռամիկը՝ Երկոտասան տախտակաց մէջ պատրիկներուն վերապահուած ամէն իրաւունքներուն, կ'ուզէր մասնակից ըլլալ։ Քիչ մը ետքը (448) Վալերիոս եւ Ովրատիոս բդեշխներուն առաջարկելովը հաստատուեցաւ՝ որ ցեղական ժողովքին որոշումները պարտաւորիչ ըլլան նաեւ պատրիկներուն համար։ Ասոր վրայ 444ին օրէնքովը՝ պատրիկներուն եւ քաղաքացիներուն՝ իրարու հետ ամուսնանալու հրաման տրուեցաւ։ Հիւպատոսութեան մէջ մասն ունենալու իրաւունքը, զոր կը պահանջէին քաղաքացիք, հազիւ 80 տարուան կռուէ ետքը կրցան վաստըկիլ։

## 26. Պատերազմ Գաղղիացւոց ու Սամնիացւոց հետ 390-290.

1. Ե՞րբ եղաւ գաղղիական պատերազմը. — 2. Ո՞ր միջոցին հասաւ ռամիկը հիւպատոսութեան իրաւունքին։ — 3. Ի՞նչ է սամնիական պատերազմին պատճառը. Ի՞նչպէս լմնցաւ։ — 4. Ի՞նչ բաժանում ունէր հռոմէական բանակն այս միջոցին։

1. Վէյի քաղաքը 396ին տասնամեայ պաշարմանէ մ'ետեւ, (որուն մէջ առաջին անգամ կը հանդիպինք ձմեռնային պատերազմին եւ ռոճկաւոր

զօրաց (Թոշակին,) Կամիլլոսի ձեռքով առնուեցաւ։ Երբ ասոր վրայ, Գաղղիացիք Բրեննոսի առաջնորդութեամբ՝ Հռոմայ վրայ քալեցին ու 389ին Ալլիայի քով յաղթեցին, հարկ եղաւ որ Կապիտոլիոնն ազատող Մանլիոսը՝ հաշտութիւնն իրենցմէ ստակով գնէ։ Կամիլլոս՝ իր աքսորանաց մէջ իշխանապետ անուանուելէն ետեւ, կ՚ըսուի թէ դաշինքն աւրած ու Գաղղիացիքը զարկած ըլլայ։ — Իշխանապետը՝ Հռոմայ երկրորդ հիմնադիրն եղաւ, ինչու որ Վէյի գաղթել ուզող ժողովուրդն իր դիտաւորութենէն ետ կեցուց։

2. Պատրիկին ու ռամկին երկարատեւ կռիւներէն ետքը՝ հասաւ վերջապէս ետքինը հիւպատոսութեան իրաւունքին ալ (366)։ Սակայն դատաւորական պաշտօնը (պատրիկեան) պրետորի մը, իսկ հասարակաց շինութեանց եւ խաղուց վրայ հսկողութիւնը՝ երկու շինուածապետներու (aediles curules) յանձնուեցաւ։

Որոշուեցաւ նաեւ, որ ոչ ոք 500 արտավարէն աւելի երկիր ունենայ. եւ արդէն վճարուած շահերը՝ պարտաւոր դրամագլխէն վար առնուին։ — Մինչեւ 300 հասաւ ռամիկը նաեւ շինուածապետութեան, հրամանապետութեան (dictatur), համարակալութեան, պրետորութեան (դատաւորութեան) եւ վերջապէս քրմապետութեան. որով երկու կարգերուն մէջ կատարեալ հաւասարութիւն մնաց։ Ասով ազնուականն ու ռամիկն ի մի ձուլուեցան։

3. Հռոմայ ամենէն մեծ զօրութեան ժամանակը (342-290), որ միջոցին իր ներքին միութիւնը գտած ըլլալով՝ իւր ամբողջ զօրութիւնն առ արտաքս ցուցընել կարող էր, հռոմէական իշխանութեան դէմ ելան Սամնիացիք, Լատինացիք, Կամպանիացիք, Ետրուսկացիք ու Գաղղիացիք։

**Առաջին Սամնիական պատերազմին մէջ** (342-

340) *Վաղերիոս Կորվոսի առաջնորդութեամբը՝ յաղթեցին Հռոմայեցիք Գաւրոս լերան քով։ — Ոտք ելած Լատինացւոց* (339-337) *որ Հռոմայ քաղաքացւոց հետ հաւասար իրաւունք ունենալ կը պահանջէին, յաղթեց Մանլիոս Տորկուատոս Վեսուվի եւ Տրիփանոնի քով։ Ասոր վրայ լատինական դաշնակցութիւնը լուծուեցաւ, եւ քանի մը քաղաքներ (ինչպէս Կապուա ու Կումէ) հռոմէական քաղաքացւոյ իրաւունք ստացան։*

**Երկրորդ Սամնիտական պատերազմը** (325-304) *լմընցաւ, երբ* — 321*ին հռոմէական լեգէոն մը, Կաւդինեան կիրճին մէջ՝ Պոնտիոս Սամնիացւոյն լծին տակէն անցնելէն ետեւ — Պապիրիոս Կուրսոր՝ Սամնիացիքը նուաճեց։*

**Երրորդ Սամնիտական պատերազմին մէջ** (298-290) *Փաբիոս Մաքսիմոս* 295*ին՝ զարկաւ Սենտինոնի քով միացեալ Սամնիացիները, Գաղղիացիները, Ետրուսկացիներն եւ Ումբրիացիները։ Եւ վերջապէս Կուրիոս Դենտատոս ստիպեց Սամնիացիքը՝ Հռոմայ գլխաւորութիւնը ճանչնալու։ — Այսպէսով Հռոմայեցիք տիրեցին Միջին Իտալիայի։*

4. *Սամնիական պատերազմներուն ատենը՝ հռոմէական բանակն այսպէս կը կազմուէր։ Ամէն հիւպատոս կ'առաջնորդէր երկու լեգէոնի, որ է ոկզբան* 3000, *Պունիկեան պատերազմներուն ատեն՝* 6000 *էն աւելի, իսկ Կեսարու ատեն* 4200 *մարդ ունէր։ Լեգէոնն ունէր* 10 *բաժին* (cohortes), *ամէն մէկ բաժինը* 3 *դասակ* (manipulus), *դասակն ալ* 2 *հարիւրեակ։ Գործածուած զէնքերն էին՝ սաղաւարտ, զրահ, վահան, նիզակ ու սուր։ Ասկից զատ, ամէն զինուոր կը կրէր հետը բանակատեղւոյ համար հարկաւոր եղած կահքը։ Ամէն մէկ լեգէոն ունէր՝* 300 *թեթեւազէն* (velites, *մեծաւ մասամբ պարսաւոր ու աղեղնաւոր) ու* 300 *ձիաւոր զօրական։ Լեգէոններու մէջ, միայն հռոմէական քաղաքացիներ կրնային մտնել։ Ասոնք* 16*երորդ արշաւանքովը պատերազմի ծառայութենէն ազատ կ'ըլլային ու* 10*երորդ արշաւանքէն ետքը պաշտօնի մը կրնային հետամուտ ըլլալ։*

## 27. Պատերազմ Պիւռոսի հետ 280-275.

1. Ինչո՞ւ համար Հռոմայեցիք Պիւռոսի հետ պատերազմի բռնուեցան։ — 2. Ի՞նչ օրէնք ընդունեցան հարկատու երկիրները։ — 3. Ի՞նչ կերպարանք առած էր այս միջոցին հռոմէական սահմանադրութիւնը։

1. Տարենտացիները Հռոմայեցւոց նախատինք մը հասցուցած ըլլալով՝ երբ ասոնք վրանին յարձակեցան, Տարենտացիք իրենց օգնութեան կանչեցին Պիւռոս Եպիրացին։ Ասիկայ յունական պատերազմի ճարտարութեամբ ու փղերու օգնութեամբ՝ Հռոմայեցիներուն յաղթեց, 280ին՝ Հերակղէայի (Փաբրիկիոս) ու 279ին՝ Ասկուղոնի քով. պատերազմեցաւ (278-276) Սիկիլիայի մէջ Կարքեդոնացւոց դէմ. եւ 275ին Կուրիոս Դենտատոսէն Մալեւենտոնի (Բենեւենտի) քով յաղթուեցաւ։ Տարենտոն հարկադրեցաւ խոնարհիլ Հռոմայեցւոց՝ որոնք կարճատեւ պատերազմէ մ'ետեւ, բոլոր Իտալիայի տէր եղան։

2. Նուաճուած երկիրներէն ընդունեցան՝

ա. Քանի մը քաղաքներ, հռոմէական քաղաքացւոյ լիուլի իրաւունք (municipia cum suffragio).

բ. Ուրիշ քաղաքներ՝ հռոմէական քաղաքացւոյ իրաւունք, բայց ոչ ատենակալութիւն (civitates sine suffragio)։ Սակայն պատերազմի ծառայութեան եւ տուրք տալու պարտական էին։

գ. Հռոմէն հաստատուած գաղթականութիւններն յատուկ օրէնք ու սահմանադրութիւն մ'ընդունեցան։ Ասոնք՝ տուրք տալէն ու պատերազմի ծառայութենէն ազատ էին։

դ. Մեծաւ մասամբ՝ հարկէ ազատ դաշնակիցները պահեցին իրենց հին սահմանադրութիւնը. բայց հռոմէական բանակին մէջ իբրեւ դաշնակից ծառայելու պարտական էին։

ե. Գաւառները տարուէ տարի ընտրուող բդեշխներու փոխանորդներով (proconsules) կը կառավարուէին։ Ասոնք՝ քիչ անգամ իրենց սեպհական սահմանադրութիւնը կը պահէին, եւ սովորաբար պարտական էին օգնական զօրք (auxiliares) եւ հարկ տալ։

3. Հռոմէական սահմանադրութիւնը 300ին, բոլորովին կերպարանաւորուած էր։ Ժողովրդեան ձեռքն էր

օրէնսդիր իշխանութիւնն եւ առենակալաց ընտրութիւնը։ Պատերազմ, խաղաղութիւն, դաշինք դնել եւ բարձրագոյն առենակալներ ընտրելը՝ կ'որոշէր հարիւրեակներու ժողովը, ծերակուտի առաջարկութեամբը։ Տրիբուններուն, գանձապետներուն եւ ստորին առենակալներուն ընտրութիւնը՝ կ'ըլլար տեղական ժողովին մէջ։ Նոր օրէնքի մը վրայ, երկու ժողովն ալ կրնար քուէ ձգել։ Ծերակուտին գործքն էր, տէրութեան իրողութեանցը վրայ խորհիլ, ելեւմուտքը հոգալ եւ հպատակ ազգերուն գործքերը նայիլ։ Գլխաւոր ու սովորական առենակալներն էին. 1. Երկու հիւպատոսներն ասոնց — առջեւը 12 սակրաւորներ (lictores) խուրձ կը տանէին — որ ծերակոյտը խորհրդի կը կանչէին, ժողովրդեան ժողովներուն մէջ գահերիցութիւնն ունէին եւ զօրաց հրամանատարութիւն կ'ընէին։ 2. Պրետորներուն կը վերաբերէր դատաստանական իրերը հոգալ։ 3. Քննիչները (censores) կը կտրէին քաղաքացւոց ստացուածոցը գինը, կ'ամբողջացընէին ծերակուտին թիւը եւ կը հսկէին բարոյից վրայ։ 4. Գանձապետները (questores) կը հոգային հասարակաց գանձը։ 5. Շինուածապետներուն (ædiles) էր՝ հսկել հասարակաց շինութեանց, խաղուց վրայ եւ այլն։ 6. Տրիբուններուն պատիւը՝ ժողովրդեան ժողովը կանչելու եւ օրէնքներ առաջարկելու իրաւունքովը շատ մեծ էր։ Այս ամէն առենակալներն իրենց գործոցը վրայօք պատասխանատուութեան կրնային կանչուիլ, եւ բաց ի քննիչներէն, մէկ տարուան միայն կ'ընտրուէին։ — Արտաքոյ կարգի առենակալներուն ամենէն նշանաւորն էր Հրամանապետը (dictator), զոր կ'ընտրէր հիւպատոսը՝ վեց ամսուան համար։ Ասիկայ ալ իրեն ձիաւորաց առաջնորդ (magister equitum) անունով օգնական մը կ'ընտրէր։ Հրամանապետն իր անձին վրայ ունէր ամենամեծ իշխանութիւնը։ — Տէրութեան եկամուտներն էին, հռոմէական քաղաքացւոց հարկերը (գլխահարկ, ստացուածոց տուրք), վարձահարկը, նաւահանգստի տուրքը, պատերազմի աւարը եւ այլն,

Հռոմայեցւոց բարուց անարատութիւնն ու հոգւոյ վեհութիւնը՝ ամենէն աւելի այս շրջանին մէջ կ'երեւայ։ Քաղաքը դեռ նեղ էր, տները՝ պարզ, մեծամեծաց կեանքը՝ զեղխութենէն ազատ։ Հիւպատոսներն ու իշխանապետները կը գործէին իրենց երկիրը, կանայք կը շինէին զգեստները։ Արծաթի դրամը՝ հազիւ պունիկեան պատերազմին ժամանակը մտաւ։

# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## *Պունիկեան պատերազմէն մինչեւ Գրակքեանց շփոթութիւնները 264-133 Ք. Ե.*

### 28. Կարթէգոն, Սիրակուսա.

1. Ո՛ւր կ'իյնայ Կարքեդոն. որո՛ւ էր հիմնարկութիւնը։ — 2. Ե՛րբ սկսան Կարքեդոնացիք Սիկիլիայի հետ կռուի մտնել։ Ի՛նչ վախճան ունեցաւ հռոմէական-կարքեդոնական պատերազմը. ի՛նչ տեսակ էր Կարքեդոնացւոց սահմանադրութիւնը։ — 3. Ի՛նչ գիտենք Սիրակուսայի վրայ. ե՛րբ կ'իյնայ իր ամենէն մեծ զօրութիւնը։

1. Կարքեդոնի տէրութիւնը կը բովանդակէր իր մէջը, քանի մը անպտղաբեր երկիրներէն զատ, այսօրուան Թունուզի ծաղկեալ ծովեզրը։ Իրեն սահման ունէր արեւմուտքէն՝ Նումիդիան (հիմակ Ալճէրի). իսկ հարաւէն՝ Ատլաս լեռներով կը բաժնուէր անապատէն։

Կարքեդոն, Փիւնիկեցւոց հին գաղթականութիւն մը՝ 814ին, Տիւրոսի ազնուականաց հոն գաղթելովն ընդարձակուած եւ ցամաքային ու ծովային առեւտրովը զօրացած՝ նուաճեց ետեւէ ետեւ փիւնիկեան գաղթականութիւնները, Կորսիկա ու Սարդինիա կղզիները, Պալէարեաններն ու Պիթիուսեանները, եւ 500ին առենները՝ նաեւ Սիկիլիայի արեւմտեան մասը։ — Վաճառականութիւնն ալ յառաջացընելու համար ամէն տեղ գաղթականութիւններ հիմնուեցան։

2. Շուրջ 490ին՝ սկսան հզօր Սիրակուսայի հետ պատերազմները։ Կարքեդոնացիք 480ին Գելոն բռնաւորէն Հիմէրայի քով յաղթուելով՝ հարկադրեցան Սիկիլիայի մէջ ըրած աշխարհակալութիւններէն հրաժարիլ։ Սակայն շատ չանցաւ, բորբոքեցաւ նոր ու սաստիկ պատերազմ Դիոնիսիոս Ա. ու Բ.ին դէմ։ Թէպէտ Ագաթոկլէս Կարքեդոնացւոց վրայ Ափրիկէի մէջ յարձակում մ'ըրաւ, բայց ստիպուե-

ցաւ, անոնց՝ Սիկիլիայի մէջ ունեցած յառաջուան երկիրները ետ դարձընել, զորոնք՝ Պիւռոսի յարձակմունքներուն (278-276) դէմ ալ պաշտպանեցին։

Քիչ մը ետքը Հռոմայեցւոց հետ սկսած պատերազմներուն մէջ կորսնցուցին Կարքեդոնացիք՝ նախ 241ին Սիկիլիան, ետքէն 201ին՝ Ափրիկէէն դուրս ունեցած երկիրնին (Սպանիան) եւ իրենց բոլոր ծովային զօրութիւնը. վերջապէս 146ին կործանեցաւ Կարքեդոն ու երկիրն հռոմէական նահանգ եղաւ։

Կարքեդոնի սահմանադրութիւնը առեւտրական ազնուապետութիւն մըն էր։ Տէրութեան գլուխը կեցած էին, տարուէ տարի ընտրուող երկու դատաւորներ (suffetes), օրէնսդիր ծերակոյտ մը եւ ամբողջ տէրութեան վրայ տիրապետական իշխանութիւն բանեցընող հարիւրոց ատեանը։ Ժողովուրդը վերջնական որոշումը կու տար, երբ դատաւորք ու խորհրդարանը չէին կրնար միաբանիլ։ Նաւատորմիղը ծառայողները գերիներն էին, իսկ ցամաքային զօրքը՝ գրեթէ միայն վարձկանազօր էր։ Սահմանադրութեան պակասաւոր կողմերն էին՝ բարձրագոյն պաշտօններուն սակով ծախուիլն եւ նուազապետութեան հակիլը։ Բայց ընդ հակառակն լաւ կը ծաղկէին տէրութեան մէջ առուտուր, նաւագնացութիւն, մշակութիւն, ստայնանկութիւն եւ ամէն տեսակ արուեստ։

3. Սիրակուսա, 735ին հիմնուած կորնթական գաղթականութիւն մը, ծաղկիլ սկսաւ Գեղոն բռնաւորին (485-478) ատեն, եւ իր զօրութեան գագաթը հասաւ Դիոնիսիոս Ա. ին (405-368) ատեն։ Ազնուական Տիմոլէոնը, 343 ին քաղաքն ազատեց Դիոնիսիոս Բ. բռնաւորին իշխանութենէն. բայց անգութ Ագաթոկղէս՝ (317-289) բռնաւորութիւնը շուտ մը ձեռք առաւ։ Հիերոնի իշխանութեան ատեն՝ (270-215) Սիրակուսա դաշնակից էր Հռոմայեցւոց. բայց ասոր թոռը Յերոնիմոս՝ Հռոմայեցիներէն բաժնուեցաւ, եւ 212ին Մարկեղղոսէն նուաճուեցաւ։

Մեղմ օդաբաժնի եւ արտաքոյ կարգի պտղաբեր հողի մը ներքեւ Սիկիլիայի (ըստ մեծի մասին դորիական) քաղաքները շուտ յառաջացան։ Ի մասնաւորի Սիրակու-

*տացիք իրենց ընդարձակ առեւտրոյն պատճառաւ հարուստ ու զօրաւոր եղան։ Գեղոն բռնակալն անանկ ծովային զօրութիւն մ'ունէր, որ Պարսից դէմ օգնելու համար պայման կրցաւ դնել, որ բոլոր Յունաց վրայ՝ վերին սպարապետ ըլլայ։ Քիչ մը ետքը հարկադրեցաւ Պարսից հետ դաշնակից կարքեդոնացւոց դէմ Սիկիլիայի մէջ պատերազմիլ, եւ յաղթեց անոնց 480ին (Սաղամինայի ճակատին օրը) Հիմէրայի քով։ Յաջորդ բռնաւորներն իրենց իշխանութեան տակ առին Իտալիայի քանի մը քաղաքներէն զատ, նաեւ Սիկիլիայի մեծագոյն մասը։*

## 29. Առաջին Պունիկեան պատերազմ 264-241.

*1. Ի՞նչ է պունիկեան պատերազմներուն պատճառը. ինչպէս լմնցաւ առաջին պատերազմը։ — 2. Ի՞նչ երկիրներ աշխարհակալեցին այս միջոցին Հռոմայեցիք։*

1. Ագաթոկղեսի, Մամերտացի վարձկանազօրը Մեսսենան առնելով՝ երբ Հիերոն վրանին յարձակեցաւ, իրեն օգնութեան կանչեց Հռոմայեցիներն՝ որ միջոցին կարքեդոնացիք դղեակն ու նաւահանգիստը բռնեցին։ Հռոմայեցիք զարկին կարքեդոնացիները եւ Սիրակուսայի հետ դաշնակցեցան։ Ասոր վրայ նուաճեցին, — իբրեւ վինուց անուանի տեղ՝ — Ակրագանդ քաղաքը, եւ պատերազմական նաւատորմիղ մը շինեցին։ Աս նաւատորմիղով յաղթեց 260ին Դուիլիոս կարքեդոնացւոց, առաջին անգամ՝ ծովու վրայ Միլէի կամ Լիպարեան կղզիներուն քով։ Եկնոմոսի ծովային յաղթութենէն ետեւ՝ Ատիղիոս Ռեգուղոս Ափրիկէ անցաւ. բայց (255) Դունուզի քով կարքեդոնացիներէն յաղթուեցաւ ու գերի ինկաւ։

Կեկիղիոս Մետեղղոս՝ Սիկիլիայի մէջ (250) Աստրուբաղէ յաղթելէն ետեւ, ծովային փառաւոր յաղթութիւն մ'ստացաւ կարքեդոնացւոց վրայ Լուտատիոս Կատուղղոս 241ին, Եգատեան կղզիներուն քով։ Հռոմայեցիք այս յաղթութեամբ տիրեցին Սիկիլիայի. եւ կարքեդոն վճարեց 3000 տաղանդ (մէկ տաղանդ=5635 ֆրանգ) պատերազմի ծախք։

2. Խաղաղութեան ատեն, առին Հռոմայեցիք կարքեդոնացիներէն (238ին) նաեւ Սարդինիան ու Կորսիկան։ Ասոր վրայ Հռոմայեցիք ծովահէն Իլիւրիկեցւոց դէմ մղած պատերազմովը առին (228) Դալմատիայի ծովեզերքին մէկ մասը, եւ 222ին Կղաւդիոս Մարկեղղոս նուաճեց Հիւսիսային Իտալիայի Գաղղիացիքը։

## 30. Երկրորդ Պունիկեան պատերազմ 218-201.

1. Ինչպէ՞ս սկսաւ երկրորդ պունիկեան պատերազմը։ 2. Ի՞նչ ճակատներ եղան Իտալիայի մէջ։ 3. Ո՞վ նուաճեց Սիկիլեան, Սպանիան ու Աֆրիկէն։

1. Կարքեդոնացիք՝ Սիկիլիայի մէջ ունեցած կորուստին, լեցուցին Սպանիայի մէջ՝ Ամիլկար Բարկասի եւ Աստրուպաղի ձեռօք ըրած աշխարհակալութիւններով։ Երբ Աննիբաղ՝ Ամիլկարի որդին, Հռոմայեցւոց անհաշտ թշնամին, Հռոմայեցւոց պաշտպանութեան ներքեւ եղող Սագունդոնն առաւ, Հռոմ իրեն դէմ պատերազմ հրատարակեց։

2. Աննիբաղ (218ին) անմիջապէս 60.000 զօրքով ու 37 փղով՝ Պիւրենեաններէն, Հար. Գաղղիայէն ու Ալպեաններէն, Իտալիա անցաւ, 26.000 զինուորով (մէկալները ցրտէն, անօթութենէն եւ թշնամեաց յարձակմունքներէն փճացած էին)։ Զարկաւ Հռոմայեցիները (Սկիպիոն) Տիկինոսի, (Սեմպրոնիոս) Տրեբիայի ու (Փլամինիոս 217ին) Տրասիմենեան լճին քով։ Թէպէտ Փաբիոս Մաքսիմոս (cunctator) զՀռոմ ազատեց, բայց Էմիլիոս Պաւղոս եւ Տերենտիոս Վարրոն՝ Կաննէի քով 216ին, անանկ հարուած մը կերան, որ 50.000 Հռոմայեցի պատերազմի դաշտին վրայ մնաց։ — Աննիբաղ, ասոր վրայ առաւ Կապուան, բայց Կարքեդոնէն օգնութիւն չգտնելով՝ 215ին, Նոլայի քով Մարկեղղոսէն

յաղթուեցաւ։ Եւ վերջապէս երբ Սպանիայէն իրեն օգնութեան եկող Ասդրուբաղ եղբայրն 207ին Ումբրիայի մէջ բոլորովին յաղթուեցաւ, հարկադրեցաւ Աննիբաղ հարաւային Իտալիա քաշուելու։

3. Սիրակուսա՝ որ Հիերոնի մահուանէն ետքը (215) Հռոմայեցւոց դաշնակցութենէն ելած էր, — Արքիմեդեսի հնարած նետող մեքենաներովն ու կիզիչ հայելւովն ալ — երկու տարուան պաշարմանէ ետեւ, Մարկեղոսէն (212ին) առնուեցաւ եւ բովանդակ Սիկիլիա հռոմէական նահանգ եղաւ։

Պաւղոս ու Կնէյոս Սկիպիոնեան երկու եղբարք, Սպանիայի յաջող պատերազմներուն մէջ ինկած էին։ Առաջնոյն որդին 24 ամեայ Պ. Կոռնելիոս Սկիպիոն (Africanus major) 210ին, իբրեւ փոխանակ բդեշխի՝ Սպանիա գնաց, Կարքեդոնացւոց յաղթեց եւ բոլոր թերակղզին նուաճելէն ետեւ 206ին փառաւոր ձաղանքով Հռոմ մտաւ։

Երբ Սկիպիոն, 204ին Սիկիլիայէն Ափրիկէ անցաւ, Կարքեդոնացիք Աննիբաղն ետ կանչեցին. որ անկից վերջը պարապ տեղ հաշտութիւն կը խնդրէր։ Զամայի պարտութենէն ետեւ՝ (202) Կարքեդոնացիք ստիպուեցան 201ին ամօթալի խաղաղութիւն մ'ընել։ Ափրիկէէն դուրս ունեցած բոլոր երկիրնին, փղերը, (500) պատերազմական նաւերէն 490 կորսնցուցին։ Ասկէ զատ հարկադրեցան 10.000 տաղանդ պատերազմի ծախք վճարել եւ խոստանալ որ առանց Հռոմայեցւոց թոյլտուութեան պատերազմ պիտի չընեն։

Հռոմայեցիք՝ Կարքեդոնացւոց յաղթելով, ծովերուն ինքնիշխան տէր եղան։

## 31. Պատերազմ Մակեդոնիայի, Ասորիքի և Յունաստանի հետ.

*1. Հռոմայեցիք ինչո՞ւ Փիլիպ. Մակեդոնացւոյն դէմ պատերազմ հրատարակեցին։ — 2. Ի՞նչ ելք ունեցան հռոմէական-ասորական ու հռոմէական-մակեդոնական պատերազմները. 3. Ի՞նչ ազդեցութիւն ունեցան Հռոմայեցւոց վրայ յունական արուեստք ու գիտութիւնք։*

1. Երկրորդ Պունիկեան պատերազմէն ետեւ, — որով Հռոմ, իր ամէնէն վտանգաւոր նախանձորդէն ազատեցաւ — Հռոմայ ծերակուտին՝ բոլոր տիեզերաց վրայ տիրապետելու ջանքն երթալով երեւան ելաւ։ Ասկէ ետքը Հռոմայեցիք՝ իրենց քաղաքականութեան սկիզբ ըրին, տկար տէրութիւնները՝ զօրաւորներու դէմ պաշտպանել։

Հռոմայեցիք Յունացմէ՝ Փիլիպպոս Մակեդոնացւոյն դէմ օգնութեան կանչուելով՝ իրեն դէմ պատերազմ հրատարակեցին։ Փիլիպպոս՝ Կուինտիոս Փլամինիոսէն, Թեսաղիայի Կինոսկեփաղէ քաղաքին քով 197ին յաղթուելէն ետեւ, ստիպուեցաւ Յունաց բոլոր քաղաքները ազատ թողուլ, նաւատորմիղը Հռոմայեցւոց յանձնել, բանակը հինգ հազարի իջեցընել եւ 1000 տաղանդ պատարազմի ծախք վճարել։

2. Թէպէտ Անտիոքոս (որուն ապաւինած էր Աննիբաղ 195ին) Փոքր Ասիան նուաճելէն ետեւ՝ Եւրոպա անցաւ ու Ետողացւոց հետ միացաւ. բայց Կատոնէն 191ին Թերմոպիլէի՝ ու Կուռնելիոս Սկիպիոնէն (Asiaticus) Ափրիկանոսի եղբօրմէն՝ Մագնեսիայի քով յաղթուեցաւ։ Ասոր վրայ հարկադրեցաւ Փոքր Ասիան մինչեւ Տաւրոս ու Հալիս թողուլ, նաւատորմիղը Հռոմայեցւոց յանձնել ու 15.000 տաղանդ պատերազմի ծախք վճարել։

Պերսէոս, Փիլիպպոսին յաջորդը՝ պատերազմի պատրաստութիւններ տեսնելուն, ամբաստանուեցաւ

ու Հռոմայեցիք իրեն դէմ ելան։ Ինք զինք երեք տարի յաջողութեամբ պաշտպանելէն ետեւ, Պիւդնայի քով (Մակեդոնիայի մէջ) 168ին Էմիլիոս Պաւղոսէն յաղթուեցաւ ու քիչ մը ետքը գերի բռնուեցաւ։ Մակեդոնիա՝ Հռոմայեցիներու հարկատու չորս հասարակապետութեանց բաժնուեցաւ եւ 148ին հռոմէական նահանգ եղաւ։

3. Հռոմ տարուած 1000 աքայեցի պատանդներն, (որոնց մէջ էր նաեւ Պոլիբիոս), յունական գիտութեանց եւ արուեստից ճաշակը Հռոմայեցւոց հաղորդեցին։ Արդէն Սիրակուսայի առման ատեն՝ շատ մը յունական արուեստական գործուածքներ Հռոմ տարուած էին։ Բայց աւելի ազդեցութիւն ունեցան Յոյնք Հռոմայեցւոց վրայ, երբ երկիրնին (146) հռոմէական նահանգ եղաւ. վասն զի (Մումմիոսի ձեռօք) անհամար արուեստակերտ գործուածներ Հռոմ փոխադրուեցան եւ շատ մը յոյն արուեստագէտներ, փիլիսոփաներ ու ճարտարախօսներ Հռոմ գաղթեցին։ — Հռոմէական մատենագրութիւնն ալ՝ յունական ազդեցութեան տակ պայծառանալու սկսաւ։ Էննիոս, յունական օրինակներու հետեւելով՝ հռոմէական դիւցազնականը (epos) հնարեց. եւ Պղաւտոս ու Տերենտիոս՝ յունական կատակերգութիւններ, Հռոմայ թատրներու վրայ հանեցին։ Մակեդոնական ու սպանիական պատերազմներով՝ այնչափ աւար մտաւ Հռոմ, որ քաղաքացիք ալ տուրք չէին տար։ Բայց դիզուած հարստութեանց հետ՝ երթալով աճեցաւ նաեւ Հռոմայեցւոց բարուց ապականութիւնը. այնպէս որ ծերակոյտը հարկադրեցաւ Բակքոսի տօներն արգելել։ — Երկրագործութիւնը շատոնց գերեաց գործքն եղած էր։

## 32. Կարթագէնի ու Կորնթոսի կործանումը 146.

1. Ի՞նչ պատճառաւ սկսաւ երրորդ պունիկեան պատերազմը։ Ի՞նչպէս լմնցաւ։ — 2. Երբ հռոմէական նահանգ եղաւ Յունաստան. ի՞նչ երկիրներու տէր էր այս միջոցին Հռոմ։

1. Երրորդ պունիկեան պատերազմին (149-146) պատճառը Հռոմայեցւոց վախն էր, որ չըլլայ թէ Կարքեդոն մէյ մ՚ալ ոտք ելլէ։ Կարքեդոնացիք՝ Մասինիսսա Նումիդիայի թագաւորէն յարձակումներ կրելով՝ իրենք զիրենք պաշտպանեցին առանց Հռոմայեցիներուն հարցընելու։ Երբ զէն-

քերնին յանձնելէն ետեւ՝ Հռոմայեցիք իրենցմէ պահանջեցին որ նաեւ քաղաքնին հիմնայատակ ընեն, կատղեցան Կարքեդոնացիք եւ երեք տարի դիւցազնական կերպով իրենք զիրենք պաշտպանեցին Հռոմայեցւոց դէմ։ Բայց վերջապէս 146ին, Կուռնելիոս Սկիպիոն քաղաքն առաւ, կողոպտեց ու այրեց, եւ երկիրը Ափրիկէ անուամբ հռոմէական նահանգ ըրաւ (Scipio Africanus minor)։

2. Նոյն տարին, Կորնթոս ալ՝ կարճատեւ պատերազմէ մ'ետեւ՝ կործանեցաւ, եւ Յունաստան եղաւ Աքայիա անուամբ հռոմէական նահանգ մը։ Թէեւ յունական քաղաքներն իրենք զիրենք կառավարելու իրաւունքը պահեցին, բայց իրենց ռամկապետական ազատութիւնը կորսնցուցին։

Երբ ասոր վրայ (Վիրիաթէսի սպանմանէն ետքը) ոտք ելած Սպանիացիներն ալ 133ին Սկիպիոնէն նուաճուեցան, եւ Ատտաղոս Գ. Պերգամոնի տէրութեան ժառանգ ըրաւ Հռոմայեցիքը, տէր եղան ասոնք՝ Իտալիայէն զատ՝ Սպանիայի, Ալպեանց ասդիի կողման Գաղղիայի (Gallia cisalpina), Ափրիկէի, Սիկիլիայի, Սարդինիայի ու Կորսիկայի։

## ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

*Գրակքեանց շփոթութիւններէն մինչեւ Օգոստոս*
*133—30 Ք. Ծ.*

### 33. Գրակքեանց շփոթութիւնները 133—121.

1. Ի՞նչպէս էր այս միջոցիս ռամկին վիճակը։ — 2. Ի՞նչ է Գրակքեանց շփոթութեանց պատճառը. Վախճան մ'ունեցաւ։

1. Թէպէտ 300ին պատրկին եւ ռամկին մէջ եղած զանազանութիւնը գրեթէ վերցած էր. սակայն անկէ խիստ հակառակութիւն մը ծագեցաւ՝ միայն բարձրագոյն ատենակալութեան ու ծերակու-

տի պաշտօններուն հասնող հարուստ եւ ազնուական քաղաքացիներուն (nobiles, optimates) եւ տարուէ տարի շատցող ռամկին մէջ։ Շատ քիչ անգամ կ'ըլլար, որ հասարակ ժողովրդէն մարդ մը բարձրագոյն պատուոյ հասնէր։ Ռամիկն, որ ամենեւին երկիր չունէր, կ'ապրէր ցորենի բաշխմամբ ու միայն հարուստներուն հաշուին։

2. Զօրացող ազնուապետութեան դէմ ելաւ 133ին՝ ազնուական տրիբուն մը, Տիբերիոս Սեմպրոնիոս Գրակքոս, ու վերանորոգեց Լիկինեան օրէնքը, որուն զօրութեամբ ոչ ոք 500 արտավարէն աւելի տէրութեան կալուած պիտ'որ ունենար։ Այս կերպով վաստըկուած երկիրը, աղքատ քաղաքացիներուն պիտի բաժնուէր. եւ ասով Իտալիա՝ փոխանակ գերիներու, ազատ քաղաքացիներով պիտի բազմանար։ Գրակքոսի առաջարկութիւնը ժողովուրդն ընդունեցաւ. բայց ինք՝ ծերակուտին ձեռաց տակէն ելած խռովութեան մը ատեն, իր 300 գործակիցներովն սպանուեցաւ։

Երբ տասը տարի ետքը, Կայիոս Գրակքոս, Տիբերիոսի եղբայրը՝ ագարակային օրէնքը նորոգեց, ծերակոյտը զինք ժողովրդեան ատելի ըրաւ։ Գայիոս 121ին, Ոպիմիոս բդեշխին դէմ ըրած կռուին մէջ իր 3000 գործակիցներովը մահը գտնելէն ետեւ՝ արդէն բաժնուած երկիրները, ազնուականներէն դարձեալ գնուեցան. եւ երկիր չունեցող քաղաքացւոց թիւն այնչափ մնաց, որչափ էր յառաջ։

## 34. Յուգուրթեան, Կիմբրեան եւ Դաշնաւորաց պատերազմները.

1. Ուստի ծագեցաւ Յուգուրթեան պատերազմը: — 2. Ի՛նչ ազգ էին Կիմպրացիք, Տեւտոնները. Անոնց դէմ ո՛վ խաւրուեցաւ: — 3. Ուստի ծագեցաւ դաշնաւորաց պատերազմը:

1. Յուգուրթա՝ Մասինիսայի թոռը, իր երկու եղբօրորդիքը սպաննելուն, ծերակուտին առջեւ պատասխանատուութեան կանչուած, բայց կաշառք կերցընելով՝ ինք զինք ազատած էր: Երբ ասոր վրայ Հռոմի մէջ՝ երրորդ ազգական մ՚ալ սպաննեց, ծերակոյտն իրեն դէմ պատերազմ հրատարակեց: Յուգուրթա, 109ին անողորմելի կերպով. Մետեղղոսէն յաղթուեցաւ. եւ 107ին բդեշխ ընտրուած Մարիոսը՝ զինքը Մաւրիտանիա փախչելու ստիպեց: Բայց Մաւրիտանիայի թագաւորը՝ իւր աները, զինք կուռն. Սիղղա գանձապետին յանձնեց եւ Հռոմ բանտի մէջ մեռաւ:

2. Այս միջոցին Կիմպրացիք ու Տեւտոնները, պատերազմող հսկայ գերմանական ժողովուրդներ, Դանուբի քովերն երեւցան եւ Նորէյայի քով 113ին Հռոմայեցւոց յաղթեցին: Իրենց դէմ խաւրուած շատ մը հռոմէական լեգէոններն ալ վարնելէն եւ Արաւսիոնի (Օրանժ) յաջող ճակատէն ետեւ՝ Գաղղիա ու Սպանիա քաշուեցան: Հոն հաստատուելէն ետեւ՝ ընթացքնին երկրորդ անգամ դէպ Իտալիա ուղղեցին՝ բայց իրարմէ բաժնուած: Ասոնց դէմ Մարիոս, հինգ տարի (104-100) ետեւէ ետեւ բդեշխ ընտրուեցաւ: Զարկաւ ասիկա Տեւտոնները 102ին՝ Ակուա-Սէքստայի քով (այս օրուան Բրովանսի մէջ) ու Սպանիայէն դարձող Կիմպրացիները՝ կատուղղոսին հետ միացած, Ռաւդինեան դաշտերուն վրայ, Վերկէլլէյի քով (101ին):

3. Իտալական քաղաքները երկայն ատենէ ի վեր՝ հռոմէական քաղաքացւոյ իրաւունք կը պահանջէին. եւ որովհետեւ Հռոմայեցիք աս բանս իրենց բացարձակապէս չուզեցին շնորհել, որոշեցին Հռոմէն անկախ դաշնակցեալ տէրութիւն մը կազմել, Կորփինիոն գլխաւոր քաղքով։ Արիւնահեղ պատերազմէ մ'ետեւ, որուն մէջ հռոմայեցի ամենաքաջ զօրավարները բան մը չկրցան ընել, եւ 300.000 մարդ կորսուեցաւ, Իտալիայի ամէն քաղաքներուն՝ Հռոմայեցի քաղաքացւոյ իրաւունք տրուեցաւ։

## 35. Առաջին Քաղաքական պատերազմ 88-82.

1. Ի՞նչ է Միհրդատեան պատերազմին պատճառը։ — 2. Ի՞նչ վախճան ունեցաւ առաջին պատերազմը։ 3. Ե՞րբ սկսաւ ու լմնցաւ առաջին քաղաքական պատերազմը։ — 4. Սիւղղա ինչո՞ւ մշտնջենաւոր հրամանատար անուանուեցաւ։

1. Միհրդատ Պոնտացին, Սեւ ծովուն արեւել. ու հիւս. դին եղած ամէն ժողովուրդները նուաճելէն ետեւ՝ դաշնաւորաց պատերազմին ատեն, Կապպադովկիայի ու Բիւթանիայի թագաւորները մերժած՝ Փոքր Ասիան դիւրութեամբ մ'աշխարհակալած եւ հոն մէկ օրուան մէջ 80.000 հռոմէական քաղաքացի սպաննել տուած էր։ Ծերակոյտն իրեն դէմ վերին հրամանատար անուանեց զՍիւղղա. իսկ ժողովուրդը՝ զՄարիոս։ Սիւղղա՝ իր բանակովը Հռոմի վրայ գնաց, զՄարիոս վռնտեց եւ Ոկտաւիոսն ու Կիննան բդեշխ անուանելէն ետեւ, Միհրդատին վրայ քալեց։

2. Առաջին Միհրդատեան պատերազմին մէջ (88-84) Սիւղղա նուաճեց Պոնտոսի թագաւորին հետ դաշնակից Աթէնքը. քանի մը յաջող ճակատներէ ետեւ՝ բռնեց իր զօրքովը Փոքր Ասիան (որ 20.000 տաղանդ վճարելու ստիպուեցաւ) ու Պափղագոնիան, եւ Գաղատիան հռոմէական նահանգ ըրաւ։

3. Աս եղած ժամանակ, Մարիոս (87) ետ կանչուելով՝ Սիղղայի կողմնակիցներէն հազարաւորներ, աքսորել ու սպաննել տուաւ։ Բայց շատ չանցաւ՝ ինքն ալ մեռաւ 87ին՝ եօթներորդ անգամ բդեշխ ընտրուելէն քիչ մը ետքը։ Կիննա՝ չորս տարի ետեւէ ետեւ ինք զինք հիւպատոս անուանել տալէն ետեւ՝ իր զինուորներէն սպանուեցաւ (84), երբ յաղթող Սիղղայի դէմ՝ Յունաստան երթալու վրայ էր։

4. Սիղղա 83ին Իտալիա մտաւ, եւ 15 ճակատով Մարիոսի գործակիցներուն յաղթելէն ետեւ՝ 82ին Հռոմ առաւ։ Իր մահուան վճիռներովը՝ սարսափելի կոտորած ըրաւ ճամբաներու վրայ, տներու ու տաճարներու մէջ։ Մշտնջենաւոր հրամանատար անուանուելով՝ չափաւորեց տրիբուններուն զօրութիւնը եւ աճեցուց ծերակուտին իշխանութիւնը։ Բազմաթիւ անգթութիւններէ ետեւ, (100.000 քաղաքացի սպաննել տուաւ) հրամանատարութենէն հրաժարեցաւ (79) եւ մեռաւ Կումա քաղաքը 66 տարեկան (78)։

## 36. Պոմպէոս, Կեսար, Կրասոս. 60.

1. Ի՞նչպէս ելաւ Պոմպէոս։ — 2. Ի՞նչ պատճառաւ սկսաւ երկրորդ Միհրդատեան պատերազմը։ — 3. Ե՞րբ եւ ինչո՞ւ կազմուեցաւ առաջին եռապետութիւնը։ — 4. Ի՞նչպէս երեւան ելաւ Կեսար։ — 5. Ե՞րբ եղաւ Պոմպէոս առանձին բռնիչ։

1. Սիղղայի տեղն անցնիլ ուզող մարդիկներու մէջէն (պարագաներու յաջողելովն) ամէնէն մեծ ազդեցութիւնն ունեցաւ Կնէյոս Պոմպէոս։ Ասիկա՝ նուաճեց Սպանիայի մէջ Մարիոսեանները (77-72), ջնջեց 71ին Իտալիայէն փախչող ստրուկները, մաքրեց 67ին՝ երեք ամսուան մէջ, Միջերկրական ծովուն ելուզակները, ու Միհրդատայ դէմ վերին հրամանատար անուանուեցաւ։

2. Լիկինիոս Ղուկուղղոս, զՄիհրդատ՝ Հռոմայեցւոց ժառանգութիւն թող տրուած Բիւթանիայէն վռնտած, ու իրեն եւ իւր աներին՝ Տիգրանայ Հայոց թագաւորին Տիգրանակերտի քով յաղթած էր (69)։ Բայց ետ կանչուելով՝ Միհրդատ իր երկիրները նորէն առաւ։ Պոմպէոս (68ին) գիշերային ճակատի մը մէջ Եփրատի քով՝ Միհրդատին յաղթեց, որ փախչելու ատեն՝ ինք զինք մեռցուց, երբ իւր որդին Փառնակ իրեն դէմ ապստամբեցաւ։ Ասոր վրայ Պոմպէոս Ասիայի իրողութիւնները կարգի գրաւ. Հրեայքը Հռոմայեցւոց հպատակեցուց. Բիւթանիան, Պոնտոսը, Կիլիկիան ու Ասորիքը հռոմէական գաւառ ըրաւ, եւ զՓառնակ Բոսպորոսի թագաւոր։

3. Պոմպէոս՝ 61ին Հռոմ դարձաւ։ Եւ որովհետեւ ծերակոյտն (եւ յանուանէ Կեկիղիոս Մետեղղոս Հիւպատը, խիստ Պորտիոս Կատոնը, հարուստ Լիկինիոս Կրասոսն եւ փառասէր մեծ քրմապետը՝ Յուլիոս Կեսար) իր կարգադրութիւններուն միշտ կը հակառակէր, անոր համար միաբանեցաւ (60ին) Կեսարի ու Կրասոսի հետ՝ եռապետութիւն (triumvirat) մը կազմելու։ Կեսար՝ բդեշխութիւնն առնելէն ետեւ (59ին) հինգ տարուան համար գաղղիական երկու գաւառներն առաւ. (Կիկերոն՝ Կղաւդիոսի ձեռօք աքսորուեցաւ, 58ին). իսկ Կատոն՝ Կիպրոս առնելու համար Հռոմէն հեռացուեցաւ։

4. Ութը արշաւանքով (58-51) տիրեց Կեսար բոլոր Գաղղիայի։ — Ամէնէն յառաջ զարկաւ ցրուեց Յուրա լեռներէն յառաջ քալող Հելուետացիները. վռնտեց 58ին՝ Ռենոսէն անդին, Արիովիստը. հպատակեցուց 57ին՝ Բելգիան ու Ակուիտանիան. մտաւ երկու հեղ Գերմանիա ու Բրիտանիա.

ընկճեց (52) Վերկինգետորիքսի առաջնորդութեամբ ելած գաղղիական ժողովրդոց վտանգաւոր ապստամբութիւնը, եւ կազմեց ընտիր եւ իրեն բոլորովին հլու բանակ մը։

5. Այս միջոցիս Կիկերոն ետ կանչուեցաւ (57ին), եւ Պոմպէոս ու Կրասոս (55ին) բդեշխ անուանուեցան։ Երբ ասոր վրայ Կեսարու գաւառակալութիւնը հինգ տարի ալ երկնցուեցաւ, Կրասոս Ասորիքն առաւ՝ ուր ինկաւ (53ին) Պարթեւաց դէմ ըրած պատերազմին մէջ։ Պոմպէոս՝ իր գաւառները (Սպանիան ու Ափրիկէն) գաւառապետաց ձեռօք կառավարելով՝ Հռոմ մնաց, ուր երկպառակութիւններէ ետեւ, 52ին առանձին բդեշխ եղաւ։

## 37. Երկրորդ քաղաքական պատերազմ 49-44.

1. Ինչպէս ծագեցաւ երկրորդ քաղաքական պատերազմը։ — 2. Ինչ յաղթութիւններ ըրաւ Կեսար, Ասիայի մէջ՝ Փառնակի- ու Ափրիկէի մէջ Պոմպէոսի վրայ. Ինչպէս մեռաւ։

1. Զկեսար՝ որ Գաղղիան նուաճելէն ետեւ, բանակը չէր ուզեր ցրուել (49), ծերակոյտը հայրենեաց թշնամի հրատարակեց, եւ զՊոմպէոս իրեն դէմ վերին հրամանատար անուանեց։ Կեսար՝ Ռուբիկոն գետն անցաւ. երկու ամսուան մէջ աշխարհակալեց Իտալիան ու յաղթեց Պոմպէոսի զօրացը Սպանիայի մէջ. վերջինը ծերակուտին հետ Յունաստան փախաւ։

2. Փարսաղիայի (Թեսսաղիա) ճակատին մէջ (48) Պոմպէոս բոլորովին յաղթուեցաւ. Եգիպտոս փախաւ եւ ցամաք ելած ատեն սպանուեցաւ։ Կեսար որ Պոմպէոսի յաջորդեց, հինգ տարուան համար բդեշխ ու մէկ տարուան համար հրամանապետ անուանուելէն ետեւ՝ վռնտուած կղէոպատրան նորէն գահ հա-

նեց (47ին)․ Հինգ օրուան մէջ յաղթեց Փառնակին (veni, vidi, vici) որ Հօրը թագաւորութիւնն ետ առած էր․ եւ Հռոմ դարձաւ գանձերով։

Ափրիկէի մէջ (46) ջնջեց Կեսար պոմպէեան մեծ բանակ մը, յաղթեց Յուբա Նումիդացւոյն (որուն երկիրը Հռոմէական Նահանգ եղաւ). եւ մինչեւ այն ատեն չտեսնուած չորեքօրեայ ձաղանք մը կատարեց։

Կեսար՝ Պոմպէոսի որդւոց առաջնորդութեան տակ եղած վերջին պոմպէեան բանակին Մունդայի քով (Սպանիայի մէջ) 45ին յաղթելէն եւ մշտնջենաւոր հրամանատար ու միապետ անուանուելէն ետեւ, 44ին, Մարտի 15ին, ծերակուտին դաւաճանութեամբն սպանուեցաւ։

Կեսար՝ իւրաքանչիւր քաղաքացւոյ 450, ամէն՝ իր տակ պատերազմողներուն 21.000 սեստեր եւ երկիր պարգեւած, իսկ կտակին մէջ ամէն քաղաքացւոյ 300 սեստեր (10 թալէր) թողուցած էր։ Իբրեւ հրամանատար, ինք կը բաժնէր ամէն պաշտօնները ու կը կրէր ծիրանի։ Գեղեցկացուց Հռոմ, հիմնեց շատ գաղթականութիւններ եւ շտկեց տումարը։ — Թաղման ատեն՝ Կեսարու զօրավարները (Անտոնիոս բդեշխն ու Լեպիտոս Մեծ քրմապետը) ժողովուրդը գրգռեցին սպանողաց դէմ. բայց ծերակոյտ ընդհանուր թողութիւն շնորհեց. եւ զԲրուտոս ու զԿասսիոս թողուց իրենց պաշտօնին մէջ։

## 38․ Անտոնիոս, Օկտաւիանոս 44-31․

1․ Ե՞րբ կազմուեցաւ երկրորդ եռապետութիւնը։ — 2․ Ի՞նչ պատճառաւ ծագեցաւ երրորդ քաղաքական պատերազմը։ — 3․ Ի՞նչ վախճան ունեցաւ չորրորդը։ — 4․ Ի՞նչպէս էր այս միջոցին Հռոմայեցւոց բարոյական կեանքը։

1․ Երբ Մ․ Անտոնիոս, ինք զինք ատելի կ՚ընէր եւ զԿեսար սպանողներն իրենց դաւաճանները կը մոռցունէին, Յուլ․ Կեսար Օկտաւիանոս, Կեսարու որդեգիրը՝ առատաձեռնութեամբ ժողովուրդն ու բանակը շահելով՝ ընդհանուր սպարապետ անուանուեցաւ տէրութեան թշնամի հրատարակուած Անտոնիոսի դէմ։ Օկտաւիանոս՝ Մուտինայի փառաւոր ճակատէն

ետեւ (ուր երկու բդեշխներն ինկան), 43ին իրեն յափշտակեց, հազիւ 20 տարուան՝ բդեշխութիւնը։ Բայց — ի սարսափ ամէն բարեզգած քաղաքացիներուն — կազմեց Անտոնիոսի եւ Լեպիտոսի հետ՝ երկրորդ եռապետութիւնը (triumviri rei publicae constituendae)։

2. Եռապետք՝ շատ ծերակուտի անդամներ, բազմաթիւ ասպետներ ու իրենց թշնամի (Կիկերոն փախած ատեն սպանուեցաւ) քաղաքացիներ մեռցնել տալէն ետեւ՝ Երրորդ քաղաքական պատերազմին մէջ (42ին) հասարակապետականներուն յաղթեցին Մակեդոնիայի Փիլիպպէ քաղաքին քով, ուր Կասսիոս եւ Բրուտոս իրենք զիրենք սպաննեցին։ — Գաւառաց նոր բաժանում մ'ընելով՝ Օկտաւիանոս առաւ արեւմուտքը, Անտոնիոս՝ արեւելքը, Լեպիտոս՝ Ափրիկէն։

Անտոնիոս՝ Ասիայի ու Ափրիկէի մէջ Կղէոպատրայի հետ զեղխած ատեն, Սեքստոս Պոմպէոս՝ Օկտաւիանոսի Ագրիպպա զօրավարէն (36) յաղթուեցաւ։ Նոյն տարին Լեպիտոս ալ հարկադրեցաւ իր գաւառն Օկտաւիանոսի տալ։

3. Երբ ասոր վրայ Անտոնիոս, իւր ազնուական կինն Օկտաւիան մերժեց, եւ հռոմէական գաւառները Կղէոպատրայի եւ անոր որդւոց պարգեւեց՝ հայրենեաց թշնամի հրատարակուեցաւ։ Ակտիոնի ծովամարտին ատեն (31ին) դեռ պատերազմը չորոշուած, Անտոնիոս Կղէոպատրայի հետ փախաւ, իսկ ցամաքային զօրքն Օկտաւիանոսի կողմն անցաւ։ Եւ որովհետեւ ասիկայ խաղաղութեան ամէն առաջարկութիւնը մերժեց, Անտոնիոս ու Կղէոպատրա իրենք զիրենք սպաննեցին (30) ու Եգիպտոս եղաւ հռոմէական նահանգ։ Օկտաւիանոս — այսուհետեւ Ա-

գոստոս կայսր — իբրեւ միահեծան տէր, Հռոմ դարձաւ ու Յանոսի տաճարը գոցել տուաւ։

4. Հռոմայեցի մեծամեծաց հարստութիւնը, բազմաթիւ յաղթութիւններով ու գաւառաց մէջ ըրած հարստահարութիւններով չհաւատալի կերպով շատցած էր։ Գերդաստաններ կային, որ մինչեւ 10.000 գերի կը պահէին։ Կրասոս 7000 տաղանդի երկիր ունէր. Լէնտուլոս՝ կրկինը։ Կապպադովկացւոց թագաւորը՝ Պոմպէոսի 8000 տաղանդ պարտական էր։ — Հռոմի մէջ պալատներ կային, որ կէս միլիոն տաղանդ կ'արժէին։ Սկաւրոս՝ Սիղղայի որդեգիրը, 30 օրուան համար թատրոն մը շինեց՝ 80.000 հոգւոյ համար՝ 3000 արձանով։ Ղուկուղղոս՝ կրնար ամէն ժամանակ առանց մեծ պատրաստութեան մը, 3000 տաղանդ արժող խնջոյք մը պատրաստել։ Ոճիրներութիւն այն աստիճանի շատցած էր որ Իտալիա, տարուան մը մէջ, 3000 հոգի ուրիշները թունաւորելուն համար կախաղան հանուեցան։ Ջեղխութիւն ու անառակութիւն տիրած էր ամէն գաւառներուն՝ նաեւ Հռոմայեցի ամենէն ազնուական գերդաստանաց մէջ։ Եւ մէկ դիէն ամէն կրօնական զգածում շիջանելու վրայ եղած ատեն, մէկալ դին արեւելեան սաստիկ աւելորդապաշտութիւն տիրելու սկսաւ։ Կաշառակերութիւնը հրապարակաւ կը գործուէր։ Աղքատ քաղաքացիք միայն իրենց բաշխուած ցորենով, հարուստներէն ընդունած պարգեւով եւ ձայներնին ծախելով կ'ապրէին, եւ միայն տեսարաններէ ու անասնոց կռիւներէ հաճ կ'առնէին (panem et circenses)։ Այս կերպով ի հարկէ հասարակապետութիւնը պէտք էր որ կործանէր։

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

*Աւգոստոսէն մինչեւ արեւմտեան հռոմէական պետութեան կործանումը. 30 Ք. Յ. — 476 Ք. Ե.*

### 39. Աւգոստոս. 30. Ք. Յ. — 14. Ք. Ե.

1. Աւգոստոս ի՞նչ բանով միապետութեան հասաւ. ի՞նչպէս կառավարեց։ — 2. Ի՞նչ վիճակի մէջ էր այս միջոցին հռոմէական մատենագրութիւնը։ — 3. Երբ վտարկուեցան Դանուբեան երկիրները։ — 4. Այս միջոցիս որչափ տարածութիւն ունէր, եւ ի՞նչ կերպարանք առած էր հռոմէական պետութիւնը։

1. Օկտաւիանոս Աւգոստոս, անով միապետութեան հասաւ, որ ամէն բարձրագոյն հասարակապետական արժանապատուութիւնները միացուց։

Երբ Աւգոստոս Աւգ. (Սեքստիլիս) ամսոյն 29ին Հռոմ դարձաւ, ի սկզբան՝ 10, ապա վրայ՝ 5, ետքէն նորէն 10 տարւան ինքնակալութեան պատիւ տրուեցաւ իրեն։ Ասոր վրայ լեգէոնները՝ սահմաններու վրայ դրաւ. եւ Հռոմի մէջ միայն 10 պրետորեան բաժին պահեց։ Իբրեւ վերատեսչու բարոյից (praefectus morum)՝ հեռացուց ծերակուտէն իրեն անհաճոյ անձինքը։ Ի սկզբան ինք զինք տարուէ տարի հիւպատոս անուանել կու տար, սակայն ետքէն այս պատիւն ուրիշներուն թողուց՝ երբ (24ին) օրինաց պարտաւորութենէն ազատ եղաւ։ Գաւառները ծերակուտին հետ բաժնեց, անոր աննշանները տալով։ Գաւառները կը կառավարուէին բդեշխի փոխանորդներով՝ որոնց քիչ մը ետքը կայսերական գործակալներ օգնական տրուեցան, որպէս զի հարկերը ժողովեն։

2. Պետութեան մէջ խորին խաղաղութիւն կը տիրէր։ Գաւառները խաղաղցուած եւ օրէնքներով գաւառակալներու հարստահարութիւններէն պաշտպանուած էին։ Հռոմ շէնցաւ, Իտալիայի մէջ շատ մը արքունական ճամբաներ շինուեցան, եւ ամէն տեղ հասարակաց բարօրութեան հոգ տարուեցաւ։ Աւգոստոս գիտնականներն ու բանաստեղծները կը պաշտպանէր։ Անոր համար ալ հռոմէական մատենագրութիւնն այս միջոցիս իր բարձրութեան ծայրը հասաւ։

Բանաստեղծութեան սկիզբը լոկ կրօնական երգերը՝ զոր քուրմերը կազմելով կ'երգէին։ Լիւիոս Անդրոնիկոս Հռոմ եկած յոյն գերին, գրեց լատիներէն լեզուաւ յոյն թատերախաղութիւններ (drames) եւ թարգմանեց Ոդիսականը։ Նեւիոս (264-194) յունական ողբերգութեան առաջին փորձն ըրաւ. ու Էննիոս (239-169) վեցաչափով հռոմէական պետութեան վիպական պատմութիւնը գրեց։ Ասոր ժամանակակիցը Մ. Ակկիոս Պլաւտոս՝ յունական նոր ըսուած կատակերգութիւնը թարգմանելով՝ ամենէն սիրելի հռոմէական բանաստեղծն եղաւ։ Տերենտիոս Աֆրոս՝ գրեց, միայն Հռոմայեցւոց յատուկ եղող երգիծականը։

Բանաստեղծութեան ոսկեղէն դարուն մէջ ծաղկեցան Վիրգիլիոս Մարոն (70-19 Ք. Ց.), Ովրատիոս Փլակկոս (65-8 Ք. Ե.). Տիբուղղոս, Պրոպերտիոս, Ովիդիոս (43-18 Ք. Ե.)։

Արծաթի կոչուած դարուն (Աւգոստոսի մեռնելէն մինչեւ Ադրիանոսի մահը) կը վերաբերին Լուկանոս ու Սիլիոս, որոնք՝ հռոմէական պատմութեան կտորներ՝ վիպական ձեւով գրեցին. դարձեալ Սենեկայի ողբերգութիւններն եւ Յուվենալիսի երգիծականները։

Լատինական արձակին ամենէն երեւելի մասը՝ պատմագրութիւնն որ Պորկիոս Կատոնով (234-149) սկսաւ, բուն արուեստական կերպարանք մ'առաւ հռոմէական հասարակապետութեան վերջին տարիները։ Աս կարգին մէջ.

կը մնեն Կեսարու յիշատակարանները (Commentarii). Սալուստիոս Կրիսպոս (86-34. Կատիլինայի դաւաճանութեան եւ Յուգուրթեան պատերազմին վրայ). Տիտոս Լիւիոս (59 Ք. Ց.-17 Ք. Ե.) Վեյլէյոս Պատերկուլոս (30 Ք. Ե.). բայց ամէնէն աւելի Կոռն. Տակիտոս (Ա. դարուն վերջերը, Վարք Ակրիկողայ. Գերմանիա. Պատմութիւնք. Տարեգիրք.): — Սուետոնիոս Տրանկուիլլոսի հետ կը լմննայ մեծ պատմագրաց շարքը:

Ճարտարախօսութեան մէջ պայծառացան Տուղղիոս Կիկերոն. իրմէ քիչ մը հնագոյն Որտենսիոսը (114-50) ու Յուլիոս Կեսար: Ճարտարախօսութեան տեսականք՝ սորվեցուց Կուինտիլիանոս: Իբրեւ փիլիսոփայական մատենագիր՝ երեւելի եղան, Կիկերոն եւ Սենեկա, Ներոնի ուսուցիչն ու խորհրդականը: Բնագիտութեան մասին մէջ, ընդարձակ հանրագիտական (encyclopédique) գործք մը գրեց Պլինիոս Երէց, զոր բնական պատմութիւն (Historia naturalis) անուանեց:

3. Դրուսոսի եւ Տիբերիոսի՝ Աւգոստոսի խորթ որդւոցը ձեռօք՝ հռոմէական նահանգ եղան դանուբեան հարաւային երկիրները: Բայց 12էն ետքը (Ք. Ց.) Դրուսոսի եւ Տիբերիոսի՝ Գերմանիայի վրայ ըրած յարձակմունքներն առանց հետեւութեան մնացին. եւ 9ին (Ք. Ե.) Վարոսի առաջնորդութեամբ հռոմայեցիք լաւ ջարդ մը կերան Հերմանէն (Տեւտոբուրգեան անտառին մէջ): Գերմանիկոսի արշաւանքներէն ետեւ (14-16) Հռոմայեցիք դղեակներ շինելով՝ Ռենոսի եւ Դանուբի սահմանները պաշտպանելը բաւական համարեցան:

Աւգոստոս, իր Յուլիա աղջիկը՝ անոր Մարկեղղոս ամուսնոյն մեռնելէն ետեւ, Ագրիպպայի հետ կարգեց: Երբ որ աս ալ 12ին (Ք. Ց.) ու անոր երկու որդիքն ալ 3ին (Ք. Ե.) մեռան, իրեն որդեգիր առաւ, իր փառասէր Լիւիա կնկան Տիբերիոս Ներոն որդին: Աւգոստոս մեռաւ Նոլա քաղաքը 14ին Քրիստոսէ ետքը. եւ իբրեւ Աստուած պաշտուեցաւ:

4. Երբ մէկ կողմանէ արեւմտեան Եւրոպայի Կեղտ ժողովուրդները, հռոմէական իշխանութեան տակ նուաճուելէն ետեւ՝ յաղթողին լեզուն ու կրթութիւնն

ընդունեցան, հետեւեցան մէկալ կողմանէ Հռոմայեցիք՝ պետութեան արեւելեան գաւառներուն մէջ իրենցմէ յաղթուածներուն կենաց ու բարուցը։ — Ցորենաշատ Մաւրիտանիայի ու Նումիդիայի մէջ, վաճառականութեան եւ ճարտարարուեստներու շատ քաղաքներ կային, ու Եգիպտոսի մայրաքաղաքն Աղեքսանդրիա, հռոմէական իշխանութեան տակ՝ հարստութեամբ ու պերճութեամբ աւելի նշանաւոր եղաւ։ — Ասորիք զեղխութեան ու անառակութեան երկիրն էր. Փիւնիկէ՝ կը ծաղկէր իր հնդկական ու արաբական բերքերուն առեւտրովը. Փոքր Ասիայի արեւմտեան ծովեզրներն ամէն տեսակ բերքերու առատութեամբ եւ անթիւ արուեստակերտներով երեւելի էին։ Հռոմէական իշխանութեան տակ ամենէն աւելի կորսնցուց Յունաստան. բայց Աթէնք՝ միշտ գիտութեանց կեդրոն մնաց։ Իտալիա՝ քաղաքակիրթ աշխարհքին միջավայրը կեցած՝ կը բուսցընէր կենաց հաճոյական ամէն բերքերը։ Հոն՝ ալ երկրագործութիւն չկար, ինչու որ ամբողջ թերակղզին ամարանոցներով ու պարտէզներով ծածկուած էր։ Ամարանոցներուն մէջ կային, տարւոյն ամէն եղանակին համաձայն ամենաշքեղ բնակարաններ, բաղնիքներ, ձիընթացութեան տեղեր, թռչնավանդակներ, անուններին ելած ձկնարաններ եւ ամենէն թանկագին արծըլթէ ու ոսկիէ սպասներ։ Սիկիլիա կը մատակարարէր ամենէն աւելի, ցորեն, գինի եւ արջառ. Սպանիա՝ ունէր ձիու եւ մետաղի շատ բանուկ առուտուր. Բրիտանիա՝ ըստ մեծի մասին արօտատան մըն էր. Գաղղիայի, հարաւային դին միայն լաւ մշակուած էր։ Պետութեան ամէն կողմ կային արքունի ճամբաներ. ամէն տեղ՝ ուր որ հասարակաց օգուտը կը պահանջէր, շինուած էին ջրանցքներ, կամուրջներ, ջրմուղներ ու ամբարտակներ։ Տէրութեան եկամուտներն որ արդէն Պոմպէոսի ատեն 400 միլ. ֆրանքի հասած էին, կը կացուցանէին՝ արքունի կալուածատուրքը, գաղթականաց տասանորդը, բովերուն եկամուտը, նաւահանգստի մուտքը եւ զանազան տուրքեր, որոնց մէջ ժառանգութեան (5 հարիւրչեայ), ազատութեան (ստրկութենէն արձակուելուն, manumissio 5 հար.), սպառման (consumptio) եւ գաւառաց կալուածատուրքներն ամենէն նշանաւորներն էին։

## 40. Յ.-Կլաւդիոսեան տունը 14—68.

1. Ո՞վ յաջորդեց Աւգոստոսի։ — 2. Ի՞նչպէս կառավարեցին Տիբերիոս Կղաւդիոս ու Ներոն։

1. Տիբերիոս Կղաւդիոս Ներոն (14-37) անգութ, անառակ բռնաւոր մը, սպաննեց Աւգոստոսի վերջին թոռը Ագրիպպան, ազնուական Գերմանի-

կոսն ու վերջապէս նաեւ իր մտերիմ Սէյանը։ Ներոն ամենէն ազնուական Հռոմայեցիներն սպաննելէն ետեւ՝ ժողովրդեան ժողովները դադրեցուց. եւ քրէական յանցանաց դատաստանը (iudicia maiestatis) խոթեց։

Կէսար Կալիգուլա (37-41) Գերմանիկոսի որդին, կը մոլեգնէր (գուցէ մտաց խանգարմանէ) անողորմ անգթութեամբ, ամէն հարուստ եւ երեւելի քաղաքացւոց դէմ։ Մէկ տարուան մէջ 550 միլիոն ֆրանգ մսխեց. ինք զինք իբրեւ Աստուած պաշտել տուաւ եւ սպանուեցաւ թիկնապահաց առաջնորդէն (praefectus praetorio):

2. Հիւանդ ու ապուշ Տիբերիոս Կլաւդիոս Կէսարի վարչութեանն ատեն (41-54) կը կառավարէր պետութիւնն իր անամօթ կինը Մեսսաղինա. իսկ ասոր գլխատմանէն ետքը, Ագրիպպինա՝ որ անկարող կայսրը թունաւորեց, որպէս զի իր որդին Ներոն գահն ելլէ։

Ներոն Կլաւդիոս Կէսար (54-68) դեռ պատանի, բայց արդէն կատարեալ չարագործ մը, սպաննեց (Պոպպէա Սաբինայէն գրգռուած) իր խորթ եղբայրը Բրիտանիկոսը, իւր մայրն ու ամուսինը եւ վերջապէս նաեւ իր ուսուցիչը՝ Սենեկան, ու հազարաւոր ազնուական Հռոմայեցիներ։ Հռոմ քաղաքը կրակի տուաւ, որպէս զի աւելի փառաւոր շինէ. եւ ուզեց ինք զինք արդարացընել, քրիստոնէից դէմ անգութ հալածանք մը հանելով (64)։ Կը պարծէր իբրեւ երգիչ ու կառավար։ Սպաննեց ինք զինք, 31 տարւան, երբ սպանիական լէգէոնները Գաղբա զօրավարն ինքնակալ հրատարակեցին։

## 41. Լաւ Կայսրները 69-180.

1. Ո՞վ յաջորդեց Ներոնի։ — 2. Որո՞նք են լաւ կայսրները։ — 3. Ի՞նչպէս կառավարեցին Ադրիանոս, Անտոնինոս Պիոս ու Մարկոս Աւրելիոս։

1. Սերվիոս Գալբայէ հետ (որ խոստացուած պարգեւը չտալուն՝ քիչ մը ետքը Թիկնապահներէն սպաննուեցաւ), կայսր հրատարակուեցաւ Սպանիայի մէջ Օթոն ու Ռենոսի գաւառները Վիտելլիոս։ Օթոն սպաննեց ինք զինքը՝ կորսուած ճակատէ մ՚ետեւ. ու երբ Վիտելլիոս ալ (շատակերին ու շուայտին մէկը, որ 8 ամսուան մէջ 160 միլ. ֆրանք մսխեց,) սպաննուեցաւ, Փլաւիոս Վեսպասիանոս ասորական լեգէոններէն ինքնակալ հրատարակուեցաւ (69ին)։

2. Վեսպասիանոս (69-79) պետութեան մէջ նորէն խաղաղութիւն, կարգ ու կանոն խոթեց. յառաջացուց արուեստներն ու գիտութիւնները եւ շինեց Կոլոսէոնը։ Երուսաղէմ՝ երկայն պաշարմանէ ետեւ Տիտոսէ առնուեցաւ, կործանուեցաւ (70) ու Հրէայք հռոմէական պետութեան ամէն երկիրները տարածուեցան։ Բրիտանիա՝ Ագրիկողայի ձեռօք նուաճուեցաւ։ — Իրեն յաջորդեց որդին,

Տիտոս Փլաւիոս Վեսպասիանոս (79-81) "մարդկեղէն ազգին սէրն եւ ուրախութիւնը"։ Ասոր կարճատեւ կառավարութեանն ատեն (79) պատահեցան Վեսուվի բռնկիլն; Հերկուլանոն ու Պոմպէի քաղաքներուն գետնի տակ անցնիլը, եւ սոսկալի ժանտամահ մը Հռոմի մէջ։

Փլաւիոս Դոմիտիանոս (81-96) Տիտոսի աննման եղբայրը, կը մոլեգնէր անհնարին կատաղութեամբ՝ ամէն բարիներուն դէմ։ Դակիացւոց դէմ ըրած անյաջող արշաւանքէն ետեւ — որոնց հարկ վճարելու ստիպուեցաւ — յաղթանակաւ

Հռոմ մնաց եւ ինք զինք իբրեւ Աստուած պաշտել տուաւ: Սպանուեցաւ Թիկնապահաց առաջնորդէն:

Կոկկէոս Ներուաս (96-98) դաւադիրներէն կայսր ընտրուած՝ կառավարեց քաղցրութեամբ ու որդեգրեց իրեն Տրայիանոս սպանիացին:

Ուլպիոս Տրայիանոս (98-117) կառավարեց զօրութեամբ եւ արդարութեամբ: Շինեց արքունի ճամբաներ. յաջող արշաւանքներէ ետեւ, Դակիան, Հայաստանն ու Միջագետքը հռոմէական նահանգ ըրաւ: — Իր ատենն էին Պլինիոս Կրտսեր, Տակիտոս, Պլուտարքոս:

Յ. Էլիոս Ադրիանոս (117-138) Տրայիանոսի հօրեղբայրը խաղաղութիւնը պահելու համար՝ ետ տուաւ Պարթեւներուն Եփրատի անդին եղած երկիրները: Ճանապարհորդեց տէրութեան ամէն գաւառներուն մէջ եւ հոգ տարաւ օրէնսդրութեան: — Իւր որդեգրին

Անտոնինոս Պիոսի կառավարութիւնը (138-161) պետութեան համար ամենաերջանիկն եղաւ: Իր կառավարութեան ատեն գրեթէ շարունակեալ խաղաղութիւն մը տիրելով՝ պետութեան մէջ վաճառականութիւնն եւ արուեստները շատ ծաղկեցան:

Մարկոս Աւրելիոս Անտոնինոս Փիլիսոփոս (161-180), զինք որդեգրող հօրը պէս ազնուական ու իմաստուն էր: Պատերազմեցաւ Մարկոմաններուն դէմ ան միջոցին, որ իւր կայսերակիցը՝ շուայտ Վերոսը, Պարթեւները ետ մղեց:

Եօթը լաւ կայսերաց օրինակը՝ բարոյից լաւացուցման վրայ շատ քիչ ազդեցութիւն ըրաւ: Պետութեան ամէն կողմը, մանաւանդ արեւելեան գաւառաց ու Իտալիայի մէջ, կը տիրէին վերջի աստիճանի անառակութիւն, շուայտութիւն ու զեղխութիւն:

## 42. Պետութեան անկումը գէշ կայսերաց տակ 180-270.

1. Ներքնական հռոմէական պետութեան անկումը։ — 2. Որոնք են այս միջոցին իրարու յաջորդող կայսրները։

1. Մարկոս Աւրելիոսի բռնաւոր որդւոյն, Կոմոդոսի հետ կը սկսի բիրտ ու անգութ կայսերաց շարք մը, որ արդէն անընդհատ քաղաքային պատերազմներով ու ոճրագործութիւններով ապականած ժողովուրդն՝ աւելի եւս ապականեցին։ Ասոնց գրեթէ ամէնը՝ Թիկնապահներու ձեռքով գահ ելան, եւ վար առնուեցան. մէջերնէն մէկ քանին միայն բնական մահուամբ մեռան։ Նաեւ բարբարոսներ ելան կայսերական գահը. որովհետեւ սահմանագլխի լեգէոններուն մէջ գրեթէ միայն ասոնք կը պատերազմէին։

Այս ներքին խռովութեանց առեն, Հռոմայեցիք՝ մէկ դիէն Դանուբի քովերը գտնուող գերմանական ժողովրդոց եւ մէկալ դիէն Պարթեւաց դէմ պատերազմելու ստիպուած էին։

2. Կայսերաց շարքը. 180ին Կոմոդոս. 129ին Պերտինաքս. 193ին Դիդիոս Յուլիանոս (որ գնեց Թիկնապահներէն կայսրութիւնը)։ 173 Սեպտիմիոս Սեւերոս (անգութ, բայց քաջ զինուոր մը)։ 211 Կարակալլա (20.000 Հռոմայեցի սպաննել տուաւ. եւ ամէն գաւառաց՝ հռոմէական քաղաքացւոյ իրաւունք շնորհեց)։ 217 Մակրինոս։ 217 Հեղիոգաբաղոս (թէպէտ 14 տարեկան բայց ամպարիշտներուն գլուխը)։ 222. Աղեքսանդր Սեւերոս (Ասոր զօրաւոր թագաւորութեան առեն Արտաշէս 226 ին նոր պարսկական պետութիւնը հիմնեց։ Իր յաջորդները՝ Սասանեանք, յաջողութեամբ պատերազմեցան Հռոմայեցւոց դէմ)։ 235 Մաքսիմիոս Թրակացին։ 238 Պուպիէնոս, Բալբինոս, Գորտիանոս։ 244 Փիլիպպ. Արաբացին. (Ասոր միջոցին կ'իյնայ պետութեան կանգնուելուն 1000 ամեայ Յոբելեանը)։ 249 Դեկիոս։ 251 Գաղլոս. 253 Վաղերիանոս. 259 Գաղլիենոս. 268 Կղաւդիոս։.

Պետութիւնը՝ 250էն մինչեւ 270, բոլորովին քայքայման վիճակի մէջ էր։ Այն միջոցին որ գաւառներուն ամէն զօրավարներն իրենք զիրենք անկախ հրատարակեցին (30 բռնաւորաց ժամանակը), Գոթացիք՝ Սեւ ծովուն եզերքներէն ու Դանուբէն հռոմէական պետութեան վրայ յարձակեցան, Փոքր Ասիայի եւ Յունաստանի ծովեզրները կողոպտեցին, այրեցին Աթէնքը՝ Արգոսն ու Կորնթոսը. երբ մէկալ դիէն Ալեմաններն եւ Փրանկները՝ Ռենոս, իսկ Պարսիկք՝ Եփրատ գետն անցան։ Գաւառաց մեծ մասին մէջ կը ճարակէր սովն ու ժանտախտը, որմէ բռնուելով մեռաւ նաեւ զօրաւոր Կղաւդիոսը։

## 43. Աւրելիանոս, 270. Դիոկղետիանոս, 300. Կոստանդիանոս, 333։

1. Ի՛նչ կառավարութիւն ունեցան Աւրելիանոս, Դիոկղետիանոս ու Կոստանդիանոս։ — 2. Ի՛նչ վիճակին մէջ էր առաջին դարերը քրիստոնէութիւնը։

1. Աւրելիանոս, պետութեան վերանորոգիչը (270-275), նուաճեց ապստամբած գաւառները, ղարկաւ Գերմանացիքն ու ամրացուց Դանուբի սահմանները։ Յաղթեց նաեւ Պալմիրայի հզօր թագուհւոյն՝ Զենոբիայի, որ մինչեւ Փոքր Ասիա ու Եգիպտոս իր իշխանութիւնը տարածած էր, եւ հիմնայատակ ըրաւ անոր մայրաքաղաքը (փառաւոր աւերակներ)։ Ինք՝ ինչպէս նաեւ իր յաջորդները, Տակիտոս (275) ու Պրոբոս (276-282. գինւոյ մշակութիւն Հունգարիայի մէջ ու Ռենոսի քով) նաեւ Կարոս ու իր որդիքը (282-284) զինուորներէն սպանուեցան։

Դիոկղետիանոս (284-306) կոտրեց զինուորաց բռնակալութիւնը եւ մտցուց բացարձակ անձնիշխանութիւն եւ արեւել. արքունիք։ Ինք զինք տէր եւ աստուած անուանել կու տար ու խոյր (diadème) կը կրէր։ Սահմանները աղէկ պաշտպանելու համար, բաժնեց գաւառները՝ Մաքսիմիանոսի, զոր Աւգոստոս, ու Գաղերիոսի եւ Կոստանդիոս Քլորոսի հետ՝ զորոնք Կեսար անուանեց։ Դիոկղետիանոսի մեռնելէն (313)

ու Մաքսիմիանոսի հրաժարելէն ետեւ, Գաղերիոս ու Կոստանդիոս Քլորոս եղան Աւգոստոս։

**Կոստանդիանոս Մեծ** (306-337), որ իր հօրը Կոստանդիոսի իբրեւ Աւգոստոս յաջորդեց, վեցամեայ արիւնահեղ պատերազմէ ետեւ նուաճեց իր իշխանակիցները։ Լիկինիոսի ալ յաղթելէն ետեւ՝ 324ին բովանդակ հռոմէական պետութեան միակ ինքնիշխան տէր եղաւ։ Կոստանդիանոս՝ արդէն այս պատերազմներուն ժամանակ բազմաթիւ քրիստոնեայ հասարակութիւններ պաշտպանած. եւ յառաջ քան քրիստոնէութիւնն ընդունիլը՝ (մահուանէն քիչ մը յառաջ ինք զինք մկրտել տուաւ,) շատ եկեղեցիներ շինել ու հեթանոսական տաճարներն քանդել տուած էր։ Իբրեւ միահեծան Տէր՝ քրիստոնէութիւնը տէրութեան կրօն ըրաւ։

Տէրութեան նիստը, Հռոմէն՝ ուր դեռ շատ հասարակապետական յիշատակներ կային, Կոստանդինուպոլիս փոխադրուելով, տէրութեան սահմանադրութիւնը բոլորովին փոխուեցաւ։ Պետութիւնը 4 կուսակալութիւններու (praefectura) բաժնուեցաւ (Արեւելք, Իլիւրիկէ, Իտալիա, Գաղղիա)։ Ասոնք դարձեալ վիճակներու եւ գաւառներու։ — Քաղաքական վարչութեան գլուխը կեցած էր Թիկնապահաց առաջնորդը (praefectus praetorio). ասոր իշխանութեան տակը կային սորին պաշտօնատարաց բազմութիւն մը, որոնց ամէն մէկուն աստիճանը ճշդիւ որոշուած ու տիտղոսներով նշանակուած էր։ Տէրութեան իրողութեանց վերին վարչութիւնը, կայսեր խորհրդարանին (consistorium) ձեռքն էր։

2. Հռոմէական կայսերաց ներքեւ տիրած ընդհանուր թշուառութեան ատեն, Յիսուսի Քրիստոսի վարդապետութիւնը բոլոր հռոմէական պետութեան մէջ տարածուեցաւ։ Առաքեալք արդէն Փոքր Ասիա, Յունաստան ու Իտալիա խել մը քրիստոնեայ հասարակութիւններ հիմնած էին, որոնք շուտով բազմացան. վասն զի քրիստոնէից՝ հաւատոյ համար սիրով մահը յանձն առնուլը, եւ ցուցուցած անօրինակ առաքինութիւններն ուրիշներուն ալ իրենց հետեւելու եռանդը զարթուց։ Քրիստոնէից՝ Ներոնի (64), Տրայանոսի (107), Դեկոսի (194) եւ ուրիշ կայսերաց ատեն կրած անգութ հալածանքներն ուրիշ բանի չծառայեցին, բայց եթէ հաւատացելոց թիւը շատ-

ցընելու: Ինչու որ ամէն մէկ նահատակին արիւնը, նոր ու աւելի քաջ հաւատոյ դիւցազուններ կը յարուցանէր: — Գաղղիենոս եղաւ առաջին կայսրն՝ որ քրիստոնեաները պաշտպանեց. իսկ Կոստանդիանոս՝ ըրաւ քրիստոնէութիւնը՝ տէրութեան կրօն:

Եկեղեցւոյ՝ աստուածային պաշտամունքն ի սկզբան շատ պարզ էր: Բայց Դ. եւ Ե. դարերուն մէջ սկսաւ աւելի շքեղ կերպով կատարուիլ: Կոստանդիանոս շնորհեց կղերին առանձին կալուածներ, յատուկ դատաստան եւ հեղինակութիւն՝ տէրութեան իրողութեանց վրայ: Այս միջոցիս նաեւ հաւատոյ այլեւայլ վարդապետութեանց եւ ի մանաւորի Քրիստոսի աստուածութեան դէմ, մոլորութիւններ ելան: Նիկիայի ընդհանուր ժողովոյն մէջ (325)՝ Արիոսի վարդապետութիւնը (թէ Քրիստոս Աստուծոյ արարածն է, ուստի եւ չէ թէ համագոյ, այլ նմանագոյ է Հօր) իբրեւ հերետիկոսութիւն դատապարտուեցաւ: Բայց արիոսութիւնը անկէ ետեւ ալ Վանդալներու եւ Գոթաց մէջ բաւական ժամանակ մնաց:

## 44. Հռոմէական պետութեան բաժանումը Թէոդոս Մեծին յետոյ. 395.

1. Որո՞նք են Կոստանդիանոսի յաջորդները: — 2. Ի՞նչպէս կառավարեց Թէոդոս Մեծ:

1. Կոստանդիանոսի որդիները՝ Կոստանդիանոս Բ., Կոստանդիոս ու Կոստաս (337-350), իշխանութիւնն առնելու համար իրարու հետ արիւնահեղ պատերազմներ ըրին: Անոնցմէ Կոստանդիոս, իր ինը ազգականները սպաննելէն ետեւ, առանձինն իշխան եղաւ:

Յուլիանոս Ուրացեալ, Կոստանդիոսի եղբօրորդին (361-363) հեթանոսական փիլիսոփայութեամբ կրթուած ու քաջ կայսր մը (որ իբրեւ կեսար 357ին՝ Ստրասպուրկի քով Ալէմաններուն յաղթեց), մտցուց նորէն հեթանոս քուրմերն. եւ ինկաւ Պարսից դէմ ըրած պատերազմին մէջ:

Յովբիանոսի կարճատեւ կառավարութենէն ետեւ՝ կայսր ընտրուեցաւ Վաղենտինիանոս Ա. (364-375), որ իր Վաղէս եղբայրն Արեւելքի Օգոստոս

անուանեց։ Անոնց կառավարութեանն ատեն օտարազգաց գաղթականութիւնը. վասն զի Հոներէն նեղուած արեւմտեան Գոթացիք՝ արեւելեան Հռոմէական պետութեան մէջ ընդունուեցան (376ին)։ Վաղենտինիանոսի որդիքը՝ Գրատիանոս († 383) ու Վաղենտինիանոս Բ († 392) Վաղեսի մահուանէն ետեւ (378), Թէոդոս սպանիացին Արեւելքի վրայ Օգոստոս դրին։

2. Թէոդոս Մեծ, 394էն ի վեր միահեծան տէր նաեւ Արեւմուտքի, քաջութեամբ պաշտպանեց իր սահմանները՝ յարձակող գերմանական ազգաց դէմ։ Արգելեց հեթանոսական զոհերը, հալածեց հեթանոսներն (pagani) ու նուաճեց հերետիկոսները։ Իր մահուանէն յառաջ, բաժնեց պետութիւնը՝ իւր Արկադիոս ու Ոնորիոս որդւոցը մէջ։ Ասանկով ելան, Արեւելեան (յունական, բիւզանդեան) ու Արեւմտեան (արեւմտեան հռոմէական) կայսրութիւնները։ — Առաջինը խել մը փոփոխութիւններ կրելէն ետեւ, տեւեց 1000 տարի մըն ալ (մինչեւ 1453)։

## 45. Արեւմ. Հռոմէական պետութեան կործանումը 476.

1. Ե՞րբ ու ինչպէս լմնցաւ արեւմտեան հռոմէական պետութիւնը։

1. Այն միջոցին (Ե. դարուն), որ ազգաց արշաւանքները՝ Արեւելեան Հռոմէական կայսրութեան վնաս մը չկրցան հասցընել, արեւմ. Հռոմէական պետութեան շատ գաւառներն՝ արդէն Ոնորիոսի ատեն (որ իւր Ստիլիքոն պաշտօնեան սպաննել տալով 408ին՝ զրկեց ինք զինք հզօր պաշտպանէ մը) գերմանական ազգաց աւար եղան։ Վասն զի Սպանիա՝ Վանդալներէն, Սուեւներէն ու արեւմ. Գոթացի-

ներէն, իսկ Գաղղիա՝ Բուրգունդացիներէն ու Ֆրանկներէն աշխարհակալուեցաւ։ Ոնորիոսի որդւոյն ու յաջորդին, Վալենտինիանոս Գ.ի ատեն (423-455) Ափրիկէն Վանդալներն, իսկ Բրիտանիան՝ Անգեղներն եւ Սաքսոններն առին։ Թէպէտ եւ քաջն Այետիոս պաշտպանեց 451ին տէրութիւնը՝ յառաջ քալող Հոնաց դէմ, բայց կայսրմէ սպանուեցաւ։

Վաղենտինիանոսի սպանմանէն ետեւ, Հռոմ 455ին Գենսերիկոսի առաջնորդութեամբ՝ Վանդալներէն կողոպտուեցաւ. եւ քիչ մը ետքը՝ գերմանացի վարձկանազօրաց առաջնորդներն՝ Իտալիայի մէջ իշխանութիւնը ձեռուընին առին։ Յամուվեց տարի կառավարեց պետութիւնը Ռիկիմէր Սուեւացին։ Ոդոակէր վար առաւ 476ին վերջին կայսրը, Ռոմուլոս Աւգոստոսն, եւ ինք զինք Թագաւոր անուանեց։ — Այսպէս վերջացաւ արեւմ. հռոմէական պետութիւնը, 1230 տարի տեւելէն ետեւ։

Հին պատմութեան վերջին հատածը բարոյական կենաց տխուր մէկ պատկերն առջեւնիս կը դնէ, որ նոյն իսկ քրիստոնէութեամբ չէր կրցած լաւանալ։ Ստոյգ է, ազգաց գաղթականութեան ատենը հեթանոսութիւնը, հռոմէական պետութեան մէջ գրեթէ ամէն տեղ ջնջուած էր, բայց դեռ քրիստոնէական հոգին ընդհանուր եւ տիրող եղած չէր։

# ՄԻՋԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Քանի՞ հատուած կը բաժնուի Միջին դարու պատմութիւնը։

Միջինդարեան պատմութիւնը չորս գլխաւոր հատուած կը բաժնուի.

1. Առաջին. Հռոմէական պետութեան կործանումէն, մինչեւ Վերտէօնի դաշինքը. 476-843։

2. Վերտէօնի դաշինքէն՝ մինչեւ խաչակիրք. 843-1096։

3. Խաչակրաց սկսելէն մինչեւ վերջը. 1096-1291։

4. Խաչակրաց լմննալէն մինչեւ Նորոգողութիւն. 1291-1517։

---

## Ա. ՀԱՏՈՒԱԾ

*Առաջին. Հռոմէական պետութեան կործանումէն, մինչեւ Վերտէօնի դաշինքը. 476-843:*

## 46, Միջին դար.

1. Ի՞նչ կը դնէ առջեւնիս Միջին դարը։ — 2. Քանի՞ շրջան կը պարունակէ։

1. Հին պատմութիւնը՝ առջեւնիս դրաւ շարք մը ժողովրդոց, որոնք իրարու յաջորդելով իրենց իշխանութեան հետ՝ երթալով ընդարձակագոյն շրջան բռնող պետութեանց մէջ նաեւ ազգային քաղաքակրթութիւն տարածեցին։ — Միջին դարու պատմութիւնը, կը դնէ մեր առջին, բստ մասին Հռոմէական պետութեան գաւառներուն եւ բստ մասին միջին ու հիւսիսային Եւրոպայի մէջ հիմնուած տէրութեանց մի եւ նոյն ժամանակի մէջ նաեւ զարգանալը։

2. Միջին դարու ազգերը զարգացան գլխաւորաբար քրիստոնէութեան ազդեցութեան տակ, մահմետականութեամբ նոր կենդանութիւն առած Արեւելքի հետ ունեցած պատերազմներովը։

Առաջին շրջանը կը լմննայ, ազգաց գաղթականութեամբ հիմնուած տէրութեանց՝ մեծ Փրանկեան պետութեան մը վրայ միանալով։ — Այս միջոցին՝ Արեւելքի մէջ, Արաբացւոց իշխանութիւնն իր ամենամեծ բարձրութեանը կը հասնի։

Երկրորդ շրջանը կը պարունակէ՝ այս երկու մեծ պետութեանց, այլ եւ այլ մասերու բաժնուիլը։

Երրորդ շրջանին մէջ, քրիստոնէական աշխարհքին՝ մահմետականութեան հետ ունեցած պատերազմներովը՝ Նուիրապետութիւնը կ՚ելլէ իր զօրութեան գագաթը. աւատապետութիւնը խիստ կը զարգանայ, եւ ասով Միջին դարը՝ իւր ամենէն ծաղկեալ վիճակին կը հասնի։ — Վերջապէս

Չորրորդ շրջանը կը ցուցընէ քահանայապետական զօրութեան տկարանալն եւ թագաւորական իշխանութեան աւելի հաստատութիւն առնելովը՝ աւատապետութեան ջնջուիլը։

## 47. Գերմանները՝ ազգաց գաղթականութենէն յառաջ.

1. Ի՞նչ ազգ էին Գերմանները։ — 2. Ի՞նչ ազգեր կային անոնց արեւելեան ու հիւսիսային դին։

1. Գերմանական ազգերն, որոնք մեծ գաղթականութենէն յառաջ, Ռենոսի արեւելեան ու Դանուբի հիւս. դին եղած երկիրները՝ մինչեւ Վայքսէլ գետ բռնած էին, Կեղտերէն կը տարբերէին՝ իրենց բարձր հասակովը, կապոյտ աչուըններովն ու խարտեաշ կամ կարմիր մազովը։ Ազատութեան սէր, քա-

ջութիւն, հիւրասիրութիւն եւ հաւատարմութիւն, իրենց գլխաւոր նկարագիրն էր։ Կեանքերնին պարզ էր։ Անասնոց մորթերով ծածկուած՝ արք՝ պատերազմի ու որսի կը զբաղէին. կանայք կը շինէին կըտաւէ ու բրդէ զգեստները. գերիներն ու ծառաները կը գործէին երկիրը։ Բարոյականնին մաքուր էր ու մնաց այնպէս, մինչեւ որ գաղթականութեամբ՝ հռոմէական ապականութիւնը սորվեցան։

2. Այս ազգաց արեւելեան ու հարաւային գին՝ Արեւելեան ծովէն մինչեւ Դանուբ ու Ռենոս՝ կը բնակէին բազմաթիւ, ըստ մասին թափառական պատերազմող ժողովուրդներ, որոնք Երրորդ ու Չորրորդ դարերուն մէջ՝ իրենց իշխանութիւնը, խել մը սլաւեան ազգերու վրայ տարածեցին. որոնք ընդհանուր անուամբ մը Սուեւ կը կոչուէին։ Ասոնց ամէնէն անուանիներն են. Սեմնոնները, Լոնգոբարդացիները, Բուրգունտացիք, Հերուլները, Վանդալները, Մարկոմաններն ու Գոթացիք։

## 48. Գերմանական-հռոմէական պատերազմ.

1. Ի՞նչ եղան (Հին պատմութեան) գերմանական-հռոմէական պատերազմները։ — 2. Ե՞րբ սկսան գերմանական ազգերը՝ հռոմէական պետութեան սահմանները մտնել. եւ ինչ կարգաւ։ Ազգաց գաղթականութեան գլխաւոր պատճառն ինչ է։

1) Գերմանները (Կիմբրացւոց ու Տեւտոններու արշաւանքներովը, 34) Հռոմայեցւոց հետ շօշափման մէջ գալէն ետեւ, Գաղղիա՝ Կեսարի (50ին), եւ Ստորին Դանուբեան երկիրները՝ Դրուսոսի եւ Տիբերիոսի ձեռօք (15ին) հռոմէական գաւառ եղան։ Այնպէս որ այս ժամանակէն՝ Ռենոս ու Դանուբ, Գերմանաց եւ Հռոմայեցւոց մէջ սահման եղաւ։ Աւգոստոսի զօրավարները փորձեցին ասոր վրայ՝ նաեւ Գերմանիա մտնել եւ կրցան ալ քանի մը ցեղերու հետ դաշինք դնել.

եւ ուրիշները զինուք նուաճել։ Սակայն արդէն 9 ին, Ք. Ե. Արմինիոս, Վարոսի լեգէոնները յաղթելով՝ վերջացուց հռոմէական իշխանութիւնը Գերմանիայի մէջ։ Անկէ ետքը բաւական համարեցան Հռոմայեցիք, իրենց պետութեան սահմաններն երկու գետերուն քով կանգնած դղեակներով պաշտպանել։

2. Գերմանական յարձակմունքները, հռոմէական սահմանագլուխներու վրայ, սկսան 160 ին։ Քատտերը՝ Գաղղիա ու Մարկոմանները՝ Պաննոնիա մտան։ Թէպէտ եւ Մարկոս Աւրեղիոսի գերմանական վարձկանազօրը զանոնք ետ մղեց. բայց 200 ին գերմանական ցեղերը, չորս մեծ դաշնակցութիւն կազմելով՝ աւերիչ արշաւանքներով պետութեան սահմանները կոխեցին։

Ա. Հարաւային Գերմանիայի մէջ, կազմուեցաւ Ալեմաններուն դաշնակցութիւնը։ Երրորդ դարուն վերջերը՝ ասոնք բռնեցին Ռենոս գետին աջ դին եղած հռոմէական երկիրները. եւ անկէ Գաղղիա յարձակեցան։

Բ. Փրանկներու դաշնակցութիւնը տարածուեցաւ Գերմանիայի հիւս. արեւմ. դին. ու Երրորդ դարուն վերջերը՝ անցաւ հռոմէական սահմանները։ Կոստանդիանոսի ժամանակէն Ալեման ու Փրանկ զինուորներն էին կայսերաց գլխաւոր պաշտպանները. եւ ձեռուընին ունէին ասոնք շատ հեղ արքունեաց ու տէրութեան ամենաբարձր պաշտօնները։

Գ. Սաքսոնները՝ Երրորդ դարէն վեր կ՚ապականէին ծովէն Գաղղիայի ու Բրիտանիայի ծովեզերները։

Դ. Երրորդ դարուն սկիզբները՝ Գոթացիք, որոնց հետ միաբանեցան Սուեւներն ու Վանդալները, նուաճեցին Վայքսելի եւ Սեւ ծովու մէջ եղած սար-

մատական (սլաւեան) ցեղերը։ Բայց քիչ մը ետքը՝ իրարմէ բաժնուեցան։ Հար. Գերմանիայի մէջ՝ Դանուբի երկայնութեամբը տարածուող Վանդալները, Պաննոնիա հաստատուեցան։ Արեւմտեան Գոթացիք՝ որ Դակիան բռնած էին, (274) Վանդալներու հետ արիոսեան քահանաներու ձեռօք՝ քրիստոնէութեան դարձան։ Իսկ Արեւելեան Գոթացիք՝ շարունակեցին իրենց զինուորական կեանքը. եւ Սեւ ծովէն՝ յունական կայսերութեան ծովեզրները կը կողոպտէին։ Երբ ասոր վրայ Դոն եւ Վոլկա գետերուն մէջ գըտնուող Ալանները ալ նուաճեցին՝ իրենց իշխանութիւնը (350 էն ատենները) Հերմանրիկոս թագաւորին ատեն՝ Վոլկայէն ու Սեւ ծովէն, մինչեւ Օտէր եւ Արեւելեան ծով տարածուեցաւ. բայց Հոներուն յառաջ քալելովը իրենց պետութիւնը վերջացաւ։ Հոնք եղան միանգամայն պատճառ, ազգաց մեծ գաղթականութեան. որով՝ Գերմանները արեւմտեան հռոմէական գաւառաց տէր եղան։

## 49. Ազգաց գաղթականութիւնը.

1. Ո՞ր ազգերը գաղթեցին արեւմ. Գոթացիք. ինչո՞ւ իտալիա մտան. ի՞նչ պատճառաւ Վանդալներն ու Սուեւները տեղերնէն ելան։ — 2. Արեւմ. Գոթացիք երբ Գաղղիա մտան։ Վանդալք ինչո՞ւ Ափրիկէ անցան։ Ե՞րբ հիմնուեցան եօթը թագաւորութիւնները։ — 3. Ի՞նչ հետեւութիւն ունեցաւ Հոնաց արշաւանքը. ինչ եղաւ իրենց երկիրը. Ո՞վ տուաւ վերջին հարուածը հռոմէական պետութեան։

1. Հոնք (մղուլական վայրագ, թափառական ժողովուրդ մը) 376 ին, Ուրալի հարաւ. կողմերէն, Վոլկա գետն անցան, Ալանները ու Արեւելեան Գոթացիքը նուաճեցին եւ իրենց իշխանութիւնը Դանուբի հիւս. կողմէն մինչեւ Պաննոնիայի սահմանները հասցուցին։ Արեւմտեան Գոթացիք Հոներէն նեղուած՝ Վաղէս կայսեր աղաչեցին որ զիրենք հռոմէական պետութեան մէջ ընդունի։ Բայց իրենց

դէմ եղած անիրաւութիւններէն գրգռուած՝ ապըստամբեցան, զարկին Վաղէս կայսրը Ադրիանուպոլսոյ քով 378ին. եւ աւերելով ու կողոպտելով Հեմոս Թերակղզին գերփեցին։ Ասոր վրայ Թէոդոս Մեծ, իրենց բնակութեան տեղ տուաւ Թրակիան. ուր իրենց սեպհական օրէնքներովը կ՚ապրէին։

Արկադիոս (395էն վեր), արեւելեան հռոմէական պետութեան կայսրը, Ռուփինոս պաշտօնէին ձեռօք, Արեւմտեան Գոթացիները Ալարիկոսի առաջնորդութեամբն Իտալիա մտնելու յորդորեց (401)։ Բայց Ոնորիոսի Ստիլիքոն քաջ զօրավարն իրենց յաղթեց (403)։ Երբ Ստիլիքոն — որ 406ին գերմանական հեթանոս խումբ մը Փլորենտիայի քով փճացընելով՝ Իտալիան ազատած էր — Ոնորիոսի ձեռօք սպանուեցաւ, Ալարիկոս 408ին Իտալիան աշխարհակալեց ու Հռոմ՝ երկու հեղ ի զուր պաշարելէ ետեւ, առաւ ու կողոպտեց 410։

Բայց որովհետեւ Ստիլիքոն՝ Ալարիկոսի դէմ Իտալիան պաշտպանելու համար, Բրիտանիայէն ու Գաղղիայէն հռոմէական լեգէոնները ետ կանչած էր՝ Վանդալք, Ալաններն ու Սուեւները Ռենոսն անցան ու Սպանիայի մէջ հաստատուեցան։ Վանդալները՝ Թերակղզւոյն Հա[illegible] մասն (Անտալուսիան), Ալանները՝ այսօրուան Բորդուկալն, իսկ Սուեւները՝ Կալիսիան բռնեցին։ Մի եւ նոյն ժամանակ Բուրգունդացիք՝ Ռոնի կողմերը, իսկ Փրանկները՝ հիւսիսային Գաղղիայի մէջ տարածուեցան։

2. Ալարիկոսի մահուանէն ետքը (որ Բուսենտոն գետը թաղուեցաւ), թողուցին արեւմ. Գոթացիները (412) Իտալիան ու Աթաուլփի առաջնորդութեամբ Գաղղիա անցան։ Հոս հիմնեցին 415ին

Վալլիայի ատենը զօրաւոր տէրութիւն մը՝ Տոլոզա (Թուլուզ) գլխաւոր քաղաքով։

Արեւմտեան Գոթացիներէն նեղուած Վանդալները, Հռոմայեցի տեղապահէ մը (Բոնիփակիոսէն) կանչուելով՝ Գենսերիկոսի առաջնորդութեամբ Ափրիկէ անցան (429)․ Հնազանդեցուցին Հիւս. ծովեզրը, նուաճեցին (430) Կարքեդոնն ու կ'աւերէին անկէ Սիկիլիան, Սարդինիան ու Իտալիան։

Բրիտանացիք՝ Հռոմայեցի լեգէոններուն քաշուելէն ետեւ, իրենց հիւսիսային դին գտնուած Պիկտաց ու Սկովտաց դէմ իրենք զիրենք պաշտպանել չկարենալով, Գերմանիայէն՝ Անգլներն ու Սաքսոնները օգնութեան կանչեցին։ Ասոնք՝ 449ին նուաճեցին հարաւային Անգղիան ու հիմնեցին Եօթը Թագաւորութիւնները (Heptarchie)։

3․ Այն միջոցին որ գերմանական ազգերը կ'ամրանային հռոմէական գաւառներուն մէջ՝ Ատտիղա, հոնական վայրենի ցեղերը միաբանած ու խել մը նուաճուած ազգեր ալ հետն առած, այս օրուան Հունգարիայէն ելաւ, դէպ ի արեւմուտք արշաւելու եւ հոն տեղուան երկիրներուն տիրելու համար։ Իրեն դէմ միացան Հռոմայեցիներն՝ Այետիոսի առաջնորդութեամբ, եւ Արեւմ. Գոթացիք ու Փրանկները․ եւ Կատալաունեան (Շալոնի քով) արիւնահեղ ճակատին մէջ իրեն յաղթեցին 451ին։ Ատտիղա՝ ասոր վրայ անապատ դարձուց վերին Իտալիան․ ուսկից խել մը բնակիչ փախչելով՝ հիմնեցին Վենետիկ քաղաքը։ Մեռաւ Ատտիղա Դակիա դարձած ատեն (453)։

Ատտիղայի մահուամբ քայքայեցաւ իր տէրութիւնն ալ։ Հոնաց մնացորդները՝ Սեւ ծովուն եզերքը քաշուեցան։ Արեւելեան Գութք՝ առին Պաննոնիան,

գեպիդները՝ Դակիան։ Այս ազգաց Հիւսիսային դին տարածուեցան Լոնգոբարդացիք։

Հինգերորդ դարուն կէսերը՝ միայն Իտալիայի վրայ ամփոփուած Հռոմէական պետութեան՝ անոր վերջ տուաւ Ոդոակեր (476), որ Ռոմուլոս Աւգուստոս կայսրը վար առաւ (Թ. 45)։

## 50. Եւրոպա՝ ազգաց գաղթականութենէն ետքը.

1. Ի՞նչ կերպարանք առաւ Եւրոպա՝ ազգաց գաղթականութենէն ետեւ։

Ազգաց գաղթականութեամբ գերմանական ազգերը՝ արեւմ. Եւրոպայի տէրերն եղան։ Սակայն գերմանական տէրութիւնները կարճ տեւողութիւն ունեցան. վասն զի արդէն առաջին դարերուն մէջ կամ բոլորովին ջնջուեցան, կամ մեծ Փրանկեան պետութեան մէջ ձուլուեցան։

1. Ափրիկէի Հիւս. ծովեզերքին վրայ 429ին, Վանդալներէն հիմնուած տէրութիւնը, Բեղիսարիոս Յուստինիանոս կայսեր զօրավարը ջնջեց (534)։

2. 409էն վեր Հիւս. արեւմ. Սպանիայի մէջ բնակող Սուեւները՝ 585ին արեւմ. Գոթացիներէն յաղթուեցան։ Վերջիններուն՝ 415ին հիմնած տէրութիւնը, բոլոր Սպանիան եւ Հար. արեւմ. Գաղղիան իր մէջը կը պարունակէր։ Այս տէրութիւնը կործանեցին Արաբացիք 711ին։

3. Հիւսիսային Գաղղիայի մէջ՝ 410էն վեր, կար Փրանկաց տէրութիւնը. իսկ Հարաւ. արեւել. Գաղղիայի մէջ՝ Բուրգունտացւոցը, որ 534ին Փրանկներէն նուաճուեցաւ։

4. Բրիտանիայի մէջ 449ին հիմնուած Անգլօ-սաքսոնական եօթնպետութիւնը՝ թագաւորութեան մը վրայ միացաւ 827ին։

5. Հարաւ. արեւմտեան գերմանիայի Ալանները՝ 496ին, Թիւրինգիացիք՝ 530ին, Բոյարները կամ Պաւիերացիք՝ 788ին, ու Սաքսոնացիք՝ 803ին Փրանկներէն նուաճուեցան։

6. Մինչեւ 489 Հունգարիա բնակող Արեւելեան Գոթացիք՝ Իտալիա անցան. Ոդոակէրի պետութիւնը կործանեցին ու երկրին տէրերն եղան, մինչեւ 554։

7. Լոնգոբարդացիք՝ Հունգարիայի Գեպիդները նուաճելէն ետեւ, 568ին Իտալիա գացին, բայց 774ին Փրանկներէն նուաճուեցան։

8. Արեւելեան Եւրոպան՝ մինչեւ Էլպա գետ ու Ալպեան լերինքը՝ բռնեցին Սլաւները։ — Իսկ Գակիան՝ Ֆիննեան եւ Թաթարական ազգերը (Աւարները, Բուլկարները)։

9. Արեւելեան Հռոմէական կամ յունական կայսրութիւնը կը պարունակէր իր մէջը, Պալքանի թերակղզիէն զատ՝ բոլոր Փոքր Ասիան, Ասորիքը, Պաղեստինը, Եգիպտոսն ու Միջերկրական ծովուն արեւելեան կղզիները. Յուստինիանոսի ատեն նաեւ Հիւս. Ափրիկէն ու Իտալիան։

## 51. Գերմանները՝ Հռոմէական հողի վրայ.

1. Ի՛նչ տեսակ էր Գերմանացւոց կեանքն այս միջոցիս։ — 2. Ի՛նչ վիճակի մէջ էին արուեստք ու գիտութիւնք ազգաց գաղթականութեան ատեն։

1. Թէպէտ եւ Գերմանները աշխարհակալած երկիրներնուն մէջ, կամաց եւ ուշ Հռոմէական կրթութեան սովորեցան, վասն զի խաղաղութեան գործքերը կ՚ատէին. բայց իրենցմէ նուաճուած ժողովուրդներուն զգայական ախորժանքները շուտ սորվեցան եւ հին բարոյական պարզութիւննին կորսնցուցին։ Երբ քրիստոնէութիւնն իրենց վրայ մեծագոյն

ազդեցութիւն մ'ունեցաւ, այն ատեն եղան բարձրագոյն կրթութեան ընդունակ:

2. Գերմանք՝ հռոմէական գաւառներուն տիրելու ատեն. բնիկները չվռնտեցին ու երկիրներն չապականեցին: Բայց շատ չանցաւ՝ լեզունին կորսնցուցին. եւ բառն տեղացիներուն՝ իբրեւ աւելի կրթեալներուն առին: Այսպէսով երեւան ելան ռոմանեան լեզուները: — Նոր տէրութեանց մէջ օրինաց մատեանները գրեթէ ամէն յանցանքներու համար միայն դրամատոյժ սահմանած էին: Ամէն տեղ երդում եւ անմեղութեան փորձ (ordale), գործածութեան մէջ էր. վրէժխնդրութիւնն ու անձնական իրաւանց պաշտպանութիւնն՝ ամէն ազատ մարդու թոյլ տրուած էին:

Ազգաց գաղթականութեան առաջին դարերուն մէջ՝ արուեստ ու մտաւորական կրթութիւն՝ անկածութեան մէջ էին: Առուտուրը՝ ստացուածոց անապահովութեան համար գրեթէ բոլորովին դադրած էր: Յունական կայսրութեան մեծագոյն քաղաքները՝ թէպէտ պահեցին, այս միջոցիս ալ, իրենց նախնական կրթութիւնը, բայց առանց անոր մէջ յառաջադիմութիւն կամ զարգացում մ'ընել կարենալու:

## 52. Արեւելեան Գոթաց տէրութիւնն Իտալիայի մէջ 493-554.

1. Ե՞րբ ու ինչպէս սկսաւ արեւելեան Գոթաց տէրութիւնն Իտալիայի մէջ: — 2. Յուստինիանոս ինչո՞ւ Իտալիա մտաւ: — 3. Ի՞նչպէս վերջացաւ արեւելեան Գոթաց տէրութիւնը:

1. Արեւելեան գոթաց թագաւորը՝ Թէոդորիկոս Մեծ, գիտուն եւ կրթեալ իշխանը, տարաւ իր ժողովուրդը (489ին) Իտալիա. զարկաւ Վերոնայի քովերը՝ Ոդոակէրը, աշխարհակալեց Իտալիան, ու ետքէն Ռաւեննան (493). Հպատակեցուց նաեւ Հարաւային Գերմանիան ու Հելուետիան: Պահեց հռոմէական սահմանադրութիւնը. եւ զարգացուց անապատ եղած երկիրը՝ մշակութեամբ, վաճառականութեամբ ու արուեստով: Մեռաւ 526ին:

2. Ամալասունթայի, Թէոդորիկոսի դստեր՝ իր հօրեղբօրմէն, Թէոդատէն սպանուիլը, պատճառ տուաւ Յուստինիանոս կայսեր՝ ասոր դէմ պա-

տերազմ բանալու (535ին)։ Կայսեր սպարապետը՝ Բելիսարիոս, ստիպեց Ռաւէննայի քով Վիտիգէսը՝ Թէոդատի յաջորդը, (539) հպատակելու. սակայն երբ Բելիսարիոս ետ կանչուեցաւ (549), քաջն Տոտիլաս՝ գրեթէ բոլոր Իտալիան նորէն աշխարհակալեց։

3. Ներսէս, Բելիսարիոսի յաջորդը՝ զարկաւ կրթեալ բանակով մը Լոնգոբարդները, Հերուլներն եւ ուրիշ Գոթացիները 552ին։ Տոտիլաս ճակատին մէջ ինկաւ։ Քաջն Տէյաս՝ արեւելեան Գոթաց վերջին թագաւորը՝ Կումէի քով ինալէն ետեւ, անապատ դարձած Իտալիան, դարձեալ հռոմէական կայսրութեան գաւառ եղաւ (554) եւ կը կառավարուէր Ռաւէննա նստող Վեցերորդապետներու (Exarques) ձեռօք։

## 53. Լոնգոբարդացւոց տէրութիւնն Իտալիոյ մէջ 568-774.

1. Լոնգոբարդացիք ինչու Իտալիա անցան։ — 2. Ե՛րբ ու ինչպէս հիմնուեցաւ Եկեղեցւոյ տէրութիւնը։

1. Լոնգոբարդացիք՝ ազգաց գաղթականութեան ատեն՝ Գերմանիայէն, այսօրուան Մորաւիան եւ արեւմտեան Գալիցիա իջան։ Հոս Աւարաց օգնութեամբ, Գեպիդաց պետութիւնը կործանելէն ետեւ, վշտացած Ներսէսէն կանչուելով՝ Ալբոինոսի առաջնորդութեամբ Իտալիա անցան, Պաւիան առին ու Թերակղզւոյն մեծագոյն մասին տիրեցին։

Երկիրը դքսութիւններու բաժնուեցաւ. որոնց մէջէն մէկ քանին, Թագաւորներէն գրեթէ բոլորովին անկախ էր։ Նուաճուած ժողովրդեան հետ այնչափ քաղցրութեամբ չվարուեցան Լոնգոբարդացիք՝ ինչպէս Արեւելեան Գութք ըրած էին։ Բայց երկիրը լաւ կը մշակուէր։ — Հռոմայեցի բնիկներն իրենց եկամտին երրորդ մասը կու տային իբրեւ տուրք։

Լուիտպրանդոս եւ Աիստուլփոս պատկերամարտից կռիւը յօգուտ գործածելով՝ վերին Իտալիայի շատ մը

յունական քաղաքներն առնելէն ետեւ, Այստուլփոս՝ Պեպինոս Փրանկաց թագաւորէն ստիպուած՝ հարկադրեցաւ աշխարհակալուած երկիրը Ստեփանոս Բ. քահանայապետին յանձնել։ Այստուլփոսի յաջորդը՝ Դեսիդերիոս, Կարոլոս Մեծէն յաղթուեցաւ (774), որ Լոնգոբարդական տէրութիւնը, Փրանկաց պետութեան հետ միացուց։

2. Յունաց կայսրները, Վեցերորդապետութիւնը կորսնցուցին ապստամբութեամբ մը, զոր յարոյց 728ին պատկերներու յարգութեանը դէմ ելած արգելքը՝ Հռոմի, Ռաւեննայի ու Վենետիկի մէջ։ — Այսոր վրայ Ստեփանոս Բ. (755) Պեպինոսէն, Հռոմէական եկեղեցւոյն (patrimonium Petri) ստացուածոցը եւ Ռաւեննայի Վեցերորդապետութեան վրայ (donatio Pipini), իբրեւ աշխարհական տէր հաստատուեցաւ. որով հիմ դրուեցաւ Եկեղեցւոյ տէրութեան։

Սիկիլիա ու Կալաբրիայի մէկ մասը Թ. դարուն Արաբացիներէն աշխարհակալուեցաւ։ Բայց Ապուլիա՝ մինչեւ ԺԱ. դարուն սկիզբը յունական իշխանութեան ներքեւ մնաց։

## 54. Յուստինիանոս 555.

1. Ի՞նչպէս կառավարեց Յուստինիանոս։ — 2. Ի՞նչ վիճակի մէջ էր յունական տէրութիւնն այս միջոցիս։

1. Քանի մը անկարող կայսրներէ ետեւ՝ ելաւ Յուստինիանոս (527-565) բիւզանդեան (արեւելեան հռոմէական, յունական) կայսրութեան գահը։ Ասիկայ՝ Բելիսարիոս սպարապետին ձեռօք, կործանեց Ափրիկէ Վանդալներու թագաւորութիւնը 534։ Սակայն այս երկիրը 650ին Արաբացիք առին։ Երբ Բելիսար՝ Սարդինիան, Կորսիկան, Սիկիլիան ու Իտալիան նուաճելէն ետեւ՝ (549ին) ետ կանչուեցաւ, Ներսէս՝ Իտալիայի աշխարհակալութիւնը գլուխ տարաւ (52. 3.)։ Երբ այս կերպով

պետութիւնը նոր գաւառներով կ՚ընդարձակուէր, Աւարներն ու Բուլկարացիք՝ երկիրը կ՚աւերէին, (Թէպէտ բազմաթիւ բերդեր կեցած էին Դանուբի երկայնութեամբը) մինչեւ Հելլեսպոնտոս։ Պարսից զօրաւոր թագաւորին՝ Խոսրով Ա.ին դէմ մղած պատերազմներն ալ այնպէս ձախող գացին, որ Յոյնք հարկադրեցան անոնցմէ խաղաղութիւնը գնել։

2. Այս միջոցիս պետութեան մէջ կը տիրէին, կրօնական սաստիկ կռիւներ ու կրկէսի կողմնակցութիւններ (կապոյտներ ու կանանչներ՝ որոնց մասնակից եղած էր նաեւ արքունիքն ու բոլոր ժողովուրդը)։ — Յուստինիանոս, Տրիբոնիանի ձեռքով, հռոմէական օրէնքները հաւաքել տուաւ (corpus iuris), կանգնեց Սոփիայի տաճարը, շինեց Դանուբի եւ Եփրատի քով զօրաւոր ամրոցներ ու սկիզբ ըրաւ Եւրոպայի մէջ՝ մետաքսաբուծութեան։

## 55. Բիւզանդեան պետութեան անկումը.

1. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Հերակլէոս։ — 2. Ի՞նչ են բիւզանդեան կայսրութեան անկման պատճառները։

1. Հերակլէոս կայսրը (610-641)՝ Ասիայի բոլոր գաւառները Խոսրով Բ. Պարսից թագաւորին ստիպուեցաւ տալ. բայց ետքէն փոքր Ասիան ետ առաւ. եւ Խոսրովի սպանուելէն ետեւ, մտաւ նաեւ Պարսկաստան։ Սակայն Արաբացիներէն յաղթուեցաւ. որոնք մինչեւ 640՝ նաեւ Ասորիքը, Պաղեստինն ու Եգիպտոսը նուաճեցին։

2. Հերակլի յաջորդաց ատեն՝ բիւզանդեան պետութեան համար սարսափելի ժամանակներ սկըսան։ Այս միջոցիս կ՚իյնան գահակալութեան արիւնահեղ կռիւները, (կայսերաց մեծ մասն սպանուեցան կամ անդամատեցան.) Բուլկարաց յաճախ յարձակումներն, որոնք՝ 670ին Աւարաց երկիրներուն մէկ մասին տիրեցին. եւ Արաբացւոց հետ պատերազմները։ Այս վերջինները 650ին Ափրիկէի հիւս. ծովեզրը, գրեթէ բոլոր փոքր Ասիան, Կիպրոսն ու

Ռոդոսը աշխարհակալեցին եւ (669-676) նաւատորմիղով մը նաեւ Կոստանդինուպոլիս պաշարեցին. որ միայն յունական կրակով կրցաւ ազատիլ։

Լեւոն Իսաւրացիով (717-741) կը սկսի զօրաւոր թագաւորաց շարք մը։ Կոստանդինուպոլիսը նորէն պաշարող Արաբացիները վռնտուեցան (718)։ Բայց պատկերաց յարգութեան դէմ ելած օրէնքը՝ Իտալիայի մէջ յեղափոխութիւն մը հանեց. որով վերջացաւ 728ին հոնտեղաց Վեցերորդապետութիւնը (53. 2.)։

Մակեդոնական ցեղին թագաւորաց ատեն (867-1056) տէրութիւնը լաւագոյն վիճակի մէջ էր։ Բասիլիոս (Վասիլ) Բ. Բուլկարաց տէրութիւնը (1018)՝ բիւզանդեան գաւառ մ'ըրաւ, յաղթեց Ռուսերուն, աշխարհակալեց Փոքր Ասիան ու Կիպրոսը։ Բայց այս աշխարհակալութիւնները, քիչ մը ետքը (1050), Փոքր Ասիայի մէջ երեւան ելլող Սելճուգեան Տաճկաց անցան։

## 56. Մուհամմէտ 622.

1. Քանի՞ ցեղ կը բաժնուէին Արաբիայի հին բնակիչները։ — 2. Ո՞վ է Մուհամմէտ, ինչպէս երեւան ելաւ։ — 3. Ի՞նչ կը պարունակէ Ղուրանը։

1. Կիզիչ աւազոյ անապատներով անմատչելի արաբական թերակղզւոյն բնակիչները՝ (Արեւելքի մէջ) Արաբացիք, (Եւրոպայի մէջ) Սարակինոսները, իրենց զանազան ցեղերէ սերելուն եւ անցուցած կենաց կերպին նայելով կը բաժնուէին, անապատի բնակիչներու (պէտավի) եւ քաղաքացիներու (հատէսի)։ Պէտավիները՝ որոնց միակ հարստութիւնն էր ուղտ եւ ձի, կ'արհամարհէին հատէսիները։ Բայց քաղաքներն, եւ ի մասնաւորի Մէգգա, Մէտինէ, Ատէն եւ Մոգգա՝ երեւելի էին իրենց խնկի, խահուէի ու համեմներու ընդարձակ առեւտուրովը։ Թէպէտ Շէյխի մը տակ եղած այլեւայլ ցեղերը, քաղաքական զօդիւ մը իրարու հետ կապուած չէ-

ին, բայց իրենց մէկ մասին համար Մեգգայի քեապէն նուիրական միութեան կեդրոն մըն էր։

2. Գորէիշեան ցեղին՝ Հաշէմի գերդաստանէն 571ին ծնաւ Մեգգա քաղաքը Մուհամմէտ, Ապտուլլահի որդին՝ մնաց գեղեցիկ ձիրքերով, անընդդիմադրելի ճարտարախօսութեամբ ու մարդկային մարմնոյ գեղեցկութեամբ երեւելին։ Առեւտրական ճամբորդութիւններով իր ժողովրդեան վրայ կատարեալ տեղեկութիւն ստանալէն եւ Գատիշայի հետ ամուսնանալով մեծ ստացուածքի տէր ըլլալէն ետեւ՝ Մուհամմէտ ինք զինք տեսական կենաց տուաւ։ Այն միջոցին՝ Արաբիա ամէն ատենէն աւելի՝ կրօնական եւ քաղաքական մեծ խառնակութեան մէջ էր։ Աստեղաց պաշտօնէն (սաբէականութենէն) զատ՝ որ ամէնէն աւելի տարածուած կրօնն էր, կային նաեւ քրիստոնէութիւն, հրէութիւն ու մոգակրօնութիւն։ Աբիսինիայի Նեկուշին (500) եւ Խոսրով Ա. Պարսից թագաւորին (շուրջ 550) աշխարհակալութիւններովը ալ երկիրը տակն ու վրայ եղած էր։

Այս միջոցին էր որ (611ին), իր քառասներորդ տարւան հասակին երեւան ելաւ Մուհամմէտ, միայն Աստուծոյ՝ իբրեւ Մարգարէն. ու աւետեց իր կռապաշտ ցեղակիցներուն խումբը։ Կինը, հօրեղբայրն Ալի, եւ աները, Ապուպէքր՝ առաջինն եղան, որ իրեն հաւատացին; Ի սկզբան անարգուած՝ ետքէն հալածուած՝ հարկադրեցաւ Յուլ. 15ին 622ին Մետինէ փախչիլ, ուր սիրով ընդունուեցաւ։ (Ասկից կը սկսի Հէճրան, մահմետականաց թուականը)։ — Հետզհետէ բոլոր ցեղերն ընդունեցան նոր վարդապետութիւնը։ 630ին Մեգգա նուաճուեցաւ եւ քեապէն պատկերներէն մաքրուելէն ետեւ, եղաւ մահմետականութեան կեդրոն։ Ասոր վրայ 631ին, Մուհամ-

մէտ 30.000 զօրքով բիւզանդեան տէրութեան վրայ յարձակեցաւ. երբ մեկալ դիէն Խալիդ՝ անհաւատ էմիրները նուաճեց։ Մեռաւ Մուհամմէտ 632 ին. զրուցին նայելով՝ իր թշնամիներէն թունաւորուած։ Գերեզմանը, Մետինէի մէջ, բազմաթիւ ուխտագնացութեանց տեղի եղած է։

3. Մուհամմէտի կրօնը՝ Իսլամ, իսկ անոր հետեւողները Միւսլիմ (հաւատացեալ) կը կոչուին։ Իրենց նուիրական գիրքն է Ղուրանը (գիրքը). որ Ապուպէքրէն քովէ քով բերուած եւ Օսմանէն 114 սուրաներու կամ գլուխներու բաժնուած՝ Մուհամմէտի խօսքերուն ժողովածուքն է։ — Իսլամի հաւատոյ գլխաւոր վարդապետութիւնն է, Աստուծոյ միութիւնն ու հոգւոյն անմահութիւնը։ Տիեզերաց արարիչը՝ անսահման, մշտնջենաւոր էակ մըն է, կերպարանք ու բնակութիւն չունի. ամէն կատարելութիւններն իր վրայ միացած են եւ պատկերի մէջ չի կրնար ներկայացուիլ։ Ինք զինք շատ անգամ, մանաւանդ Մովսէսի, Քրիստոսի եւ վերջապէս Մուհամմէտի ձեռօք յայտնած է։ Դրախտն ու դժոխքը՝ արեւելեան երեւակայութեան համեմատ ստորագրուած են։ — Բարոյական օրէնքները՝ կը յանձնեն, ուրիշ կրօններուն սորվեցուցած առաքինութիւնները. ի մասնաւորի ճշմարտասիրութիւն, ողորմածութիւն եւ արդարութիւն։ Նուիրական պատերազմներով պէտք է Իսլամը տարածել եւ կռապաշտութիւնը մէջ տեղաց վերցընել։ Միայն հրեայք ու քրիստոնեայք կրնան հաւատքներնուն մէջ մնալ։ — Արարողական օրէնքը. վերջին աստիճանի պարզ է, ուրբաթ օրերը մզկիթներուն մէջ հասարակաց աստուածային պաշտօն մը կը կատարուի՝ որ կայացած է աղօթք եւ Ղուրանէն քանի մը կտոր կարդալու վրայ։ Անկից զատ՝ ամէն հաւատացեալ պարտական է, ամէն օր, նախընթաց լուացումէ մ'ետեւ հինգ անգամ աղօթել. նաեւ Մէքքա ուխտի երթալը յանձնուած է։ Քահանայական կարգը շատ նուազ ազդեցութիւն ունի։ Կրօնաւորական կարգը՝ Մուհամմէտէն ետքը, Տէրվիշներու ձեռօք հաստատուեցաւ,

## 57. Ամիրապետութիւն.

1. Ինչպէս եւ մինչեւ ո՛ւր տարածուեցաւ Մուհամմէտի յաջորդաց իշխանութիւնը։ — 2. Ե՛րբ սկսաւ Ումմեանց ցեղը. Ե՛րբ լմնցաւ։

1. Առաջին ամիրապետներուն (այս ինքն Մուհամմէտի յաջորդաց) ատեն, Արաբացւոց իշխանու-

թիւնը տարածուեցաւ մէկ դիէն մինչեւ Ինդոս ու մէկալ դիէն մինչեւ Ատլանտեան Ովկիանոս։

Գորէյշեան ցեղին ամիրապետներէն առաջինը՝ Աբու-Բէքր, (632-634) Մուհամմէտի աները, Պարսկաստանի ու Յունաց պետութեան վրայ յարձակեցաւ։ — Էօմէր (634-644) բիրտ զինուորական մը, աշխարհակալեց Պաղեստինն, Ասորիքն ու 642ին Պարսկաստանը. ուր անդիէն իր զօրապետը Ամրու նուաճեց 640ին Եգիպտոսն, եւ ջնջեց աղեքսանդրեան մատենադարանին վերջին մնացորդները։ — Օսմանի ատեն (644-656) աշխարհակալուեցաւ Ափրիկէի հիւս. ծովեզրը։ — Ալի՝ Մուհամմէտի եղբօրորդին, Ֆաթիմէի այրն ու հաւատացեալներէն առաջինը (656-661)՝ հարկադրեցաւ ապստամբներուն հետ կռուիլ։ Սպանուեցաւ իւր երկու նախորդացը պէս։ Ասոր ատենն սկսաւ (Սիւննան ալ ընդունող) Սիւննիեանց եւ (Սիւննան մերժող ու առաջին երեք ամիրապետները չընդունող) Շիիթեանց կամ Ալիեանց հերձուածը։

2. Մուավիէի հետ, գահն եկաւ Օմմիեանց ցեղը (661-750)։ Բայց որովհետեւ անարգ էր ասիկայ Արաբիայի մէջ՝ անոր համար, ամիրապետութիւնը, Մէտինէէն՝ Դամասկոս փոխադրուեցաւ։ Ասոնց հիմնած ծովային զօրութիւնն այնչափ էր, որ Արաբացիք կրցան Միջերկրական ծովուն խել մը կղզիներն աշխարհակալելէն ետեւ, նաեւ յունական կայսրութեան վրայ յարձակիլ։ Վալիտի իշխանութեան ատեն՝ Մուսա նուաճեց Պէրպէրները. որոնք կէս մը յաղթողաց հետ միանալով՝ կազմեցին Մաւրիտանացւոց ազգը, կէս մըն ալ լեռնակողմանքը քաշուեցան։ Իսկ Թարիք 711ին Ճիպրալթարի նեղուցէն Սպանիա անցաւ, արեւմտեան Գոթաց զօրու-

թիւնը կործանեց եւ Մուսայի հետ գրեթէ բոլոր թերակղզին աշխարհակալեց. այնպէս որ միայն Աստուրիա, գոթական փոքր թագաւորութիւն մը մնաց անկախ: Պիւրենեաններէն անդին անցնելով՝ աւերեցին Արաբացիք Հարաւային Գաղղիան ալ. բայց Կարոլոս Մարտեղլոսէն 732ին յաղթուեցան:

Յաջորդ ամիրապետներն իրենք զիրենք ատելի ըրին՝ ընչաքաղցութեամբ, բռնակալութեամբ, զեղխութեամբ եւ կուսակալները կեղեքելով, որոնցմէ շատերը՝ անուամբ միայն նուաճուած էին: Վերջապէս Ումմեանք՝ 750ին, Ապու-լ Աբբաս հաշէմեանին ձեռօք գահէն ձգուեցան եւ իրենց ամբողջ ցեղը (բաց ի Աբտուրրահմանէն) ջնջուեցաւ:

## 58. Ամիրապետութեան ծաղկիլն ու անկումը.

1. Ե՞րբ հասաւ ամիրապետութիւնն իր ամենամեծ բարձրութեանը. ի՞նչպէս սկսաւ իյնալ: — 2. Ե՞րբ եւ որմէ հիմնուեցաւ Գորտովայի ամիրապետութիւնը. ի՞նչպէս վերջացաւ: — 3. Ո՞րչափ տեւողութիւն ունեցաւ Գահիրէի ամիրապետութիւնը: — 4. Ի՞նչ վիճակի մէջ կը գտնենք այս միջոցիս արաբական գիտութիւնը:

1. Աբբասեան ցեղին (750-1258) առաջին ամիրապետներուն ժամանակ, Արաբացւոց զօրութիւնն իր ամենամեծ բարձրութեանը հասաւ: — Ապու-լ Աբբասին յաջորդեց իր եղբայրը Ալ-Մանսուր, որ աթոռը 763ին՝ իրմէն շինուած Պաղտատ քաղաքը փոխադրեց: — Հարուն-ալ-Ռաշիտ (786-809) հզօր եւ իմաստուն իշխանն, ու իր որդին՝ Ալ-Մամուն (813-833) յառաջացուցին գիտութիւններն ու արուեստները. ուր անդիէն Գանգէս գետէն մինչեւ Ատլանտեան Ովկիանոս տարածուող պետութեան ամէն գաւառները կը ծաղկէին երկրագործութեամբ ու առեւտրով:

Ասկէ ետքն եկող ամիրապետներուն ատեն, կուսակալներուն ապստամբութիւններն սկսան յա-

ձախել. այնպէս որ նոյն իսկ ամիրապետները՝ տաճիկ թիկնապահաց ձեռօք գահ կ'ելլէին ու վար կ'առնուէին: Ժ. դարէն ետքը, ամիրապետը՝ միայն իբրեւ կրօնի գլխաւոր, քիչ մը հեղինակութիւն ունէր: Աշխարհական վարչութիւնը պաշտօնատէրի մը ձեռքըն անցաւ, որ ետքէն (950-1055) Պուայէհիներու տոհմին մէջ ժառանգական եղաւ: Իսկ Հնդկաստանի եւ արեւելեան Պարսկաստանի մէջ՝ Խազնաւիեան Սուլթանները, գրեթէ երկու դար անկախ տիրեցին: — 1055ին՝ Տուղրիլ Պէկ, Սէլճուքեան — որուն պապը, իր անուամբ կոչուած տաճկի ցեղին հետ Արալ լճին կողմերէն եկած եւ իսլամն ընդունած էր, — իրեն յափշտակեց էմիրութիւնը: Իր յաջորդը՝ Ալփ-Արսլան (քաջ առիւծ) ընդարձակեց իր իշխանութիւնը Փոքր Ասիայէն, մինչեւ Չինաստանի սահմանները: — Իմաստուն եւ գիտութիւնները յառաջացընող Մէլիք-Շահին ատեն (1072-1092) բաժնուեցաւ Սելճուգեան տէրութիւնը. եւ կազմուեցան խել մը Սելճուգեան իշխանութիւններ, որոնց ամենէն զօրաւորը Փոքր Ասիայի Իկոնիոն (Ռում) քաղաքինն էր: Արեւելեան Սելճուգեանց իշխանութիւնը (1200) Խուարէզմեանց ձեռքով ջնջուեցաւ. ասոնք ալ Ճինկիզ-խանի ատեն Մոնկոլներէն նուաճուեցան: Վերջինները 1258ին, Պաղտատ ալ կործանեցին եւ ամիրապետութեան ու Սելճուգեան իշխանութեան վերջ տուին (72 եւ 75):

2. Ամիրապետութենէն բաժնուած տէրութեանց մէջէն՝ ամենէն հզօրը Գորտովայինն էր: Ապտուլրահման՝ Աբբասեանց հալածանքէն ազատած մի միայն Ումմեանը՝ 755ին անկախ տէրութիւն մը հիմնեց, որ Պաղտատի հետ երբեք չմիացաւ, եւ երկայն ատեն արաբական գիտութեան գլխաւոր նիստն

եղաւ։ — Այս ամիրապետութիւնը քրիստոնէից եւ ապստամբ կուսակալներու դէմ ըրած պատերազմներովը (90) շատ տկարացաւ. այնպէս որ 1031ին խեղ մը պզտիկ թագաւորութիւններու լուծուեցաւ։ Ասոնք քրիստոնեաներէն նեղուած, 1091ին Մարոգգոյի հիմնադիրը՝ Եուսուֆը օգնութեան կանչեցին։ Ասկից ետքը Սպանիայի մէջ եղած արաբական զօրութիւնը՝ Կրանատայի վրայ ամփոփուեցաւ. մինչեւ որ աս ալ 1492ին քրիստոնէիցմէ առնուեցաւ։

3. Պաղտատու եւ Գորտովայի ամիրապետութիւններէն ետքը (970ին Մօէզ Ֆադիմեանէն հիմնուած) Գահիրէինն ամենէն հզօրն էր։ — Ֆադիմեանց ամիրապետներու յաջորդեցին, Եգիպտոսի մէջ՝ Էյուպեանները (Սալահէտտինի տունը)։ Բայց 1250-1517 գլխաւոր տիրողներն էին հոս, Մամլուքները, տաճիկ գերիներէ կազմուած խումբ մը։ 1517ին, Եգիպտոս Օսմանեան տաճիկներէն նուաճուեցաւ, որոնք՝ 1300էն վեր Փոքր Ասիայի մէջ տարածուած էին։

4. Ինչ արագութեամբ որ ամիրապետներուն տէրութիւնը տարածուեցաւ, այն արագութեամբ ծաղկեցան՝ տէրութեան ամէն կողմ, մշակութիւն, արուեստ ու վաճառականութիւն։ Ի մասնաւորի Պարսկաստանի, Ասորիքի, հիւսիսային Ափրիկէի եւ Սպանիայի շատ մասերն, այն աստիճանի լաւ մշակուած էին, եւ ամէն կերպ բերքերու այնչափ առատութիւն ունէին, որ իբրեւ ճշմարիտ դրախտ մը կը ստորագրուէին։ Պետութեան ամէն գաւառներուն մէջ կային՝ հարուստ ու շքեղ պալատներով, աղբիւրներով, ջրմուղներով, լուալիքներով, կարաւանի իջեւաններով եւ այլն, զարդարուած մեծ քաղաքներ։ Պաղտատ՝ բնակչաց բազմութեան ու ընդարձակութեան կողմանէ, նոյն իսկ հզօր Կոստանդնուպոլիսը կը գերազանցէր։ Գորտովա ունէր 200.000 տուն, 900 հասարակաց բաղանիք, 70 գրատուն, 600 մզկիթ ու խեղ մը քրիստոնէից եկեղեցիներ ու հրէի սինակոկաներ. Կրանատա՝ կէս միլիոն բնակիչ։ Ասոնցմէ ընդարձակ էին Գահիրէ, Դամասկոս, Պասրա, Սամարղանտ։ Աս ամէն քաղաքներն արքունի ճամբաներով կապուած էին, որոնց

վրայ անհամար կարաւաններ կը ճանապարհորդէին: Արաբաց արքունիքները՝ Պաղտատու մէջ, Ֆադիմեանցը՝ Գահիրէի մէջ, Ումմեանցը՝ Գորտովայի մէջ, էին միանգամայն գիտնականաց եւ բանաստեղծից ժողովատեղիներ: Ումմեանց գլխաւոր մատենադարանը, Գորտովայի մէջ՝ 600.000 ձեռագիր ունէր: Ալ-Մամուն, Յունաց դէմ ըրած յաջող պատերազմէ մ'ետեւ, խոստացաւ որ ամէն աշխարհակալած երկիրները՝ ետ կը դարձնէ, եթէ իրեն հրամանկը տրուի, Յունաստանի մէջ գտնուած բոլոր գիտնական գրքերը թարգմանելու: Արաբացիք՝ դարերով, ամէն արուեստից ու գիտութեանց՝ եւ յանուանէ ճարտարապետութեան, բանաստեղծութեան, բժշկութեան, աստեղաբաշխութեան ու փիլիսոփայութեան մէջ Եւրոպացւոց ուսուցիչն եղան. եւ քրիստոնէից մէջ՝ բարձագոյն գիտութեան հասնիլ ուզողը՝ պէտք էր արաբական բարձրագոյն դպրոց մ'երթալ:

## 59. Հայք՝ Մարզպանաց ու Արաբաց ատէն.

1. Ո՞վ է Վահան. ի՞նչ պատերազմներ ըրաւ Պարսից դէմ. ի՞նչ պայմաններով ընդունեցան Հայք իրենց առաջարկուած հաշտութիւնը: — 2. Ե՞րբ խաղաղացաւ երկիրը: — 3. Ի՞նչ հետեւութիւն ունեցան Հագարացւոց արշաւանքները:

1. Վարդանանց նահատակութենէն ետեւ, (Թ. 5. 6.) Հայոց նախարարներն զՎահան Մամիկոնեան՝ Վարդանայ եղբօրորդին, սպարապետ ընտրեցին. ու որոշեցին Պարսից դէմ ելլել եւ կռապաշտութիւնը վերցընել (481): Վահան՝ Ակոռիի քով Ատրվշնասպ մարզպանին յաղթելէն ետեւ, Ատրներսէհ իշխանին վրայ ալ մեծ յաղթութիւն մը կանգնեց:

Սակայն քիչ մը ետքը, Վրաց թագաւորին խաբէութեամբը, Վահան՝ Կուր գետին քով յաղթուելով, (ուր Սահակ մարզպանն ու իր Վասակ եղբայրն ինկան՝) հարկադրեցաւ Տայոց ամուր տեղուանքը քաշուիլ ու ցրուած զօրքը ժողվել: Ասոր վրայ Շապուհ (մարզպան 482-483), Վահանայ վրայ քալեց եւ զինք Երիզա գեղին քով ճակատելու ստիպեց. բայց Վահան գեղացւոց օգնութեամբը յաղթեց. Շտեայ գեղին քով ալ Պարսից բանակը

խորտակեց։ Այս յաղթութիւններուն հետեւութիւնն ա՛ն եղաւ, որ հաշտութեան վրայ խօսելու համար Նիխոր-Հայաստան խաւրուեցաւ։ Խաղաղութիւն ըլլալէն ետեւ, Վահան՝ Հայաստանի վրայ մարզպան դրուեցաւ (485-510)։

Խաղաղութեան գլխաւոր պայմաններն էին. 2. Կրօնի բացարձակ ազատութիւն։ 2. Չար ու երկրին վնասակար անձինքն իշխանութեան չհասցընել։ 3. Ամէն ամբաստանութիւններուն չհաւատալ. այլ քննել եւ անանկ դատաստան ընել։ — Վահանին յաջորդող մարզպաններն եղան. Վարդ՝ իր եղբայրը. Բուրզա պարսիկը. Մժէժ Գնունի ու Դենշապուհ։ Ասոր իշխանութեան ատեն, Մովսէս Բ. Կաթողիկոսը՝ Տոմարը կարգաւորելով, Հայոց նոր Թուականը հաստատեց, որ Մեծ կը կոչուի. ու կը սկսի Քրիստոսի 551 Թուականէն։

2. Թէպէտ Հայաստանի բարգաւաճանաց մըտադիր Սմբատ Բագրատունւոյն ատեն (592) երկիրը խաղաղացաւ. բայց իրեն յաջորդող Դաւիթ Սահառունիին մարզպանութեան ժամանակ (600-623), Հայաստան Խոսրով Բ.ի բանակներէն տակն ու վրայ եղաւ։ Հազիւ Մուշեղի, Գայլ Վահանի եւ ասոր որդւոյն Սմբատի քաջութիւնները՝ կրցան Պարսից ասպատակութիւնները չափաւորել. որով երկիրը քիչ մը ատեն խաղաղ մնաց։

3. Ասոր վրայ Հագարացիք կամ Արաբացիք Հայաստան արշաւեցին, եւ գերփելով ու ապականելով՝ մինչեւ Դուին յառաջացան։ Թէպէտ ասոնց քշուելէն ետեւ՝ Վարազտիրոց Բագրատունին, եւ իր որդին Սմբատ, Կիւրապաղատները, երկրին բարօրութեան հոգ տանելու ջանացին. սակայն Հագարացիք նորէն Հայաստան մտան։ Այս հեղու՝ Հայք հնազանդութիւն խոստանալով, Հագարացւոց ասպատակութիւններէն ազատեցան։ Բայց Յոյնք եղածին վրայ վշտացած՝ Հայաստան յարձակեցան։ Ասանկով երկիրը քանի մը տարի Յունաց ու Արաբացւոց

ձեռքը խաղալիկ եղաւ. մինչեւ որ վերջապէս՝ վերին իշխանութիւնն առին Հագարացիք (695)։

Հայաստանի՝ այս միջոցիս (640-855) ունեցած վիճակը, շատ տխուր պատկեր մը կը ներկայացընէ աչքերնիս։ — Երկիրը քանդող, ամրութիւններուն մեծ մասն ապականող, բնակիչներէն շատերն սպառող, իշխանները յափշտակող, արուեստ ու գիտութիւն փճացընող դառն ու երկարատեւ հարուածներն՝ զՀայաստան արտաքոյ կարգի լքման ու վհատութեան մէջ ձգեցին։ Այս դառն վիճակէն ազատելու յոյսը ջնջուած կ'երեւար։ Բայց եւ այնպէս ելաւ Բագրատունի մը, որ երկրին նոր կենդանութիւն տալով՝ հիմնադիր եղաւ Հայոց երրորդ հարստութեան։

## 60. Հայք՝ Բագրատունեաց ժամանակ. 859-1079.

1. Ով է Բագրատունեաց թագաւորութեան հիմնադիրը։ — 2. Ինչպէս կառավարեց Սմբատ. — 3. Ի՞նչ վարչութիւն ունեցան Աշոտ Երկաթ, Աբաս, Աշոտ Ողորմած։ — 4. Ի՞նչ պատճառաւ սկսան Հայոց ու Յունաց մէջ եղած կռիւները։

1. Աշոտ Ա. Բագրատունեաց թագաւորութեան (859-1079) հիմնադիրն՝ ի սկզբան իշխանաց իշխան անուանուեցաւ. բայց երբ իր եղբայրն Աբաս, 80.000 պարսից յաղթեց՝ ամիրապետին հաւանութեամբ, ինք զինք Հայոց թագաւոր հրատարակեց (885)։ Աշոտ՝ ազգին ու երկրին հարկաւոր բարգաւաճութեան միտ դնելով՝ քաղաքները շէնցուց, դպրոցներ բացաւ ու դրացի իշխանաց հետ դաշնակցեցաւ։ Եղած ապստամբութիւններն ու երկպառակութիւնները խաղաղցուց իշխանութեամբ։ Մեռաւ կոստանդնուպոլսէն դարձած ատեն՝ 889ին։

2. Աշոր յաջորդող Սմբատ Ա.ի թագաւորութիւնը (892-914) խռովութեամբ սկսաւ ու խեղճութեամբ լմնցաւ։ Աբաս՝ թագաւորէն ապստամբեցաւ. բայց յաջողութիւն չունեցաւ։ Թէեւ ասոր վրայ Սմբատ երկիրն ընդարձակեց ու հեղի-

նակութիւնը ցուցուց իրեն դէմ ելող Աշոտին վրայ. բայց քանի մը անյաջող պատերազմներէ ու Յուսուփէն թագաւոր անուանուող Գագիկ Արծրունիին դաւաճանութենէն ետեւ, երկիրը խաղաղութեան ապարէզ մ'եղաւ։ Սմբատ՝ Յուսուփ ոստիկանէն նենգն իմանալով՝ բերդ մը քաշուեցաւ. եւ անձնատուր ըլլալու ստիպուելէն ետեւ, իրեն եղած խոստման դէմ բռնուեցաւ, շղթայի զարնուեցաւ ու ետքէն խեղդուեցաւ։

Անհնարին տանջանքներ կրեց Սմբատ բանտին մէջ տարի մը։ Դահիճք գաւազաններով զինք անխնայ կը ծեծէին, մարմինը կոճղներով կը պնդէին. հարկաւոր կերակուրն ու ըմպելիքը կը զլանային։ Վերջ տրուեցաւ երկարատեւ տանջանքներուն, երբ թաշկինակ մը բերանը խոթելով՝ գլուխը ծանր բեռներու տակ դրին, եւ քանի մը հոգի վրան նստան։

3. **Աշոտ Բ. Երկաթ** (915-928) Սմբատայ որդին, Արաբացիներէն վրէժն առնելէն ու թագաւոր անուանուելէն ետեւ՝ Բիւզանդիոնի կայսեր (Կոստանդին Զ.) հետ դաշնակցեցաւ։ Թէպէտ իրեն դէմ շատ դաւաճանութիւններ եղան եւ քանի մը իշխաններ ապստամբեցան, (Սահակ, Վասակ Գնունի ու Ցլիկ Ամրամ) բայց Աշոտ զանոնք նուաճեց՝ կէս մը իշխանութեամբ ու կէս մը քաղցրութեամբ։ Մեռաւ Աշոտ (928) ազգը 15 տարի կառավարելէն ետեւ։

**Աբաս**, (929-951) Աշոտի եղբայրը, երկիրը զարդարեց մեծամեծ շինութիւններով. կանգնեց եկեղեցիներ ու հիմնեց դպրոցներ։ Ափղազներուն յաղթեց ու ոստիկանին հետ խաղաղութեան դաշինք դրաւ։ — **Աշոտ Գ. Ողորմած** (952-977). իր աստուածպաշտութեամբ ու ողորմածութեամբ անուանին՝ վանեց զօրաւոր բանակով մը Հագարացիքը (Համտուն). եւ զՀայաստան թշնամեաց ապագայ արշաւանքներէն ապահովցընելու համար՝ շինեց բեր-

դեր ու ամրոցներ: — Ինչպէս Աշոտ Գ. զԿարս՝ նմանն ալ Սմբատ Բ. (977-990) զԱնի իրեն մայրաքաղաք ընելով՝ զանիկայ գեղեցկացուց, շէնքերով զարդարեց ու պարիսպներով ամրացուց:

Անի՝ Սմբատայ ատեն, այնչափ մեծ ու շքեղ էր, որ իրաւամբ իւր ժամանակին առաջին քաղաքներուն կարգը կը դրուի: Մինչեւ ցայսօր կանգուն կեցած աւերակները՝ կ'ապացուցանեն իր նախնի մեծութիւնն ու փառաւորութիւնը: Հին պատմագրաց՝ քաղքին 1001 եկեղեցի ու մէկ միլիոնէն աւելի բնակիչ տալն, որչափ ալ չափազանց երեւայ՝ յայտնապէս կը ցուցընէ, թէ ստուգիւ շատ ընդարձակ, բազմամարդ ու գեղեցիկ եղած պիտ'որ ըլլայ:

4. Յովհաննէս Սմբատ (1020-1040), իւր թագաւորութիւնն՝ առոյգ Աշոտին եւ զՀայաստան տակն ու վրայ ընող Թաթարաց հետ կռուելով անցուց: — Իր մեռնելէն ետեւ, երկրին քիչ հանգըստութիւնն ալ գնաց: Յունաց կայսրն արդէն Սմբատի ատեն Անի քաղաքն ուզած էր: Միքայէլ Դ. նոյն պահանջմունքը կրկնեց. ու երբ ժխտական պատասխան առաւ, բանակով մը Հայաստան մտաւ ու Անիի առջեւ երեւցաւ: Թէպէտ պաշարումը չյաջողեցաւ, բայց երկիրը շատ ապականեցաւ:

## 61. Շարունակութիւն.

1. Ո՞վ է Բագրատունեաց հարստութեան վերջին թագաւորը: — 2. Ի՞նչ կերպարանք առած էր Հայաստան՝ թագաւորութեան վերնալէն ետեւ: — 3. Ի՞նչ վիճակի մէջ կը գտնենք հայերէն մատենագրութիւնը Զ. դարէն մինչեւ ԺԴ. դար.

1. Գագիկ Բ. թագաւոր օծուելէն (1040-1045) եւ ներքին խռովութիւնները դադրեցընելէն ետեւ, իր զինուց զօրութիւնը դարձուց երկիրն ապականող Թաթարաց ու Անի բերդը նորէն պահանջող Յունաց վրայ: Կոստանդին Թ. Մոնոմաքոս, երկու անգամ Գագիկէն յաղթուելէն ետեւ, միտքը դրաւ նենգութեամբ Բագրատունեաց թագաւորու-

թեան վերջ տալու։ Աս բանս գլուխ հանելու համար, ձեռք առաւ Գագիկի մահուչափ թշնամիները (Վեստ Սարգիսն ու Պետրոս կաթուղիկոսը)։ Երիտասարդ թագաւորը մատնութեամբ Կոստանդինուպոլիս տարուեցաւ, եւ կղզի մը աքսորուելէն ետեւ (1045), կայսրը՝ Անիի բանալիներն ընդունեցաւ. որով եղաւ տէր Հայաստանի (1064)։ Իսկ զԳագիկ Յոյնք Կիզիստրա բերդը խեղդեցին եւ մարմինը պարսպէն կախեցին։ — Այս վերջն ունեցաւ 160 տարուան Բագրատունեաց հարստութիւնը (1079)։

2. Ասկեց ետքը՝ երկիրը պաշտպանող ու թըշնամեաց յարձակմունքէն պահող իշխանները ցրուեցան, եւ անգութ ու կատաղի թշնամիք ամէն կողմանէ յառաջ եկան։ Յոյնք՝ երկրին պաշտպանութեանը համար փոքր ու տկար գնդեր ձգելով՝ Արաբացիք յարմար առիթ սեպեցին Տուղրիլի առաջնորդութեամբ՝ անպաշտպան երկիրն ասպատակելու։ Թէպէտ Կոմնենոս յոյն զօրավարը, օգնութեան հասաւ (60.000) բանակով մը. բայց բան մը չկրցաւ ընել։ Տուղրիլ՝ վեց տարի իր ասպատակութիւնները շարունակելէն ու Մանազկերտ անօգուտ տեղ պաշարելէն ետեւ՝ կատաղութիւնը Հայաստանի մէկալ կողմանքը թափեց։ — Տուղրիլի յաջորդող Ալփ-Արսլանը, որ եղբօրը պէս գազան էր, առաւ Անին, կողոպտեց ու այրեց։ Թէպէտ հեղ մըն ալ փորձեցին Յոյնք՝ Թաթարները Հայաստանի սահմաններէն դուրս հանելու, բայց չկրցան։ — Ասկից ետեւ Հայաստան եղաւ ամէն ազգաց պատերազմի ասպարէզ ու ոտնկոխ։ Բնակչաց մէկ մասն ամայացած երկիրը թող տալով՝ աստին անդին ցրուեցաւ. մէկ մեծ մասն ալ՝ Տաւրոս լերանց եւ ի մասնաւորի Կիլիկիայի ամուր կողմերը քաշուեցաւ։

3. Շատ տարբեր վիճակի մէջ կը գտնենք, հայերէն մատենագրութիւնը Զ. դարէն ետքը՝ թէ որպիսութեան ու թէ քանակութեան կողմանէ, Ե. գարու մատենագրութենէն։ Եւ ինչպէս կրնար ուրիշ կերպ ըլլալ։ Ե՛րբ բարձուեցաւ Հայաստանէն թագաւորութիւնը, հարկ էր որ վերնար նաեւ խաղաղութիւնն ու գիտութիւնը. եւ տիրէր ընդհանուր խառնակութիւն ու տգիտութիւն։ Մեծ ու աններողելի վնաս կրեցաւ նորածին մատենագրութիւնը։ — Աս պատճառաւ է, որ Զ. ու յաջորդ երկու դարերէն չենք կրնար երեւելի գրաւոր յիշատակարաններ ցուցընել (Պղնձէ դար). բայց բոլորովին ալ զուրկ չենք։ — Եկեղեցական գրուածոց մէջէն ունինք, Յովհաննէս Օձնեցւոյն (Իմաստասէրին) ճառերն ու Երգերը։ Պատմական ճիւղին մէջ՝ քիչ նշանաւոր չեն. Յովհաննու Մամիկոնի եպիսկ. Տարօնի, Սեբէոսի՝ Հերակլն, ու Մովս. Կաղանկատուացւոյ Աղուանից պատմութիւնը. եւ Անանիա Շիրակացւոյն Աստղաբաշխութիւնը կամ Աստղագիտութիւնը։ — Թ. դարուն մատենագրութիւնը՝ Բագրատունի իշխանաց ձեռնտուութեամբը քիչ մը, կենդանացաւ։ Յովհաննէս Կաթուղիկոս (†925) գրեց Ընդհանուր պատմութիւն մը։ Թովմ. Արծրունի՝ Արծրունեաց, Ղեւոնդ Երէց, Մահմետի ու անոր յաջորդաց պատմութիւնը։ — Ժ. Դարուն դիւցազնը, եթէ լեզուի ոչ, գոնէ հանճարոյն կողմանէ, Ս. Գրիգոր Նարեկացին, Հայոց Տանգէն, իր կրօնական Ողբերգութեանը մէջ՝ վեհ զգածմամբ մը գրեց, ինչ որ կը ստեղծէ բանաստեղծ ոգին Աստուծոյ սեպհականութեանցը վրայ։ Ստեփանոս Ասողիկ գրեց Հայոց պատմութիւն մը սկիզբէն մինչեւ 1000։

Մետասաներորդ ու յաջորդ դարերուն մէջ՝ կը գտնենք գիտութիւնն՝ ինչպէս արեւմուտք, սանկ ալ արեւելք՝ ունելի մենաստանները։ Ասոնց աշկերտութենէն են Գրիգոր Պահլաւունին, զոր Յոյնք իր խորին գիտութեանը համար Մագիստրոս մականուամբ կը պատուեն։ Կոստանդ. Մոնոմաքոսի ատեն, Միջագետաց կառավար էր։ Գրեց Թղթեր, Քերականութիւն մը, իր որդւոյն համար. եւ Հին ու Նոր Կտակարանին համառօտները՝ ոտանաւորով։ — Գրիգոր Վկայասէր, իր որդին, ունի ճառեր, Մեկնութիւններ եւ այլն։ Արիստակէս Լաստիվերտացի, իբրեւ ականատես վկայ գրեց մանրամասն Հայոց պատմութիւնը՝ 989-1071. եւ մանաւանդ Անիի, ողբալի վիճակը։ — Ս. Ներսէս Կլայեցի (1102-1172) ԺԲ. դարուն մատենագրութեան առաջին կարգի աստղը՝ իբրեւ Աստուածաբան, պատմագիր ու բանաստեղծ միանգամայն, իրաւամբ Շնորհալի մականունը կը կրէ։ Եդեսիոյ ողբին մէջ, կու լայ այն քաղքին թշուառութեանը վրայ։ Յիսուս Որդին, Հին եւ Նոր կտակարանաց պատմութիւն է՝ ոտանաւոր չափով. նոյնպէս ոտանաւորով գրուած է՝ Հայոց պատմութիւնը։ Արձակներուն մէջէն կը յիշենք միայն, կա-

Թուղիկոս ընտրուելուն առթիւը խօսած ճառը, Հովուական թուղթն ու Հաւատով խոստովանիմ սքանչելի աղօթքը: — Մատթէոս Եդեսացի, գրեց Բագրատունի Խաչակրաց պատմութիւնը 952-1132: Սամուէլ Անեցի Ընդհ. պատմութիւն եւ ժամանակագրութիւն մը, աշխարհքիս ստեղծումէն մինչեւ 1179: Մխիթար բժիշկ, ունի Ջերմանց մխիթարութիւն տիտղոսով գիրք մը, արաբացի, պարսիկ ու յոյն աղբիւներէ ժողոված (1184ին): — Եկեղեցական մատենագրութեան ասպարիզին մէջ՝ մեծ արդիւնք ունեցաւ, Թագաւորական զարմէն սերող, "լեզուաւն ու սրտովը,, անուանի Ներսէս Լամբրոնացին, Տարսոնի արքեպիսկոպոսը: Ասոր ամենէն երեւելի գործքն է ճառը՝ որ 1179ին Հռոմկլայի ժողովին մէջ խօսեցաւ: Զանազան ճառերէ ու քերթողական գրուածներէ զատ ունի Պատարագի մեկնութիւն մը: ԺԲ. դարու մատենագրութիւնը կը կնքէ Մխիթար Գոշ, հայ Եզոբոսը, իր 190 առակներովը ու քաղաքական եւ կրօնական դատաստանագրովը: — ԺԳ. դարուն վերջերը՝ Ստեփ. Օրբելեան, Սիւնեաց արքեպիսկոպոսը, գրեց Սիւնեաց նահանգին պատմութիւնը՝ մինչեւ իր ժամանակը:

## 62. Փրանկաց տէրութիւնը.

1. Ո՞վ է Փրանկաց տէրութեան հիմնադիրը: — 2. Ի՞նչ էին փրանկ հազարապետ ըսուածները. Ամենէն անուանիները որո՞նք են: — 3. Ի՞նչպէս իրեն առաւ Կար. Մարտելլոս թագաւորական իշխանութիւնը:

1. Հինգերորդ դարուն սկիզբները՝ Գաղղիայի մէջ տարածուած գերմանական ազգաց մէջէն, ամենէն զօրաւորներն եղան Փրանկները: Քլովիս (481-511)՝ Մերովինկեանց ցեղէն, փճացուց Սոասոնի յաղթութեամբ (486) հռոմէական իշխանութեան վերջին մնացորդը. նուաճեց (496ին) Զիւլբիհի ճակատով Ալէմանները. եւ խել մը Փրանկներու հետ մկրտուեցաւ: Բուաթիէի քով 507ին Արեւմտեան գոթացւոց յաղթելէն եւ ասով բոլոր երկիրը՝ մինչեւ Կարոն առնելէն ետեւ, Փրանկաց այլեւայլ ցեղերը տէրութեան մը վրայ միացուց:

Իր չորս որդւոց ատեն, որոնք տէրութիւնը մէջերնին բաժնեցին — նուաճուեցան (530) Թիւրինգիացիք ու 534ին Բուրգունդացիք: Բայց ան-

*ընդհատ բաժանմունքներն ու արտաքոյ կարգի վայրենութեամբ ու անգթութեամբ մղուած ներքին պատերազմները, տկարացուցին ժողովուրդը: Նորանոր բաժանմանց ատեն՝ զօրացան եպիսկոպոսներն ու իշխանները* (leudes)*. երբ անդին Մերովինկեանք կնատութեան ու շռայլութեան մէջ ընկղմեցան:*

2. *Տկար Մերովինկեաններն եօթներորդ դարէն սկսեալ՝ տէրութեան վարչութիւնը, թագաւորական կալուածոց վերատեսուչ եղող տան հազարապետներուն* (major domus) *յանձնեցին:*

**Պէպինոս Հէրիստալ**, (*շուրջ* 700*ին*,) *Աւստրասիայի* (*Արեւելեան Փրանկիայի*) *տան հազարապետը, այս պատիւը նաեւ Նէուստրասիայի* (*Արեւմ. Փրանկիայի*) *ու Բուրգունդիայի* (dux et princeps Francorum) *համար ալ ընդունեցաւ. որ ետքէն իւր գերդաստանին մէջ ժառանգական եղաւ: — Իր որդին*

3. **Կարոլոս Մարթէլլոս** (714-741) *զարկաւ Արաբացիքը Բուատիէի քով* (57)*. նուաճեց ապըստամբած Ալեմանները, Բաւարիացիքն ու Ֆրիզները. եւ կառավարեց վերջին չորս տարիները՝ առանց թագաւորի:*

**Պէպինոս Կարճը** (741-768) *գահէն վար առաւ* 752*ին Սուասոնի ժողովքին մէջ, Քիլտէրիկոս Գ. Մերովինկեան վերջին թագաւորն ու վանք խոթեց: Փրանկներէն թագաւոր ընտրուելէն ետեւ, Ստեփանոս Բ. քահանայապետէն օծուեցաւ:*

*Ստեփանոս Բ. էն օգնութեան կանչուած Պեպինոսը՝ ստիպեց* 755*ին, Լոնգոբարդացւոց թագաւորը, յառաջուան Վեցերորդապետութեան մէկ մասը քահանայապետին տալ: Այս պարգեւը գրով ալ հաստատեց Պեպինոս եւ Հռոմայ պաշտպան անուանուեցաւ: — Պեպինոսի հետ գահն ելլող Կարոլինկեանց ցեղն՝ իշխեց Իտալիայի մէջ՝ մինչեւ* 875, *Գերմանիայի մէջ՝ մինչեւ* 911, *Գաղղիայի մէջ՝ մինչեւ* 987*:*

## 63. Կարոլոս Մեծ. 768-814.

1. Ո՛վ է Կարոլոս Մեծ. Ինչպէս կառավարեց։ — 2. Ի՛նչ աշխարհակալութիւններ ըրաւ Իտալիայի ու Սպանիայի մէջ։ — 3. Կարոլոսի՝ բաւարական, աւարական ու սլաւեան-դանիական արշաւանքներն ինչ հետեւութիւն ունեցան։ — 4. Ի՛նչ քաղաքական նոր կարգադրութիւններ ըրաւ. Ի՛նչպէս սկզբնաւորեցաւ աւատականութիւնը։ Ժողովրդեան կրթութեան նկատմամբ ինչ արդիւնք ունեցաւ Կարոլոս. Ե՞րբ մեռաւ։

1. Կարոլոս Մեծ, Պեպինոսի որդին, եղբօրը՝ Կարլոմանոսի մահուանէն ետեւ, — որուն որդիքը թագաւորութենէն մերժեց, — բոլոր Փրանկաց թագաւորն՝ իբրեւ աշխարհակալ, օրէնսդիր եւ արուեստից ու գիտութեան յառաջացուցիչ, իր ժամանակին ամենամեծ մարդն էր։

772ին սկսաւ պատերազմը՝ Էլպայէն գրեթէ մինչեւ Ռենոս տարածուող հեթանոս Սաքսոնացւոց դէմ։ — Առաջի արշաւանքին, նուաճեց Էրէսպուրկ Սաքսոնացւոց ազգային նուիրական տեղը. եւ քանդեց փրանկ զօրքով խել մը ամրոցներ։ Կարոլոսի՝ Իտալիա գտնուած ատեն (774), Վիդուգինդի առաջնորդութեամբ՝ Սաքսոնք նորէն ետ առին Էրէսպուրկը, վռնտեցին փրանկ պահապան զօրքն եւ քանդեցին իրենց յառաջուան սահմանը։ Դարձաւ Կարոլոս Իտալիայէն, յաղթեց Սաքսոններուն եւ Վեզէրը գղեակներով ամրացուց. խել մը սաքսոնացի մեծամեծներ մկրտուեցան, Վիդուգինդ փախաւ։ Երբ ասոր վրայ անհանգարտ Սաքսոններն, իրենց աւերիչ արշաւանքները նորէն սկսան, դարձաւ Կարոլոս Սպանիայէն զիրենք մինչեւ Էլպա մղեց. Վէրդէնի քով ալ (782) 4500 սաքսոնացի գլխատել տուաւ։ Ասկէ յառաջ եկած ազգովին ապստամբութիւնը՝ ճակատով մը ընկճեց։ Սակայն բուն պատերազմը լմնցաւ 803ին, այն միջոցին որ ժողովուրդը քրիստոնէութիւնն ընդունեցաւ եւ փրանկ պաշտօնեաներուն, ինչպէս նաեւ եկեղեցականաց տասանորդ տալ յանձն առաւ։

2. Կարոլոս՝ Ադրիանոս Ա. քահանայապետէն Լոնգոբարդացւոց դէմ օգնութեան կանչուելով՝ Ալպեաններն անցաւ. աշխարհակալեց Բաւիան, վանք խոթեց Թագաւորը (Դեսիդերիոս) ու Լոնգոբարդական տէրութիւնը Փրանկիայի հետ միացուց (774)։

Սպանիայի կուսակալներէն հրաւէր ընդունելով՝ անցաւ Կարոլոս Պիւրենեանները. յառաջացաւ մինչեւ Էպրոյ. առաւ Բամբէլոնան եւ Սարակոսան։ Դարձած ատեն Ռոնսէվէյլ ձորին մէջ լեռնաբնակներէն յաղթուեցաւ. ուր մեռաւ նաեւ Ռոլանդ։

3. Տասիլոս՝ Պաւիէրայի իշխանը, Բենեւենդի եւ ուրիշ Լոնգոբարդացւոց աւագանւոյն յեղափոխութեանը մասնակից ըլլալով՝ վանք խոթուեցաւ (788). եւ Պաւիէրա տէրութեան հետ միացաւ։

Աւազակաբարոյ Աւարաց դէմ ըրած պատերազմով՝ նուաճեց Կարոլոս (791) երկիրը՝ մինչեւ Ռաապ. եւ հիմնեց աւստրիական սահմանակոմսութիւնը։ Աւարական ժողովուրդն այս պատերազմով այն աստիճանի նուազեցաւ, որ քիչ մը ետքը բոլորովին անհետ եղաւ։

Սլաւ եւ դանիական ազգաց դէմ, ոչ այնչափ յաջող պատերազմէ մ'ետեւ, Էպրոյէն մինչեւ Տիբերիս, եւ Ռաապէն մինչեւ Էլպա տարածուող պետութեան ամէն ժողովուրդները հանգիստ գտան։

Երբ Կարոլոս 800ին, Ծննդեան օրը, Լեւոն Գ. քահանայապետէն, հռոմէական կայսր պսակուեցաւ՝ իր պետութիւնը, քրիստոնէութեան ամենամեծ աշխարհական իշխանութիւնն եղաւ։

4. Տասիլոսի վար առնուելովը՝ ժողովրդեան դքսերը վերցուելէն ետեւ, բոլոր պետութեան մէջ գաւառական բաժանումը խոթուեցաւ։ Ամէն մէկ գաւառին գլուխ դրուած էր կոմս մը, որ իշխանութիւն ունէր դատաստան ընելու եւ զօրք ժողովելու։ Դատաստանները հա-

տարակօրէն որոշեալ օրեր կ'ըլլային։ Զինուորութեան երթալու պարտական էր ամէն ազատ փրանկ։ Ով որ բանակին առանց թագաւորին հրամանին կը թողուր, ստացուածքն ու կեանքը կը կորսնցընէր։ Կոմսերուն իշխանութիւնը՝ տեսակ մը աւատ համարուած էր. ուստի եւ ինչպէս ուրիշ ամէն աւատ, սանկ ալ անիկայ թագաւորէն կրնար ետ առնուիլ։ Կոմսերու վրայ հսկելու համար, Կարոլոս՝ տէրութիւնը վիճակներու բաժնեց, եւ ամէն մէկ վիճակի վրայ երկու պատգամաւոր (missi dominici) դրաւ, որոնց մէկը եկեղեցական՝ մէկայն աշխարհական կ'ըլլար։ Ասոնց պաշտօնն էր, կոմսերուն վրայ եղած գանգատները թագաւորին իմացընել։ Կոմսերուն բողոքը կ'երթար սահմանակոմսերուն։ Թագաւորին տուրքը կը ժողվէին եկամտի պաշտօնատէրները (missi fiscalini)։

Թագաւորները՝ եպիսկոպոսներէն եւ աշխարհական մեծամեծներէն ոմանց, իբրեւ առանձին արտօնութիւն, կոմսերու իշխանութենէն ազատութիւն (Immunité) կը շնորհէին։ Ասով՝ իրենց հպատակացը վրայ դատաւորական իշխանութիւն բանեցընելու, եւ պատերազմի տանելու իրաւունք կ'ունենային։ Աշխարհական տէրերն՝ այս պաշտօնն անձամբ կը կատարէին, իսկ եկեղեցականք իրենց փոխանորդ (Vogt) մը կը դնէին։

Թագաւորը՝ տէրութեան աւագանւոյն կարծիքն իմանալ ուզած ժամանակ՝ կոմսերէն, ազատ մեծ կալուածատէրներէն ու եկեղեցականներէն ուզածը ժողովքի կը կանչէր։ Այս աւագաժողովներն սկիզբ եղան, ետքէն եղած տէրութեան ժողովներուն։

Ժողովրդեան քաղաքակրթութեան նկատմամբ ալ, մեծ արդիւնք ունեցաւ Կարոլոս։ Ամէն եպիսկոպոսութեան ու վանքի հետ կապեց դպրոց մը։ (Տրիվիոնն էր՝ Քերականութիւն, Ճարտարախօսութիւն, Տրամաբանութիւն։ Կուատրիվիոնը՝ Թուաբանութիւն, Երկրաչափութիւն, Աստղաբաշխութիւն, Երաժշտութիւն)։ Յանձնեց օտար գիտնականներու՝ եպիսկոպոսարաններ եւ դպրոցաց վրայ՝ վերատեսչութիւն։ Հոգ տարաւ աստուածային պաշտամանց, եկեղեցական երգերու եւ եկեղեցականաց կրթութեան. եւ մտցուց ամէն տեղ՝ եկեղեցականաց համար տառանորդ։ Ամենէն գիտնականներն՝ իր արքունեացը մէջ կը բնակէին. ինքն ալ իր ծերութեան ատեն գրել սորվեցաւ։

Մեռաւ Կարոլոս Ախէն 72 տարւան (814)։ Իր ազնուական որդիքը՝ Կարոլոս ու Պեպինոս յառաջագոյն վախճանած ըլլալով, իրեն յաջորդ թողուց տկար Լուդովիկոսը։

## 64. Վէրտէօնի դաշինքը 843.

1. Ինչ է Լուդովիկոսի ու իր որդւոցը մէջ եղած խռովութեան պատճառն: — 2. Կռուին ինչպէս վերջ տրուեցաւ:

1. Լուդովիկոս Բարեպաշտ (814-840) բարեսիրտ ու գիտուն, բայց շատ տկար մարդ մը, բաժնեց (817) իր տէրութիւնը՝ իւր երեք որդւոցը՝ Լուդովիկոսի, Պեպինոսի ու Լոթարիոսի մէջ։ Ի նպաստ երկրորդ ամուսնութենէն եղած չորրորդ որդւոյ մը՝ Կարոլոս Կուտին, մէկալ երեք որդիքն իրենց երկրէն բաժին մը տալու էին։ Բայց անոնք յանձն չառնելով՝ ապստամբեցան ու անկարող Հայրերնին գերի բռնեցին (833)։ Լուդովիկոսի եւ Պեպինոսի ձեռօք նորէն աթոռը Հաստատուելով՝ կայսրը նոր երկրի բաժանում մ՚ընելու ատեն, Լուդովիկոսի եւ (838 ին) մեռած Պեպինոսի որդւոցը բաժնէն կտոր մը առաւ. բայց վախճանեցաւ նոր խռովութիւն մ՚ելլելու վրայ եղած ատեն (840)։

2. Բոլոր պետութիւնն իրեն յափշտակել ուզող Լոթարիոսի դէմ միաբանեցան Լուդովիկոս ու Կարոլոս Կուտ եւ յաղթեցին իրեն (841) Ֆոնդընայլի ճակատին մէջ։

Վէրտէօնի (843) դաշինքով՝ ընդունեցաւ Լոթարիոս՝ իբրեւ կայսր, Իտալիան ու Միջին Փրանկիան (Ռենոսի, Ռոնի, Մէօզի եւ Շէլտէի մէջ եղած երկիրը)։ Լուդովիկոս՝ Արեւելեան Փրանկիան (Ռենոսի արեւելեան դին եղած Գերմանիան). իսկ Կարոլոս՝ Արեւմտեան Փրանկիան (Գաղղիան)։

Լոթարիոսի երկիրներն, իր մահուանէն ետեւ, իւր երեք որդւոցն ինկան։ Ամէնէն մեծ որդին Լուդովիկոս (Բ)՝ ընդունեցաւ Իտալիան ու կայսերական պատիւը։ Լոթարինգիա բաժնուեցաւ Կարոլ. Կուտի եւ Լուդովիկոս Գերմանացւոյն մէջ (870)։ Բուն

գերմանական գաւառներն անցան Գերմանիայի, Ռոմանականները՝ միացուց Կարոլոս Կուճտ Գաղղիայի հետ: Այսով՝ երկու երկիրներուն նաեւ ըստ ազգայնութեան, այս ինքն՝ արեւելեան փրանկեան կամ գերմանական եւ արեւմտեան փրանկեան կամ ռոմանեան բաժանումը՝ կատարուեցաւ:

## 65. Քահանայապետական աթոռին իշխանութեան սկզբնաւորութիւնը:

1. Ի՞նչ վիճակի մէջ էր Հոգեւորական իշխանութիւնն ի սկզբան ու ինչպէս ութերորդ եւ իններորդ դարերուն մէջ: — 2. Ե՞րբ ու ինչպէս կազմուեցան վանական կարգերը: — 3. Ո՞վ էր եկեղեցւոյ գլուխը. Ե՞րբ հասաւ քահանայապետական իշխանութիւնն իր ամենամեծ բարձրութեանը:

1. Արեւմտեան Հռոմէական պետութեան աւերակացը տակ՝ իշխանութիւն մը միայն կանգուն մնաց — Հոգեւորական իշխանութիւնը: Եկեղեցականաց հեղինակութիւնը շատ մեծ էր, մէկ կողմանէ անով՝ որ ժողովրդեան ամենէն կրթեալներն եւ թագաւորաց անուանի խորհրդականներն էին, մէկալ կողմանէ՝ որ հոգեւոր օգնութեան կարօտութիւնը՝ զիրենք ամէն վիճակի անհրաժեշտ կ՚ընէր: Սակայն ազդեցութիւննին նուազեցաւ, երբ թագաւորք Ը. ու Թ. դարուն, սկսան եկեղեցական պաշտօններն անարժան անձինքներու տալ, եւ եպիսկոպոսք՝ իշխաններէն աւատ ընդունելով՝ անոնց ստորակարգեալի պէս կ՚ըլլային: Ասկէ ծնած չարիքներուն դարման տանելու աշխատեցաւ Գրիգոր Է. (69):

2. Եկեղեցւոյ դժուարին առաքելական գործոյն ու պատերազմացը մէջ, մեծապէս օգնական էին՝ վանական կարգերը: Ասոնք կազմուելու սկսան Եգիպտոսի միայնակեցաց քովէ քով գալովը: Ամէն վանքերն աղքատութեան, ողջախոհութեան ու հնազանդութեան ուխտերուն մէջ իրարու միաբան էին: Վանական կեանքը՝ երրորդ դարուն վերջերը Հռոմէական պետութեան ամէն արեւելեան գաւառներուն մէջ տարածուեցաւ. ուր կրօնաւորք թէ եկեղեցական ու թէ աշխարհական իրողութեանց վրայ մեծ

ազդեցութիւն ունեցան։ Չորրորդ դարուն՝ մուտք գտաւ նաեւ Իտալիա ու Գաղղիա։ Ազգաց գաղթականութեան ատեն եւ հետագայ աղէտալի ժամանակներուն մէջ, վանքերն՝ ինչպէս նեղեալոց ապաստանարան, անանկ ալ գիտութեանց միակ օթարան եղան։ Անոնց շատնալուն համեմատ, աճեցաւ նաեւ կրօնաւորաց քաղաքակրթութեան եւ երկրամշակութեան վրայ ունեցած ազդեցութիւնը. մանաւանդ երբ Բենեդիկտոս Նուրսիացին (530)՝ իր միաբանակեցաց գրաւոր կանոններ տալով՝ որոշ պարտաւորութիւններ դրաւ վրանին։ Բենեդիկտեանք՝ իրենք զիրենք ուխտիւ կը պարտաւորէին աստուածային պաշտաման, ժամերգութեան, ձեռագործի եւ տղոց կրթութեան։ Անոնք իսկզբան հաւատոյ քարոզիչներ եղան հեթանոս երկիրներու մէջ, ետքէն ալ մեծապէս նպաստամատոյց եղան հերետիկոսութիւնները եկեղեցւոյ մէջէն վերցընելու։

3. Եկեղեցական նուիրապետութեան գլուխն էր, Հռոմայ քահանայապետը կամ Պապը։ Արդէն քրիստոնէութեան առջի ատեններն Հռոմայ եպիսկոպոսները, իբրեւ Պետրոսի յաջորդ՝ աստուածային իրաւամբ եկեղեցւոյ գլուխն էին։ Յաջորդ դարերուն նաեւ քաղաքական մեծ ազդեցութիւն ունեցան Եւրոպայի բոլոր տէրութեանց վրայ։ Ասոր գլխաւոր պատճառն ան էր, որ Եւրոպայի ազգաց մեծագոյն մասը քրիստոնէութեան լոյսը Հռոմէն ընդունած էր։

Գրիգոր Ա. Մեծի ատեն (600) պատահեցաւ արեւմտեան Գոթաց ու Լոնգոբարդացւոց դարձը։ Իր առաքելոց ձեռքով (Աւգոստինոս) քրիստոնէութեան դարձաւ նաեւ Անգղիա։ Ս. Բոնիփակիոս Հռոմէն՝ Գերմանիա խաւրուեցաւ, եւ ազգին մէկ մասը դարձընելով (718-755) ու հոն բազմաթիւ աբբայարաններ ու եպիսկոպոսարաններ (Ֆուլտա, Վիւրցպուրկ) հաստատելով՝ Գերմանիայի առաքեալ եղաւ։ Գրիգոր Է. (1073-1085) քիչ մը տկարացած քահանայապետական իշխանութիւնը, նորէն կանգնեց. Իննովկենտ. Գ.ի ատեն (1200) քահանայապետին ճոխութիւնն իր բարձրութեան ծայրը հասաւ։ Բայց սկսաւ իյնալ Բոնիփակիոս Ը.էն ետքը (1300)։

## Ե. ՀԱՏԱԾ

*Վերտենի դաշինքէն մինչեւ խաչակիրք 843-1096:*

### 66. Գերմանիա՝ Կարոլինկեանց տակ. 843-911.

1. Որո՞նք են Կարոլինկեան կայսրները: — 2. Կարոլոս Մեծէն ետեւ ինչ կերպարանք առին Գերմանիա, Գաղղիա, Իտալիա:

1. Լուդովիկոս Գերմանացին (843-876), իւր եղբարցը, եղբօրորդւոցը, Դանիացւոց ու Նորմաններուն հետ շարունակ պատերազմելով անցուց կառավարութիւնը:

Կարոլոս Գէր (876-887) նորէն միացուց (884) Մեծին Կարոլոսի պետութիւնը՝ ինք զինք Հռոմի մէջ, քահանայապետին (որուն օգնած էր Սարակինոսաց դէմ) կայսր օծել տալէն ետեւ: Բայց Նորմաններէն հաշտութիւնը գնելու հարկադրելէն ետեւ՝ վար առնուեցաւ ողորմելի կայսրը (887):

Առնուլփոս (887-899) կառավարեց զօրաւոր բազկաւ. բոլորովին յաղթեց ահռելի ճակատի մը մէջ Նորմաններուն. պատերազմեցաւ հզօր Մորաւիացւոց դէմ. եւ կայսր պսակուեցաւ Հռոմ առնելէն ետեւ:

Լուդովիկոս Տղայն (899-911) անչափահասութեան ատեն կը կառավարէր պետութիւնը, Մայնցի արքեպիսկոպոսը՝ Հադդոյ: Այս ժամանակ սկսաւ Հունգարացւոց արշաւանքը Գերմանիայի վրայ: Մեռաւ հազիւ 18 տարեկան:

2. Ա. Անդադար ներքին պատերազմներով — Կարոլինկեանց ժամանակը — դեսպանակոմսերուն վերին տեսչութիւնն երթալով բոլորովին անհետացաւ: Անոնց տեղ՝ գաւառներուն մէջ, բարձրագոյն դատաւորական իշխանութիւն եւ արքունական եկամտից վրայ տեսչութիւն կ'ընէին սահմանակոմսները: — Այս միջոցին դարձեալ

երեւան ելան դուքսերը։ Նորմաններուն՝ Հիւսիսային ծովուն կողմանէ, եւ Մաճառներուն՝ Հունգարիայէն ըրած յարձակմունքները, Կարոլոս Մեծի ժամանակ բացուած քաղաքակրթութեան բողբոջներն ապականեցին։

Բ. Գաղղիայի մէջ Կարոլինկեանց իշխանութիւններթալով ինկաւ։ Կարոլոս Կուռտ, հարկադրեցաւ՝ մեծագոյն աւատատերաց ժառանգականութիւնը ճանչնալ։ Միեւնոյն ատեն նաեւ իրեն վարչութեանը դէմ եղած տժգոհութիւնը պատճառ եղաւ, որ քանի մը երկիրներ իրմէն բաժնուեցան։ Արդէն 879ին Գաղղիայէն անջատուած Ստորին Բուրգունդիայի կամ Ցուրայեանց անդիի կողման, եւ 888ին վերին Բուրգունդիայի կամ Ցուրայեանց անդիի կողման թագաւորութիւնները, 1034ին Գերմանիայի անցան։ Կարոլոս Պարզամիտը հարկադրեցաւ 911ին Նորմանտիա զաւառն, ամէն տարի Հիւսիսային ծովեզրներն ապականող Նորմաններուն տալ։ Վերջին Կարոլինկեան թագաւորներն այն աստիճանի տկար էին, որ Լուդովիկոս Դ. միայն Լաոն քաղաքն ունէր ձեռքը։ Լուդովիկոս Ե.ով Կարոլինկեանց ցեղն սպառեցաւ։ — Հուգոն Գաբէդ, Փրանկիայի դուքսը՝ 987ին թագաւոր ընտրուեցաւ։ Իր ցեղին մէկ կողմնակի ճիւղը իշխեց Գաղղիայի վրայ, մինչեւ 1848 (77)։

Գ. Իտալիայի մէջ՝ Առնոլփոսի մահուանէն ետեւ, թագաւորական գահն ելաւ 899ին Բերենգարիոս Փրիուլցին. 924ին Ռուտոլփոս Բ. Բուրգունտացին։ Ասիկայ 930ին Իտալիան՝ Հուգոնի տուաւ։ Իր Ադելաիդ դուստրը՝ իր էրկանը Լոթարիոսի մահուանէն ետեւ, ամուսնացաւ Օթոն Ա. Մեծին հետ, 951ին. որով Իտալիա, եւ 962ին նաեւ կայսերական պատիւը՝ գերմանական թագաւորաց անցաւ։ Այս գահակալութեան կռիւներուն ժամանակ, Սարակինոսք Իտալիայի ու Գաղղիայի ծովեզրները կ՚ապատակէին։

## 67. Գերմանիա՝ սաքսոնական կայսերաց տակ. 919-1024.

1. Ի՞նչ կերպարանք առաւ Գերմանիա, Կարոլինկեանց սպառելէն ետեւ։ — 2. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Հենր. Ա. Օթոն Մեծ. — 3. Ո՞վ յաջորդեց Օթոն Ա.ին. Ի՞նչպէս կառավարեցին Օթոն Գ. Հենր. Բ.

1. Գերմանիա՝ կարոլինկեան ցեղին սպառելուն ատեն, հինգ դքսութիւն ունէր (Լոթարինգիա, Սուապիա, Պաւիէրա, Փրանկիա ու Սաքսոնիա)։ — Այս երկիրներուն դուքսերը թագաւոր ընտրեցին զԿոնրադոս Փրանկիացին։

**Կոնրադոս Ա. Փրանկիացին** (911-918), անհանգիստ դքսերուն եւ վայրենի Հունգարացւոց հետ պատերազմելու հարկադրեցաւ, որոնք գրեթէ ամէն տարի իրենց աւերիչ արշաւանքները, Հունգարիայէն մինչեւ Ռենոս կ՚ընդարձակէին։ Թէպէտ գլխատել տուաւ քանի մը խռովարար կոմսեր, եւ ըրաւ երկու արշաւանք Լոթարինգիայի ապստամբ դքսին դէմ, սակայն Լոթարինգիան իր պետութեանը հետ նորէն միացընել չկրցաւ։ Իր մեռնելէն յառաջ, յանձնեց իրեն յաջորդ, իւր հակառակորդը՝ Հենրիկոս Սաքսոնիացին. որով՝ արքունական գահն եղաւ սաքսոնական զօրաւոր տունը։

2. **Հենրիկոս Ա.** (919-936), հզօր, քաջ ու խոհեմ իշխանը՝ միացուց Լոթարինգիան Գերմանիայի հետ. եւ ինը տարուան համար Հունգարացւոց հետ զինադադար ըրաւ։ Աս միջոցին նուաճուեցան Սլաւները եւ հարկատու եղան Պոհեմիացիք։ Հենրիկոս՝ զինադադարին ժամանակը լմըննալէն ետեւ, զարկաւ նաեւ Հունգարացիները 933ին, Մերզէպուրկի քով։

**Օտոն Ա. Մեծ** (936-973), Ախենի մէջ թագաւոր պսակուեցաւ։ Ասիկա հօրն ամէն առաւելութիւններն ունէր։ Խռովայոյզ դքսերը նուաճելէն ետեւ, մղեց Սլաւները մինչեւ Օտէր ու ստիպեց Լեհաց դուքսը՝ Գերմանիայի աւատապետութիւնն ընդունելու։ Ադելաիդ թագուհիէն օգնութեան կանչուելով՝ Իտալիա արշաւեց, ուր յաղթեց Բերենգարիոսի, եւ Ադելայիդի հետ ամուսնանալով՝ եղաւ թագաւոր Իտալիայի (64 գ.)։ Իտալիա երկրորդ արշաւանք մ՚ընելով՝ ինք զինքը (962) կայսր պսակել տուաւ. եւ ասով եղաւ հիմնադիր հռոմէական պետութեան։

*Հռոմէական կայսրութեան պատիւը՝ գերմանացի թագաւորաց մնաց մինչեւ 1806. բայց ի սկզբան՝ Հռոմ պսակուած թագաւորները միայն՝ այս տիտղոսը կը կրէին: — Իտալիայի՝ գերմանական պետութեան հետ միանալը, պատճառ տուաւ բազմադարեան արիւնահեղ պատերազմներու: Սակայն հռոմէական արշաւանքներն, որոնցմով Գերմանացիք քրիստոնէութեան Գլխոյն հետ սերտ յարաբերութեան մէջ մտան, եղան պատճառ՝ որ իրենց մէջ քրիստոնէական հոգին աւելի խորունկ արմատացաւ եւ մէջերնին իտալական կրթութիւն մտաւ:*

Հունգարացիք 955ին Լէխֆէլտի քով, հարուած մ'ընդունեցան, որով երկիրնին մինչեւ Տրաւէ գետ կորսնցուցին: Ասկէ ետքը Գերմանիայի վրայ յարձակումներ ընելէն դադրեցան:

3. Օթոն Բ. (973-983), պատերազմեցաւ հօրը պէս՝ խռովասէր հպատակներուն հետ: Գաղղիայի դէմ ըրած պատերազմներուն մէջ, յառաջացաւ մինչեւ Բարիզ: Բայց Ապուլիան առնելէն եւ դաշնակցեալ Յունաց եւ Արաբացւոց վրայ փառաւոր յաղթութիւն մը կանգնելէն ետեւ, Իտալիայի մէջ Սարակինոսներէն յաղթուեցաւ (982): Մեռաւ, Հռոմի մէջ՝ 28 տարուան:

Օթոն Գ. (983-1002) իր մօրը, Թէոփանէի, եւ ապա վաղահաս մահուանէն (991) ետեւ իւր մեծ մօրը Ադէլայիդի, Մայնցի արքեպիսկոպոսին եւ իւր ուսուցչին (Գերբերդոսի՝ ետքէն Սեղբեստրոս Բ. քահանայապետ) խնամակալութեան տակ, վարժեցաւ յունական գիտութեանց մէջ: Հանեց իր հօրեղբայրը (Գրիգոր Ե.) քահանայապետական աթոռն եւ ընդունեցաւ անոր ձեռքէն՝ Հռոմի մէջ, կայսերական թագը: Բայց դեռ կոշտ ու պատերազմասէր գերմանական ազգը զսպելու բաւական զօրութիւն չունէր: Հռոմայեցւոց յեղափոխութիւնը՝ պարապի հանեց, զՀռոմ պետութեան մայրաքաղաքն ընելու յառաջադիծը: Մեռաւ Իտալիա 22 տարուան:

Հենրիկոս Բ. Սուրբը (1002-1024), ջանաց պետութեան միութիւնը պահելու եւ անոր սահմանները ապահովցընելու։ Իտալիա ըրած առաջին յաղթական արշաւանքէն ետեւ, Բաւիայի մէջ՝ Իտալիայի թագաւոր օծուեցաւ (1004). իսկ երկրորդ արշաւանքին մէջ՝ ընդունեցաւ իր Կունիկունդէ ամուսնոյն հետ, Հռոմի մէջ՝ կայսերական թագը։ Զբոլեսլաւոս՝ Լեհաց թագաւորն ստիպեց Բոհեմիայէն ելլելու։ Եկեղեցւոյ ու եկեղեցականաց ունեցած սէրը՝ ցուցուց, Պամպէրկի եպիսկոպոսարանը հիմնելով, որուն մայր եկեղեցին օծեց Բենեդիկտոս Ը. Քահանայապետը, կայսեր աղաչելովը։

Սաքսոնական կայսերաց եւ յանուանէ, Օթոնեանց ժամանակը, օտարազգի կայսրուհիներու եւ Օթոն Բ.ի ՝քրուրոցը ձեռօք՝ կը ծաղկէին արուեստք ու գիտութիւնք Գերմանիոյ տէրութեան մէջ։ — Ռոզվիթայի եւ ուրիշներուն լատիններէն բանաստեղծութիւնները, Գեբերդոսի՝ յունական եւ արաբական, ինչպէս նաեւ մաթեմատիքական ու բնական գիտութեանց մէջ ունեցած կիրթ հմտութիւնները, վկայ են այս ժամանակին մտաւոր զարգացման։

## 68. Գերմանիա փրանկ (սալեան) կայսերաց տակ. 1024-1125.

1. Ո՞վ է Կոնրադոս Բ. Իրեն ո՞վ յաջորդեց — 2. Ի՞նչպէս կառավարեց Հենր. Դ. Սաքսոնները ինչո՞ւ քահանայապետին դիմեցին։

1. Կոնրադոս Բ. (1024-1039) Փրանկիայի դուքսը՝ եկեղեցական եւ աշխարհական իշխաններէն թագաւոր ընտրուեցաւ։ Միլանի մէջ՝ Լոնգոբարդացւոց երկաթի թագովն, ու Հռոմի մէջ՝ կայսր պսակուելէն ետեւ, երեք արշաւանքով աշխարհակալեց Բուրգունդիան ու միացուց զանիկայ Գերմանիայի հետ 1034։ Իր մեծ ջանքն էր, գերմանական թագը՝ իւր գերդաստանին մէջ պահել ու դքսական

իշխանութիւնը կամ վերցընել եւ կամ իր գերդաստանին անցընել։ Մեռաւ Ուտրեխտի մէջ։

Հենրիկոս Գ. (1039-1056) Կոնրադի որդին. եւ նման անոր քաջութեանն ու յանդգնութեանը, պահեց՝ ինչպէս Իտալիայի, անանկ ալ Գերմանիայի մէջ, կայսերական իշխանութիւնը։ Իր ժամանակը, Գերմանիա, թէեւ քիչ ատեն՝ իւր ամենամեծ տարածութեանը հասաւ. ինչու որ իր սահմանները՝ Ռոն գետէն մինչեւ Կարպատեան լեռները կը հասնէին։

2. Հենրիկոս Դ. (1056-1106) հօրը մահուան ատեն հազիւ 6 տարեկան էր. անոր համար նախ՝ իւր մօրն Ագնէսի, ետքէն Հաննոյ՝ Կողոնիայի խիստ արքեպիսկոպոսին ու վերջապէս Ադալբերդի խնամակալութեան տակ կրթուեցաւ։ Իշխանաց խնդրելովը՝ վերջինը թող տալէն ետեւ (1066), սկսաւ բռնաւորական կառավարութիւն մը։ Հենրիկոսի անկարգ կեանքէն ու խրոխտ վարմունքէն ձանձրացած Սաքսոնները ոտք ելան (1073), ու ստիպեցին կայսրն անարգական խաղաղութիւն մ'ընելու։ Բայց որովհետեւ սաքսոնիացի գեղացիները նաեւ եկեղեցիները կողոպտած էին, Հենրիկոս անոնց դէմ ընդհանուր զօրաժողով մ'ըրաւ, անոնց յաղթեց (1075) եւ մեծամեծները կալանաւորեց։ Ասոր վրայ Սաքսոնները Գրիգոր Է. Քահանայապետին դիմեցին։

## 69. Գրիգոր Է. 1073-1085.

1. Ո՞վ է Գրիգոր Է.։ — 2. Ի՞նչ է քահանայապետին եւ կայսեր մէջ եղած կռուին պատճառը. Ի՞նչպէս մեռաւ Գրիգոր։ — 3. Ո՞վ յաջորդեց Հենրիկոս Դ.ի. Ի՞նչպէս վերջացաւ քահանայապետին ու կայսեր մէջ եղած կռիւը։

1. Հենրիկոս Դ.ի անչափահասութեան ատեն, Հիլդեբրանդոս ջանաց եկեղեցին աշխարհական իշխանաց հարստահարութենէն անկախ ընել (65. 1.)։ Իր ազդեցութեան տակ, Նիկողայոս Բ. (1059) հրա-

ման հանեց, որ այնուհետեւ, Չէ թէ աշնուականք ու Հռոմայ կղերին հետ միացած ժողովուրդը՝ պիտի ընտրեն քահանայապետն՝ ու կայսրը նոյնը պիտի հաստատէ, հապա ընտրութիւնը պիտ՚որ ըլլայ կարդինալաց ժողովին մէջ։ Գրիգոր Է. քահանայապետական աթոռն ելլելուն պէս, միտքը դրածը յառաջ տանելու համար՝ իրեն առաջնորդ առաւ այն սկիզբը, թէ Եկեղեցին պէտք է ազատ ըլլալ եւ աշխարհական իշխանութենէն անկախ։ Ուստի եւ եկեղեցականներին աշխարհական իշխանութենէն բոլորովին անկախ ընելու նպատակաւ, Հռոմ գումարուած սիւնհոդոսի մը մէջ՝ նզովքի պատժով արգելեց Հանդերձաւորութիւնն. այս ինքն, աշխարհականաց՝ մատնի ու գաւազան տալով՝ եկեղեցական պաշտօն շնորհելն ու կղերականաց նոյնն ընդունիլը։ — Սիմոնականութեան դէմ ալ խիստ օրէնքներ դրաւ, եւ կղերականաց ամկնութեան օրէնքները նորոգեց։ Ասկէ ծագեցաւ հանդերձաւորութեան կռիւը՝ Հենրիկոս Դ. Գերմանիայի կայսեր ու Գրիգոր Է. քահանայապետին մէջ։

2. Գրիգոր՝ զՀենրիկոս Հռոմ կանչեց (1075). բայց կայսրը հրաւէրը մերժելէն զատ, յանդգնեցաւ Որմս գումարուած ժողովին մէջ՝ զԳրիգոր քահանայապետութենէն վար առնուած հրատարակել։ Ասոր վրայ քահանայապետն զՀենրիկոս նզովեց։ Եւ որովհետեւ Գերմանիայի իշխանները Տրիբուրի ժողովին մէջ (1076) որոշեցին որ կայսրն աթոռէն ինկած է, եթէ տարուան մը մէջ ինք զինք նզովքէն արձակել չտայ, անոր համար Հենր. քահանայապետին հետ հաշտուելու համար, հարկադրեցաւ Իտալիա անցնիլ։ Հոն, Գանոսա քաղքին մէջ՝ քահանայապետին հանդիպելով՝ նզովքէն արձակուեցաւ։

Սակայն այս խոնարհեցուցման վրայ սաստիկ դառնացած՝ Ռուտոլփոս Սուապիացւոյն, իրեն հակառակաթոռ կայսեր, Մերզէպուրկի քով յաղթելէն ետեւ (1080), զօրաւոր բանակով մը Հռոմի վրայ քալեց, եւ Գրիգոր Է. Հրեշտակի բերդին մէջ պաշարեց։ Բայց Կուիսքար Նորմանտացւոց դուքսը քահանայապետին օգնութեան հասնելով՝ զինքը Սալէռնոյ փախուց. ուր մեռաւ 1085 աքսորանաց մէջ, անդրդուելի մնալով պաշտպանած եկեղեցւոյն իրաւանցը վրայ։

Հենրիկոս ալ՝ իւր որդւոցն (Կոնրադոսի եւ Հենրիկոսի, ետքէն Հենր. Ե. կայսր) ապստամբելէն ետեւ, մեռաւ Լիւդդիխի մէջ 1106ին։

3. Հէնրիկոս Ե. (1106-1125) խիստ ու յանդուգն իշխանը, ստիպեց քահանայապետն (1111) որ զինք կայսր պսակէ։ — Հանդերձաւորութեան կռիւը (1122ին) Կալիքստոս Բ. քահանայապետին հետ Վորմսի ժողովքին մէջ լմնցաւ։ Ասոր համաձայն, Եպիսկոպոսաց եւ աբբաններու ընտրութիւնը՝ կղերականաց ձեռօք, առանց կայսեր միջամտութեանը, բայց անոր ներկայութեամբը պիտ'որ ըլլար։ Քահանայապետն իրեն վերապահեց գաւազան ու մատանի տալու իշխանութիւնը. իսկ կայսրը կու տար արքունական իրաւունքներն (Regalien) եւ իշխանութեան գաւազանը։ — Քահանայապետաց եւ կայսերաց մէջ Մաթիլդեան ստացուածոց վրայ եղած վէճը, (զորոնք Հենր. կը պահանջէր, իբրեւ իր ստացուածքը, ուր Մաթիլդէ կոմսուհին զանոնք կտակով եկեղեցւոյ ժառանգութիւն թողած էր,) երկու դար ետքը՝ ի նպաստ քահանայապետին լմնցաւ։

# 70. Նորմանք.

1: Ե՛րբ սկսան երեւան ելլել Նորմանները: — 2. Ե՛րբ հիմ դրուեցաւ Նէապոլսոյ թագաւորութեան: — 3. Ե՛րբ տիրեցին Նորմանք Անգղիայի. ի՛նչպէս թագաւորեցին Ալֆրեդոս ու իր յաջորդները: — 4. Ո՛վ է Գուլիելմոս, ինչպէս կառավարեց: Մինչեւ ե՛րբ կեցան Նորմանք Անգղիայի մէջ:

1. Նորմանք (Անգղիայի մէջ Դանիացի) 800էն առեններն Նորուեգիայի, Շուետի ու Դանիայի մէջ երեւնալու սկսան: Այս ժամանակէն ամէն տարի Գերմանիայի, Գաղղիայի ու Անգղիայի ծովեզերացը վրայ կողոպուտներ կ'ընէին (66. 1.): Ժ. ու ԺԱ. դարերուն մէջ հիւս. Գաղղիայի, Ստորին Իտալիայի ու Անգղիայի մէջ տիրող ժողովուրդն ասոնք եղան:

Խել մը աւերիչ արշաւանքներէ ետեւ՝ 911էն, Կարոլոս Պարզամիտ, հիւսիս. Գաղղիայի մէջ իրենց բնակելու տեղ տուաւ: Առաջնորդնին, Ռոլլոյ (մկրտութեան անունովը Ռոբերտոս) իբրեւ դուքս՝ աւատ ընդունեցաւ Նորմանտիան:

2. Մետասաներորդ դարուն սկիզբները՝ Նորմանտիայէն պանդուխտներ հարաւ. Իտալիա եկած ու հոն Լոնգոբարդացւոց, Յունաց եւ Սարակինոսաց պատերազմներուն մասնակից եղած էին: Անոնց հետեւեցան իրենց հայրենակիցները, քաջ ու նենգաւոր մարդիկ: Երբ Սիկիլիայի մէջ, Արաբացւոց դէմ եղած արշաւանքի մ'ատեն, Յոյնք՝ պատերազմէն իրենց ինկած աւարի բաժինը չտուին, Գուլիէլմոս Ցոտոպէլ (երկաթաբազուկը) Ապուլիան առաւ 1040: Իրեն յաջորդեց եղբայրը՝ Հումֆրէտ, որ իբրեւ աւատ ընդունեցաւ Լեւոն Թ. քահանայապետէն՝ հարաւային Իտալիայի ու Սիկիլիայի մէջ աշխարհակալած երկիրները: — Ռոպէրդոս Կուիսգար, քահանայապետէն՝ Ապուլիայի ու Կալաբրիայի դուքս անուանուեցաւ (1060): — Ռոճէրիոս՝ Սարակինոսաց յաղթելէն ետեւ, անուանեց ինք զինք Մեծ կոմս Սի-

կիլիայի։ — Իր որդին Ռոճէրլէոս Բ. Սիկիլիան, Ապուլիան ու Կալաբրիան միացուց, եւ 1130ին թագաւոր եղաւ. որով հիմ դրուեցաւ Նէապոլսոյ թագաւորութեան։

Ստորին Իտալիայի վերջի լոմպարտական դքսութիւնը՝ Կապուան, առին ԺԲ. դարուն Նորմանդացի թագաւորները. Բենեւենդը՝ Քահանայապետը։ — Նէապոլսոյ թագաւորութիւնն՝ անցաւ, 1190ին Հօհէնշդաւֆեանց. 1266ին՝ Անժուի տան, որ Սիկիլիայի մէջ թագաւորեց մինչեւ 1282, Նէապոլսոյ մէջ՝ մինչեւ 1435 (74)։

3. Նորմանք, 1066ին եղան նաեւ Անգղիայի տիրող ժողովուրդը։

Անգլօ-սաքսոնական եօթը թագաւորութիւնները՝ երկայն պատերազմներէ ետեւ միացան 827ին։ Ծովէզրները աւերող Դանիացիք՝ Ալֆրեդոս Մեծէն (871-901) ետ մղուեցան։ Ասիկայ նորոգեց կործանած դղեակները, երկիրները դարձեալ կոմսութիւններու բաժնեց, եւ հոգ տարաւ ժողովրդեան քաղաքակրթութեանն, արուեստից ու վաճառականութեան։

Ալֆրեդոսի յաջորդներուն ժամանակ, թէպէտ արշաւանքնին դեռ շարունակող Դանիացիներն իսկզբան ետ մղուեցան, բայց երբ (1002ին) իրենցմէ շատերը Եթէլրեդ թագաւորին հրամանաւն սպանուեցան, Դանիացւոց թագաւորը՝ Սուէն, ամբողջ կղզւոյն տիրեց (1013)։ Ասոր որդին, Գանուդոս Մեծ (1014-1035), Դանիայի, Անգղիայի ու Նորուեգիայի թագաւորը, կառավարեց արդարութեամբ ու իշխանութեամբ. եւ սիրուեցաւ բազմաթիւ դանիացի մեծամեծներու հետ։ Իր որդւոցը (Հարալդ ու Հարդիգունդ) կարճատեւ թագաւորութենէն ետեւ, Եթէլրեդի որդին (1042)՝ Եդուարդ Խոստովանող, թագաւոր պսակուեցաւ։ Ասոր մահուանէն ետքը՝ իր տագրը, Հարալդ դուքսը, թագն իրեն յափշտակեց (1066ին)։

4. Գուլիէլմոս, Նորմանտիայի դուքսը՝ Եդուարդայ հօրեղբայրը, 3000 նաւով Անգղիա ելաւ (1066) ու Հէսդինկսի արիւնահեղ ճակատամարտովը (որուն մէջ Հարալդ ինկաւ) վաստըկեցաւ թագն ու Աշխարհակալ մականունը։ Գուլիէլմոս՝ երկիրը 700 աւատներու բաժնեց. բայց զանանք մեծաւ մասամբ Նորման ու գաղղիացի ասպետաց

տալով՝ ուխտ տուաւ հարստահարեալ Անգղիացւոց յաճախ ապստամբութեանը։ — Անգլօ-սաքսոններուն լեզուին՝ գաղղիերէն պաշտօնական լեզուին հետ խառնուելովը, եղաւ անգղիերէնը։

Նորմանական ցեղը տիրեց Անգղիայի մէջ մինչեւ 1154։ Գուլիէլմոս Աշխարհակալին յաջորդեցին իր որդիքը, **Գուլիէլմոս Բ.** (1087), **Հենրիկոս Ա.** (1100) եւ ասոր աղջկան որդին **Ստեփանոս Պլուայէն** (1135)։ Հենրիկոս Ա.ին ատեն մեծ աւատները ժառանգական եղան։ Իր Մաթիլդէ դստեր որդւոյն՝ Հենրիկոս Բ.ի հետ եղաւ գահին վրայ (1154-1485) Անժուի կամ Բլանդաճենէի տունը։

**Հենրիկոս Բ.** (1154-1189) խոհեմ ու հզօր իշխանը Գաղղիայի մէջ քանի մը գաւառներ ունէր։ Թէպէտ նուաճեց 1172ին Իրլանտան. սակայն՝ եկեղեցականներն իր իշխանութեան տակ առնելու փորձը պարապի եղաւ, Թովմաս Պըքէթ Քէնթըրպըրիի արքեպիսկոպոսին հաստատութեամբն՝ որ սպանուեցաւ ու սրբոց կարգը դասուեցաւ։ Իր որդւոց (Ռիքարդոս Առիւծասրտին 1189-1199 Թ. 77. եւ Յովհ. Անհողին 1199-1216) ատեն՝ պարոններուն իշխանութիւնն սկսաւ զօրանալ։ — Ծոյլ եւ անգութ Յովհաննէս՝ իր եղբօրորդին, Արթուրը օրինաւոր թագաժառանգն սպաննել տալէն ետեւ՝ կորսնցուց Նորմանտիան ու Անժուն. իսկ պարոնները փրցուցին ձեռքէն 1215ին ազատութեան մեծ հրովարտակը (Magna-Charta libertatum). որով հաստատուեցան աւատութեան յարաբերութիւնները, եկեղեցականաց, քաղաքաց եւ աւանաց իրաւունքները։ Սահմանուեցաւ նաեւ որ ազատորեարը, միայն երկրին օրինաց եւ իրենց վիճակակցաց վճռոյն համեմատ դատուին։ Հենրիկոս Գ. (1216-1272) իր հօրը պէս պարոններուն ազդեցութեան տակն էր։ Եդուարդ Ա. (1272-1307) ազնուական իշխանը, հպատակեցուց 1282ին Ուէլս գաւառը, եւ Անգղիան Սկովտիայի գահակալութեան կռիւներուն մասնակից ըրաւ. որ շարունակուեցան իր յաջորդաց՝ Եդուարդ Բ.ի (1307-1327) ու Եդուարդ Գ.ի (1327-1377) ատեն։ Եդուարդ Գ.ի ժամանակ սկսան Գաղղիայի հետ պատերազմները (89)։

---

# Գ. ՀԱՏՈՒԱԾ

*Խաչակրութիւնք. 1096 — 1291:*

## 71. Առաջին խաչակիրք 1096-1099.

1. Ի՞նչ է խաչակրութեանց սկզբնապատճառը. Ի՞նչպէս սկսաւ ու լմնցաւ առաջին խաչակրութիւնը: — 2. Ի՞նչ տեսակ էր Երուսաղէմի նոր վարչութիւնը. Ի՞նչ էր գլխաւոր յենարանը: Ե՞րբ հիմնուեցան Ս. Յովհաննու, Տաճարականաց ու Գերմանական ասպետաց կարգերը:

1. Կոստանդիանոս Մեծէն սկսեալ ամէն քրիստոնեայ երկիրներէն՝ Ս. Գերեզմանին եղած ուխտագնացութիւններն անարգել կը շարունակուէին, ցորչափ Արաբացիք տէր էին Երուսաղէմի (58): Բայց երբ Սելճուգները (1076) զԵրուսաղէմ առին, քրիստոնեայք սկսան անոնցմէ նեղութիւն կրել: Եւ որովհետեւ պանդուխտներուն եւ ասորական քրիստոնէից դանդատներն երթալով կը շատնար, հաւատացելոց՝ Ս. Գերեզմանն ազատելու գաղափարն սկսաւ ընդհանուր ըլլալ: Պետրոս Ամիէնի ճգնաւորը, Իտալիա ու Գաղղիա պտըտելով՝ ժողովուրդը ոտք հանելէն ետեւ, Պիաչէնցայի ու Գլէրմոնի եկեղեցական ժողովքներուն մէջ, Ուրբանոս Բ.ին յորդորելովը (1094) Երուսաղէմի ազատութեան համար խաչակրութիւն մը որոշուեցաւ:

* . Ներքին շարունակեալ կռիւներէն ու իրենց տէրերուն ճնշումէն ազատութիւն գտնելու եւ լաւագոյն վիճակի մը փափաքիլն ընդհանուր եղած էր: Ասանկ պարագաներու մէջ հարկ էր՝ որ երկիրն, որուն մէջ Քրիստոս ապրեցաւ ու մեռաւ, երեւնար իբրեւ տեղ մը, ուր մարդ հայրենեաց ամէն վշտերէն ազատութիւն կարենար գտնել: —Նպաստամատոյց եղան այս եռանդին քահանայապետք ալ, որոնք Պաղեստին գացողներուն լիակատար ներողութիւն կը շնորհէին:

Երբ (1096ին) գարնան Պետրոս Անապատականին առաջնորդութեամբը ճամբայ ելած խառնի-

ճաղանճին մեծագոյն մասը՝ Փոքր Ասիայի մէջ (Աւգոստ.) ջարդուեցաւ, 100.000 գաղղիացի ու իտալացի ասպետաց կանոնաւորեալ զօրքը ճամբայ ելաւ, որոնց ընկերացաւ 400.000 զինուորեալ սպայ, ծառայ ու կրօնաւոր։

Առաջնորդներն էին. Կոդփրիդոս Պուլյէօն՝ Ստորին Լօթարինգիայի դուքսը. ասոր եղբայրը Բաղդուինոս. Ռոբերտոս Փլանտրիացին, Հուգոն Վերմանդուացին՝ Փիլիպպոս Ա. Գաղղիայի թագաւորին եղբայրը. Ռոբերտոս Նորմանտացին՝ Գուլիէլմոս աշխարհակալին եղբայրը. Ռայմունդոս Թուլուզցին՝ իր ժամանակին ամենահարուստ իշխանը. Բէմունդոս Տարենտացին՝ Ռոբերտոս Կուիսքարին որդին. եւ անոր հօրեղբայրը, բարեպաշտ ու քաջն Տանգրեդոս։

Իշխանները՝ Ալեքս. Կոմնենոս Յունաց կայսեր հաւատարմութեան երդում ընելէն ետեւ՝ յաղթեցին խաչակիրք Դորիլէոմի քով Սելճուգներուն. անցան անդադար չքաւորութեան հետ կռուելով Փոքր Ասիան (1097), առին Անտիոքը (1098), ուր Բէմունդոս հիմնեց իշխանութիւն մը։ Թէպէտ խաչակիրք, հոն 200.000 Սարակինոսներէն պաշարուելով՝ վերջի աստիճանի նեղութիւն կրեցին, բայց վանեցին թշնամին՝ Քրիստոսի խոցին նիզակը գտնելով։ Բաղդուինոս՝ Եդեսիան առնելու ատեն, խաչակրաց բանակէն 20.000 հոգի Երուսաղէմի վրայ քալեց, ու առաւ յարձակմամբ քաղաքը 1099 Յուլ. 15ին։ Կոդփրիդոս Ս. Գերեզմանին պաշտպանը՝ մեռաւ 1100ին, ու եղբայրը Բաղդուինոս ինք զինքը Երուսաղէմի թագաւոր անուանեց։

2. Երուսաղէմայ թագաւորութիւնը — Տաճկաց հետ, անընդհատ պատերազմելով — կանգուն մնաց մինչեւ 1187։ Փրեդերիկոս Բ. Կայսրը դաշինքով նուիրական տեղերը նորէն ընդունեցաւ (1228). սակայն քիչ մը ետքը (1244) դարձեալ Տաճկաց ձեռքն անցան։

Թագաւորութիւնը՝ գաղղիական կաղապարի վրայ շինուած աւատային իշխանութիւն մըն էր։ Իշխանութեան

գլխաւոր յենարաններն էին՝ հիմնարկութենէն անմիջապէս ետքը հաստատուած երեք ասպետական կարգերը:

Ա. Յովհաննու (1310էն ետքը՝ Ռոդոսի, 1530էն ետքը՝ Մալթայի) ասպետաց կարգը. Երուսաղէմի Ս. Յովհաննու հիւրընկալ եղբարցմէ սկզբնաւորած է: Կարգին կանոնները միացուցած էին ասպետի մը պարտքերը (այրեաց, որբոց եւ եկեղեցւոյ համար պատերազմիլ) կրօնաւորական (աղքատութեան, ողջախոհութեան ու հնազանդութեան) ուխտերուն հետ: Կրօնին նշանագգեստն էր, ճերմակ խաչով՝ սեւ վերարկու: Կրօնն ասպետներէն զատ, ունէր քահանաներ ու հիւանդները հոգացող աշխատաւոր եղբայրներ:

Բ. Տաճարականք (1127ին, իբրեւ ասպետաց կարգ հաստատուած) վերյիշեալ ուխտերէն զատ պարտական էին, պանդուխտներու առաջնորդութիւն ընել: Ասոնք կը կրէին սպիտակ վերարկու մը, կարմիր խաչով: Կրօնը՝ շատ նշանաւոր եղաւ իր դիւցազնական գործքերովը (88):

Գ. Գերմանական կամ Մարեմայ ասպետները (սպիտակ վերարկուաւ ու սեւ խաչով) 1190ին հիմնուեցան: Պտղոմայիս քաղաքը (1291) կորսնցընելէն ետեւ, կարգապետին նիստը՝ Վենետիկ, անկէ ալ (1309) Բրուսիա փոխադրուեցաւ:

## 72. Գերմանիա՝ Հոհէնշտաուֆէնց օրով. 1138-1254.

1. Ինչպէս կառավարեց Լոթարիոս Սաքսոնիացին: Ե՞րբ սկսաւ Կիպելլեանց եւ Վելֆեանց կողմնակցութիւնը: 2. Ի՞նչպէս կառավարեց Կոնրադոս Սուաբիացին: — 3. Ի՞նչ աշխարհակալութիւններ ըրաւ Փրեդ. Պարպարոսա:

1. Լոթարիոս Սաքսոնիացին (1125-1137), Մայնցի մէջ ժողոված իշխաններէն կայսր ընտրուեցաւ: Հոհէնշտաուֆեան եղբարք (Փրեդերիկոս ու Կոնրադոս Սուապիացիները) երկար պատերազմէ մ՚նտեւ հարկադրեցան հպատակիլ:

Լոթարիոս, Մոնցա քաղքին մէջ պսակուելէն ետեւ, ընդունեցաւ քահանայապետէն Մաթիլդեան երկիրներն իբրեւ աւատ:

Լոթարիոսի ժամանակն սկսաւ, Կիպելլեանց (Հոհէնշտաուֆեանց) եւ Վելֆեանց կռիւը, որ Գերմանիայի մէջ դարէ մ՚աւելի, իսկ Իտալիայի մէջ՝ Միջին դարու մինչեւ վերջը տեւեց: Վելֆեանց զօրութիւնը կոտրեց

Փրեդերիկոս Պարպարոսսա (1180)։ Անկից ետքը՝ Վէլֆեան անունն եղաւ կայսեր հակառակորդներուն, իսկ Կիպելեանցը՝ կայսեր կողմնակիցներուն տեղհական։

2. **Կոնրադոս Գ.** Սուապիայի դքսին հետ եւ ալ Հոհէնշդաուֆեանց ցեղը (1138-1152) գերմանական կայսրութեան գահը։ Այս ցեղն իշխեց դարէ մ՚աւելի՝ շարունակ կռուելով քահանայապետաց, Իտալիայի քաղաքաց եւ գերմանացի իշխանաց հետ։

Կոնրադոսի ընտրութեան ատեն, երբ Հենրիկոս Ամբարտաւան իրեն հնազանդութիւնը զլացաւ՝ աքսորք խաւրուեցաւ. եւ իբրեւ աւատ ունեցած երկիրները ձեռքէն առնուեցան։ Սաքսոնիան՝ տրուեցաւ Ալպրեխդ Արջուն, իսկ Պաւիէրա՝ Լէոբոլտոս Աւստրիացւոյն։ Կոնրադոս խաչակրութեան գնաց 1147ին (թ. 75)։

3. **Փրէտէրիկոս Ա.** Պարպարոսսա (1152-1190) Կոնրադոսի եղբօրորդին, ամէն ժամանակաց ամենամեծ մարդիկներէն մէկը, ճնշեց արդարութեամբ եւ զօրութեամբ գերմանական իշխանաց կռիւներն ու պահեց Իտալիայի մէջ կայսերական ճոխութիւնը։

Փրեդերիկոս՝ հռոմէական առաջին արշաւանքին ատեն (1154) ինք զինք Իտալիայի թագաւոր ու կայսր պսակել տուաւ։ Քահանայապետին աշխարհական իշխանութիւնը կործանել ուզող Առնոլդոս Պրէշիացին՝ Ադրիանոս Դ. քահանայապետին ձեռքը յանձնեց։ — Երկրորդ արշաւանքին ատեն (1158-1162) օրէնսգիտաց ձեռօք որոշել տուաւ կայսերական իրաւունքները, եւ կործանեց իր իշխանութեան հակառակող Միլանը։ Աղեքսանդր Գ. [illegible] բանադրանք դնելով, կայսրն ըրաւ երկու անյաջող արշաւանք, Իտալիայի դաշնակցեալ քաղաքաց դէմ։

— Վերջապէս հինգերորդ արշաւանքին ատեն Լինեանոյի քով (1176) յաղթուեցաւ։ Ասոր վրայ (1177) քաղաքաց հետ զինադադար ու քահանայապետին հետ խաղաղութիւն ըրաւ։ Քիչ մը ետքը (1183ին) Իտալիայի քաղաքներուն արքունական իրաւունքները (զօրաժողով, դատաստան, դրամ կոխել, մաքս դնել) շնորհուեցան. սակայն քաղաքցիք կայսեր պիտի հպատակէին, ու վէճ մ՚ելած ատեն իրեն պիտ՚որ բողոքէին։

Փրեդերիկոս՝ վեցերորդ արշաւանքին ատեն, իր որդւոյն՝ Հենրիկոսի ամուսնութիւնը մեծ փառաւորութեամբ Միլանի մէջ կատարելէն ետեւ, խաչակիրք երթալու ատեն, մեռաւ Կիլիկիայի Սալեփ գետը 1190ին (Թ. 75. 2.)։

## 73. Շտաուֆենեան.

1. Ի՞նչպէս կառավարեց Հենրիկոս Զ. — 2. Գիպելլեանց եւ Վէլֆեանց՝ գահակալութեան նկատմամբ ունեցած կռիւն ինչպէս վերջացաւ։ — 3. Ի՞նչ տեսակ վարչութիւն ունեցաւ Փրեդ. Բ. Ի՞նչ է քահանայապետաց ու կայսերաց մէջ եղած երկարատեւ պատերազմին պատճառը։ Ի՞նչ հետեւութիւն ունեցաւ Հենրիկոսի ապստամբութիւնը։ — 4. Ի՞նչ յաղթութիւններ ըրաւ Փրեդ. Բ. Իտալիայի մէջ. Ո՞ւր մեռաւ։ — 5. Ե՞րբ եւ ինչպէս երեւան ելաւ միջուլական իշխանութիւնը։

1. Հենրիկոս Զ. (1190-1197) ժառանգեց իր Կոստանդիա կնոջը ձեռօք, Նէապոլսոյ թագաւորութիւնն ու Սիկիլիան։ Բայց զասոնք՝ հազիւ երկու արիւնահեղ ճակատէ եւ խել մը անգութ սպանութիւններէ ետքը կրցաւ առնուլ։ Հենրիկոսի ատեն, Հոհէնշտաուֆեանց իշխանութիւնն իր բարձրութեան ծայրը հասաւ։ Իւր գլխաւոր ախոյեանին, Հենրիկոս Առիւծին մեռնելէն ետեւ (1195), կըրցաւ կայսերական թագն իր գերդաստանին մէջ ժառանգական ընել։ Ժառանգութեամբ առած Ապուլիան ու Սիկիլիան ուզեց ցմիշտ Գերմանիայի հետ

միացընել. սակայն իր յատականդիծը Վիւրցպուրկի ժողովին մէջ (1196) օգ ելաւ։ Արեւելք ուղեց երթալ ու առաւ խաչը։ Հայաստանի ու Կիպրոսի իշխանները՝ իրեն հպատակութիւն խոստանալէն ետեւ, նաեւ Բիւզանդեան կայսրները զինք ճանչնալու տրիպելու վրայ էր, երբ Բալէրմօ (1197) հազիւ 32 տարեան, թերեւս թունաւորուելով, յանկարծ մեռաւ։

2. Կիպելեանք ասոր վրայ կայսր ընտրեցին, Հենրիկոսի եղբայրը՝ **Փիլիպպոս Սուաբիացին** (1198-1208), իսկ Վելֆեանք Օթոն՝ **Դ. Բրաունշվայկցին**, Հենրիկոս Առիւծին որդին (1198-1215)։ Ասկէ յառաջ եկած պատերազմին վերջ տրուեցաւ Փիլիպպոսի սպանմամբը (1208). որուն վրայ Օթոն Դ. ամէնէն ընդունուեցաւ։ Ասիկայ՝ Անգոնայի, Սբոլէդոյի ու Ռաւէննայի մէջ, (եւ դեռ կռուոյ տակ եղած մաթիլդեան երկիրներուն վրայ) ունեցած պահանջմունքներէն հրաժարելէն ետեւ, Իննովկենտիոս Գ.էն 1209ին, Հռոմի մէջ պսակուեցաւ։ Բայց որովհետեւ խոստմանը դրժեց, 1210ին նզովք ընդունեցաւ։ Ասոր վրայ Ապուլիայի մէջ պատերազմած ատեն, Գերմանիայի մէջ հակառակաթոռ կայսր ընտրուեցաւ Հենրիկոս Զ.ին որդին՝ Փրեդերիկոս։ Ասիկայ՝ Գաղղիայի Փիլիպպոս թագաւորին, իսկ Օթոն Յովհաննէս Անգղիայի թագաւորին հետ դաշնակցեցաւ։ Սակայն Օթոն, Պուվէնի քով բոլորովին յաղթուելէն ետեւ (1214), Գերմանիայի դրեթէ ամէն իշխանները զինք թողուցին, եւ Փրեդերիկոս (1215) թագաւոր պսակուեցաւ։ Մեռաւ Օթոն 1218ին։

3. **Փրեդերիկոս Բ.** (1215-1250) Հենրիկոս Զ.ին որդին, պսակուեցաւ Ախէնի մէջ 1215ին։

Այս մեծ կայսեր կառավարութեան առաջին տարիները կը տիրէր Գերմանիայի ու Իտալիայի մէջ խորին խաղաղութիւն, որով քաղաքները շատ ծաղկեցան. եւ քիչ ատենուան մէջ առուտուր ու արուեստ շատ յառաջացան (78)։

Փրեդերիկոս փորձեց Սիկիլիան իր իշխանութեան գլխաւոր տեղն ընել։ Բայց իբրեւ Թագաւոր Իտալիոյ՝ ասով կը սպառնար քահանայապետին աշխարհական իշխանութեան։ Ասոր համար իր կառավարութիւնը՝ կայսրութեան եւ քահանայապետութեան մէջ անվերջանալի կռիւ մը կը դնէ առջեւնիս։ Փրեդերիկոս՝ Իննովկենտ. Գ.ի խոստացաւ, Սիկիլիան՝ իր Հենրիկոս որդւոյն տալու, եւ երբեք գերմանական կայսրութեան հետ չմիացընելու։ Բայց քահանայապետին մահուանէն (1216) ետքը, զՀենրիկոս՝ Սուաբիայի դուքս եւ 1220ին հռոմէական Թագաւոր ընտրել տուաւ։ Ասոր փոխարէն Ոնորիոս Գ.էն (1220ին) կայսր պսակուած ատեն՝ երդում ըրաւ, որ գահն ելլելու ժամանակ խոստացած խաչակրութեան երթայ. բայց աս բանս տարւէ տարի ուշացուց։ Արդ՝ երբ Փրեդերիկոս (1227) վերջապէս Պաղեստին երթալու ճամբայ ելաւ, բայց երեք օր ետքը դարձաւ, Գրիգոր Թ. (1227-1241) զինքը բանադրեց։ Այն ատեն Փրեդերիկոս, Չորրորդ խաչակրութեան գնաց (1228-1229). ընդունեցաւ դաշինքով զԵրուսաղէմ եւ ինք զինք Թագաւոր պսակել տուաւ (Թ. 75)։ Այս եղած ժամանակ Միլանցիք քահանայապետական զօրքերուն հետ միացած՝ Իտալիայի մէջ կայսերական երկիրներուն վրայ յարձակեցան։ Երբ կայսրն ետ դարձաւ, վռնտեց իտալական զօրքը եւ Եկեղեցւոյ տէրութեան սահմանները մտնելու կը սպառնար. սակայն Ս. Գերմա-

նոսի խաղաղութեամբ՝ իր ու Գրիգոր Թ.ի մէջ եղած կռիւը դադրեցաւ։

4. Փրեդերիկոսի հեռաւորութեանատեն, Գերմանիայի մէջ՝ ի սկզբան Էնկելպէրդ Կոլոնիայի արքեպիսկոպոսը՝ երիտասարդ Հենրիկոսի դաստիարակը, ետքէն Լուդովիկոս Պաւիերայի դուքսը՝ տէրութեան վարչութիւնը կը հոգային։ Երբ Հենրիկոս (1231) իշխանութիւնը ձեռք առաւ, հօրը դէմ ապստամբելու փորձ փորձեց եւ Լոմպարտացւոց հետ միացաւ։ Սակայն կայսրը զինք՝ Վորմսի քով բռնեց (1235) ու Ապուլիայի մէջ բանտարկել տուաւ, ուր մեռաւ ալ 1242ին։ Փրեդերիկոս՝ իր Կոնրադոս որդին, Հռոմայ թագաւոր ընտրել տալէն ետեւ, թողուց Գերմանիան, մէյ մ'ալ հոն չդառնալու համար։

4. Ասոր վրայ Լոմպարտացիները հպատակեցընելու համար Իտալիա գնաց (1236), եւ Ապուլիա գաղթեցուցած հաւատարիմ Սարակինոսներէն օգնութիւն գտնելով՝ յաղթեց Նոյեմբ. 26 ու 27ին (1237) Գորդէնուովայի ճակատին մէջ Լոմպարտացւոց։ Բայց երբ լոմպարտական քաղաքներէն պահանջեց, որ անպայման իրեն հպատակին, յանձն չառին. եւ պատերազմը շարունակեցին։ Քահանայապետը (Փրեդերիկոսի մէկ բնական որդւոյն Էնցիոսի, Սարտինիայի՝ թագաւոր անուանուելուն վշայ վշտացած) Լոմպարտացւոց հետ միացաւ (1239)։ Անոր համար կայսրը՝ վերին Իտալիայի պատերազմն իր աներոջը Էծէլինոյի եւ իւր որդւոյն Էնցիոսի թողլով՝ Միջին Իտալիայի քաղաքներն աշխարհակալեց, եւ Հռոմ ալ պաշարելու վրայ էր, երբ 90 ամեայ Գրիգոր մեռաւ (21 Աւգոստ. 1241)։ Ասոր յաջորդ Իննովկենտիոս Դ. (1243-1254), զՓրեդերիկոս Բ. կայսերութենէն ինկած հրատարակեց, եւ ետեւէ եղաւ

(1246) Հենրիկոս Ռասբէ սահմանակումին կայսր ընտրուելուն. բայց աս ալ շուտ մը մեռաւ (1247)։

Ընդհանուր շփոթութիւնն աւելի մեծցաւ, Մոնկոլաց Գերմանիա արշաւելովը։ Այս շփոթութեան ատեն Էնցիոս՝ իր Էծէլինոյ զօրապետին հետ Լոմպարտիայի մէջ պատերազմը կը շարունակէր, բայց 1249ին Պոլոնիայի մէջ գերի ինկաւ։ Քիչ մը ետքը Փրեդերիկոս Բ. ալ մեռաւ, Հոհէնշդաուֆեանց ամէնէն մեծ կայսրը, Կամպանիայի Ֆիրէնցոլա բերդը (1250)։ Եօթը թագ ունէր Փրեդերիկոս. Հռոմէական կայսրութեան, Գերմանիայի թագաւորութեան, Լոմպարտիայինը, Աբուլիայինը, Բուրգունդիայինը, Երուսաղեմինն ու Սարդինիայինը։

5. ԺԳ. դարուն սկիզբը Դեմուճին (Ճինկիզ խան) մղուլական ցեղերուն գլուխն անցնելով (1206-1227), ամբողջ Ասիան (Ճէնաստանէն մինչեւ Ռուսաստան) անապատ դարձուց։ Իր թոռան՝ Պաթու խանի ատեն, Մոնկոլք՝ մինչեւ Շլեզիա յառաջացան, յաղթեցին Լիկնիցի քով 1241ին. բայց ետ քաշուեցան՝ Հունգարիայէն անցնելով եւ հոն սոսկալի կոտորած ու ապականութիւն ընելով։ 1258ին Պաղտատի տիրեցին եւ ամիրապետութեան վերջ տուին (58)։ Ասոր վրայ մղուլական իշխանութիւնը չորս խանազներու բաժնուեցաւ. Ճենաստան, Իրան (Պարսկաստան), Ճակադայի (Պուխանա) ու Գաբչագ (Կասպից ծովուն հիւսիս. դին)։ Վերջինին հպատակ էր Ռուսիա մինչեւ 1477։

## 74. Հոհէնշդաուֆեանց վերջը. 1268.

1. Ե՞րբ եւ ինչպէս սկսան Կիպելլեանք ելնալ։ — 2. Որո՞ւն հետ լմնցաւ Հոհէնշդաուֆեանց ցեղը։ — 3. Ո՞վ ընտրուեցաւ կայսր. Գերմանական անտէրունչութեան ինչպէս վերջ տրուեցաւ։

1. Հենրիկոս Ռասբէ, հակակայսեր մահուանէն ետեւ, Գուլիէլմոս Հոլլանտացին (1247-1250) ընտրուեցաւ Գերմանիայի կայսր. սակայն յարգ մը չունեցաւ։ Նաեւ Կոնրադոս Դ. (1250-1254) Փրեդերիկոս Բ.ին որդին, չկրցաւ ինք զինք ամենուն

ճանչցընել տալ։ Իր բոլոր գահակալութիւնը՝ Նէապոլսոյ թագաւորութեանը համար պատերազմելով անցուց։ Եւ որովհետեւ իր որդին, Կոնրադինոս երկու տարուան էր, եւ Բալերմոյի մէջ ինք զինքը թագաւոր պսակել տուող Մանֆրէդոս եղբայրն ալ՝ չկրցաւ բաները քահանայապետին հետ շտկել. անոր համար վերջինը՝ զԿարոլոս Անժուցին, Ս. Լուդովիկոսի եղբայրը, Իտալիա կանչեց։ Առաւ ասիկայ 1265ին Նէապոլիսն, յաղթեց Մանֆրեդոսի՝ որ Պենեւենդի ճակատին մէջ ինկաւ (1266). եւ շատ անգթութիւններ ըրաւ կայսերականաց դէմ։

2. Կոնրադինոս, նեղ ինկած ժողովրդէն կանչուելով, (1267) բանակով մը Ալպեաններն անցաւ. բայց 1268ին Դալիագոցցոյի քով՝ մատնութեամբ գերի բռնուեցաւ ու Նէապոլսոյ մէջ գլխատուեցաւ։ Իրմով վերջացաւ Հոհէնշդաուֆեանց ցեղը։

— Նէապոլսոյ ու Սիկիլիայի թագաւորութիւնն որ Փրեդերիկոս Բ.ի ժամանակ Եւրոպայի ամենէն ծաղկեալ երկիրն էր, Կարոլոսի բռնաւորական կառավարութեան ատեն իր հանդստութիւնն ու բարօրութիւնը կորսնցուց։ 1283ին ապստամբութիւն մ'ելաւ (սիկիլական երեկոյեան ժամերգութիւն), որուն մէջ կղզւոյն բոլոր գաղղիացի բնակիչներն սպաննուեցան։

3. Գերմանիայի մէջ Գուլիէլմոս Հոլլանտացւոյն մահուանէն ետեւ, երկու օտար իշխան՝ թագաւոր ընտրուեցան. Ռիքարդոս Գոռնուայլցին եւ Ալփոնսոս Ժ. Կաստիլիացին։ Առաջինը՝ քիչ մ'ատեն, Գերմանիա եկաւ, իսկ երկրորդն՝ ամենեւին չեկաւ։ Բովանդակ պետութեան մէջ վերջի աստիճանի խառնակութիւն մը տիրած էր։ Բռնագունի իրաւունքն (Faustrecht) օրէնք եղած էր։ — Ռուտոլփոս Հապսպուրկցիին ընտրութեամբը, անտէրունչ ժամանակին վերջ տրուեցաւ (1273)։

## 75. Երկրորդ (1147), Երրորդ (1189) ու Չորրորդ (1228) Խաչակրութիւն.

1. Ե՞րբ եւ ինչո՞ւ եղաւ երկրորդ խաչակրութիւնը։ — 2. Ի՞նչ ելք ունեցաւ երրորդը։ — 3. Փրեդերիկոս Բ.ի խաչակրութիւնը հետեւութիւն մ'ունեցաւ։

1. Երբ (1144ին)՝ հզօր Իմատէտտին Զէնկի՝ Մուսուլի սէլճուգեան իշխանն Եդեսիան առաւ, եւ խել մը քրիստոնեայ գերի ծախեց. եւ իր որդին ու յաջորդը Նուրէտտին՝ քրիստոնէից նորահաստատ թագաւորութեան երկիրները մէկիկ մէկիկ ետ առաւ, արեւմտեան քրիստոնէից խաչակրութեան եռանդը նորէն բորբոքեցաւ։ Ս. Բեռնարդոսի յորդորելովը՝ Լուդովիկոս Է. Գաղղիայի թագաւորն եւ Կոնրադոս Գ. կայսրը (Երկրորդ) խաչակրութեան գրուեցան։ Այս երկու վեհապետները (1147ին), 100.000 ասպետէ կազմուած բանակով մը Փոքր Ասիայէն անցան. սակայն պաշարի պակսութեամբ, հիւանդութեամբ եւ Սէլճուգեանց հետ շարունակ պատերազմելով՝ գրեթէ ամէնքը մեռան։ Թէեւ երկու իշխաններն Երուսաղէմ գացին, բայց առանց բան մ'ընելու (1149) ետ դարձան։

Նուրէտտինի մահուանէն ետեւ, իւր Եգիպտոսի կուսակալը՝ Սալահէտտին (1173) ազնուական, արդար ու քաջ իշխանը՝ հետզհետէ Նուրէտտինի բոլոր երկիրներուն տիրեց եւ եղաւ Էմիր Օմրայի։ Սալահէտտին, Վիտաղիս Լուսինեանէն՝ Երուսաղեմայ թագաւորէն, անարգանք մը կրելով, Տիբերիասի քով վրան յաղթութիւն մ'ընելէն ետեւ՝ Երուսաղէմի տիրեց (1187)։

2. Երուսաղէմն ազատելու համար, Փրեդերիկոս Պարպարոսսա (1189ին) 150.000է կազմուած բանակով մը Ասիա (Երրորդ խաչակրութիւն,) ան-

ցաւ եւ տիրեց Իկոնիոնի. բայց Կիլիկիայի Սալէփ գետը խեղդուեցաւ 1190ին։ Իր որդին Փրեդերիկոս ալ ինկաւ բանակին մեծ մասովը Պտղոմայիսի առջեւ։

Այս միջոցին Ռիքարդոս Առիւծասիրտ, Անգղիայի՝ ու Փիլիպպ. Աւգոստոս, Գաղղիայի թագաւորները Պաղեստին նաւեցին՝ եւ Լէոբոլտոս Աւստրիացւոյն հետ Պտղոմայիսն առին 1191ին։ Լէոբոլտոս՝ Ռիքարդոսէն անարգանք մը կրելով՝ ետ դարձաւ։ Ռիքարդոս՝ Փիլիպպոս Աւգոստոսէն ալ թողուած, հարկադրեցաւ Երուսաղեմայ առջեւէն հեռանալու. Կիպրոսի թագաւորութիւնը՝ զոր Յաճիկներէն առած էր, Վիտաղիս Լուսինեանին թող տալով։

Ռիքարդոս դարձած ատեն, Լէոբոլտոսին ձեռքն ինկաւ, եւ Հենրիկոս Զ. զինքը կալանաւորութեան մէջ պահեց մինչեւ 1194։ — Գաղղիայէն ու Գերմանիայէն 1212ին Ասիա գացող հազարաւոր տղաք գերի իյնալով ծախուեցան։ Անդրէաս՝ Հունգարիայի թագաւորին ձեռք զարկած խաչակրութիւնն ալ (1218) առանց հետեւութեան մնաց։

3. Փրեդերիկոս Բ. Կայսրը (73) 1228ին, Երուսաղէմ գնաց, (Չորրորդ խաչակրութիւն,) զոր՝ Բեթղեհէմ եւ Նազարէթ քաղաքներուն հետ, Սուլդան Քեամիլ Եգիպտացիէն դաշինքով ընդունած էր։ Բայց իր դառնալէն ետեւ, Պաղեստինի քրիստոնէից մէջ երկպառակութիւններ ելան, որով 1244ին Խովարէզմեանք Երուսաղէմ աշխարհակալեցին, զոր քրիստոնեայք մէյ մ'ալ չկրցան առնուլ։

## 76. Լատինական կայսրութիւնը 1204-1261.

1. Ի՞նչ պատճառաւ հիմնուեցաւ լատինական կայսրութիւնը։ — 2. Քանի՞ տարի տեւեց։ — 3. Ե՞րբ ու որո՞ւն ձեռքով լմնցաւ։

1. Կոստանդինուպոլսոյ մէջ կը տիրէր 1057-1204 Կոմնէնեանց զօրաւոր ցեղը (55)։ — Իր եղ-

թայրը՝ Իսահակը, գահէն վար առնուլ եւ կուրցընել տուող Աղեքսիոս Գ.ին դէմ (1195), օգնութեան կանչեց առաջնոյն որդին՝ Աղեքսիոս, Վենետիկոյ մէջ խաչակրութեան երթալու համար ժողոված դաղղիացի ասպետները: Այն միջոցին որ ասոնք Տանտոլոյէն առաջնորդուած նաւատորմղով մը Կոստանդինուպոլսոյ առջեւ հասան, եւ Աղեքսիոս Գ. փախաւ. ժողովուրդը՝ կոյր Իսահակը նորէն գահ հանեց, բայց երբ ապստամբութիւն մ՚ելլելով՝ Աղեքս կըրտսեր սպանուեցաւ, խաչակիրք յարձակմամբ Կոստանդինուպոլիսն առին (1204) կողոպտեցին, բազմաթիւ գանձերը Վենետացւոց հետ բաժնեցին եւ Յունաց կայսրութիւնը վերցուցին: Բաղդուինոս կոմսը կայսր ընտրուեցաւ: Վենետացիք ընդունեցան Դաղմատիան, Մորէայի մէկ մասն ու խել մը կղզիներ: Մնացած երկիրները՝ տուաւ Բաղդուինոս գաղղիացի ասպետաց իբրեւ աւատ:

2. Լատինական կայսրութիւնը տեւեց 1204-1261: — Գրեթէ ամէն կայսրները՝ վերջի աստիճանի նեղութեան մէջ էին. տէրութիւնը Բուլկարներէն անապատ դարձաւ: Յունական անկախ իշխաններ կային Նիկիայի ու Տրապիզոնի մէջ: Միքայէլ Պալէոլոգոս, Նիկիայի կայսրը՝ 1261ին, Կոստանդինուպոլիսը Ճենովացւոց օգնութեամբն առաւ եւ նորէն հաստատեց յունական կայսրութիւնը:

3. Պալէոլոգեանց ցեղն՝ իշխեց մինչեւ 1453. բայց գաւառները մէկիկ մէկիկ օսմանեան Տաճկաց ձեռքն անցան: Ասոնք աշխարհակալեցին 1300ին Փոքր Ասիան. 1365ին իրենց մայրաքաղաք ըրին Ադրիանուպոլիսն. եւ 1453ին առին նաեւ Կոստանդինուպոլիսը:

## 77. Գաղղիա, Կապետեանց տուն 987-1270. — Վերջին խաչակիրք 1291.

1. Ի՞նչ վիճակի մէջ էր Գաղղիա Ժ. եւ ԺԱ. դարերուն մէջ: — 2. Ինչպէս կառավարեց Լուդ. Եօթներորդ. Իրեն ո՞վ յաջորդեց: — 3. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Լուդ. Իններորդ. Ի՞նչպէս մեռաւ:

1. Ս. Երկրին նկատմամբ վերջին նշանաւոր ձեռնարկութիւնն ըրաւ Լուդովիկոս Թ. Սուրբը, Գաղղիայի թագաւորը:

Առաջին Կապետեանք (Հուգոն Կապետ 987, Բարեպաշտ Ռոբերտոս 996, Հենրիկոս Ա. 1031. Փիլիպպոս Ա. 1060-1108), թէեւ իբրեւ Ֆրանկիայի դուքս՝ Գաղղիայի ամենէն զօրաւոր կալուածատէրներն էին, սակայն իրենց աւատառուներուն վրայ, շատ աւելի նուազ իշխանութիւն ունէին, քան գերմանական թագաւորներն՝ իրենց դքսերուն վրայ: Ասոր համար էր, որ դքսերը թագաւորաց հետ շարունակեալ կռուոյ մէջ էին: Ի մասնաւորի Ժ. երրորդ դարուն՝ ինչպէս Գերմանիա անանկ ալ Գաղղիա մեծ շփոթութեան մէջ էր. եւ հազիւ 1000էն ետքը՝ երբ աշխարհքիս կատարածին երկիւղն անցաւ, սկսաւ քիչ մը կարգ ու կանոն մտնել:

Ստոյգ է թագաւորութիւնը մինչեւ Խաչակիրք, երկիրներ չվաստըկեցաւ. բայց մեծ զօրութիւն ու ազդեցութիւն ստացաւ: Թագաւորական ճոխութիւնն աւելի եւս մեծցաւ, Լուդովիկոս Զ.ին՝ Ցըրին (1108-1137) ժամանակ: Ասորատեն սկսան Անգղիական-Գաղղիական պատերազմները. որոնք՝ քիչ ընդհատութեամբ, մինչեւ ԺԵ. դար տեւեցին:

2. Լուդովիկոս Է. (1137-1180) գտաւ, իր հօրը պէս, յանձին Սիւժէր Աբբային խոհեմ խորհրդատու մը: Իւր (Հենրիկոս Բլանդաճէնէի հետ ամուսնացող) պարտամոռաց Ելէոնորա ամուսնէն բաժնուելուն համար, Գաղղիայի մեծ մասը, Անգղիայի հետ միացաւ:

**Փիլիպպոս Բ. Օգոստոս** (1180 - 1223) գործունեայ ու խորամանկ իշխան մը, անով իշխանութիւնը զօրացուց, որ վարձկանազօր բռնեց։ Ռիքարդոս Առիւծասրտին ըրած երդման դրժելով՝ անոր Գաղղիայի մէջ ունեցած երկիրներուն վրայ յարձակեցաւ։ Յովհաննէս Անհողին դէմ ըրած պատերազմներուն մէջ ալ, աշխարհակալեց Նորմանտիան, Անժուն, Բուադիէն եւ քանի մ՚ուրիշ գաւառներ, զորոնք թագին հետ միացընելով՝ իր աւատութեանցը վրայ բացարձակ գերազանցութիւն մը վաստըկեցաւ։ — **Լուդովիկոս Ը.** (1223-1226) մեռաւ Աղբիգեանց դէմ ըրած խաչակրութեան մ՚ատեն։

3. **Լուդովիկոս Թ. Սուրբը** (1227-1270), ճշմարիտ բարեպաշտութեան օրինակ, արդար, իմաստուն եւ հզօր իշխանը՝ նուաճեց մեծամեծաց կռիւները, լաւացուց դատաստանները՝ զանոնք իրաւագիտաց յանձնելով։

Լուդովիկոս Թ. ըրաւ (1248) հինգերորդ ու վերջին Խաչակրութիւնը։ Եգիպտոս համնելէն ետեւ, առաւ Տամիադը (1249), բայց իր բանակը գահիրէ երթալու ատեն փճացաւ. ինքն ալ գերի բռնուեցաւ (1250)։ Տամիադը ետ դարձընելով եւ 100.000 մարգ արծաթ վճարելով՝ ազատութիւնն ընդունելէն ետեւ, 1254ին Գաղղիա դարձաւ։ Մեռաւ Լուդովիկոս Թ. 1270ին, Դունուզի դէմ ըրած խաչակրութեան մ՚ատեն։

Ասիայի մէջ՝ քրիստոնէից վերջին ապաստանարանը՝ Պտղոմայիս 1291ին, Եգիպտոսի սուլդանն առաւ, եւ չմեռած քրիստոնեայք գերի ծախուեցան։

## 78. Խաչակրութեանց ազդեցութիւնն Եւրոպական ազգաց վրայ.

1. Ի՛նչ ազդեցութիւն ունեցան խաչակրութիւնք Եւրոպական ազգաց վրայ: — 2. Ի՛նչ կերպարանք առաւ բանաստեղծութիւնն այս միջոցին: — 3. Ինչպէս բարձրացան ու ինքնիշխանութեան հասան քաղաքները: — 4. Ե՞րբ սկզբնաւորեցաւ գոթական ճարտարապետութիւնը:

1. Ստոյգ է խաչակրութիւններն իրենց վախճանին չհասան, սակայն Եւրոպայի ազգաց համար առանց հետեւութեան չմնացին:

Բարոյից մէջ դեռ անկիրթ՝ բայց ներքին կրօնական զգածմամբ լի Արեւմուտքը՝ այս արշաւանքներուն ձեռք զարկաւ, եւ երկու դարու մէջ՝ եօթը միլիոն մարդ Ասիա ուղեւորեց, որոնց մէջէն փոքր մաս մը միայն ետ դարձաւ: Բայց աս դարձողներն՝ ի մերձուստ Մահմետականաց հետ յարաբերութեան մէջ մտնելով — որ զիրենք արտաքին քաղաքակրթութեան մէջ կը գերազանցէին — անոնցմէ աւելի բարակ կենցաղավարութիւն մը սորվեցան: Եւրոպայի ազգերը խաչակրութեանց առթիւ նորանոր վայելմունքներ եւ կենաց վերաբերեալ խել մը պիտոյքներ ճանչցան. որոնք՝ ինչպէս վաճառականութեան ընդարձակուելուն, անանկ ալ արուեստից այլ եւ այլ ճիւղերուն շատնալուն պատճառ եղան:

Այսպէս օրինակի աղագաւ, մետաքսաբուծութիւնն՝ որ Յունաստանէն Իտալիա ու Գաղղիա անցաւ, շատ երկիրներու մեծ հարստութեան աղբիւր մ'եղաւ: — Ասիայի մէջ տեսան խաչակիրք՝ աղքատանոցներ ու հիւանդանոցներ, ջրոյ գործարաններ, հովի ջաղացքներ եւ այլն:

2. Բայց խաչակրութեանց ազդեցութիւնն ամենէն աւելի յայտնի տեսնուեցաւ իրմէ յառաջ եկած քաղաքակրթութեան մէջ:

Քրիստոնէութիւնը երեւակայութեամբ լեցուն Արեւելքի հետ — զոր Եւրոպա իբրեւ հրաշալեաց երկիր մը կը նկատէր — շօշափման գալովը՝ յատուկ երգերու տեսակ մը երեւան ելաւ, որ ներկայ ուրախութեանց ստորագրութեամբն սկսելով՝ հին դիւցազնականին դարձաւ։ Գաղղիայի ու հիւսիս. Սպանիայի մէջ՝ ելաւ բրովանսալեան ըսուած բանաստեղծութիւնը, որ ԺԲ. դարուն՝ հարաւ. Գաղղիայի մէջ աւելի եւս կերպարանաւորուեցաւ (Troubadours)· այն միջոցին որ հիւսիս. Գաղղիայի մէջ՝ կը ծաղկէր Ասպետական բանաստեղծութիւնը կամ վէպը (Trouvères)։ Նիւթը՝ գլխաւորաբար Մեծին Կարոլոսի ժամանակակից զրոյցներէն, Բրիտանիայի Արտուս թագաւորէն եւ իր սեղանին 12 ասպետներէն, դարձեալ՝ Աղեքսանդր Մեծին եւ ուրիշ յունական դիւցազանց գործքերէն առնուած էր։ Բրովանսալեան բանաստեղծութենէն քիչ մը ետքը՝ ելաւ Գերմանիայի մէջ դիւցազնական վիպասանութիւնն, որ Հոհէնշդաուֆեանց ժամանակ՝ իր կատարելութեան ծայրը հասաւ։

3. Խաչակրութեանց ժամանակ Իտալիայի, ինչպէս նաեւ Գերմանիայի, Անգղիայի, Գաղղիայի ու Սպանիայի մէկ քանի ազատ քաղաքները հետզհետէ ինքնիշխանութեան հասան։ — Ամենէն յառաջ ելան Իտալիայի ծովեզերեայ քաղաքները՝ Վենետիկ, Ճենովա ու Բիզա, որոնք՝ Յունաստանի, Արաբիայի ու ասոր միջնորդութեամբը Հնդկաստանի հետ յարաբերութեան մէջ մտնելով, ամենէն թանկագին բերքերու կայարանները եղան։ Սոյն կերպով կը զարգանար նաեւ գերմանական քաղաքներու վաճառականութիւնն ու հարստութիւնը. որոնք Իտալացւոց՝ Արեւելքէ բերած վաճառքները բովանդակ միջին ու հիւս. Եւրոպա կը տարածէին։

Արտաքին ու ներքին վաճառականութեան ծաղկեալ վիճակը՝ յառաջ բերաւ մինչեւ այն ժամանակ անծանօթ արուեստները։ Միլան զինուց գործարաններովը, Ճենովա եւ Պոլոնիա մետաքսի թանկագին վաճառքներով, գերմանական քաղաքները՝ չուխայի եւ կտաւեղէնի գործուածներով երեւելի էին։ Օրըստօրէ աճող հարստութիւնը այս ազատ քաղաքաց միջոց կը մատակարարէր իրենք զիրենք աւելի անկախ ընելու։ Ասկէ զատ ընդունեցան ասոնք, հետզհետէ, թագաւորներէն այլեւայլ արտօնութիւններ. ինչպէս նաւահանգստի, մաքսի ազատութիւն։ 1241ին կազմեցին Համպուրկ ու Լիւպէք առաջին Հանսան (առեւտրական ընկերութիւնը)։ Ասիկայ ունէր 1300ին 60 քաղաք։ Ասկից զատ՝ դրուեցան խել մը գործակալութիւններ, ինչպէս Լոնտոնի, Պրիւկկէի, Նովկորոտի մէջ։ Ընկերութիւնն ունէր նաւատորմիղներ եւ կանոնաւորեալ զօրք։

4. Վերջապէս այն կրօնական՝ ոգին որ Եւրոպացիները՝ Արեւելք երթալու յորդորեց, յառաջ բերաւ նաեւ գոթական (աւելի ճիշդ, հիւս. գաղղիական) ճար-

տարապետութեամբ շինուած փառաւոր եկեղեցիներըː Սդրասպուրկի մայր եկեղեցին, ԺԴ. դարուն մէջ՝ գոթական ճարտարապետութեան առաջին գերմանական յիշատակն է, որ Կոլոնիայի մայր եկեղեցիով (1248ի սկսած) իր կատարելութեան ծագը հասաւ։

## 79. Քահանայապետական իշխանութեան ամենամեծ բարձրութիւնն ու անկումը.

1. Ե՞րբ հասաւ քահանայապետական իշխանութիւնն իր ամենամեծ բարձրութեանը. Ե՞րբ սկսաւ իյնալ։ — 2. Ի՞նչ նոր կրօններ հաստատուեցան ԺԲ. եւ ԺԱ. դարերուն մէջ. Ե՞րբ հաստատուեցան Փրանկիսկեանք ու Դոմինիկեանք։

1. Արդէն խաչակրութեանց սկսելու ատեն քահանայապետք իբրեւ անոնց սկզբնապատճառ ու վարիչ՝ ցուցուցին իրենց արտաքին ճոխութիւնը։ Բայց քահանայապետական իշխանութիւնն իր բարձրութեան գագաթը հասաւ, Իննովկենտիոս Գ. հզօր եւ գիտուն անձին ձեռօք (1198-1216)։ Սակայն ասոր յաջորդաց ատեն քահանայապետական իշխանութիւնն սկսաւ կամաց կամաց իյնալ ու բուն զօրաւոր հարուածն ընդունեցաւ Բոնիփակիոս Ը.ի ժամանակ, Փիլիպպոս Գեղեցիկ Գաղղիայի թագաւորէն։ Քահանայապետական աթոռոյն Աւենիոն փոխադրուելովը (1305-1378) քահանայապետք Գաղղիայի թագաւորաց ազդեցութեան տակ իյնալնորով իրենց ճոխութիւնը շատ նուազեցաւ։ Ասկէ զատ եկեղեցւոյ մեծ հերձուածը (1378-1417) քահանայապետաց հեղինակութեան իյնալուն մեծապէս գործակից եղաւ (Թ. 84)։

2. Եկեղեցւոյ թիկունք եղող՝ կրօնաւորական կարգաց վրայ՝ խաչակրաց ատեն, աւելցան երկումուրացիկ կրօններ ալ։

Ա. Բենեդիկտոսի կանոններուն վրայ՝ հաստատուած վանքերուն մէջ, միանձունք հոգեւոր կրթութիւններէն զատ՝ կը պարապէին նաեւ ձեռագործի եւ գիրք ընդօրինակելու։ Ժ. եւ ԺԱ. դարերուն մէջ՝ կազմուեցան այլեւայլ միաբանութիւններ. որոնց մէջ առաջինն է Գլիւնիի

վանքը (910ին), ետքէն Կարթուսեանք (Շարդրէօզ, շուրջ 1000ին) Կըրնոպլի քով. որուն միանձունքը շարունակ լռութիւն, ապաշխարութիւն ու խիստ պահք պահելու պարտական էին. Կիստերսեանք եւ Պրէմոնդրեանք։ Աս կրօնները, նեղելոց ապաստանարան եւ գիտութեանց պահապան ու յառաջացուցիչ էին։ Կրօնաւորներն ալ՝ բարեգործութեան ու բարեպաշտութեան օրինակ։

Ասոնցմէ քիչ մը ետքը (իննովկենտ. Գ.ի ատեն) հիմնուեցան երկու մուրացիկ կրօններ։ — Դոմինիկեանք (իրենց հիմնադրին՝ Սպանիացի Դոմինիկոսի անուամբը կոչուած) հաստատուեցան 1216ին, իբրեւ Քարոզչաց կարգ։ Ինչպէս Ս. Դոմինիկոս, անանկ ալ իր կրօնաւորները, քարոզութեամբ հերետիկոսները դարձընելու եւ հաւատացեալներն իրենց հաւատքին մէջ հաստատելու պաշտօնն ունէին։ — Փրանկիսկեանք՝ 1223ին հաստատուեցան Ս. Փրանկիսկոս Ասիզացւոյն ձեռօք։ Կրօնին վախճանն էր, հոգեւոր մխիթարութեամբ՝ մարդիկն աշխարհքի ընդունայնութիւններէն հրաժարեցընել ու հոգւոյ ճշմարիտ խաղաղութեան առաջնորդել։ Աղքատութիւն, ողջախոհութիւն եւ հնազանդութիւն, օրական աղօթութենէն զատ կրօնաւորին ամենէն էական պարտքերն էին։ Փրանկիսկեանց եւ իրենց վանքերուն թիւն ամէն երկիրներու մէջ անհաւատալի կերպով շատցաւ։ Եկեղեցինին պարզ էր. կնգուղով գորշ պարեգօտ մըն էր իրենց զգեստը։ — Դոմինիկեանց ու Փրանկիսկեանց ազդեցութիւնն այնչափ մեծ էր, որչափ ամէն տեղ քարոզելու եւ խոստովանանք լսելու ազատութիւն ունէին։

## 80. Ռուբէնեանք. 1080-1393.

1. Ո՞վ հիմնեց Ռուբէնեանց հարստութիւնը։ Ի՞նչպէս կառավարեցին Թորոս ու Լեւոն Ա։ — 2. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Թորոս Բ. Ո՞վ է Պայլ. Մլեհի ո՞վ յաջորդեց։ — 3. Լեւոն ի՞նչպէս կառավարեց. Ի՞նչ պատերազմներ ըրաւ։ — 4. Ինչո՞ւ իրմէ ետքը Հայաստանի մէջ շփոթութիւններ ելան։ Հեթում ի՞նչ երեւելի գործ գործեց. Իրեն ո՞վ յաջորդեց։

1. Հայոց աս Չորրորդ հարստութեան ասպարէզն ալ Հայաստան չէ. այլ իր արեւմտեան դին գտնուած պզտիկ ու լեռնոտ Կիլիկիան։ — Ռուբէն Գագկին ազգականն՝ որ անոր պարսպէն կախուիլը տեսած էր, որոշեց ազգը Յունաց հարստահարութենէն ազատել։ — Հայոց ընդհանուր վիճակը լաւ մը կշռելէն ետեւ, միտքը դրած գործքին ամենէն յարմար տեղը գտաւ Տաւրոսի լեռներն. ուր տեղւոյն

դիրքն իրեն մեծամեծ յաջողութիւններ կը խոստանար։ Իրօք ալ Յոյներն ան լերանց վրայէն վռնտեց ու Հոն Նոր Թագաւորութեան մը (Ռուբենեանց Հարստութիւն 1080-1393) Հիմ դրաւ։

**Կոստանդին Ա.** (1095-1100) երկիրն ընդարձակեց, խաչակիրներուն օգնեց զինուք ու պաշարով. եւ փոխարէն ընդունեցաւ անոնցմէ մարգիզի ու կոմսի տիտղոս։ — **Թորոս Ա.ի** (1100-1123) բոլոր մտադրութիւնն եղաւ ազգը երջանկացընել ու երկիրն ընդարձակել. եւ իրօք ալ բոլոր Կիլիկիայի միահեծան տէր եղաւ։ Թէպէտ իր ժամանակը՝ Պարսիկք քանի մը Հեղ Կիլիկիա յարձակեցան, բայց յաջողութիւն չունեցան (Գող Վասիլ ու Լեւոն)։ — **Լեւոն Ա.** (1123-1141) յաղթեց Յունաց, օգնեց Անտիոքի իշխանին՝ Ռոգերիոսի, բռնուեցաւ Բաղդուինոսէն. բայց երբ ազատեցաւ, գրաւեց Անտիոքի իշխանին երկիրը։ Յովհ. **Կոմնենոս** Պերփերուժէն, Կիլիկիա մտաւ ու քանի մը քաղաք եւ բերդառնելէն ետեւ, բռնեց նաեւ Թագաւորն իր Ռուբէն ու Թորոս որդւոցը Հետ ու Կոստանդինուպոլիս տարաւ, ուր մեռաւ Լեւոն (1141)։

2. **Բանտէն** ազատող **Թորոս Բ.ը** Կիլիկիա գալով՝ Հօրը գահն ելաւ (1144-1168). ու յունական զօրքը Կիլիկիայի քաղաքներէն վռնտեց։ Մանուէլ **Կոմնենոս**՝ Անդրոնիկոս զօրավարը Թորոսի վրայ խաւրեց. որն որ յաղթուելով, կայսրը՝ Անտիոքի իշխանին մէջնորդութեամբը Թորոսի Հետ Հաշտութիւն ըրաւ։ Թորոս նեղ ինկած Երուսաղեմի Թագաւորին (Բաղդուինոս Գ.) օգնեց՝ Նուրէտտինի դէմ։ Այս միջոցին Յոյնք՝ գաշանց դրժելով նորէն Հայաստան մտան. բայց Մամեստիայի քով դարձեալ յաղթուեցան։ Երբ ասոր վրայ Թորոս՝ իր

տէրութիւնը մինչեւ ծով ընդարձակեց, Նեղսիրտ կայսրն իրեն դէմ գրգռեց Գըլըճ-Ասլան Իկոնիոնի սուլդանը. որ Կիլիկիա մտաւ, բայց յաղթուելով՝ ստիպուեցաւ Թորոսի հետ հաշտութիւն ընել։ — Թորոսի մահուանէն ետքն՝ իրեն անչափահաս որդւոյն յանձանձիչը՝ Թովմաս Պայլ, գահ ելաւ (1168)։ Բայց Մլեհ՝ Թորոսի եղբայրը, Նուրէտտինէն օգնութիւն գտնելով՝ զՊայլ Կիլիկիայէն մերժեց (1169)։ Մլեհ Տաճարականաց՝ Կիլիկիայի մէջ ունեցած կալուածներն առաւ, Թուրքաց հետ դաշնակցեցաւ. սահմանակից քրիստոնեայ իշխաններուն դէմ ալ բռնութիւններ ընելուն՝ անոնք իրեն դէմ ելան, բայց Նուրէտտինի օգնութեամբ ազատեցաւ։ Յունաց դէմ քանի մը տարի յաջողութեամբ պատերազմելէն ետեւ, սպանուեցաւ Մլեհ, Սսոյ մէջ՝ իրեն դէմ զայրացած զօրքէն (1174)։

Մլեհի մահուանէն ետքը՝ գահ ելաւ Ռուբէն Բ. իր եղբօրորդին (1174-1185)։ Ասիկայ խաղաղ կառավարութիւն մ'ունեցաւ։ Երկիրն՝ արտաքին յարձակմունքներէն ազատ, ժողովուրդը՝ երջանիկ էր։ Թէպէտ Անտիոքի Պեմունդոս իշխանէն խարդախութեամբ բռնուեցաւ, բայց ազատելէն ետեւ, աւելի եւս իր ժողովրդեան երջանկութեան ու բարօրութեան նայեցաւ։ Ռուբէն թագէն հրաժարելով, կառավարութիւնն եղբօրը թողուց ու վանք մը քաշուեցաւ։

3. Լեւոն Բ. (1186-1219) քաջութեամբ՝ իր նախորդները գերազանցեց, եւ իմաստութեամբ՝ հայրենիքը պայծառացուց։ Իկոնիոնի սուլդանը Կիլիկիա մտաւ, բայց Լեւոնէն յաղթուեցաւ ու կեանքն ալ կորսնցուց։ Լեւոն Իսաւրիան նուաճեց եւ մեծ պատրաստութեամբ Կիլիկիայի վրայ յարձակող Դա-

մասկոսի սուլդանն ալ վանեց։ Տէրութիւնն ասանկ ընդարձակելէն ու ապահովցընելէն ետեւ, մտադրութիւնն՝ երկրին բարեկարգութեան եւ ժողովրդեան բարօրութեանը վրայ դարձուց։ Երբ հսկող իշխանին խնամակալութեան տակ՝ երկիրը խորին խաղաղութիւն կը վայելէր, դրացի Ասորիքի ու Պաղեստինի քրիստոնէից վիճակն երթալով կը գէշնար։ Սալահէտտին՝ Երուսաղէմ առնելէն ետքը՝ Ասորիքի ու Պաղեստինի մէկ մասին ալ տիրած էր։ Լեւոն՝ Կղեմէս քահանայապետէն ու Փրեդերիկոս Ա. կայսրէն օգնութեան կանչուելով՝ Խաչակրաց օգնեց. որուն փոխարէն թագաւոր պսակուելու խոստում առաւ, զոր ընդունեցաւ ալ։ Կեղեստ. Գ. կայսեր հաւանութեամբը, Մոգունտիայի արքեպիսկոպոսին ձեռօք Լեւոնի թագ մը խաւրեց, որով Տարսոնի մէջ պսակուեցաւ (1198)։ Ասոր վրայ մայրաքաղաքը Սիս փոխադրեց, ու Կեղեստինոսի յաջորդ Իննովկենտ. Գ. քահանայապետին գրեց հպատակութեան թուղթ մը։ Տասուերկու տարի (1199-1211) տեւող Անտիոքի խնդիրն ալ լմընցաւ ի նպաստ Լեւոնի. եւ քաղաքը յանձնուեցաւ՝ իւր օրինաւոր տիրոջը՝ Ռուբենի։ Թէպէտ յաղթեց Լեւոն Հալէպի սուլդանին (1212), բայց նոյն յաջողութիւնը չունեցաւ Իկոնիոնի սուլդանին դէմ, որմէն հաշտութիւնը գնելու հարկադրեցաւ։ Մեռաւ Լեւոն (1219) իրեն յաջորդ թողլով մէկ հատիկ աղջիկը։

4. Թէեւ Զապէլէ ձեռքէն (1220ին) իշխանութիւնն առնուլ ուզեց Ռուբեն՝ Անտիոքի իշխանը, բայց չկրցաւ։ Զապէլ՝ Անտիոքի իշխանին Պեմունդոս Դ.ի որդւոյն՝ Փիլիպպոսի հետ ամուսնացած էր։ Երբ ասիկայ բանտի մէջ մեռաւ (1225), Զապէլ՝ Հեթում Ա.ի հետ կարգուեցաւ. որ թագաւորական գահն

ելլելով (1226-1270) իր բարեկարգութիւններովն եղաւ արժանաւոր յաջորդ Լեւոն Բ.ի։ Թաթարք՝ բուն Հայաստան արշաւելէն եւ Իկոնիոնի սուլդանին յաղթելէն ետեւ՝ Կիլիկիայի մօտեցան։ Հեթում Մանգու խանին երթալով՝ անոր հետ սիրոյ եւ բարեկամութեան կապով միացաւ։

Անտարակոյս Հեթումի եւ Իկոնիոնի սուլդանին մէջ բարեկամութեան կապ մ՚եղած պիտ՚որ ըլլայ, որ Հեթմոյ մէկ դրամին, երեսին մէկուն վրայ կեցած է ինք ձի հեծած ու վերնագրով. ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ. իսկ երկրորդ երեսին մէջ տեղն ունի այս վերնագիրը. السلطان الاعظم غياث الدنيا والدين كيخسرو بن كيقباد "Աւագ տէր պաշտպան աշխարհի եւ հաւատոյ Քէյխիւսրէվ որդի Քէյգոպատայ,, անոր շրջանակն ալ. ضرب بسيس سنه اربعين و ستمايه "Հատեալ ի Սիս, յամի վեցհարիւրորդի քառասներորդի,,։

Հեթում, ասոր վրայ Կիլիկիա արշաւող Ազէտին սուլդանին յաղթեց եւ Թաթարաց հետ միացած՝ Երուսաղեմի վրայ քալելու պատրաստուեցաւ՝ որպէս զի զանիկայ Սարակինոսաց ձեռքէն ազատէ։ Սակայն երբ Մանգու մեռաւ եւ Թաթարք ձեռուընին քաշեցին, Սարակինոսք՝ Անտիոք առնելէն ետեւ՝ Կիլիկիա ալ մտան ու Սիս մայրաքաղաքն այրեցին։ Հեթում՝ սրտի ցաւէն թագաւորութենէ հրաժարեցաւ ու տէրութիւնը՝ Եգիպտոսէն դարձող (Լեւոն) որդւոյն յանձնելով՝ վանք մը քաշուեցաւ (1270)։ — Լեւոն Գ. (1270-1284) բարեգործութեամբ ու աստուածպաշտութեամբ երեւելին՝ ուսումը յառաջացուց՝ դպրոցներ բանալով ու գրքեր ընդօրինակել տալով։ Իրեն դէմ եղած դաւադրութեան մը՝ մեծանձնութեամբ ներեց։ Թէպէտ (1274) Կիլիկիա մտնող Արաբացւոց դաշնակից Սարակինոսներէն ու Թիւրքերէն Սիս ազատեցաւ, բայց Տարսոն չկրցաւ ազատիլ. կողոպտուեցաւ ու կրակի տրուեցաւ։ Լեւոն՝

քանի մ՚անգամ Կիլիկիա յարձակող՝ Եգիպտոսի, ու Իկոնիոնի սուլտանին յաղթելէն ետեւ, մեռաւ 1284ին, իրեն յաջորդ անուանելով Հեթում որդին։

## 81. Շարունակութիւն.

1. Ի՞նչպէս թագաւորեցին Օշին ու Լեւոն Դ։ — 2. Ի՞նչ նեղութիւններ կրեց Հայաստան՝ Թաթարաց, Արաբացւոց ու Սարակինոսաց ձեռքէն։ Ի՞նչ յարաբերութեան մէջ մտաւ Լեւոն քահանայապետին հետ։ — 3. Լեւոն Ե. էն ետքն ով թագաւորեց։ — 4. Ի՞նչպէս ելաւ Լեւոն Զ. թագաւորական գահը. Ի՞նչպէս վերջացաւ Ռուբինեանց թագաւորութիւնը. Ո՞ւր մեռաւ Լեւոն։

1. Լեւոնի յաջորդող մէկ քանի թագաւորաց ժամանակ (1289-1307), երկիրը ներքին ու գահակալութեան կռիւներով տակն ու վրայ եղած էր։— Օշին (1308-1320) անանկ առեն գահ ելաւ, որ թշնամիք միացեալ զօրութեամբ տէրութեան կործանումը կը նիւթէին։ Բայց ինք արթնութեամբ՝ մէկ կողմանէ երկիրն արտաքին թշնամեաց դարանակալութեանցը դէմ պաշտպանած առեն, մէկալ կողմանէ իր նախորդաց առեն սկսած ներքին կռիւներուն վերջ տուաւ։ — Տամնամեայ Լեւոն Ե. ի առեն (1320-1342) աղէտալի պատերազմներու հրդեհը նորէն բորբոքեցաւ, որ Կիլիկիայի կերպարանքը փոխեց եւ անոր կործանման սկզբնաւորութիւնն բրաւ։ Սուլտան Մէլիք Նազըր, զՀայաստան ներքին երկպառակութեան մէջ եւ իշխանները թագաւորին հետ թշնամացած տեսնելով՝ յարմար առիթ սեպեց երկիրը նուաճելու։ Բանն աւելի դիւրինցընելու համար նաեւ Թաթարաց ու Թիւրքմէններուն հետ դաշնակցեցաւ։

2. Առաջին յարձակողն եղաւ Դիմուրթաշ Թաթարաց զօրավարը, որ 30.000 ձիաւորով Կիլիկիա մտաւ ու 25 օր անդադար աւարառեց։ Տեսնուած մարդիկը, աղք ու կանայք անխնայ ջարդուեցան, անպատսպար քաղաքներն առնուեցան ու կրակի տրուեցան, անդերը կողոպտուեցան, ամէն ինչ աւարառուներն՝ աւար, ու հազա-

յաւողներ գերի եղան։ — Թաթարաց քաշուելէն ետեւ, Արաման՝ իր Թիւրքմէններովը, Նախորդներուն ասպատակութենէն մնացածն ապականեց ու կործանեց։ — Երբ աս ալ լմնցաւ, խրկեց Եգիպտոսի սուլդանն իր զօրքը՝ որ Կիլիկիայի վերջին հարուածը տուաւ։

Լեւոն՝ Յովհաննէս ԻԲ. քահանայապետէն օգնութիւն խնդրեց։ Ս. Հայրը՝ բոլոր քրիստոնէից կոնդակ մը հանեց, որու՞ն մէջ Հայաստանի տառապանքն անոնց առջեւ դնելէն ետեւ, զանոնք կը յորդորէր՝ Սարակինոսաց դէմ զէնք առնելու։ (Տես կոնդակը՝ Չամչեան, Պատմ. Հայոց. Գիրք Ե. Գլ. ԺԵ։) Լեւոնին ալ 30.000 ոսկի խաւրել տուաւ, պատերազմի ծախքը հոգալու համար։ Քահանայապետին՝ օգնելու փոյթը բոլորովին պարապի չելաւ. վասն զի քիչ մը ետքը, սուլդանը՝ Լեւոնին հետ հաշտուած կը գտնենք. բայց ոչ երկայն ատեն։ Լեւոն հարկադրեցաւ Մելիք էն Նազարի, Եգիպտացւոց սուլդանին հետ առանց պայմանի դաշինք դնել։ — Ասկէ ետքն եկող 80 տարուան միջոցը՝ յայտնապէս կը ցուցընէ, որ Հայաստանի իշխանութիւնն արագ քայլերով իր օրհասին կը դիմէր։

3. Լեւոնին մահուամբը, թագաւորական ցեղն սպառած ըլլալով՝ թագաւոր ընտրուեցաւ 1345 ին Կոստանդին Գ. Զապելի որդին. բայց իր անկարգ ընթացքին համար, զօրքէն սպանուեցաւ։ Ասոր եղբօրը (Գուիտոնի) կառավարութիւնն ալ նոյն վախճանն ունեցաւ (1344)։ Գուիտոնի յաջորդող Կոստանդին Դ. (1345-1362) թէպէտ դառն ժամանակ գահ ելաւ. բայց կրցաւ երկիրը ներքին խաղաղութեան՝ մէջ պահելէն զատ, նաեւ արտաքին թշնամեաց յարձակմանցը դէմ՝ գոնէ քիչ մը ժամանակ ալ՝ պաշտպանել։ Շատոնց՝ Կիլիկիայի մէջ յուզուած եկեղեցական խնդիրները դադրեցուց, որոնք ներքին խաղաղութեան աւրուելուն գլխաւոր պատճառներն էին։ Թէպէտ Եգիպտոսի սուլդանն իր յարձակմունքները կրկնապատիկ կատաղութեամբ նորէն սկսաւ, բայց Կոստանդին Դ.՝ զանոնք զօրութեամբ վանեց ու ձեռքերնէն Աղեքսանդրէտա դղեակն ալ առաւ։ — Կոստանդինին հետ (1362)

Կիլիկիայի խաղաղութիւնն ալ գնաց։ Միութեան ներքին կապը քակքակելով՝ ընդունեցաւ ազգը երկայն ատենէ սպասուած մահացու հարուածը։

4. Երբ Կոստանդին Դ. ին մահուանէ ետեւ անմիաբան իշխանաց հոգը չեղաւ թագաւոր մը դնել, Ուրբանոս Ե.ի յորդորելովը Լեւոն Զ. Լուսինեան իշխանը գահ հանուեցաւ (1365-1393)։ Բայց Կիլիկիայի զօրութիւնն ալ սպառած էր։ Եգիպտացիք Կիլիկիա յարձակեցան, յաղթեցին ու զԼեւոն ստիպեցին խոնարհական դաշինք մը յանձն առնուլ։ Երբ քանի մը տարի ետքը, ապստամբութիւննին կրկնելով՝ նորէն յաղթեցին, վիրաւորուած թագաւորն ամուր՛ տեղուանք քաշուեցաւ։

Երկիրն՝ ալ արիւնառուշտ թշնամեացն առջինքաց ըլլալով՝ անխնայ ջարդ բրին։ Գեղերն ու քաղաքներն այրուեցան ու քանդուեցան. բնակիչք՝ չարաչար ապ[illegible]նուեցան։ Երկրագործք մորթազերծ եղան. եկեղեցականք ու կրօնաւորք հրաշէկ երկաթներով կուրցուեցան. Աստուծոյ բանը քարոզող ու աստուածային պաշտամունքը կատարող քահանայից լեզուն ու մատուըները կտրուեցան։

Ասոր վրայ Կապան բերդն ապաւինող Լեւոնը ինն ամիս սաստիկ պաշարման դիմանալէն ետեւ, անձնատուր ըլլալու հարկադրեցաւ։ Բռնուեցաւ, գերի տարուեցաւ (1375) ու հազիւ եօթը տարի ետքը Գաստիլիայի Յովհ. թագաւորին միջնորդութեամբը գերութենէն ազատեցաւ (1382)։ Դժբախտ թագաւորն Երուսաղէմ, Հռոմ ու Սպանիա երթալէն ետեւ, Գաղղիա անցաւ։ Հոն՝ ինչպէս նաեւ Անգղիա վերջին փորձ մ՚ըրաւ երկրին օգնութեան հասնելու. բայց երբ ամէն բան պարապի ելաւ, տրտմութեամբ կնքեց օրերը, Բարիզի մէջ (1393 Նոյ. 22)։

Կեղեստինեանց եկեղեցին թաղուեցաւ. ուր կեցած էր շիրիմը՝ մինչեւ գաղղիական մեծ յեղափոխութիւնը (1791)։

## Գ. ՀԱՏԱԾ

### *Խաչակիրաց շրջանէն մինչեւ Նորոգողութիւն. 1291-1517:*

## 82. Գերմանիա՝ Ռուտոլֆոս Հապսպուրկցիին ատեն. 1273-1291.

1. Ե՞րբ լմնցաւ գերմանական անտէրնչութիւնը. ի՞նչ է կայսերական իրաւանց վերնալուն պատճառը: — 2. Հին դքսութիւններն ի՞նչ կերպարանք առին: — 3. Ի՞նչպէս կառավարեց Ռուտոլֆոս:

1. Ռուտոլֆոս Հապսպուրկցիին, Էլսասի աշխարհակոմսին, կայսր ընտրուելովը՝ անտէրնչութեան ժամանակը լմնցաւ (74. 3.):

Հոհէնշդաուֆեանց ու անտէրնչութեան ժամանակ, գրեթէ ամէն կայսերական իրաւունքները վերցուած, ու աւատառուաց ձեռքն անցած էին: Վասն զի Հոհէնշդաուֆեանք՝ իրենք զիրենք մեծ դքսերուն առաւել զօրութեանը դէմ պաշտպանելու համար, պզտիկ աւատառուներուն թեր եղած ու մեծ դքսութիւնները մէջտեղաց վերցընելու կամ տկարացընելու ջանացած էին:

2. Հին դքսութիւնները յաջորդ եղանակաւ կերպարանափոխ եղան:

1. Լոթարինգիայի դքսութիւնը՝ Ժ. դարուն կէսէն սկսեալ՝ ստորին ու վերին Լոթարինգիայի բաժնուած էր: Առաջինը՝ Էլսասի կոմսին ինկաւ. իսկ վերին Լոթարինգիայէն կազմուեցան, Պրապանդի, Լուքսէմպուրկի, Լիմպուրկի, Ֆլանտրիայի, Հոլանտայի եւ ուրիշ անկախ դքսութիւններն ու կոմսութիւնները. — Ստորին Գաւառաց երկիրները, ԺԵ. դարուն առաջին կէսին՝ Պուրկունտիայի դքսերուն (97), իսկ անոնց ցեղին հատնելէն ետեւ՝ Աւստրիայի տան անցան:

2. Սուապիայի դքսութիւնը 1268ին, Հոհէնշդաուֆեանց լմննալովը՝ վերջացաւ, ու խել մը գաւառներու բաժնուեցաւ:

3. Պաւիերայի դքսութիւնը 1070էն վեր, Վէլֆեանց իշխանութեանը տակ մնաց:

4. Աւստրիա՝ պապէնպերկեան ցեղին սպառելէն ետեւ, ժառանգութեամբ Ոթոքար Պոհեմիացւոյն (1250), ետքէն ալ (1278ին) Հապսպուրկեան տան անցաւ, որ 1363ին Դիրոլն ալ առաւ:

5. Սաքսոնիայի հին դքսութիւնը՝ վերջացաւ 1180ին: — Վեստֆալիան ընդունեցաւ, Կոլոնիայի արքեպիսկոպոսը: Լիւպէք, Համպուրկ ու Պրէմէն եղան ազատ քաղաքներ:

3. Ռոտոլփոս Հապսպուրկեան, ազնուական, խոհեմ ու քաջ կայսրը՝ կայսրութեան ինկած պատիւը վերանորոգեց: Զինք ճանչնալ չուզող Օթօքար Թագաւորն, ինկաւ Մարխֆէլտի (Վիէննայի քով) ճակատին մէջ (1278): Աւստրիա՝ կայսեր որդւոցը տրուեցաւ. եւ ասով հիմ դրուեցաւ Հապսպուրկեան տան մեծութեան: Ամէն հակառակորդք հպատակեցան կայսեր, որ բովանդակ պետութեան մէջ ընդհանուր խաղաղութիւնը պահեց: Պուրկունտիայի դէմ 1288ին յաջող արշաւանք մ'ընելէն ետեւ, վերջ տուաւ (1289) Թիւրինգեան ու 1290ին սուապիական աւազակական դղեակներուն:

## 83. Ադոլփոս Նասաուցին. — Ալպրեխտ Ա. Աւստրիացին. 1291-1308.

1. Ո՛վ է Ադոլփոս Նասաուցին: — 2. Ադոլփոսի ո՛վ յաջորդեց: — 3. Ե՛րբ ու ինչպէս կազմուեցաւ Հելուետական դաշնակցութիւնը: — 4. Աւստրիայի ու Հելուետիայի մէջ եղած պատերազմը մինչեւ ե՞րբ տեւեց. Ե՛րբ ճանչցուեցաւ Հելուետական դաշնակցութիւնը:

1. Հապսպուրկեան տան զօրութենէն վախցող կայսրընտիր իշխանները՝ ընտրեցին կայսր զԱդոլփոս Նասաուցին (1291-1298): Ասիկայ՝ անիրաւութեամբ իրեն ծախուած Թիւրինգիան՝ երկու արշաւանքով բռնել ուզեց. սակայն կայսրընտիրներուն շատերն իրեն դէմ գրգռելով՝ վար առնուեցաւ ու մեռաւ 1298ին, ասպետական խաղի մը մէջ:

2. Ալպրեխտոս Ա. Աւստրիացին՝ Ռուտոլփոսի որդւոյն (1298-1308), իւր տունը մեծցընելու փորձերը չյաջողեցան: Երբ իր որդին Ռուտոլփոս,

որուն (1306), Պոհեմիան տուած էր, 1307ին մեռաւ, եւ ինք Պոհեմիայի դէմ նոր պատերազմի մը կը պատրաստուէր, իւր եղբօրորդիէն (Յովհաննէս Սուաբիացիէն) Վինտիշի քով սպանուեցաւ։

3. Ծերինկեան ցեղին դքսերուն սպառելէն ետեւ (1218) Հելուետիայի մէջ խել մը պզտիկ իշխանութիւններ կազմուեցան։ Ռուտոլփոսի մահուանէն ետեւ Շվից, Ուրի եւ Ունդերվալտէն քաղաքները՝ մշտնջենաւոր դաշամբ մը իրարու հետ միացան։ Ի զուր ջանաց Ալպրեխդ այս քաղաքներն Աւստրիայի հետ միացընելու. ընդ հակառակն կամաց կամաց Աւստրիայի վերատեսչութենէն բոլորովին անկախ եղան։ Ժողովրդեան բանաստեղծութեամբ զարդարուած Թելի դաւադրութիւնն (1307) եւ դատաւորներուն նոր տարւոյն օրը (1308ին) վռնտուիլը՝ պատմական երաշխաւորութիւն մը չունին։ Թէ Կէսլեր մը երբեք եղած չէ, ան հաստատուն է. բայց ընդ հակառակն կ'երեւայ թէ Գուլիէլմոս Թէլ մը եղած ըլլայ։ — Դաշնակիցք՝ 1315ին, յաղթեցին Լէոպոլտոս Աւստրիացւոյն։ Ասոր վրայ Լուցեռն, Զիւրիխ, Կլարիս, Զուկ եւ Պեռն դաշնակցութեան մէջ մտան։

4. Աւստրիայի հետ պատերազմները տեւեցին մինչեւ ԺԵ. դար։ 1386ին ինկաւ Լէոպոլտոս՝ Սէմբախի ճակատին մէջ։ 1415ին աշխարհակալեցին Հելուետացիք՝ Արկաւի մէջ եղած հապսպուրկեան տան ստացուածները։ Ասոր վրայ Փրեդերիկոս Դ. կայսեր (Կարոլոս Է. Գաղղիայի թագաւորէն իրենց դէմ օգնութեան խաւրուած) 40.000 վարձկանազօրուն ալ (Armagnacs) 1444ին քաջութեամբ յաղթելէն եւ Թուրկաւն առնելէն ետեւ, նուաճեցին նաեւ Պուրկունտիայի հզօր իշխանը 1476ին։

Հնգետասաններորդ դարուն Աբէնցէլ, Շաֆհաուզէն, Վալլիս, Ֆրայպուրկ, Սոլոթուռն, Պազէլ եւ Կրաուպինդէն քաղաքներն ալ հելուետական դաշնակցութեան մէջ մտան։ 1535ին Կէնֆ ինք զինք սաւոյական իշխանութենէն ազատ ըրաւ՝ եւ Պեռնցիք առին (մինչեւ այս ժամանակ սաւոյական) Վատլանտը։

Վեստֆալիական խաղաղութեամբ (1648) Հելուետիա՝ իբրեւ Գերմանիայէն բոլորովին բաժնուած հանրապետութիւն ճանչցուեցաւ։



## 84. Գերմանիա՝ Լուքսէմպուրկեան կայսերաց տակ. 1308-1437.

1. Ինչպէս կառավարեց Հենր. Է. իրեն ո՛վ յաջորդեց: — 2. Ի՛նչ տեսակ վարչութիւն ունեցաւ Կարոլոս Դ. Տէրութիւնն ինչպէս բաժնեց: — 3. Ինչ բնաւորութեան տէր էր Վենկեսլաւոս. Ո՛վ եղաւ իրեն յաջորդ: — 4. Ո՛վ է Սիկիզմունդոս. Ինչ նոր հերձուած ելաւ իր ժամանակը. Հուսեանց պատերազմն ինչ վախճան ունեցաւ:

1. Հենրիկոս Է. Լուքսէմպուրկեան (1380-1313) աշնուական ու քաջ իշխանը, Հռոմ արշաւանք մ'ըրաւ (1310), քաղաքական պատերազմներով քայքայած (87) Իտալիան խաղաղցնելու եւ գերմանական իշխանութիւնը՝ հոն նորէն հաստատելու համար: Հաւատահարեալ Կիպէլեաններէն սիրով ընդունուելէն ետեւ, ընդունեցաւ Միլանի մէջ Լոմպարտական ու Կուելֆեանց հետ երկար պատերազմներէ ետեւ՝ Լատերանու մէջ, նաեւ կայսերական թագը: Վախճանեցաւ ծաղիկ հասակին մէջ, յանկարծակի Գոսգանայի մէջ:

Լուտովիկոս Պաւարիացին (1314-1347) Լուքսեմպուրկեան կողմնակցութենէն կայսր ընտրուելով՝ հարկադրեցաւ հակառակաթոռ կայսեր՝ Փրետերիկոս Աւստրիացւոյն հետ պատերազմելու. մինչեւ որ ետքինը (1322) յաղթուեցաւ ու գերի բռնուեցաւ: Բայց որովհետեւ աւստրիական կողմնակցութիւնը պատերազմը դեռ կը շարունակէր, ճանչցաւ զՓրետերիկոս իրեն կայսրակից (1325-1330): Կիպելեաններէն կանչուելով՝ Իտալիա անցաւ, եւ Միլան պսակուելէն ետեւ՝ ընդունեցաւ, Հռոմի մէջ երկու Կիպելեան կարդինալաց ձեռքէն կայսերական թագը:

2. Կարոլոս Դ. (1347-1378) Հենրիկոս Է.ին թոռը, հազիւ 1349ին ամենէն ընդունուեցաւ: Իր գլխաւոր ջանքն եղաւ պետութեան մէջ խաղաղու-

թիւնը հաստատել։ Հիմնեց 1348ին Բրակի մէջ առաջին գերմանական համալսարանը եւ միտ դրաւ իր երկիրներուն բարօրութեանը։ Կարոլոս առանց զօրքի, ձեռք զարկաւ առաջին իտալական արշաւանքին 1354-1355։ Քահանայապետին պահանջած երդումն ընելէն ետեւ, պսակուեցաւ Իտալիայի թագաւոր ու կայսր։ Սակայն Իտալիայի մէջ տեղ մը չկրցաւ իր կայսերական իրաւունքն արժեցընել տալ։ (Ծախեց նշանաւոր պաշտօններն ու արտօնութիւնները դրամով. եւ դարձաւ Գերմանիա խայտառակութիւններով ու անէծքներով)։ Երկրորդ արշաւանքն սկսաւ, գլխաւորաբար Վիսգոնդեանց դէմ, զօրաւոր բանակով մը (1356)։ Բայց ասոնք ստըկի բաւական գումար մը տալով՝ ներումն ընդունեցան։ Մեռնելու ատեն, Պոհեմիան ու կայսերական թագը՝ իր Վինկեսլաւոս երէց որդւոյն. Պրանտենպուրկը՝ երկրորդ որդւոյն, Սիկիսմունդոսի. իսկ Լաւսիցը՝ երրորդ որդւոյն Յովհաննեսի ժառանգութիւն թողուց։

3. **Վենկեսլաւոս** (1378-1400) Կարոլոսի որդին, կատաղի ու բռնաւոր իշխանը, իր անգործութեամբը, գերմանական ազգին տժգոհութիւնն իրեն դէմ գրգռեց. ուր անդիէն՝ Պոհեմիայի մէջ իր անգթութեամբն ու ըստ քմաց գործելովը՝ ինք զինք ատելի ըրաւ։ Անոր համար (1400ին) Մայնցի, Գօլոնիայի, Դրիէրի եւ Փալցի կայսրընտիր իշխանները, զինք վար առին ու Ռուբրեխդոս կայսրընտիրը թագաւոր ընտրեցին։ Վինկեսլաւոսի կառավարութեան ատեն, աւազակութիւններն ու կռիւներն ամէն տեղ շատցան։ Մեռաւ Վինկեսլաւոս 1419ին։

**Ռուբրեխդոս Փալցցի** (1400-1410) որչափ ալ արիութիւն ցուցուց, ո՛չ Գերմանիայի եւ ո՛չ ալ Իտալիայի մէջ կրցաւ խաղաղութիւնը պահել։ Եւ

որովհետեւ Վենկեսլաւոս Թագէն չհրաժարեցաւ, խել մը կայսրընտրական քաղաքներ զՌուբերեխդոս կայսր չճանչցան ու Թագապարգեւ Ախէնը՝ զլացաւ իրեն քաղքին բանալիները. որով Թագադրութիւնը Կոլոնիա կատարուեցաւ։ Կայսրական Թագն առնելու համար, Ռուբերեխդոս Ալպեաններն անցաւ 1401ին. սակայն Պրեշիայի քով յաղթուեցաւ ու ստիպուեցաւ առանց բան մ'ընելու ետ դառնալ։ Գերմանիայի մէջ՝ բարձր ու ստորին ազնուականաց բազմաթիւ աւազակութեանց դէմ ելաւ եւ շատ մը դղեակներ կործանեց։ Հզօր Թագաւորութիւն մը կանգնելու փորձը՝ փճացաւ մէկ քանի իշխանաց ու քաղաքաց դաշնակցութեամբը։ Պատերազմը խափանեց Ռուբերեխդոսի (1410) մահը։

4. Սիկիզմոնդոս (1410-1437) Վենկեսլաւոսի եղբայրը, Հունգարիայի Թագաւորը՝ եղբօրը մահուանէն ետեւ, կառավարութիւնը ձեռք առաւ մեծ խառնակութեանց մէջ (101)։ — Պետութեան մէջ կար երեք կայսր. եկեղեցւոյ մէջ երեք քահանայապետ։

Այն միջոցին որ քահանայապետք Աւենիոն կը նըստէին, (1305-1378), Հռոմայեցիք շատ անգամ իտալացի քահանայապետ մը ուզած էին։ 1378ին երկու քահանայապետ ընտրուեցաւ. մէկը Հռոմ, մէկն Աւենիոն։ Ասանկով սկսաւ եկեղեցւոյ մէջ մեծ հերձուածը 1378-1417։ Վերջապէս Բիզայի ժողովոյն մէջ (1409) երկու քահանայապետներն ալ վար առնուեցան ու երրորդ մը ընտրուեցաւ. բայց ասոր ալ ընդհանուր ընդունելութիւն չգտաւ։ Քրիստոնեայ աշխարհքին շփոթութիւնն, անով աւելի շատցաւ, որ ինչպէս յառաջագոյն Յովհ. Վիկլեփ Ոքսֆորտցին (†1384). ասանկ ալ հիմակ՝ իր հետեւողը Յովհաննէս Հուս Բրակացին, իրեն մոլորական վարդապետութիւններն սկսաւ ամէն կողմ սփռել։

Կոստանդիայի ընդհ. ժողովոյն մէջ (1414-1418) Գրիգոր ԺԲ. կամաւ աթոռէն հրաժարեցաւ, իսկ Բենեդիկտոս ԺԲ. եւ Յովհաննէս ԻԲ. վար առնուեցան ու Նոր քահանայապետ ընտրուեցաւ Մարտինոս Ե։ Յովհաննէս Հուս ալ որովհետեւ չուզեց յետս կոչում ընել. Կոս-

տանդիայի ժողովէն իբրեւ հերետիկոս դատապարտուեցաւ, եւ Սիկիսմունդոսի յանձնուեցաւ, որ զինք այրել տուաւ (1415)։ Իր դաւանակից կողմնակիցները՝ Վինկեսլաւոսի մեռնելէն ետեւ, յարուցին Հուսեանց պատերազմը (1419-1434). յաղթեցին Ժիզգայի առաջնորդութեամբ Սիկիսմունդոսի, Բրակայի քովերն՝ 1420ին ու փախուցին կայսերական բանակները։ Ասոր վրայ անապատ դարձուցին դրացի երկիրներն, եւ այն ժամանակ միայն հանդարտեցան՝ երբ Բազիլէայի ժողովն (1431-1448) իրենց երկու տեսակաւ ալ հաղորդուելու թոյլ տուաւ։ Իսկ մոլեռանդ Թաբորեանք՝ չափաւորեալ Բաժակեաններէն, Պէօմիշ-Պրոտի քով յաղթուեցան 1434ին։

Սիկիսմունդոս, իր Եղիսաբեթ դուստրը՝ Ալպրեխտ Աւստրիացւոյն հետ կարգելով՝ ժառանգութիւն թողուց Հապսպուրկեան տան իրաւունք մը՝ Պոհեմիայի ու Հունգարիայի վրայ։

## 85. Գերմանիա՝ Աւստրիական կայսերաց տակ 1438-1806. — Կոստանդնուպոլսոյ առումը. 1453.

1. Ո՛րմէն ժամանակ եղաւ աւստրիական տունը՝ կայսրութեան գահը։ — 2. Ե՛րբ սկսաւ Օսմանեան Տաճկաց տէրութիւնը։ — 3. Ե՛րբ եղաւ պետութիւնն իր զօրութեան գագաթը։

1. **Ալպրեխտ Բ. Աւստրիացւոյն** (1438-1439) Սիկիսմունդոսի փեսային հետ — որ Պոհեմիան ու Հունգարիան ժառանգեց, — եղաւ Աւստրիայի տունը՝ Գերմանիայի կայսրութեան գահը։ Այս տան մնաց կայսերական պատիւը՝ մինչեւ կայսրութեան վերնալը (1806)։ Մեռաւ Ալպրեխտ Տաճկաց դէմ ըրած պատերազմին մէջ (1439)։

**Փրեդերիկոս Գ.** (1439-1493) Ալպրեխտի հօրեղբայրը՝ տեղ մը չկրցաւ յարգ գտնել։ Հարկադրեցաւ զՄատաթիա Կորվինոս՝ Հունգարիայի, եւ զԳէորգ Բոտիէպրատ՝ Պոհեմիայի թագաւոր ճանչնալ, այն միջոցին որ Տաճիկք Հունգարիան ու Գերմանիան տակն ու վրայ կ՚ընէին։

2. Սելճուգեանց պետութիւնը, Մղուլաց ձեռօք կործանելէն ետեւ (58. եւ 73.) **Օսման** առաջնորդութեամբ, տաճկական նոր ցեղեր (1300ին ատեններ) փոքր Ասիայի մէջ անկախ տէրութիւն մը կանգնեցին։ — Օսմանի որդին **Օրխան**, Եւրոպա արշաւելու ձեռք զարկաւ. եւ կազմեց իրեն, եէնիչէրիներու ընտիր ոտանաւոր զօրքը։ — **Մուրատ** Ա. (1360-1389) փոխադրեց իր մայրաքաղաքը Ադրիանուպոլիս (1365)։ Ասոր որդին **Պայազիտ** Ա. (եըլտըրըմ) յաղթեց Նիկոպոլսոյ քով 1396ին, Սիկիսմունդոս Հունգարացւոյն. Հարկատու ըրաւ Բուլկարիան, Սերուիան, Պոսնիան ու Վալաքիան. բայց յաղթուեցաւ Դիմուրէն Անկիւրայի քով 1402ին։ Եւ որովհետեւ Ճենական պատէն, մինչեւ Միջերկրական ծով տարածուող Դիմուրեան իշխանութիւնը, 1405ին, իր մահուամբը լուծուեցաւ, Օսմանեանք դարձեալ անկախ եղան։— Պայազիտի թոռը՝ **Մուրատ** Բ. (1422-1451) յաղթեց 1444ին, Վառնայի քով Յունաց եւ ստիպեց զկայսրն իրեն հարկ տալու։ Ասոր որդին,

3. **Մուհամմէտ** Բ. (1451-1481) **Ֆաթիհ**, (աշխարհակալ) առաւ Կոստանդինուպոլիսը 1453ին. եւ վերջ տուաւ Յունական կայսրութեան։ Վերջին կայսրը՝ Կոստանդին Բալէոլոգոս, քաղաքը դիւցազնաբար պաշտպանելէն ետեւ՝ ինկաւ։ Միայն Եպիւռոս մնաց անկախ, քաջն Գէորգ Գաստրիոդայի (Իսքէնտէրպէկ) առաջնորդութեամբ։ Ասկէ ետքը՝ միայն ինք ու Հունիատի Հունգարացին, եղան քրիստոնէութեան համար պատերազմողները։

**Սէլիմ** Ա. (1511-1520) հպատակեցուց Մոլտաւիան. կործանեց 1517ին Մամլուքներու իշխանութիւնն՝ Եգիպտոսի մէջ ու բաժնեց տաճկական

պետութիւնն այլեւայլ զինուորական աւատութեանց (փաշալըգ):

Օսմանեան պետութիւնն իր ամենէն մեծ ընդարձակութիւնն ունեցաւ Սիւլէյման Բ. Ղազիի (յաղթող) ատեն,(1520-1566) որ Ռոդոսը, Հունգարիան, Հարաւային արեւմ. Արաբիան, Վրաստանն ու Տրիպոլիսն աշխարհակալեց: Մեռաւ Սիւլէյման Զրինիէն քաջութեամբ պաշտպանուած Սիկէդի առջեւ:

## 86. Մաքսիմիլիանոս Ա. 1493-1519.

1. Ո՞վ է Մաքսիմիլիանոս. Ի՞նչ վիճակի մէջ էին այս միջոցին Ստորին Գաւառաց տէրութիւնները: — 2. Ե՞րբ սկսան գաղղիական-սպանիական պատերազմները. Ի՞նչ հետեւութիւն ունեցան:

1. Մաքսիմիլիանոս Ա. Փրեդերիկոս Գ.ի որդին, Մարիամ Պուրկունտացւոյն՝ Ստորին գաւառաց Թագաժառանգին հետ ամուսնանալով, Աւստրիայի իշխանութեան հիմը դրաւ:

Ստորին Գաւառները (97) ԺԴ. եւ ԺԵ. դարերուն մէջ, կը գերազանցէին արուեստիւ ու հարստութեամբ Եւրոպայի ամէն երկիրները. որովհետեւ հոն խաչակրութենէն ետեւ, Միջերկրական ծովուն ամէն վաճառաց դէպ ի հիւսիս փոխադրուելու նաւահանգիստն եղած էր:
Կարոլոս Արի Պուրկունտիայի հզօր դուքսը (1467-1477) ժառանգութեամբ ու գնմամբ, գրեթէ բոլոր Ստորին Գաւառաց տէր ըլլալով՝ Եւրոպայի ամենէն հարուստ իշխանն եղաւ: Անոր վրայ Գերմանիայի ու Գաղղիայի մէջտեղը. Թագաւորութիւն մը կանգնելու վրայ եղած ատեն, յաղթուեցաւ ու ինկաւ Նանսիի քով (1477): Լուդովիկոս ԺԱ. առաւ Պուրկունտիան իբրեւ անտէրունչ աւատ. իսկ Ստորին Գաւառները ժառանգեց Կարոլոսի դուստրը՝ Մարիամ:

2. Մաքսիմիլիանոսի ժամանակ սկսան Իտալիա առնելու համար գաղղիական-սպանիական պատերազմները, որոնց մէջ ինքն ալ մտաւ, բայց առանց օգուտ մը քաղելու: Ինչ արագութեամբ որ Կարոլոս Ը. Գաղղիացին (1495) բոլոր Նէապոլիս աշխարհակալեց, այն արագութեամբ անկէ դուրս վռըն-

տուեցաւ Վենետացիներէն, կայսրմէ ու Փերդինանդոս Արակոնիացիէն։ Կարոլոսի յաջորդը՝ Լուդովիկոս ԺԲ. առաւ (1499) Միլանը։ Բայց երբ 1511ին, Յուլիոս Բ. քահանայապետը, Վենետացիք, ետքէն ալ Մաքսիմիլիանոս, Փերդինանդոս Ուղղափառն ու Հենրիկոս Ը. Անգղիացին, Սուրբ դաշնակցութիւնը կազմեցին, Լուդովիկոս հարկադրեցաւ Իտալիայէն ելլելու. եւ հազիւ իր յաջորդը Փրանկիսկոս Ա. Մարինեանոյի ճակատովը 1515ին Միլանը նորէն առաւ։

## 87. Իտալիա.

1. Ի՞նչ վիճակի մէջ էր այս միջոցին Իտալիա. Ի՞նչ կերպարանք առած էր հոս քաղաքական վարչութիւնը։ — 2. Որո՞ւն իշխանութեան տակ էր Նէապոլիս։ — 3. Ի՞նչ տեսակ վարչութիւն ունէին Հռոմ, Փլորենտիա ու Միլան։ — 4. Ի՞նչ վիճակի մէջ էին Ճենովա, Վենետիկ։ — Ի՞նչ կերպարանք առած էին ԺԵ. ու ԺԶ. դարերուն մէջ գիտութիւնք եւ արուեստք Իտալիայի մէջ։

1. Խել մը պզտիկ հանրապետութեանց բաժնուած Իտալիան՝ ԺԴ. ու ԺԵ. դարերուն մէջ շարունակեալ քաղաքական պատերազմներու ասպարէզ եղած էր։ Բայց եւ այնպէս Եւրոպայի ամենէն հարուստ ու կրթեալ երկիրն էր. եւ ի մասնաւորի հիւսիս. Իտալիայի քաղաքները՝ արեւելեան առեւտուրն իրենց ձեռքն ունէին։

*Հոհենշդաուֆեան կայսերաց պատերազմներուն ժամանակ՝ Լոմպարտիայի քաղաքաց մեծ մասին վարչութիւնը քաղաքացիներէն ընտրուած պաշտօնատիրոջ մը յանձնուած էր, որ Բոտէստա կը կոչուէր։ Այս միջոցին կազմուեցան նաեւ ստորնագոյն քաղաքացւոց եւ արուեստաւորաց հասարակութիւնները՝ քաղաքապետի մը (Գաբիտանոյ) առաջնորդութեան տակ։ — Նոյն իսկ ներքին պատերազմներով քայքայած, կամ արտաքին թշնամիներէն նեղը մտած խել մը քաղաքներ, դրացի իշխանի կամ պատերազմներով անուանի ազնուականի մը* (condottiere) *կը յանձնէին իրենք զիրենք, որ որոշեալ ժամանակի մը համար, իրենց վրայ վերին իշխանութիւն* (signoria) *կը բանեցնէր եւ վարձկանազօր կրնար առնուլ։ Երբ որ ազնուական տէր մը* (signore) *անուն հանէր, ուրիշ քաղաքներն ալ զինք իշխան կ՚ընտրէին։ Քաղաքապետները, ազնուա-*

կաններն ու տէրերը եղան կամաց կամաց անկախ իշխան։ Քիչ քաղաքներ միայն, ինչպէս Վենետիկ ու Ճենովա, կրցան իրենց հանրապետական սահմանադրութիւնը պահել։ Գերմանիայի անիշխանութեան առեն՝ Իտալիայի իշխանները դիւրութեամբ կրցան իրենց զօրութիւնն այն ատրիճանի տարածել, որ օրինակի աղագաւ, ԺԳ. դարուն սկիզբը՝ Վիսգոնդեանք բոլոր արեւմտեան ու Տեղա Սգալաները՝ արեւելեան Լոմպարտիայի վրայ կ՚իշխէին։ Այս իշխաններուն բովանդակ զօրութիւնը՝ վարձկանազօրին վրայ էր։

2. **Նէապոլիս** 1266-1435 Անժուի ցեղին թագաւորներուն տակն էր (74)։ Յովհաննա Ա. ով սկսաւ (1343) գրեթէ հարիւրամեայ անգթութեանց ու քաղաքական պատերազմաց շարք մը։ Յովհաննէս Բ. իրեն որդեգրեց 1420ին Ալփոնսոս Սիկիլիացին, եւ քիչ մը ետքը Լուդովիկոս Անժուցին. որուն եղբայրը՝ Ռենատոսը, Ալփոնսոս մերժեց, (1442)։ Ալփոնսոսի որդւոյն՝ Ֆերդինանդոսի հետ ելաւ 1458ին, Արակոնիայի անհարազատ ցեղը, Նէապոլսոյ գահին վրայ։ Ֆերդինանդոս Ուղղափառը միացուց 1504ին Նէապոլիսն Արակոնիայի հետ։

3. **Հռոմ** մէջ՝ այն միջոցին որ քահանայապետք Աւենիոն կը նստէին (1305-1378), շարունակեալ քաղաքական պատերազմ մը կը տիրէր։ Գոլա տի Ռիէնցի տրիբունը, փորձեց 1347ին հռոմէական հասարակապետութիւն մը հաստատել, սակայն նոյն տարին աքսորուեցաւ։ ԺԶ. դարուն մէջ մեծցուց Յուլիոս Բ. քահանայապետն եկեղեցւոյ տէրութիւնը, Պոլոնիան, Սահմանակոմսութիւնն ու նաեւ Անգոնա, Ռարմա ու Ռիաչէնցա քաղաքներն առնելով։ Սակայն այս վերջի քաղաքները Ֆարնեզէ գերդաստանին տրուեցան 1545ին։

**Ֆլորենտիայի** մէջ (ուր էր Վելֆեանց գլխաւոր կայարանը՝) տիրած էր կատարեալ ռամկապետութիւն մը. որովհետեւ արուեստաւորաց դասը միայն

պաշտօններու կը հասնէր։ 1400 էն ետքը Մետիչեանց հարուստ վաճառական ցեղը շատ զօրացաւ. այնպէս որ 1434 էն, կը կառավարէր տէրութիւնը Գօզմօյ Մէտիչի. բայց առանց մասնաւոր պաշտօն մ'ունենալու։ Ինք ու իր թոռը Լորէնցօյ, արուեստից ու գիտութեանց եռանդուն պաշտպաններ էին։ Երկայն խռովութիւններէ ետեւ՝. 1531ին (Կարոլոս Ե.ի ձեռօք) Աղեքսանդր Մետիչի եղաւ դուքս Ֆիորէնցայի եւ իր յաջորդը՝ Մեծ դուքս Տոսգանայի։

**Միլան** կ'իշխէին 1300 էն վեր Վիսգոնդեանք, 1450 էն՝ Սֆորցայի տունը. — Ֆէրրարայի, Մոտէնայի ու Ռէճճիոյի մէջ՝ Էստէի — իսկ Մանդովայի մէջ՝ Կոնզակայի տունը։ Սաւոյայի կոմսերը (ԺԵ. դարէն ետքը Սաւոյայի դուքս) հետզհետէ նուաճեցին Բիէմոնդի մեծ մասն ու Նիցցայի կոմսութիւնը։

4. **Ճէնովա**՝ աշխարհակալեց Թ. դարուն Կորսիգան, ԺԲ. դարուն Սարդինիան։ Բայց 1300ին կորսնցուց կղզիները. ու անկէ ետքը երբեմն Գաղղիացւոց եւ երբեմն Միլանցւոց իշխանութեան տակ էր։ — Մինչեւ 1453 Կոստանդինուպոլսոյ ու Սեւ ծովուն եզերաց վաճառականութիւնը գրեթէ միայն Ճենովայի ձեռքն էր։ Անդրէաս Տորիա վերականգնեց հանրապետութիւնը 1528ին։

**Վէնէտիկ**՝ իր յարմար դիրքովը, հողագնդիս առաջին առեւտրոյ քաղաքն եղած էր։ Վենետացիք՝ այն միջոցին որ մէկ դիէն Ադրիական ծովուն հիւսիսային ու արեւելեան կողմն անընդհատ պատերազմներով զինուորական ոգին կ'արծարծէին, մէկալ դիէն իրենց ընդհանուր վաճառականութիւնն երթալով կ'ընդարձակէին։

Լատինական կայսրութեան հիմնուելու ժամանակը (1204)՝ Վենետիկ խել մը ծովեզերեայ

երկիրներ ու քանի մը յունական կղզիներ առաւ։ 1400էն ետքը վաստըկեցաւ Լոմպարտիայի արեւելեան մասը, 1420ին Դալմատիան, 1489ին Կիպրոսը։ Բայց այս ամէն երկիրները՝ Դալմատիան ու լոմպարտական քաղաքները դուրս առնելով, ԺԶ. դարուն Տաճկաց ձեռքն անցան։ Վենետացւոց սահմանադրութիւնն ազնուապետական էր։ Տոժն ընտրող մեծ խորհրդարանը՝ միայն ազնուականներէ կազմուած էր։ 1454ին դրուեցաւ իր գաղտնիքներովն անուանի քաղաքական հետազօտութեան ատեանը։

5. Իտալիայի մէջ՝ ԺԵ. դարուն վերջերն ու ԺԶ. դարուն սկիզբները, գիտութեանց կենդանանալովը՝ մտքերուն մէջ ընդհանուր յեղափոխութիւն մը յառաջ եկաւ. որ Իտալիայէն Եւրոպայի մեծագոյն մասին վրայ տարածուեցաւ։ Գիտութիւնք՝ Միջին դարու սկիզբները գրեթէ միայն եկեղեցականաց ստացուածքն էին։ Բայց երբ խաչակրութեանց ձեռօք՝ բարօրութիւն ու արտաքին կրթութիւն ընդհանուր եղան, գիտութիւնք ալ եկեղեցականաց սենեակներէն ելան ու հասարակաց կենաց վրայ անընդմիջական ազդեցութիւն ունենալու սկսան։ — Իտալիայի երեւելի բանաստեղծներու ձեռօք՝ բարձրագոյն կրթութեան ընդունակութիւն եւ գիտնականութեան սէր ընդհանուր եղաւ։ Յիշուելու արժանի են ի մէջ այլոց Տանդէ Ալիկիէրի (†1321) աստուածային կատակերգութեան բանաստեղծը։ Բեդրարգա (†1374) ու Պոգգաչիոյ (†1375)։ — Բայց հին աշխարհքին ուսումը յունական մատենագրութեան գիտութեամբը միայն հնարաւոր եղաւ, զորն որ առաջին անգամ Կ. Պոլսէն փախած յոյն գիտնական մը (Մանուէլ Քրիսոլորաս) Իտալիա ծանօթացուց (1393)։ Աւելի եւս ընդհանուր ծանօթացաւ յունական մատենագրութիւնը, երբ Կ. Պոլսոյ առմանէն ետեւ, խել մը յոյն երեւելի գերդաստաններ Յունաստանէն Իտալիա գաղթեցին։ Շատ չանցաւ, Իտալիայի իշխանները՝ գիտնականաց օգնելու եւ յունական ու հռոմէական մատենագրութեան ուսման ետեւէ իյնալու մէջ իրարու հետ սկսան մրցիլ։ Ասոնց մէջ՝ ամենէն աւելի նշանաւոր եղան Մետիչիները։ Վեշտասաներորդ դարուն քահանայապետներն ալ եւ ի մասնաւորի Լեւոն Ժ (†1521), Պաւղոս Գ. (†1549), Գրիգոր ԺԳ. (որ 1582ին Նոր Տոմարը խոթեց) ու Սիքստոս Ե. (†1590) շատ յառաջացուցին գիտութիւններն ու արուեստները։ Այս ջանից պտուղներն եղան կիրթ բանաստեղծներ ու անուանի մատենագիրներ,

ինչպէս՝ Արիոսդոյ († 1533), Թորգուադոյ Դասսոյ († 1595), Մաքիավէլլի († 1527): 1440ին Յովհ. Կուդէմպէրկ գերմանացւոյն ձեռօք եղած տպագրութեան գիւտովը՝ միջոց մը գտնուեցաւ, այս մեծ մարդիկներուն մտածմունքներն ու գրուածքները շուտով եւ ամէն տեղ սփռելու:

Հնութեանց ունեցուած եռանդը՝ նոր կենդանութիւն մը տուաւ նաեւ արուեստից: Հին արուեստներուն ժառանգորդները բոլոր Իտալիայի, բայց մանաւանդ Հռոմի մէջ մեծ փութով սկսան փնտռուիլ. եւ քիչ ատենուան մէջ նկարչութիւնն իր բարձրութեան ծայրը հասաւ Լէոնարտոյ տա Վինչիի († 1519 — փլորէնտեան դպրոց), Միքայէլ Անճէլոյ Պոնարոդիի († 1564, որ ճարտարապետ, քանդակագործ ու նկարիչ էր միանգամայն), Հռոմայ Ս. Պետրոսի մայր եկեղեցւոյն ճարտարապետին, Ռափայէլ Սանցիոյի († 1520, հռոմէական դպրոց), Գորրէճիոյի († 1534, լոմպարտական դպրոց) եւ Դիցիանոյի († 1576, վենետական դպրոց) ձեռօք:

## 88. Գաղղիա:

1. Ի՞նչ կերպարանք առած էր Գաղղիա ԺԳ. դարուն վերջերը. Ո՞վ յաջորդեց Փիլիպպոս Գ.ի: — 2. Երբ սկսաւ Վալուայի տունը. Ի՞նչպէս կառավարեցին Յովհ. Բարի ու Կարոլոս Ե: — 3. Ի՞նչ պատերազմներ եղան Կարոլոս Զ.ի ժամանակ. Անգղիական-գաղղիական պատերազմներն ի՞նչ ելք ունեցան: — 4. Ո՞վ է Լուդովիկոս ԺԱ. Իրեն ո՞վ յաջորդեց. Թագաւորական իշխանութիւնն ի՞նչ կերպարանք առաւ այս միջոցիս:

1. Թէպէտ Փիլիպպոս Գ.ին (1270-1285) Սրբոյն Լուդովիկոսի որդւոյն ատեն (77) կոմսութեանց մեծ մասը թագին հետ միացան, սակայն թագաւորին իշխանութիւնը՝ բազմաթիւ զօրաւոր աւատառուաց պատճառաւ՝ դեռ շատ տկար էր:

Փիլիպպոս Դ. Գեղեցիկ (1285-1314) թագաւորական իշխանութիւնն իր նախորդներէն աւելի ընդարձակեց: Բոնիփակիոս Ը. քահանայապետը, — որուն հետ գժտեցաւ, եկեղեցականաց վրայ տուրք դնելուն համար — բռնել տուաւ. եւ իրերն այնպէս դարձուց, որ Բոնիփակիոսի յաջորդող քահանայապետները 1305-1378՝ իրենց աթոռը Աւենիոն փոխադրեցին. որով Գաղղիայի թագաւորները եկեղեցականաց վրայ մեծ ազդեցութիւն ստացան: Տա-

ճարականաց կարգը, երկայն հալածմունքներէն ետեւ 1312ին վերցուց: Կոմսերէն՝ դրամ կոխելու իրաւունքն առնուեցաւ. եւ որոշուեցաւ որ իրենց ատեաններէն՝ թագաւորական բարձրագոյն ատեանին կարենայ բողոքուիլ: Փիլիպպոսի ատեն՝ սկսան քաղաքաց պատգամաւորները՝ տէրութեան ժողովներուն մէջ մտնել:

Նոյն կերպով զօրացուցին, Փիլիպպոսի որդիքն ու յաջորդները՝ Լուդովիկոս Ժ. (1314) Փիլիպպոս Ե. (1316) ու Կարոլոս Դ. (1322) թագաւորական իշխանութիւնը: — Կարոլոս Դ.ին հետ 1328ին, սպառեցաւ Կապետեանց ուղիղ գիծը:

2. Վալուայի տան թագաւորները կառավարեցին Գաղղիան 1328-1589: — Փիլիպպոս Զ.ին գահ ելլելու ատեն (1328-1350) Եդուարդ Գ. Անգղիացին, Փիլիպպոսի թոռն, սկսաւ Գաղղիայի վրայ պահանջմունքներ ընել: Եդուարդ յաղթեց Գրէսիի քով 1346ին իւր աղեղնաւորներովը. եւ իր որդւոյն՝ Սեւ իշխանին քաջութեամբը՝ Գալէն առաւ:

Յովհաննէս Բարի (1350-1364) 1356ին Բուագիէի քով Սեւ իշխանէն յաղթուեցաւ ու գերի բռնուեցաւ: Ազատելէն ետեւ իր որդւոյն Փիլիպպոս Արիին տուաւ Պուրկունտիան իբրեւ աւատ (1363): Ազնուականաց հարստահարութիւններէն պատճառած գեղացւոց ապստամբութիւնը (Jacquerie) ճնշուեցաւ անգթութեամբ (1358):

Կարոլոս Ե. (1364-1380) Սեւ իշխանին Անգղիա դառնալէն ետեւ (†1376), Պէրդրան Տիւ Կէսլէնի առաջնորդութեամբ մերժեց Անգղիացիները. որով անոնց ձեռքը մնաց միայն Գալէ ու Պորտոյ:

3. Կարոլոս Զ. (1380-1422) ցնորեցաւ 1392ին. ուստի թագաւորին եղբայրը՝ Լուդ. Օրլէանցին

(որ 1407ին սպաննուեցաւ) եւ Յովհաննէս Աներկիւղ խնամակալութեան համար իրարու հետ սկսան կռուիլ։ Այս միջոցիս Հենրիկոս Ե. Անգղիայի թագաւորը պատերազմը նորէն սկսաւ. յաղթեց Գաղղիացւոց Ազէնգուրի քով (1415) եւ 1420ին Փիլիպպոս Պուրկունտացւոյն հետ Դրուայի դաշինքը դրաւ. որուն զօրութեամբ Անգղիայի թագաւորը՝ ճանչցուեցաւ Գաղղիայի իշխան ու թագաժառանգ։

Կարոլոս Է.ի (1422-1461) ժամանակ, բովանդակ հիւս. Գաղղիա Անգղիացւոց ձեռքն անցաւ։ Դալպոդ զօրապետը պաշարեց Օրլէանը, բայց 1429ին, Յովհաննա տ'Արգ, լոթարինգիացի գեղացւոյ մը աղջկանէն յաղթուեցաւ։ Կարոլոս, Ռէմսի մէջ պսակուելէն ետեւ՝ Յովհաննա, Գոմբիէյնի քով բռնուեցաւ ու 1431ին իբրեւ վհուկ այրուեցաւ։ Տիւնուա սկսած գործքը յառաջ տարաւ։ Դալպոդի իյնալէն ետեւ 1453ին, Անգղիացւոց ձեռքը մնաց միայն Գալէ, զոր պահեցին մինչեւ 1558։

4. Լուդովիկոս ԺԱ. (1461-1488) որչափ խելացի ու խորամանկ, նոյնչափ ալ անիրաւ ու անգութ էր. բռնութեամբ ու կաշառքով մեծ աւատառուաց զօրութիւնը կրցաւ կոտրել։ Կարոլոս Արիին մեռնելէն ետեւ՝ Պուրկունտիան թագին հետ միացուց (1477), եւ Բրովանսի, Անժուի եւ Նէապոլսոյ վրայ իրաւունք ստացաւ։

Կարոլոս Ը. (1483-1488) Պրըդանեի ժառանգ իշխանուհւոյն հետ ամուսնանալով, բոլոր Գաղղիա մէկ թագաւորութիւն մ'եղաւ։

Թագաւորական իշխանութիւնը հետզհետէ այնպէս զօրացաւ որ Լուդ. ԺԱ. գրեթէ բացարձակ իշխան մ'եղաւ։ Տէրութեան ժողովները միայն թագաւորին հրամանովը կը գումարուէին։ — Թագաւորական զօրութեան գլխաւոր մէկ օգնականն էր, այս միջոցին սկսուած մնայուն զօրքը։ Եւ որովհետեւ աւատառուները՝ զինուորութեան

երթալու պարտքէն իրենք զիրենք ազատ ըրած էին, պատերազմի քաշ մեծի մասին վարձկանազօրով կ'ըլլար: Ասոնք՝ պատերազմը լմննալէն ետքն ալ երկրին մէջ կը մնային (եւ եթէ ուրիշ իշխան մը զիրենք իր ծառայութեան մէջ չառնուր, երկրին համար մեծ պատիժ մըն էին): Ասանկ վարձկանազօրէ կազմեց Լուդովիկոս ԺԱ. զինակիրները (gendarmes), առաջին մնայուն բանակը: — Պատերազմելու եղանակը բոլորովին նոր կերպարանք մ'առաւ Պերդհոլտ Շվարց կրօնաւորին (1354) վառօդը գտնելովը: Սկզբան կը գործածուէր վառօդը՝ մեծ սանդերէ քարեր նետելու. քիչ մը ետքը սկսաւ գործածուիլ պզտիկ թնդանօթներու եւ վերջապէս պատրուկաւոր հրացաններու համար:

## 89. Անգղիա.



1. Ե՞րբ ելաւ Անգղիայի մէջ՝ Լանգաստրի տունը, թագաւորական գահը: — 2. Ի՞նչ է սպիտակ ու կարմիր վարդերու, կամ Եորքի եւ Լանգաստրի ցեղերուն կռիւը. ի՞նչ վախճան ունեցաւ Եդուարդ Ե. ու Ռիքարդոս Գ. — 3. Ե՞րբ ու ինչպէս միացան երկու կողմնակցութիւնները. ի՞նչ կերպարանք առած էր այս միջոցին անգղիական սահմանադրութիւնը:

1. Գաղղիական պատերազմին ժամանակ, Անգղիան (70) նաեւ ներքին խռովութեանց ասպարէզ մ'եղած էր: Սեւ իշխանին անկարող որդին՝ Ռիչարդոս Բ. (1377-1399) Հենրիկոս Դ. Լանգաստրի դուքսէն վար առնուեցաւ ու մեռաւ (1400) բանտի մէջ:

Լանգաստրի ցեղին թագաւորները իշխեցին Անգղիայի մէջ 1399-1461: – Հենրիկոս Դ. (†1413) կառավարեց շարունակեալ խռովութեանց ու ապստամբութեանց մէջ. բայց ճնշեց զանոնք աչալրջութեամբ:

Հենրիկոս Ե. († 1422) Դրուայի դաշինքով ընդունեցաւ ապահովացուցում Գաղղիայի գահին յաջորդելու. եւ թողուց երկու թագաւորութիւնները ալ իր խնամեալ Հենրիկոս Զ. (1422-1461) որդւոյն:

2. Ռիչարդոս՝ Եորքի իշխանը, Հենրիկոս Զ.ին հիւանդութեան ատեն պաշտպան անուանուած

ըլլալով՝ — մօր կողմանէ Եդուարդ Գ.ին երեցագոյն մէկ որդիէն սերելուն — թագին վրայ սկսաւ պահանջմունքներ ընել. բայց ինկաւ Վագֆիլտի ճակատին մէջ (1460)։ Իր որդին Եդուարդ Դ. յաղթեց (1461) Հենրիկոս Զ.ին կնկանը Մարգարիտայի. բայց Ստորին Գաւառները փախչելու ստիպուեցաւ՝ երբ Գլարանսի դուքսն եւ Ուարվիգ կոմսը 1470ին Հենրիկոս Զ. նորէն գահ հանեցին։ Եդուարդ իր քեռայրէն՝ Կարոլոս Արիէն օգնութիւն գտնելով՝ յաղթեց 1471ին Ուարվիգի եւ Մարգարիտայի։ Ասոր վրայ Հենրիկոսի որդին մեռցընել տուաւ եւ խել մը սպանութիւններով իր գահն ապահովցուց։

Եդուարդ Ե. յաջորդեց իւր հօրը (1483). սակայն հօրեղբօրը՝ Ռիչարդ Գ.ին (1483-1485) ձեռօք սպանուեցաւ։ Բայց ասիկայ ալ կորսնցուց թագն ու կեանքը՝ Հենրիկոս Դուտորի՝ Մարգարիտայի որդւոյն դէմ եղած Պոսվըրդի ճակատին մէջ։

3. Հենրիկոս Է. Եդուարդ Դ.ին դստերը, Եղիսաբեթի հետ ամուսնանալով՝ միացուց կրկին կողմնակցութիւնները։ — Դուտորի տունը կառավարեց Անգղիան 1485-1603. (Թ. 99)։

Ճերմակ (եորքեան) ու կարմիր (լանքասդրեան) վարդերուն կռիւը, կատաղութեամբ եւ անգթութեամբ մղուած էր. (գերի բռնուողներուն համար գլխատման գործիքները, պատերազմի դաշտերուն վրայ դրուած էին)։ Աքրթութիւնն ինկած էր, բարոյականութիւնը վայրենացած։ Բայց այս միջոցիս անգղիական սահմանադրութիւնը՝ կատարելապէս կարգի խոթուեցաւ։ Եդուարդ Գ.ի ատեն՝ Խորհրդարանոյն անուն հաստատուն կերպարանք մ՚առաւ, որ լորտերը՝ բարձրագոյն եկեղեցականաց հետ՝ Վերին սենեակը, իսկ ասպետներուն պատգամաւորները՝ քաղաքաց պատգամաւորներուն հետ՝ Ստորին սենեակը կազմեցին։ Սահմանադրութեան սկզբունքներն էին 1. որ դրամատուրքը՝ ստորին սենեկին հաճութեամբն ըլլայ. 2. որ օրէնք մը փոխելու համար կրկին սենեակներուն հաւանութիւնը հարկաւոր ըլլայ. 3. որ ստորին սենեակը հրապարակական զեղծմանց ու անկարգութեանց հետազօտու-

թիւններ ընել, եւ պաշտօնատէրները պատասխանատուութեան կանչել կարենայ։ Ստորին սենեկին ազդեցութիւնն աւելի մեծցաւ, Լանգաստրի տան թագաւորներուն ատեն։ Ընդ հակառակն երկու վարդից պատերազմներու ժամանակ պարոններուն թիւն եւ ուժը շատ ինկաւ. որովհետեւ այն միջոցին բոլոր երկիրներուն հինգերորդ մասը թագաւորին ձեռքն ինկաւ։

## 90. Սպանիա.

1. Ինչ փոփոխութիւններ կրեց սպանիական թերակղզին Ը. դարէն մինչեւ ԺԶ. դար։ — 2. Ինչ կերպարանք առաւ Արակոնիա. ինչպէս ընդարձակեցաւ Գաստիլիա։ — 3. Իզապէլլա ու Ֆերդինանդոս. ինչպէս թագաւորեցին. Ո՞վ եղաւ Սպանիայի առաջին թագաւորը։ — 4. Ի՞նչ վիճակի մէջ էին գիտութիւնք ու արուեստք իբերական թերակղզւոյն վրայ Ը. դարէն՝ մինչեւ ԺԶ. դար։

1. Արաբացիք Սպանիան աշխարհակալելու ժամանակ 711ին (թ. 57. 58), միայն աստուրական լերանց վրայ, գոթական փոքրիկ տէրութիւն մը անկախ մնացած էր՝ Օվիէտոյ, եւ 900էն ետքը՝ Լէոն գլխաւոր քաղաքով։ Այս ժամանակէն մինչեւ ԺԵ. դարուն վերջերը՝ քրիստոնեայք Արաբացւոց հետ գրեթէ անընդհատ պատերազմներու մէջ էին. ու անոնց ձեռքէն հետզհետէ գաւառներն ետ առին։ — Արդէն Ժ. դարուն մէջ, կար Լէոնի թագաւորութենէն զատ՝ Պուրկոսի կոմսութիւնը, որ իր բազմաթիւ դղեակներուն (Castelles) համար, Գաստիլիա ալ կը կոչուէր։ Սպանիական սահմանակոմսութենէն կազմուեցան Նաւարրայի թագաւորութիւնը, (որուն հարաւային մասը 1512ին Ֆերդինանդոս Կաթուղիկէական աշխարհակալեց. իսկ հիւս. մասը՝ 1589ին Գաղղիայի հետ միացաւ.) Պարսելոնայի կոմսութիւնն ու Արակոնիայի թագաւորութիւնը։

2. Արակոնիա, 1137ին Գադալոնիայի հետ միացաւ։ — Յակոբ Ա. աշխարհակալեց Պալէարեան կղզիներն ու 1238ին Վալէնսիան։ Պետրոս Գ. առաւ 1282ին Սիկիլիան. բայց աս կղզին արա-

կոնական ցեղին թագաւորաց տակն էր ու հազիւ 1409ին տէրութեան հետ կրցաւ միանալ։ Արակոնիայի թագաւորները՝ շուրջ 1300ին առին նաեւ Սարդինիան։

Գաստիլիայի թագաւորութիւնը(1037) **Փերդինանդոս Մեծին** ձեռօք՝ Լէոնի թագաւորութեան հետ միացաւ։ Իր ու իր յաջորդացը, եւ մանաւանդ 1085ին Դոլետոն աշխարհակալող քաջն **Ալֆոնսոս** Զ.ին ատեն՝ Ռոտրիկօ տէ Վիվար (որ Սիտ կը կոչուի †1099) Արաբացւոց սարսափն եղած էր։ — Ասոնք՝ 1212ին Տոլովսայի արիւնահեղ ճակատին մէջ յաղթուեցան, ուր գրեթէ 200.000 մարդ ինկաւ։ — **Փերդինանդոս**՝ Սուրբը, 1250ին ատեններ, աշխարհակալեց Եսդրամատուրան, Մուրսիան ու Անտալուսիան. այնպէս որ Արաբացիք Կրանատայի մէջ քաշուելու հարկադրեցան։

3. **Իզաբէլլա** Գաստիլիացին (1469 —) աշխարհակալեց 1492ին Կրանատան Արաբացւոց վերջին երկիրը. իսկ Փերդինանդոս, իւր էրիկը՝ միացուց 1504ին իր տէրութեանը հետ Կոնզալվոյ Գորտովացիէն առած Նէապոլիսը։ Իզապէլլայի մահուընէն ետեւ (1504)՝ իր փեսան **Փիլիպպոս Գեղեցիկ** Աւստրիացին, դժբախտ Յովհաննային էրիկը, եւ ասոր (1506ին) մահուանէն ետեւ՝ Խիմենէս պաշտօնէին ջանքովը՝ **Փերդինանդոս Կաթողիկեանը** Գաստիլիայի իշխան ճանչցուեցաւ։ Ասոր թոռը Կարոլոս Ա. (իբրեւ Գերմանիայի կայսր՝ Կարոլոս Ե.) եղաւ երկու թագաւորութեանց (Արակոնիայի, Գաստիլիայի) յաջորդ. եւ անուանեց ինք զինք թագաւոր Սպանիայի։

4. Պիրենեան թերակղզին, Արաբացւոց իշխանութեան տակ մնալէն ետեւ, Եւրոպայի ամենէն բազմամարդ ու միանգամայն ամենալաւ մշակուած երկիրներէն մէկն էր: Գիտութիւնք ու արուեստք, որոնց յառաջադիմութեան ետեւէ էին ամիրապետք, ամէն կողմ տարածուած էին: — Ումմեանց ամիրապետութեան խել մը պզտիկ տէրութիւններու բաժնուելովն ու անընդհատ պատերազմներով՝ երկրին այս բարեյաջող վիճակին ալ վերջ տրուեցաւ:

Թերակղզւոյն քրիստոնեայ տէրութեանցը մէջ, ազնուականք շատ մեծ արտօնութիւններ ընդունած էին, վասն զի պատերազմներու մէջ թագաւորաց աջ բազուկներն էին: Բայց ետքէն Փերդինանդոս Կաթողիկէականի ժամանակ անոնց ուժը կոտրեցաւ, մանաւանդ հաւատաքննութեամբ ու Ամերիկայի գտնուելովը: — Քրիստոնեայ տէրութիւններուն՝ Արաբացւոց հետ ունեցած պատերազմներուն ժամանակ, քրիստոնեայք, գրեթէ միշտ Մահմետականաց հետ կը խառնուէին. որով կրօնական մեծ անտարբերութիւն մը յառաջ եկաւ: Անոր առջեւն առնելու եւ հաւատոյ անարատութիւնը պահելու համար խոթուեցաւ Սպանիայի մէջ հաւատաքննութեան ատեանը: Սակայն ասի քանի թագաւորներէն ոմանք չարաչար գործածեցին, նաեւ մեծամեծաց ազդեցութիւնը կոտրելու եւ ուրիշ աշխարհային նպատակներու համար: Ամերիկայի գտնուելովը՝ պատերազմասէր ազնուականաց քաջագործութեան նոր ասպարէզ մը բացուեցաւ եւ խել մը երեւելի գերդաստաններ Սպանիայէն ելան. ուր անդիէն, աշխարհակալուած երկիրներէն՝ թագաւորաց ձեռքը հասած հարստութեամբ՝ թագին ազդեցութիւնն ու զօրութիւնն անչափ աւելցաւ:

## 91. Փորդուգալ. — Արեւելեան Հնդկաստանի Ծովու ճամբան կը գտնուի 1498.

1. Ինչպէս սկսաւ երեւան ելլել Փորդուգալ: — 2. Որ միջոցին սկսան գիւտերը: — 3. Երբ գտնուեցան Բարեյուսոյ հրուանդանը, Արեւելեան Հնդկաստանի ծովու ճամբան, Կոա, Մալաքքա: — 4. Ինչ հետեւութիւն ունեցան գիւտերը՝ քաղաքակրթութեան նկատմամբ:

1. Հենրիկոս՝ Պուրկունտիայի դուքսը 1094ին, Փորդուգալի (Փորդօյ-Գալէ) կոմսութիւնն ընդունեցաւ իբրեւ աւատ՝ իր աներէն, Ալփոնսոս Զ.էն, որուն մահուանէն ետքն (1109ին) ինք զինք անկախ ըրաւ: Անոր որդին՝ Ալֆոնսոս, Գիրիքի յաղթութենէն ետեւ, ինք զինք Փորդուգալի թագաւոր անուանեց: Ալկարվէ՝ Արաբացւոցմէ առնուեցաւ

(1250)․ եւ 1300ին ատենները, Բորդուկալ, Դիոնիսիոս Արդարին ատեն, Եւրոպայի ամենէն ծաղկեալ տէրութիւններէն մէկն եղաւ։

2․ Անհարազատ Պուրկունտեան ցեղին թագաւորաց տակ (1358-1580) սկսաւ գիւտերուն շարքը, որոնք Եւրոպացւոց նոր գործունէութեան մեծ ասպարէզը բացին։ Արեւելեան Հնդկաստանի հետ անընդմիջական կերպով առուտուրի յարաբերութեան մէջ մտնելու համար՝ փորձեցին Ափրիկէի բոլորտիքը ծովուն վրայէն ճամբայ մը գտնել։ Հենրիկոս ծովագնաց իշխանը՝ Սէուդան առնելէն ետեւ, 1415ին նոր տեղեր գտնելու համար նաւեր խաւրեց։ Ասոնք գտան (1418) Բորդոյ Սանդոն, Մատէյրան եւ (1439) Ազորեանները․ ու նաւեցին Պայատոր Գլխուն բոլորտիքը։ Հենրիկոսի մահուանէն յառաջ (1460)՝ Բորդուկալցիք գտան նաեւ Սենեկալ, Գաբվերտեան կղզիներն ու Կուինէան։

3․ Քիչ մը ետքը՝ (1486) Բարթուղիմէոս Տիազ անցաւ Գաբոյ դորմէնդոզոն․ զոր Յովհաննէս թագաւորը՝ Բարեյուսոյ հրուանդան անուանեց։ 1498ին Էմանուէլ Մեծին ատեն՝ գտաւ Վասգոյ տէ Կամա Արեւելեան Հնդկաստանի ծովային ճամբան։ Գալիգուդէն՝ աշխարհակալեցին Ալմէիրա ու Ալպուգէրք՝ Կոան, Մալագգան ու Մոլուգեանները։ Ասոր վրայ Բորդուկալցիք Ճենաց ու Ճաբոնացւոց հետ առեւտրական յարաբերութեան մէջ մտան։

Այս գիւտերէն անմիջապէս ետքը, սկսաւ Բորդուկալի համար ոսկեդարը։ Առուտուրը շատ ծաղկեցաւ․ բայց ատիկայ գրեթէ միայն թագաւորական նաւատորմղին ձեռքն էր։ Առեւտրոյ գլխաւոր նիւթերն էին, պղպեղ եւ ուրիշ համեմներ, մետաքսի ու բամբակի նիւթեր, մարգարիտ եւ այլն։ Մինչեւ այն ատեն սոյն վաճառքները՝ Իտալիայի ծովեզերեայ քաղաքներուն, եւ ի մասնաւորի Վենետիկի, Ճենովայի ու Բիզայի ձեռօք՝ Աղեքսանդրիայի, Փոքր Ասիայի կամ Կոստանդինուպոլսոյ վրայէն Եւ-

րոպա կը բերուէին։ Այս ժամանակներէն համաշխարհական առուտուրն օր քան զօր արեւմտեան Եւրոպայի ազգաց ձեռքն անցաւ. որովհետեւ Հնդկական վաճառքները Լիսաբոնի մէջ կը դիզուէին եւ անկէ, գլխաւորաբար Հոլլանտացւոց ձեռօք, ուրիշ տեղուանք կը փոխադրուէին։ Թէպէտ այս վաճառքները՝ ուրիշ ժամանակներէն շատ աւելի աժան կրնային ծախուիլ, այսու ամենայնիւ ասոնցմով եղած առուտուրը մեծ շահ կը բերէր ու միանգամայն Բորդուկալցւոց նոր կենդանութիւն կու տար։ Քաղաքացիք հարստացան եւ թագաւորական իշխանութեան ճոխութիւնը աճեցաւ. ուր անդիէն ազնուականք գրեթէ բոլոր իրենց յառաջուան արտօնութիւնները կորսնցուցին։ Երբ Բորդուկալ (1580-1640) սպանիական գաւառ եղաւ, իր Ասիայի մէջ ունեցած երկիրներուն մեծագոյն մասը Հոլլանտացւոց ձեռքն անցաւ։

## 92. Ամերիկա կը գտնուի 1492.

1։ Ե՞րբ ու որո՞ւն ձեռքով սկսաւ Ամերիկայի գիւտը. Կոլոմբոս իր վախճանին հասաւ։ — 2. Ո՞վ գտաւ Պրազիլիան. որո՞ւն ձեռքով գտնուեցաւ Մեքսիկա. Առաջին հեղ հողագնդին բոլորտիքը նաւելու ո՞վ ձեռք զարկաւ. — 3. Ի՞նչ կերպարանք առին առուտուր ու արուեստ նոր աշխարհքիս գտնուելովը։

1. Ինչպէս Բորդուկալցիք, Ափրիկէի բոլորտիքէն անցնելով՝ ասանկ ալ Քրիստափոր Կոլոմպոս Ճենովացին (ծն. 1447) կը համարէր թէ արեւմուտքէն՝ Ատլանտ. Ովկիանոսն անցնելով՝ կրնայ Արեւ. Հնդկաստան հասնիլ։ Երբ իր ծննդեան քաղաքն ու Բորդուկալ խնդիրը մերժուեցաւ՝ դիմեց Սպանիայի. հոն ութը տարի սպասելէն ետեւ՝ ընդունեցաւ Իզապէլլա Գաստիլլիացիէն երեք նաւ, որոնցմով սկսաւ 1492ին (Օգոստ. 3) Առաջին ճամբորդութիւնը։ Թէպէտ իր նաւուն մէջ խռովութիւններ ելան, սակայն Հոկտ. 12ին Կուանահանի (Սան Սալվատոր) եւ քիչ մը ետքը Գուպա եւ Հայիդի (Հիսբանիոլա) կղզիները գտաւ. վերջինին վրայ հիմնեց գաղթականութիւն մը։ — Երկրորդ ճամբորդութեան ժամանակ 1493ին, գտաւ Գարաիպները ու Ճամայգան. եւ կանգնեց Հիսբանիոլայի մէջ, ուր առաջին գաղթականութիւնը՝ Հնդիկները փճացուցած էին, Իզապէլլա ամրոցը։ — Եր-

րորդ ճամբորդութեան մէջ 1498ին, գտաւ Կոլոմբոս Երրորդութեան կղզին, եւ Ամերիկայի հաստատուն երկիրը՝ Օրինոգոյի գետաբերնին քով։ Բայց ճամանիգայի մէջ բռնուեցաւ եւ շղթայակապ Սպանիա բերուեցաւ։ — Չորրորդ ճամբորդութիւնը 1502ին, անցք մը փնտռելու համար էր. բայց Կոլոմբոս Ճամանիգա նետուեցաւ ու հազիւ խել մը վտանգներէ ետքը ազատեցաւ։ Անշնորհակալութեամբ վարձատրուած՝ մեռաւ Վալատոլիտ քաղաքը (1506)։ — Իսկ իր գտած երկիրը կոչուեցաւ, Նոր աշխարհքին առաջին տախտակները ծրագրող Ֆիորէնցացի Ամերիկոս Վեսբուչչիի անուամբը։

2. Աս եղած ժամանակ՝ Գապրալ Բորդուկալցին, Արեւելեան Հնդկաստանի ճամբուն վրայ, դէպ ի արեւմուտք զարնուելով՝ գտաւ 1500ին Պրազիլիան։ 1513ին Պալպոան՝ անցաւ Բանամայի կիրճը։ — Երկրագործութեամբ ու առուտուրի երեւելի ու հզօր Մոնդեզումայէն կառավարուած Մեքսիկոն՝ Ֆերդինանդ Գորդէզ (1521ին), ոսկեշատ Բերուն՝ անգութ Ֆրանկիսկոս Բիզարոյ, (1531) ու Չիլին՝ Ալմակրոյ, սպանիական թագին հպատակեցուցին։

Ֆերդինանդոս Մակէլհէն, սպանիական ծառայութեան մէջ եղող բորդուկալցին 1519ին, անցք մը գտնելու համար, նաւարկեց հարաւ. Ամերիկայի բոլորտիքը։ Եկաւ՝ իր անունովը կոչուած նեղուցին միջնորդութեամբ Խաղաղական Ովկիանոս, եւ գտաւ հոն Գողոց կղզիները. բայց 1521ին սպանուեցաւ Փիլիպպեաններուն վրայ։ Իր նաւերէն մէկը հասաւ Եւրոպա 1522ին՝ հողագնդին բոլորտիքն առաջին ճամբորդութիւնն ընելէն ետեւ։ — Հողագնդին չորս դին դարձաւ երկրորդ անգամ՝ Ֆրանկիսկոս Տրագէ անգղիացին, 1580ին։

3. Արդէն 1497ին Անգղիացիք Գապոդի առաջնորդութեամբ Նոր-Ֆունտլանտիան բռնած էին: 1600ին գաղղիական առաջին գաղթականութիւնը հիմնուեցաւ Գանատայի մէջ:

Նոր աշխարհքին ոսկւոյ հարուստ բովերը տարուէ տարի նորանոր գաղթականութիւններ հրապուրեցին դէպ ի Ամերիկա: Բայց որովհետեւ ոսկի ու արծաթ միայն կ'ուզէին գտնել, անոր համար առուտուրն ու երկրագործութիւնը գրեթէ բոլորովին երեսէ ձգուեցան: Ամէն տարի երկու հեղ կը խաւրէր Սպանիա իր նաւատորմիղը Ամերիկա, բովերուն եկամուտը բերելու համար: Բովերը բանեցընելը քանի մը առանձնականաց թոյլ տրուած էր միայն, որոնք տէրութեան որոշեալ տուրք մը կը վճարէին: Ամէն ազգ գաղթականաց հետ առուտուր չէր կրնար ընել: Քաղաքակիրթ երկիրներու մէջ (Մեքսիկոյ, Բերու,) շուտ մը կանոնաւորեալ վարչութիւն մը խոթուեցաւ: Իսկ ուրիշ կողմերուն հնդիկները հաստատուն գաղթականութիւններ կազմեցին առաքելութեանց ձեռքով, որ ի սկըզբան մուրացիկ կրօնաւորաց ձեռքն էր ու ետքէն Յիսուսի ընկերութեան անցաւ: Բայց որովհետեւ բովերու ծանր գործքերու տկար այդրէնածինները չէին դար, աղնուամիտ Լաս Գազասին խորհրդովը՝ 1517ին Ափրիկէէն առաջին սեւամորթներն Ամերիկա տարուեցան: Այս ժամանակէն գերեվաճառութիւնը միշտ աւելի տարածուելով՝ անողորմ անագորոնութեամբ շարունակուեցաւ:

Ամերիկայէն Եւրոպա եկող մեծ հարստութենէն աւելի պատուական եղաւ գիտութեանց, երթեւեկութեան ու արուեստից յառաջացումը: Առուտուրն՝ ալ թողուց Միջերկրական ծովն ու եղաւ համաշխարհական: Երկրագրութիւն, աստեղագիտութիւն, բնական պատմութիւն եւ գրեթէ ուրիշ ամէն գիտութիւնները՝ ընդարձակ ասպարէզ մ'առին:



# ՆՈՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Քանի հատուած կը բաժնուի Նոր Պատմութիւնը:*

*Նոր Պատմութիւնը յաջորդ հատածներու կը բաժնուի:*

1. *Նորագոյնութենէն՝ մինչեւ Վեստֆալիայի խաղաղութիւն.* 1517-1648:
2. *Վեստֆալիայի խաղաղութենէն՝ մինչեւ գաղղիական յեղափոխութիւն.* 1648-1789:
3. *Գաղղիական յեղափոխութենէն՝ մինչեւ մեր ժամանակը.* 1789-1878:

---

## Ա. ՀԱՏՈՒԱԾ

*Նորագոյնութենէն՝ մինչեւ Վեստֆալիայի խաղաղութիւնը. 1517-1648:*

### 93. Ծագում՝ Նորագոյնութեան ժամանակի.

1. Ի՞նչ կը դնէ առջեւնիս Նոր պատմութիւնը. Քանի շրջան կը բաժնուի: — 2. Ի՞նչ են որ եւրոպական կենաց իբրեւ թէ նոր կերպարանք մը տուին: — 3. Ի՞նչ տեսակ էր Միջին դարու քաղաքականութիւնն եւ ինչ տեսակ Նոր դարունը: — 4. Ինչ կերպարանք առած էին Եւրոպայի տէրութիւնները ԺԵ. ու ԺԶ. դարերուն մէջ:

1. *Հետեւութիւն ունեցող խել մը երեւելի դէպքեր եւ ի մասնաւորի վառօդի* (1354) *եւ տպագրութեան գիւտը* (1440), *կոստ. Պոլսոյ առումը* (1453), *Ամերիկայի գտնուիլը* (1492), *ծովու ճամբան դէպ ի արեւել. Հնդկաստան* (1498)՝ *եւրոպական ազգաց կենաց մէջ՝ կերպարանափոխութիւն մը յառաջ բերին, որ առանց ազդեցութեան չմնաց, ինչպէս տէրութեանց՝ նմանապէս ալ եկեղեցւոյ վրայ:*

*Նոր Պատմութեան Առաջին շրջանը՝ առջեւնիս կը դնէ, մէկ կողմանէ զօրաւոր քաղաքական*

իշխանութեան եւ եւրոպական տէրութեանց յօրինուածութեան մը ծագումը. իսկ մէկալ կողմանէ եկեղեցւոյ մէջ Նորաղանդութեան ձեռօք յառաջ եկած յեղափոխութիւնն եւ անկէ հետեւած կրօնական պատերազմները։

Երկրորդ շրջանը՝ կը ցուցընէ, բացարձակ միապետութեան եւ արքունեաց քաղաքականութեան զարգանալը, քաղաքական հաւասարակշռութիւնը պահելու ջանքը, եւ վաճառականութեան ու արուեստից աճող ազդեցութիւնը։ — Վերջապէս՝

Երրորդ շրջանը կը բովանդակէ գաղղիական յեղափոխութեան պատմութիւնն, եւ անոր հետեւութեամբ յառաջ եկած խառնակութիւնները. Ամերիկայի հանրապետութեանց հիմնուիլն ու Եւրոպայի տէրութեանց մեծագոյն մասին սահմանադրական կառավարութիւն ընդունիլը։

2. Եւրոպական ազգերուն քաղաքական կենաց կերպարանափոխութիւնն սկսաւ ԺԵ. դարուն, վառօդի գործածութեամբը։ Անկէ ետքը, Միջին դարուն մէջ՝ մեծ նշանակութիւն ունեցող մարմնոյ զօրութիւնն ու անձնական քաջութիւնն արժէքնին կորսնցուցին։ Ասպետութեան հոգին աներեւութացաւ, երբ զինաւորուած ու թոշակաւոր մարդիկներէ կազմուած հաստատուն բանակներն եղան միապետաց գլխաւոր նեցուկները։ — Վառօդէն ետեւ՝ ամենէն մեծ հետեւութիւններն ունեցան գիւտերը։ Վասն զի այն միջոցին, որ միապետական իշխանութիւնը կ'ընդարձակուէր եւ ազնուականք կ'աղքատնային, առեւտրին նոր հոգի առնելովը՝ քաղաքացւոց միջին կարգը բարձրացաւ, եւ իրեն հետ կենդանացաւ նաեւ ազատութեան հոգին։

Առեւտրով եւ գիտութեամբ առանձին տէրութեանց մէջ ծնած սերտ յարաբերութիւնը, յառաջ բերաւ քաղաքական դաշնաւորութիւններ. որոնց հետքերն սկսան տեսնուիլ Միջին դարուն վերջերը, երբ Գաղղիայի թագաւորներն Իտալիա արշաւանքներ ընելով՝ Աւստրիայի ու Սպանիայի նախանձը գրգռեցին, եւ խել մ'ուրիշ տէրութիւններ ալ իրենց հետ դաշնակցելով՝ այս կռիւներուն մասնակից եղան (Թ. 86)։ — Հետզհետէ կազմուեցաւ ընդհանուր խաղաղութիւնն ապահովցընելու համար հարկաւոր եղած տէրութեանց հաւասարակշռութեան գաղափարը։ Ասով՝ տէրութեան մը, մէկալ տէրութեանց պատահարներուն միջամուխ ըլլալը, եւ այն ազգաց իրարու ունեցած յարաբերութիւնն աւելի յաճախ ու ընդհանուր եղաւ, գիտնական ծանօթութեանց տարածումը դիւրինցաւ եւ ընդհանուր կարծեաց ուժը զօրացաւ։

3. Աւատային իշխանութեան՝ միապետականի փոխուելովը, ամէն տեղ աղնուագոյն քաղաքական կեանք մը սկսաւ։ Ծննդեան իրաւանց վրայ հիմնուած աւատային տէրութեանց մէջ կը պակսէր ընդհանուր օրէնք մը։ Տէրութիւնը բաժնուած էր այլ եւ այլ օրէնքներ ու արտօնութիւններ ունեցող խել մը եկեղեցական ու աշխարհային վիճակներու։ Իշխանին կամքը՝ անձնական կամայականութիւնն էր, որ օրինօք սահմանաւորուած չէր. վերջապէս ժողովուրդը ստրկացած էր։ — Նորագոյն ժամանակին միապետութեան մէջ՝ ընդ հակառակն, երեւան ելաւ ընդհանուր օրինաց վրայ հիմնուած տէրութեան իշխանութիւն մը, որ կոտրեց մէկ կողմանէ արտօնացեալ վիճակներուն հաճոյքը, եւ վերջացուց մէկալ կողմանէ ստորին ժողովրդեան ծառայական աստիճանը։ Տէրութեան բոլոր հպատակները միեւնոյն օրինաց տակ խոթուեցան ու իշխանաց կամքն ալ չափաւորուեցաւ։

Այս աւատականութենէ՝ միապետութեան անցումը այլեւայլ երկիրներու մէջ այլեւայլ կերպով եղաւ։ Քանի մը երկիրներու, ինչպէս Անգղիայի ու Սպանիայի մէջ՝ երկրին իշխանը՝ իր յառաջուան անկախ աւատառուներուն զօրութիւնը կոտրեց՝ այնպիսի կերպով մը, որ մասնաւանք՝ իրենց անկախութիւնը կորսնցուցին եւ մի

տալիայի ու եաքէն արեւմտեան Եւրոպայի այլեւայլ երկիրներուն մէջ՝ ազգաց գործունէութեան նոր կենդանութիւն մը տրուեցաւ, մէկալ կողմանէ եկեղեցական-կրօնական կենաց սահմանին մէջ բազմապատիկ պակասութիւններ երեւան ելան: Քահանայապետներէն մէկ քանին, իրենց պաշտօնն եկեղեցւոյ հոգւոյն համաձայն չվարելով՝ այն պատիւը նուաստցուցած էին, ուր անդիէն բարձրագոյն եւ ստորին եկեղեցականաց մէկ մասն՝ անկարգ վարուք ու տգիտութեամբ իրենք զիրենք ժողովրդեան առջեւն արհամարհ ըրած էին: Աս չարիքները չէին կրնար ժողովրդեան կրօնական-բարոյական վիճակին վրայ առանց ազդեցութեան մնալ: Իրօք ալ ասոնց հետեւութիւնն էր, որ ժողովրդեան մէջ շատ մը զեղծումներ՝ եկեղեցական կենաց անտարբերութիւն, կրօնական իրաց տգիտութիւն եւ բարուց ապականութիւն մտած էին: Աս պատճառաւ շատոնցուընէ լսելի կ'ըլլային. Եկեղեցին ի գլուխն եւ յանդամս նորոգելու աղաղակները, որ չկրցաւ գործադրուիլ: Սակայն յայտնի էր՝ թէ այս նորոգութիւնը յաջող ելք ունենալու համար, եկեղեցւոյ մէջէն պէտք էր ելլել. ուր ընդ հակառակն կը տեսնենք թէ դրսէն յառաջ եկաւ. որով նորոգութիւնն յառաջ բերաւ աւերիչ յեղափոխութիւն մը: — Աս՝ Գերմանիայի կէսն Եկեղեցիէն բաժնող ու բովանդակ Եւրոպան տակնուվրայ ընող նորոգողութեան սկիզբն ըրաւ Լութեր:

2. Մարտինոս Լութեր ծնաւ Այսլեպէն քաղաքը (1483): Սկզբնական ուսումը յաջողութեամբ լմնցընելէն ետեւ՝ 1505ին Աւգոստինեանց կրօնը մտաւ, ուխտ դրաւ, եւ քահանայ ձեռնադրուելէն ետքը՝ Վիդդէմպէրկի մէջ քարոզչի պաշտօն ընդու-

նեցաւ: Բայց շատ չանցաւ, 1517ին ներողութեան վրայ 95 մոլորական նախադասութիւն գրեց: Լեւոն Ժ. նոր վարդապետութեան պատճառաւ եղած շփոթութիւնները լսելով, զԼութեր Հռոմ կանչեց եւ զինք շահելու ջանաց: Բայց պարապ տեղ. Լութեր իր մոլար կարծեացը վրայ յամառ կեցաւ: — Էք. աստուածաբանին հետ անօգուտ վիճաբանութիւն մ'ընելէն ետեւ, սկսաւ քահանայապետին ու Եկեղեցւոյ հետ ալ կռուիլ: Լութեր իրեն դէմ հանուած նզովից կոնդակը (1520) Վիդդեմպէրկի մէջ հրապարակաւ այրել տալէն ետեւ, Գերմանիայի իշխաններէն ու ազնուականներէն մէկ քանին իրեն յարեցան, զինք իրենց փառասիրութիւնն ու ընչասիրութիւնը յագեցընելու յարմար գործիք առնելով: Քիչ մը ետքը նաեւ հմուտ Մելանքթոնը շահեցաւ: Թէպէտ Վորմսի աւագաժողովոյն մէջ (1521) յետս կոչում ընել չուզելուն՝ Կարոլոս Հինգերորդէն տարագրութեան վճիռ ընդունեցաւ. բայց Փրեդերիկոս Սաքսոնիայի կայսրընտրէն պաշտպանութիւն գտնելով՝ Վարդպուրկ բերդը քաշուեցաւ, ուր սկսաւ Նոր Կտակարանին թարգմանութիւնը: Քիչ մը ետքը (1525) առանձնութիւնը թող տալով՝ Վիդդեմպէրկի մէջ կրօնաւորական սքեմը ձգեց եւ կատարինէ Պորա հաւատաւոր կուսանին հետ ամուսնացաւ: Աս եղած ժամանակ ելաւ Գեղացւոց պատերազմը՝ զոր Լութեր մեծ անգթութեամբ նուաճել տուաւ:

3. Ասոր վրայ Լութերի կողմնակիցները Շպայերի աւագաժողովին մէջ (1529) նորաղանդութեան տարածման արգելքին դէմ բողոքելէն ետեւ, (Բողոքող, Բողոքական) իրենց երկիրներուն մէջ նոր վարդապետութիւնը խոթեցին: Կաթողիկէ Եկե-

ընցուց պաշտամունքն ու պատկերաց յարգութիւնը մերժուեցան, քահանայից ամուրի կեանքը վերցաւ, վանքերը ջնջուեցան ու տօները քիչցան։

Կարոլոս Ե. որ միշտ յոյս ունէր բողոքականներն ընդհանուր Եկեղեցւոյն հետ միաբանելու, 1530ին Աւկսպուրկի աւագաժողովը գումարեց։ Հոն բողոքողք՝ Մելանքթոնէն յօրինուած հաւատոյ դաւանանքնին (Աւկսպուրկեան դաւանութիւն) գրով տուին եւ (1531) Սմալքալդեան Նիզակակցութիւնը կազմեցին։ — Տաճկաց յարձակմունքներն զԿարոլոս ստիպեցին (1532) Նիւռնպերկի խաղաղութեամբ Բողոքականներուն հաւատոյ ազատութիւն շնորհել, մինչեւ ընդհանուր ժողովի մը գումարումը։ Սակայն իրենց խնդրելովը Տրիտենդի մէջ գումարուած (1545-1563) ընդհանուր ժողովին, մարդ չխաւրեցին։ — Վերահաս պատերազմը չսկսած՝ մեռաւ Լութեր 1546ին (փետր. 18)։

## 95. Կարոլոս Ե. Կայսրը 1519-1556.

1. Մաքսիմիլիանոսի ով յաջորդեց։ Ի՞նչ պատերազմներ ըրաւ Կարոլոս՝ Փրանկիսկոս Գաղղիայի Թագաւորին դէմ. Կռուին ինչպէս վերջ տրուեցաւ։ — 2. Կարոլոսի՝ Տաճկաց դէմ ըրած պատերազմներն ինչ հետեւութիւն ունեցան։

1. Մաքսիմիլիանոսի մահուանէն ետեւ (1519) — որուն որդին, Փիլիպպոս Գեղեցիկ՝ արդէն իրմէ յառաջ վախճանած էր — իր թոռը՝ Աւստրիայի, Ստորին գաւառաց, Սպանիայի, Նէապոլսոյ ու Ամերիկայի մէջ աշխարհակալուած երկիրներուն իշխանը՝ Կարոլոս, ընտրուեցաւ Գերմանիայի կայսր ու պսակուեցաւ Ախէնի մէջ 1520ին։

Փրանկիսկոս Ա. Գաղղիայի թագաւորը, Կարոլոսի կայսրութեան թագին նախանձորդը՝ Միլան (1515ին) բռնեց, որուն դիմացը Կարոլոս իր պա-

պէն յափշտակուած Պուրկունտիան ետ պահանջեց։ Ասով ծագեցան՝ Պիւրեննեան, Իտալիայի ու Սոմրին Գաւառաց մէջ մղուած չորս պատերազմները։

**Առաջին պատերազմ** (1521-1526) սկսաւ անով որ Գաղղիացիք Իտալիայէն վռնտուեցան եւ Կարոլոս՝ Բրովանսի վրայ անօգուտ յարձակում մ՚ըրաւ։ Փրանկիսկոս՝ կայսերականներէն՝ Բաւիայի քով յաղթուած ու գերի բռնուած՝ Մատրիտի խաղաղութեամբ՝ խոստացաւ Պուրկունտիան թողուլ ու Իտալիայէն հրաժարիլ. սակայն ազատելէն ետքը՝ (1526) երդմամբ խոստացած պայմաններէն եւ ոչ մէկը պահեց։

Կայսերականաց Հռոմ բռնելովն ու կողոպտելովը (1527) սկսաւ **Երկրորդ պատերազմը** (1527—1529)։ — Այս միջոցին էր որ Ճենովա՝ Անդրէաս Տորիայի ձեռօք, Գաղղիայէն բաժնուեցաւ։

**Երրորդ** (1536-1538) ու **Չորրորդ պատերազմներուն** մէջ (1542-1544) Փրանկ. Ա. Սուլդան Սիւլէյման Բ.ին հետ դաշնակցեցաւ։ Կարոլոս ալ՝ Հենրիկոս Ը. անգղիացւոյն հետ նիզակակցութիւն մ՚ընելով՝ Գաղղիա մտաւ. եւ Բարիզէն երկու օր հեռու՝ Գրէսբիի դաշինքը դրաւ, որով Փրանկիսկոս ընդ միշտ հրաժարեցաւ Իտալիայէն ու Կարոլոս՝ Պուրկունտիայէն։

2. Կարոլոսի ու Փրանկիսկոսի մէջ եղած պատերազմներն անոր համար մեծ նշանակութիւն ունեցան, որովհետեւ այս միջոցին նորաղանդութիւնը կրցաւ Գերմանիայի այլեւայլ կողմերը մտնել։ Նոյնն ըսելու ենք տաճկական պատերազմին համար ալ. որով Կարոլոս Ե.ի ձեռնարկները բոլորովին կասուեցան։ — Հայրէտտին՝ Սիւլէյման Բ.ին նաւատորմղի հրամանատարը (գաբուտան փաշա), առաւ Ալճէրին ու Թունուզը. եւ ծովահէնութեամբ Միջերկրական ծովն անապահով ըրաւ։ Կարոլոս՝ աշխարհակալեց 1535ին Թունուզը. մերժուած իշխանն իւր աթոռը դրաւ եւ 20.000 քրիստոնեայ գերի ազատեց։ Բայց Ալճէրիի

վրայ ըրած յարձակումը (1541) չյաջողեցաւ: Հունգարիայի մէջ ալ իրերը յաջողութիւն չունեցան Տաճկաց դէմ, այնպէս որ Կարոլոս Ե. ի եղբայրը Փերդինանդոս — 1527էն վեր Հունգարիայի ու Պոհեմիայի թագաւորը — հարկադրեցաւ ինք զինք պարտաւորել Դրան՝ տարեկան հարկ վճարելու: Ս. Յովհաննու ասպետաց կարգին՝ Հռոդոս կղզւոյն տեղ, զոր Տաճիկք առին 1522ին, Կայսրը՝ 1533ին Մալդա կղզին տուաւ:

## 96. Սմալքալտեան պատերազմ. 1546.

1. Ինչ պատճառաւ ծագեցաւ Սմալքալտեան պատերազմը: — 2. Մաւրիկիոս Սաքսոնացւոյն ապստամբութիւնը հետեւութիւն մ՚ունեցաւ. Ինչ բնաւորութեան տէր էր Կարոլոս. Ո՛ւր մեռաւ: — 3. Ո՛վ է Զվինկլիոս, Կալուին. Նորոգողութեան գլխաւոր ախոյեանն ո՛վ եղաւ:

1. Կարոլոս Ե. արտաքին կռիւները լմնցընելէն ետեւ, պատրաստուեցաւ Սմալքալտեան Նիզակակցութեամբ՝ իրարու հետ միաբանած բողոքական իշխաններուն դէմ ելլելու: Ասանկով ելաւ Սմալքալտեան պատերազմը 1546-1547: — Կայսրը՝ Հար. Գերմանիայի բողոքականները պարտելէն ետեւ՝ միացաւ Մաւրիկիոս Սաքսոնացւոյն եւ իր եղբօրը՝ Փերդինանդոս Աւստրիացւոյն հետ: Յաղթեց 1547ին Յովհ. Փրեդերիկոս կայսրընտիր իշխանին, որ բռնուեցաւ. քիչ մը ետքն ալ Փիլիպպոս աշխարհակոմսը:

2. Մաւրիկիոս Սաքսոնիայի կայսրընտիրը՝ կայսեր ըստ քմաց գործելուն ու բողոքողաց շնորհուած առժամանակեայ (Interim) ազատութեան վրայ սաստիկ նեղացած՝ Գաղղիայի հետ միացաւ, կայսեր վրայ յարձակումներ ընելու սկսաւ ու զինք ստիպեց (1552ին) Բասաւի դաշինքը դնելու: Բայց շատ չանցաւ (1553) ինկաւ Սիփէրսհաուզէնի ճակատին մէջ: Աւկսպուրկի կրօնական խաղաղութեան մէջ (1555) Բասաւի դաշինքը հաստատուեցաւ, եւ բողոքողաց կրօնի ազատութիւն եւ ուղղափառաց հետ հաւասար իրաւունք շնորհուեցաւ:

Կարոլոս Ե. իր ժամանակին ամէն գիտութեանց եւ արուեստից մէջ լաւ կրթուած ըլլալով՝ մեծ տաղանդի տէր, սրամիտ իշխան, գործունեայ եւ աղէկ թափանցող քաղաքագէտ մըն էր։ — Երբ երկու կրօնական կողմնակցութիւնները դարձեալ միացընելու ամէն ջանքը պարապի ելած տեսաւ, կայսրութենէն հրաժարեցաւ (1556)։ Իր Փիլիպպոս որդւոյն տուաւ Ստորին Գաւառները, Սպանիան, Նէապոլիսն ու Միլանը։ Իսկ եղբայրը՝ Փերդինանդոս՝ Աւստրիայի արքիդուքսը, Հունգարիայի ու Պոհեմիայի թագաւորը, իրեն յաջորդեց կայսերական գահուն վրայ։ Մեռաւ Կարոլոս Էսդրամադուրայի Ս. Յուստոս վանքին մէջ 1558ին։

3. Հելուետայի մէջ կը քարոզէր 1518էն վեր Ուտալրիկ. Զվինկլիոս Զիւրիխի ժողովրդապետը Աւետարանական Նոր վարդապետութիւն մը. ու մեռաւ 1531ին ուղղափառաց դէմ տուած Գաբբէլի ճակատին մէջ։ — Ինք ու իր աշկերտները (Նորոգականք) կը տարբերին Լութերականներէն գլխաւորաբար վերջին ընթրեաց վարդապետութեանը մէջ։

Գաղղիայի մէջ տարածուեցաւ Նորոգողութիւնը Յովհաննէս Կալուինի († 1564) ձեռօք։

Լութերական եկեղեցին ընդունեցաւ հիւսիս. Գերմանիա, Բրուսիա, Գուրլանտիա, Լիվլանտիա, Շուետ, Նորուեգիա ու Դանիա։ Նորոգական եկեղեցին մուտք գտաւ Հելուետիայի մեծագոյն մասին, Արեւմ. Գերմանիայի, Գաղղիայի, Մեծն Բրիտանիայի ու հիմակուան Հոլլանտայի մէջ։

Նորաղանդութեան դէմ մեծ յաջողութեամբ պատերազմեցան Յիսուսեանք։ Այս՝ Ս. Իգնատիոս Լոյոլա Սպանիացիէն հիմնուած եւ 1540ին Պաւղոս Գ. քահանայապետէն հաստատուած Կրօնը, գրեթէ ամէն երկիրներու մէջ վարժոցներ հիմնեց, եւ գիտցաւ ազդու կերպով մը ամէն տեղ Նորոգողութեան դէմ գործել։ Ընկերութեան՝ ճարտարութեամբ եւ շատ ընտիր բարոյականութեամբ անուանի անդամները (իբրեւ խոստովանահայր, առաքեալ, կրթիչ եւ այլն) կրցան արտաքոյ կարգի ազդեցութիւն մը վաստըկիլ։ Կրօնը՝ 1773ին Կղեմէս ԺԴ.էն ջնջուեցաւ. բայց 1814ին, Պիոս Է.էն նորէն հաստատուեցաւ։

## 97. Ստորին Գաւառաց Սպանիայէն բաժանումը 1581.

1. Ինչ վիճակի մէջ կը գտնենք Ստորին Գաւառաց տէրութիւնները ԺԴ. եւ ԺԵ. դարերուն մէջ։ — 2. Ե՛րբ ու ի՛նչպէս սկսաւ Ստորին Գաւառաց անկումը։ — 3. Հիւսիսային գաւառներն երբ ձեռք բերին իրենց անկախութիւնը. — 4. Ի՛նչ վիճակի մէջ էին արուեստք ու գիտութիւնք, այս միջոցիս, Ստորին Գաւառաց մէջ։

1. Փիլիպպոս Բ. (1556-1598) *կասկածոտ, բայց խորամանկ իշխանը, Ստորին Գաւառաց ազատութիւնը ջնջելու փորձովը պատճառ տուաւ անոր Սպանիայէն բաժնուելուն։*

Ստորին Գաւառաց մէկ մասն ամուսնութեամբ (82), պուրկունտեան կոմսերազոյն տան ինկաւ (1369ին), որ 100 տարուան միջոցին մէջ (86), ըստ մասին ժառանգութեամբ ու ըստ մասին դաշամբ, մէկալ մասերն ալ ընդունեցաւ։ Յանուանէ Յովհ. Աներկիւղ (1404-1419) Մարգարիտա Հոլլանտացւոյն հետ ամուսնանալով՝ այս դքսութեանց վրայ իրաւունք վաստըկեցաւ, որ ետքէն իր որդւոյն՝ Փիլիպպոս Բարիին (1433) անցաւ։ Ասիկայ ժառանգեց նաեւ Պրապանդն ու Լիմպուրկը. գնեց Նամուրն ու Լուքսեմպուրկը եւ եղաւ ասանկով իր ժամանակին ամենահարուստ իշխանը։ Կէլտէրնը աշխարհակալող Կարոլոս Արիին (1467-1477) ատեն հարստութիւնն աւելի աճեցաւ. բայց ասոր հետ նաեւ զեղխութիւնն ու շռայլութիւնը։ Պրիւկկէ, Կէնդ, ու 1550էն վեր Անդուերբիա, եւրոպական տուրեւառին կեդրոնն եղած էին. Անդուերբիայի նաւահանգիստը կը մտնէր ամէն օր 500 նաւ եւ շաբթէ շաբաթ 2000 բեռան կառք։ Ֆլանտրաիկան արուեստին վաճառքները մինչեւ Հնդկաստան ու Արաբիա կ'երթային։ Իտալական առեւտրին վերջին հարուածը տուող Բորդուկալցւոց ու Սպանիացւոց գիւտերը, Ստորին Գաւառներուն ամենեւին չվնասեցին։ Առեւտրին հետ մէկ տեղ կը ծաղկէին երկրին մէջ արուեստք. եւ ի մասնաւորի ճարտարապետութիւն, փորագրութիւն, նկարչութիւն (Վան Տէք 1410) եւ այլն։

2. Փիլիպպոս Բ. *սահմանադրութեան դպչելով, եպիսկոպոսութիւնները շատցընելով եւ սրբաքննութիւնը խոթելով՝ շատերու ատելութիւնն իրեն դէմ գրգռեց։ Սպանիա գացած ատեն, իրեն փոխանորդ թողուց Մարգարիտա Բարմացին. իսկ*

Ներքին ատենին Նախագահ՝ Կրանվելլա կարդինալը։ Հոլլանտայի եւ Ֆլանտրիայի կառավարները՝ Գուլիէլմոս Օրանիայի իշխանն ու Էկմոնտ կոմսը, եւ Հոռն ծովակալը՝ (1564) Կրանվելլայի վար առնուիլը յաջողցընելէն ետեւ, 300 ազնուականք (1565) միաբանեցան ու սրբաքննութիւնը վերցընելու համար աղերսագիր մը մատուցանելէ ետեւ, իրենք զիրենք Մուրացիկ (gueux) անուանեցին. ուր անդիէն խառնիճաղանճը՝ շատ տեղուանք եկեղեցեաց վրայ յարձակեցաւ, կողոպտեց ու սրբոց պատկերները կոտրտեց։

3. Սպանիական բանակով մը (1567ին) իբրեւ կառավար Ստորին Գաւառներն եկող Ալպա դուքսը՝ Հոռնը եւ ուրիշ 18.000 հոգի գլխատել տուաւ։ — Աս եղած ժամանակ՝ Գուլիէլմոս Օրանիացին, Գերմանիայի մէջ (1572) բանակ մը ժողովելով՝ Սպանիացիները հիւս. գաւառներէն վռնտեց (1573), եւ հոն պաշտպանեց ինք զինքը 1573ին Ալպայի յաջորդին՝ Ռեքեզէնսի, ու 1576ին Տոն Խուան Աւստրիացւոյն դէմ։ Ուդրեխտի մէջ ալ (1579), հիւսիսային գաւառներուն իրարու հետ միաբանութիւնը կրցաւ յաջողցընել. որով 1581 ին Հոլլանտայի միացեալ տէրութիւնները՝ Զէլանտ, Ուդրէխդ, Կէլտէրն, Ովերիսէլ, Ֆրիզլանտ ու Կրէօնինկէն իրենք զիրենք անկախ հրատարակեցին։

Յաղթող ու 1585ին Անդուերբիան աշխարհակալող Աղեքսանդր Բարմացիին դէմ պաշտպանեց միաբանեալ տէրութեանց ազատութիւնը՝ Մաւրիկիոս Օրանիացին։ — Փիլիպպոս, Անգղիայի հետ ունեցած պատերազմին մէջ՝ կորսնցուց (1588) իր անյաղթելի նաւատորմիղը։ Ասոր վրայ Բորդուգալցւոց՝ Արեւել. Հնդկաստանի մէջ ունեցած եր-

կիրները Հոլլանտացւոց ձեռքն անցան, որոնք 1619 ին Պատաւիան հիմնեցին։ Հազիւ 1648 ին, ճանչցաւ Սպանիա հասարակապետութեան անկախութիւնը։

4. Թէեւ ասկէ ետքն ալ Ստորին Գաւառաց կաթոլիկականներուն ու Արմինեանց մէջ կրօնական գժտութիւններ եղան, սակայն հասարակապետութիւնն, Օրանժեան իշխաններուն տակ, ինչպէս առեւտրով՝ անանկ ալ արուեստիւ շատ ծաղկեցաւ։ Երեւելի են յանուանէ ԺԷ. դարուն գիտնականաց ու արուեստագիտաց մէջէն, Սպինոզա փիլիսոփան (†1677), Ռուպէնս (†1640), Վան Տիք (†1641), Ռէմպրանդ (†1674) նկարիչները։ Հարաւային գաւառները (հիմակուան Բելգիան) մնացին մինչեւ 1713 Սպանիայի տակ, ետքէն Աւստրիայի անցան։

Փիլիպպոս Բ. տաճկական նաւատորմիղը Լեբանդոյի քով ցրուեց. Աւստրիացւոյն առաջնորդութեամբը փճացընելէն ետեւ (1571), վատքկեցաւ ծովային ամենամեծ զօրութիւնն ու 1580էն ետքը նաեւ Բորդուկալի թագաւորութիւնը։ Բայց արդէն իր ժամանակն սկսաւ՝ մէկ կողմանէ երկայն պատերազմներով ելեւմուտքը նուազիլ, ու մէկալ կողմանէ իյնալ ուսումնական կեանքը։ Իր յաջորդաց ատեն սկսաւ տէրութեան արագ անկումը։

Սպանիական սրբաքննութիւնը Փերդինանդոսի ու Իզապելլայի ատեն սկսաւ, որ երթալով աւելի մեծ տարածութիւն առաւ։ Մանաւորապէս շատ խիստ էր հաւատաքննութիւնը քրիստոնէութեան դարձող Մաւրիտանացւոց ու Հրէից դէմ։ Բայց նաեւ ամենէն ազնուական գերդաստաններէն ալ մարդիկ հալածուեցան. որով բազմաթիւ մեծամեծներ դուրս գաղթեցին։ Փիլիպպ. Գ.ի ժամանակ, բոլոր Մորիսգոները (մաւրիտանացւոց սերունդները) միլիոնէ մ՚աւելի, ամենաճարտար գործաւորներն ու ամենէն աշխոյժ երկրագործներն Սպանիայէն աքսորուեցան։ Հազիւ ԺԸ. դարուն՝ վերջերը հաւատաքննութիւնն իր յառաջուան խստութիւնը ձգեց. քիչ մը ետքն ալ (1820) բոլորովին վերցուեցաւ։

## 98. Կրօնական պատերազմ Գաղղիայի մէջ.

1. Որո՞ւն հետ ելաւ Օրլէանի տունը թագաւորական գահը. Ի՞նչպէս կառավարեց Հենրիկոս Բ. Ինչու սկսան կրօնական պատերազմները Գաղղիայի մէջ. Ի՞նչ է երից Հենրիկոսաց պատերազմը։ — 2. Ի՞նչ տեսակ կառավարութիւն ունեցաւ Հենր. Դ. Ի՞նչ կերպարանք առած էր միապետական իշխանութիւնն այս միջոցին։

1. Լուդովիկոս ԺԲ.ով (88) Գաղղիայի գահն ելաւ Օրլէանի հին տունը, որ թագաւորեց 1498-1589։ — Արի՝ բայց թեթեւամիտ ու զեղխ Փրան-

կիսկոս Ա. ին (1515-1547) յաջորդեց իր որդին Հէնրիկոս Բ. (1547-1559), որ Մաւրիկիոս Սաքսոնացւոյն հետ միաբանած, նորոգեց պատերազմն Սպանիայի դէմ։ Թէպէտ (1557) Սէն-Գէնդէնի ու (1558) Կրավէլինկէնի քով յաղթուեցաւ Հենրիկոս, բայց վաստըկեցաւ Գամբրէսիզի խաղաղութեամբ (1559) Գալէ, Թուլ, Մէց ու Վէրտէօն քաղաքները։

Հենրիկոսի երեք որդւոցը ժամանակ՝ Գաղղիա արիւնահեղ կրօնական պատերազմաց ասպարէզ մ'եղաւ։ Մարմնով ու մտօք տկար եւ տարի մը միայն թագաւորող Փրանկիսկոս Բ.ի — Մարիամ Ստուարդի էրկանը — յաջորդեց տասնամեայ Կարոլոս Թ. (1560-1574)։ Ասոր տեղը կառավարեց տէրութիւնն իր մայրը, Կատարինէ Մէտիչի։ Ուղղափառ կողմնակցութեան գլուխը կեցած էր Կիզեան հզօր գերդաստանը։ Պուրպոնները՝ Անտոն Նավարրացին (Հենրիկոս. Դ.ին հայրը), եղբայրը՝ Գոնտէ իշխանը, ինչպէս նաեւ Գոլինեի ծովակալը, նորաղանդներուն (Հիւկընոյ) գլխաւորներն էին։

Ութը տարի փոփոխ բախտով տեւեց պատերազմը։ Անտոն ու Փրանկիսկոս Կիզ, դարձեալ Գոնտէ՝ առաջին տարիներն ինկան։ Բողոքականաց երեք հեղ կրօնի ազատութիւն շնորհուեցաւ ու դարձեալ ետ առնուեցաւ։ Բարիզի արեան հարսանիքովը պատերազմը նորէն արծարծեցաւ, որովհետու 1572ին Բարթուղիմէոսի գիշերը (24. Աւգոստ.) Գոլինեի ու 5000 հիւկընոյ սպանուեցան. նոյնը պատահեցաւ նաեւ գաւառներուն մէջ։

Հէնրիկոս Գ. (1574-1589) իւր եղբօրը մահուանէն ետեւ՝ Լեհաստանի թագը, Գաղղիայինին հետ փոխեց։ Ըրմուրի հրովարտակով 1585ին, (որուն զօրութեամբ բոլոր բողոքականք Գաղղիայէն

պիտ՚որ ելլէին), գահին վրայ առաջին իրաւունքն ունեցող Հենրիկոս Նավարրացին, Նորէն (երից Հենրիկոսաց) պատերազմի գրգռուեցաւ։ Նիզակակցութեան (ligue) գլուխն անցնող եւ Թագին ետեւէն ինկող Հենրիկոս Կիզ՝ Թագաւորին հրամանաւն սպանուեցաւ։ Թագաւորը (Հենրիկոս) Նիզակակցութեան ձեռօք Բարիզէն վռնտուելով՝ Հենրիկոս Նավարրացւոյն բանակը փախաւ, եւ հոն կղերմէս Յակոբ Դոմինիկեանէն սպանուեցաւ։ Իրմով սպառեցաւ Վալուայի ցեղը։

2. Հենրիկոս Դ. ին հետ ելաւ գաղղիական գահին վրայ, Պուրպոնեան ցեղը (1589-1848)։ — Հենրիկոս Դ. (1589-1610) վեց տարի Նիզակակցութեան ու Փիլիպպոս Բ. Սպանիացւոյն հետ պատերազմելու ստիպուեցաւ. յաղթեց Իվրիի քով (1590) ու պաշարեց Բարիզը։ Բայց այն ժամանակ միայն ամէնքը զինք Թագաւոր ճանչցան, երբ ուղղափառութիւնն ընդունեցաւ։ Նանդի հրովարտակով (1598) շնորհեց բողոքականաց կրօնի ազատութիւն եւ մուտք տէրութեան պաշտօններուն։ Ռավայլեագին ձեռքէն ընդունած մահը՝ օդ հանեց Հապսպուրկեան տան դէմ ունեցած յատակագիծները։

Հենրիկոս Դ.ի իմաստուն վարչութեամբը, շուտ մը վրայ եկաւ Գաղղիա։ Իր պաշտօնեան՝ Սիւլլի, ազնուական դուքսը, շատցուց եկամուտքը։ Առուտուրն ու գործարաններն սկսան ծաղկիլ։— Միապետութիւնն՝ արդէն Փրանկ. Ա. ին ատեն կատարեալ կերպարանք մ՚առած էր։ Աւատառուք փոխանակ աւատական ծառայութեան՝ սկսան տուրք վճարել։ Տէրութեան անկախ ժողովներուն տեղ՝ մտցուեցաւ Թագաւորէն կախում ունեցող ազնուականաց ժողովները։

## 99. Նորաղանդութիւնն Անգլիայի մէջ.

1. Ինչպէս մտաւ Նորաղանդութիւնը Անգլիայի մէջ. Ո՛վ յաջորդեց Հենր. Ութերորդի։ — 2. Ո՛վ է Եղիսաբէթ. Ի՛նչ կառավարութիւն ունեցաւ։ — 3. Որո՛ւն հետ ելաւ Ստուարդեան տունը՝ Անգլիայի գահին վրայ. Յակոբ Ա.ին ո՛վ յաջորդեց. Ի՛նչ կառավարութիւն ու վախճան ունեցաւ Կարոլոս Ա.։ — 4. Ի՛նչ քաղաքականութիւն բռնեց Գրոմուէլ. Անգլիայի հանրապետութիւնը քանի՛ տարի տեւեց. — 5. Ի՛նչպէս կառավարեցին Կարոլ. Բ., Գուլիելմոս Գ.։ — 6. Ի՛նչ վիճակի մէջ կը գտնենք այս միջոցին Անգլիայի քաղաքական դիրքն ու գիտութիւնը։

1. **Հենրիկոս Ը.** (1509-1547), Հենր. Է.ի որդին, Թուտորի տնէն, (89) կրիւք լի ու բըռնաւոր իշխան մը, ի սկզբան Լութերի դէմ գրեց (defensor fidei). բայց ետքէն Թողուց ուղղափառութիւնը՝ երբ քահանայապետն իւր ամուսինէն՝ Կատարինէ Արրակոնիացիէն բաժնուելու հրաման չտուաւ. եւ հրատարակեց ինք զինք անգղիական եկեղեցւոյն գլուխ։ Ամէն եկեղեցականք հարկադրեցան իր գլխաւորութիւնը (suprématie) ճանչնալու երդում ընել։ Վանքերու ստացուածները յարքունիս գրաւուեցան, ուղղափառներէն շատերը (ինչպէս ազնուական Թովմ. Մորէ) գլխատուեցան կամ բանտարկուեցան։ Հենրիկոս իր վեց կիներէն երկուքը (Աննա Պոլինն ու Կատարինէ Հովարտը) գլխատել տուաւ։

**Եդուարդ Զ.**ին (1547-1553) Հենրիկոսի եւ Յովհաննա Սէյմուրի որդւոյն ատեն, Նորաղանդութեան գլուխն անցած էր Գրանմէր արքեպիսկոպոսը։

**Մարիամ** (1553-1558) Հենրիկոսի երէց դուստրը, Փիլիպպոս Բ. Սպանիացւոյն ամուսինը, իր եղբօրմէն Թագաժառանգ որոշուած Յովհաննա Կրէյը գլխատել տուաւ։ Ուղղափառ եկեղեցին հաստատելէն ետեւ, Գրանմէր եւ ուրիշ խել մը բողոքականներ այրուեցան։

2. **Եղիսաբէթ** (1558-1603) Հենրիկոսի եւ Աննա Պոլինի աղջիկը, գահ ելլելէն անմիջապէս

ւորը, եկեղեցականներէն երդում պահանջեց ու հիմնեց Եպիսկոպոսական կամ Բարձր եկեղեցին Անգղիայի մէջ։ Ասոնցմէ բաժնուեցան Երիցականք կամ Պարզակրօնք՝ որոնք բարձր եկեղեցւոյն մէջ դեռ պահուած ուղղափառ ծէսերը բոլորովին ջնջել կ'ուզէին, եւ Թագուհւոյն գլխաւորութեանը երդում ընել չէին ուզեր։

Եղիսաբեթի կամայական, բայց խորագէտ կառավարութեան ատեն սկսաւ արթննալ Նաւագնացութեան եւ վաճառականութեան հոգին. որով Անգղիա իր ապագայ մեծութեան հասաւ։ Անգղիացւոց՝ Փիլիպպոսի նաւատորմիղին (armada) վրայ ըրած մեծ յաղթութեամբը (1588) հիմ դրուեցաւ Անգղիայի ծովային զօրութեան։ Փրանկ. Տրագէ 1580ին նաւարկեց հողագնդին բոլորտիքը։ 1584ին հիւսիս. Ամերիկայի մէջ՝ Վիրգինիա, ու 1600ին Արեւելեան Հնդկաստանի ընկերութիւնը հիմնուեցաւ։

Մարիամ Ստուարդ Սկովտիայի Թագուհին՝ ի սկըզբան Փրանկիսկոս Բ. Գաղղիայի Թագաւորին, յետոյ իւր հօրեղբօր ու վերջապէս զանիկայ սպանողին հետ ամուսնացաւ. բայց իր հպատակներէն բռնուելով եւ թագէն գահէն վար առնուելով, ստիպուեցաւ 1568ին Եղիսաբեթի ապաւինիլ, որ զինք 19 տարի բանտի մէջ պահելէն ետեւ, 1587ին գլխատել տուաւ։

3. Յակոբ Ա.ին (իբրեւ Թագաւոր Սկովտիայի Յակոբ Զ.) Հենր. Ը.ին մէկ քրոջը թոռնորդւոյն եւ Մարիամ Ստուարդի որդւոյն հետ ելաւ Ստուարտեան ցեղն անգղիական գահին վրայ (1603-1714)։

Յակոբ Ա. (1603-1625) միացուց Անգղիան Սկովտիայի հետ. սակայն վերջինը 100 տարի մըն ալ ունէր իր առանձին խորհրդանոցը։ Յակոբի կամայական վարչութիւնն առիթ տուաւ (1605) վառօդի դաւակցութեան, որ զինք ու խորհրդանոցն օդ հանել կ'ուզէր։

Կարոլոս Ա. (1625-1649) հոգիները գրգռեց, ուղղափառութեան միտելով, ըստ քմաց ծանր տուրքեր դնելով ու սահմանադրութեան մէջ փոփոխութիւններ ընելով: Խորհրդարանին (1628) Իրաւանց կոչուած աղաչանքը շնորհելէն ետեւ, կառավարեց, Պէօքինկհէմի տեղ անցնող Ստրէֆֆըրտ պաշտօնէին ձեռօք՝ տասնումէկ տարի առանց խորհրդանոցի. մինչեւ որ երիցական Սկովտիացիք իրեն դէմ դաշնակցութիւն մը կազմեցին: Ասոնց զինուիլն ստիպեց զթագաւորը, 1640ին Երկարատեւ խորհրդանոցը գումարելու, որ զՍտրէֆֆըրտ գլխատել տուաւ եւ թագաւորական իշխանութեան իրաւունքներն ետեւէ ետեւ իրեն յափշտակեց: Կարոլոս Լոնտոնէն փախաւ (1642), բայց Գրոմուելի առաջնորդութեան տակ եղող խորհրդարանի զօրքէն յաղթուեցաւ. եւ 1647ին Սկովտիացիներէն խորհրդանոցին յանձնուեցաւ: Անկախներուն ու երիցականաց մէջ երեք տարի պատերազմ ըլլալէն ետեւ՝ Կարոլոս Ա. կոճղի ժողովէն (rump-parliament) մահուան դատապարտուեցաւ ու 1649ին գլխատուեցաւ:

4. Անգղիայի հանրապետութիւնը տեւեց 1649-1660: — Գրոմուէլ՝ Կարոլոսի որդւոյն առաջնորդութեան տակ եղող Սկովտիացիները 1650ին Տընպարի ու 1651ին Ուըրսդրի քով զարնելէն ետեւ, ինք զինք բանակէն Պաշտպան Անգղիայի անուանել տուաւ (1653-1658): Թէպէտ խորհրդարանը լուծեց, բայց նաւագնացութեան վճռովն — որով օտարականաց՝ իրենց սեպհական վաճառքէն զատ վաճառք Անգղիա բերելը կ'արգիլուէր, — հիմ դրաւ Անգղիայի ապագայ առեւտրական մեծութեան:

Գրոմուելի մահուանէն ետեւ (1658) — երբ իր որդին Ռիքարդոս՝ շփոթութիւններ ելլելուն հա-

մար հրաժարեցաւ — Սկովտիայի կուսակալը, Գէորգ Մընգ, խորհրդանոց մը ժողովեց ու գլխատուած Թագաւորին մեծ որդին՝ Կարոլոս Բ.ը անմիջապէս գահ հանեց։

5. **Կարոլոս Բ.** (1660-1685) հօրը պէս տկար կառավարութիւն մ'ունեցաւ, անոր համար խորհրդանոցն 1673ին բռնութեամբ կրցաւ իրեն "Փորձոյ օրինագիրը" հաստատել տալ. որով ուղղափառք ամէն հրապարակական պաշտօններէ կը զըրկուէին. եւ փրցընել 1679ին "Հեպիէս գարբըսը", որով կ'որոշուէր, թէ ամէն Անգղիացի բռնուելու ատեն՝ պէտք է որ նոյնին պատճառը գրով իմանայ եւ 24 ժամու մէջ դատաստանի առջեւ ելլէ։ (Հուիկ ու Թորի կողմնակցութեանց սկզբնաւորութիւնը։)

**Յակոբ Բ.** (1685-1688), որ ուղղափառ կրօնն ընդունած էր, ուղղափառաց շնորհմունքներ ընելուն՝ նոր տժգոհութեան առիթ տուաւ։ — Երբ իր փեսան, Գուլիէլմոս Օրանիացին Անգղիա ցամաք ելաւ, Յակոբ Բ. փախաւ ու վար առնուեցաւ։

**Գուլիէլմոս Գ.** (1689-1712), որուն յանձնուեցաւ թագին հետ նաեւ Իրաւանց օրինագիրը՝ (Bill of rights, որով խորհրդանոցին ու ժողովրդեան հին ազատութիւնները կը հաստատուէին,) Յակոբ Բ.ի կողմնակիցներուն եւ Իրլանտացւոց յաղթելէն ետեւ, նորէն տեղը բերաւ Անգղիայի ազդեցութիւնը։ Իսկ Գաղղիայի հետ ունեցած պատերազմովը՝ ամրացուց Անգղիայի ծովային զօրութիւնը։ Այս քաղաքականութեան հետեւեցաւ նաեւ **Աննա** (1702-1714), Յակոբ Բ.ի կրտսերագոյն դուստրը։ Աննայի մահուանէն ետեւ, Գէորգ Ա.ով ելաւ անգղիական գահին վրայ **Հաննովէրի** տունը։

6. Յակոբ Ա.ին ատեն, Հոլլանտացւոց ծովային զօրութիւնը՝ Անգղիայինին եռապատիկն էր։ Բայց հազիւ թէ Կարոլոս Բ.ի ատեն խաղաղութիւնը հաստատուեցաւ, անմիջապէս սկսաւ Անգղիայի առեւտուրը ծաղկիլ։ Միեւնոյն ժամանակ աճեցան գաղթականութիւնները։ Յեղափոխութեան ատեն, խել մը աժգոհներ հիւս. Ամերիկա գաղթեցին, հոն ըստ անգղիական սովորութեանց՝ բայց ազատութեամբ ապրելու համար։ 1681ին հիմնեց Ուիլեըմ Բէնն Ֆիլատելֆիան։ Արդէն Աննայի կառավարութեան ատեն տասը գաղթական գաւառ կազմուած էր Ամերիկայի մէջ. ասոնց վրայ աւելցան (1713) նաեւ Հուտսոնի ծոցին երկիրներն ու Եւրոպայի մէջ Ճիպրալթար ու Մինորգա։

Գիտութիւնք ալ ետ չմնացին Անգղիայի մէջ։ Ուիլեըմ Շէքսբիր (†1617), Ֆրանկ. Պաքօն, Լորտ Վէրուլամ (†1626), Միլթըն (†1674), Լոք (†1704), Իսահակ Նեւտոն (†1727), պատկառելի անուններ են։

## 100. Դանիա, Շուէտ, Նորուեգիա.

1. Ե՛րբ սկսան երեւան ելլել Դանիա, Շուէտ ու Նորուեգիա. Ո՛ր միջոցին հասաւ Դանիա իր զօրութեան ծայրը։ — 2. Ի՛նչպէս թագաւորեց Քրիստիանոս Ա. Դանիայի մէջ։ — 3. Ե՛րբ ու ի՛նչպէս ձեռք բերին Շուէտացիք անկախութիւննին. Ի՛նչ վարչութիւն ունեցաւ Կուստաւոս Ադոլփոս։ — 4. Ե՛րբ հասաւ Շուէտ իր զօրութեան գագաթը։ — 5. Ի՛նչ վիճակի մէջ էր Դանիա ԺԶ. դարէն ետեւ. Որո՛նք են իրարու յաջորդող թագաւորները։

1. Երկրի մը մէջ, այնչափ շուտ եւ ընդհանուր ընդունելութիւն չգտաւ Նորաղանդութիւնը, ինչպէս Դանիայի, Շուէտի ու Նորուեգիայի տէրութիւններուն մէջ՝ որոնք 1397ին, Գալմարի դաշնակցութեամբ, իրարու հետ միացած էին։

Դանիայի, Շուէտի ու Նորուեգիայի մէջ, մինչեւ Թ. դար առանձին առանձին Նորմանական ու գոթացի թագաւորաց տակ քանի մը պզտիկ տէրութիւններ կային։ Կանուտոս Մեծի՝ (1014-1035) Անգղիայի, Դանիայի ու Նորուեգիայի թագաւորին կառավարութեան ժամանակ՝ տարածուեցաւ այս երկիրներուն մէջ քրիստոնէութիւնը։

Դանիա իր զօրութեան ծայրը հասաւ Վալտէմար Ա. (1157-1182) ու Վալտէմար Բ.ի (1202-1241) ժամանակ. որոնք հետզհետէ Բոմերանիան, Մէգլէնպուրկն ու Եսդլանդիան նուաճեցին։ Երկարատեւ ներքին խռովութիւններէ ետեւ, Վալտէմար Գ. (1340-1375) թագաւորական ճոխութիւնը նորէն հաստատեց։ Իր աղջիկը Մարգարիտա՝ ամուսնութեամբ նաեւ թագուհի Նորուե-

դիայի (որուն կը վերաբերէր 1260էն վեր Իսլանդիա). աշխարհակալեց Շուեդը (որուն հետ 1300էն միացած էր Ֆինլանտիան) ու միացուց երեք տէրութիւնները Գալմարի դաշնակցութեամբ 1397ին։ Բայց ամէն մէկ երկիրը պահեց իր յատուկ սահմանադրութիւնը։ Երեքն ալ ընտրական էին։ Թագաւորաց իշխանութիւնը՝ հարուստ ազնուականներէն ու եկեղեցականներէն չափաւորուած էր։

2. Քրիստիեռնոս Ա. Օլտէնպուրկցին, որ Հոլշդայնն ու Շլեզվիկը աշխարհակալած էր, ընտրուեցաւ 1448ին Դանիայի թագաւոր։ Իր յաջորդաց ատեն, Շուեդ՝ իւր առանձին իշխանաց կառավարութեան տակ (Sten Sture), եղաւ գրեթէ անկախ։ Միութիւնը նորէն տեղը բերելու վերջին փորձ մ'ըրաւ Քրիստիեռնոս Բ. որ (1520) Շուեդն աշխարհակալեց եւ Ստոգհոլմի կոտորածով՝ իրեն թշնամի խել մը ազնուականներ, եկեղեցականներ ու քաղաքացիներ գլխատել տուաւ։

3. Գոստաւոս Վազա երիտասարդ ազնուազարմ շուեդացին, զարկաւ 1521ին տալէգարլեան գեղացիներովը Դանիացիքը. առաւ Ստոգհոլմն եւ ընտրուեցաւ թագաւոր (1523)։ Կառավարեց (—1560) իմաստութեամբ ու քաղցրութեամբ. բայց օգնեց Լութերական դաւանութեան տարածման, որ 1544ին ընդհանուր եղաւ։

Վազայի տնէն՝ իրեն յաջորդող թագաւորները՝ Ռուսիայի, Լեհաստանի ու Դանիայի հետ գրեթէ անընդհատ պատերազմներու մէջ էին։ Բայց աշխարհակալեցին (1561ին) Իսլանդիան։ — Գոստաւոս Բ. Ադոլփոս (1611-1632) աշխարհակալեց (1616) Ինկէրմանլանտն ու Լիվլանտը եւ 30 ամեայ պատերազմին մէջ բողոքականութեան պաշտպան եղաւ։ Իր՝ 1654ին թագէն հրաժարելու ու Հռոմ ուղղափառութեան դարձող, գիտուն աղջկան Քրիստինէի հետ, շիջաւ Վազայի տունը. ու-

4. Արեւելեան ծովուն գաւառներն առնելու համար եղած պատերազմները, յառաջ բերին Շուետի, Դանիայի, Լեհաստանի ու Ռուսիայի մէջ շօշափում մը: Երեսնամեայ պատերազմով, Շուետ՝ Հիւսիս. Գերմանիայի մէջ երկիրներ ու զինուց փառք մը ստացաւ, որ զինք՝ Հիւսիսային առաջին տէրութիւնն ըրաւ: Ասով կրցաւ 1654ին գահ ելլող՝ Կարոլոս Ժ. Կուստաւոս, Շուետաց առաջին թագաւորը՝ Հիւսիսային համաշխարհական պետութիւն մը հիմնելու յատակագիծը շինել: Սակայն իր յաջորդը, Կարոլոս ԺԱ. 1660ին. Յովհ. Գազիմիր, Լեհաց թագաւորին հետ՝ Օլիվայի, ու Դանիայի հետ՝ Գոբէնհակնի խաղաղութիւնն ընելով, Շուետ՝ իր յառաջուան երկիրներուն (Լիվլոնտ, Շոնէն եւ այլն) վրայ ամփոփուած մնաց: — Բրանտենպուրկի դէմ ունեցած պատերազմին մէջ՝ կորսնցուց Շուետ (Ֆէրպիլլէնի ճակատումն 1675ին) իր զինուց փառքը: Հիւսիսային պատերազմով (Կարոլոս ԺԲ. 1697-1718, Թ. 108) անցան Արեւելեան ծովու գաւառներն եւ ուրիշ երկիրներ Գերմանիայի: Ուլրիկէ Ելէոնորայի եւ իր էրկանը՝ Փրեդ. Հեսսենի իշխանին ժամանակը, տէրութիւնը ներքին կողմնակցութիւններով քայքայեցաւ (գլխարկներն ու գդակները):

Ատոլփոս Փրեդ. Հոլշդայնկոտնէն (որ տիրեց Շուետի վրայ 1751-1818) ժամանակից եղաւ եօթնամեայ պատերազմին: Կուստաւոս Գ. փոխեց (1772) ազնուականաց շատ նպաստաւոր սահմանադրութիւնն ու սպանուեցաւ 1792ին Անգարսդրէօմի ձեռօք: Կուստաւոս Դ. Նաբոլէոնի անհաշտ թշնամին, ստիպուեցաւ 1808ին Ֆինլանտիան՝ Ռուսաց տալ, եւ երկրորդ տարին (1809) գահէն ինկաւ: Իւր հօրեղբայրը՝ Կարոլոս ԺԳ. որդեգրեց իրեն Պէռնատոդ գաղղիացի մարաջախտը, իբրեւ թագաժառանգ (որ յաջորդեց թագաւորութեան 1818ին, Կարոլոս ԺԴ. Յովհաննէս անունով) ու ընդունեցաւ 1814ին Նորուեգիան.

5. Մինչեւ 1814 Նորուեգիայի հետ միացող Դանիայի մէջ՝ Քրիստիանոս Բ.ի վար առնուելէն ետեւ (1523), Փրեդերիկոս Ա.ին տանն լութերական դաւանանքն ընդհանուր եղաւ: Մեծամեծք 1661ին յանձնեցին թագաւորին անկոպար իշխանութիւն եւ թագի ժառանգական յաջորդութիւն:

Դանիայի մէջ, իրարու յաջորդեցին Փրեդերիկոս Դ. (1669ին Թ. 108). Քրիստիանոս Զ. 1730. Փրեդ. Ե. 1746ին: Այոր ժամանակ Պեռնսդորֆ պաշտօնեան՝ յառաջացուց գիտութիւնն ու վաճառականութիւնը: — Քրիստիանոս Է. 1766ին. Ադրուէնաէ ինկաւ 1772. Հոլշդայն՝ Օլտէնպուրկի դիմացն առնուեցաւ. 1807ին Գոբէնհաւկ Անգղիացիներէն գնդակոծուեցաւ: Փրեդ. Զ. (1808): Քրիստիանոս Ը. (1848): Քրիստիանոս Թ. (1863):

## 101. Գերմանիա՝ 30 ամեայ պատերազմէն յառաջ. — Հունգարիա.

1. Ո՞վ յաջորդեց Կարոլոս Ե.ի Գերմանիայի մէջ. Ի՞նչպէս կառավարեցին Մաքսիմիլիանոս Բ., Ռուտոլփոս Բ., Մատաթիաս: — 2. Ե՞րբ սկսաւ երեւան ելլել Հունգարիա. Ի՞նչ վիճակի մէջ էր ԺԴ. ու ԺԵ. դարերուն մէջ: — 3. Ե՞րբ հասաւ Հունգարիա իր ամենամեծ բարձրութեանը:

1. Ֆէրտինանտոս Ա. (1554-1564) Հունգարիայի ու Պոհեմիայի թագաւորը, յաջորդեց իբրեւ Գերմանիայի կայսր, իր եղբօրը Կարոլոս Ե.ին:

Մաքսիմիլիանոս Բ. (1564-1576) ազնուաբարոյ կայսրը, պահեց իր հօրը պէս ըլլօղութեամբ ու չափաւորութեամբ տէրութեան խաղաղութիւնը:

Ռուտոլփոս Բ. (1576-1612) իր նախորդաց ո՛չ ճարտարութիւնն եւ ո՛չ արիութիւնն ունեցաւ: Այլեւայլ զրկանքներ պատճառ տուին (1608ին) Աւետարանական միութեան. որուն մէջ մտան գրեթէ ամէն բողոքող իշխանները: Անկարող կայսրը նուիրագործեցաւ (1608) Աւստրիան ու Հունգարիան իր Մատաթիաս եղբօրը թողուլ, եւ Պոհեմիացւոց՝ Վեհափառութեան հրովարտակաւ կրօնի ազատու-

թիւն շնորհել։ (Աս միջոցին կը ծաղկէին, Գէբլէր Դիգոյ Պրահէ, Կալիլէի)։

Մատթիասի (1612-1619) կառավարութեան ատեն նոր ապստամբութիւն մը, որուն ժամանակ Մարդինից եւ Սլավադա կայսերական կուսակալները (1618ին Մայ. 23) Բրակի դղեկին մէկ պատուհանէն վար նետուեցան։ —

2. Հունգարացիք՝ Ուրալ լեռներէն գաղթած Ֆիննեան (ուգրեան) ժողովուրդ մը — մինչեւ 955 գերմանացւոց ամենէն վտանգաւոր թշնամիները — 1000ին ատենները՝ Ս. Ստեփանոսի կառավարութեան ատեն քրիստոնէութիւնն ընդունեցան։ Ստեփանոս՝ խել մը գերմանացիներ իր երկիրը բերաւ, եւ բաժնեց իւր տէրութիւնը 72 գաւառի (comitat)։ Ասոնց՝ թագաւորէն անուանուած գաւառապետները, բովանդակ աշխարհական ու զինուորական իշխանութիւնը ձեռուընին ունէին. եւ արքունեաց պաշտօնեաներուն եւ եպիսկոպոսաց հետ (magnat) կը կազմէին տէրութեան խորհրդանոցը։

Արպադեան ցեղին շիջանելովը՝ 1301ին Կարոլոս Ռոպէրդոս (Անժուի տնէն) Նէապոլսոյ իշխանը, թագաւոր ընտրուեցաւ։ Ասոր որդին՝ Լուդովիկոս Մեծ (1343-1482) նաեւ Լեհաստանի թագաւոր՝ կ'իշխէր Ադրիական ծովէն մինչեւ Սեւ ու Պալդիկ ծով։ Սիկիսմոնդոս (1387-1437) նաեւ գերմանիայի կայսր, ընդունեցաւ հարուած մը 1396ին Օսմանցիներէն Նիկոպոլսոյ քով։ Իր փեսան Ալպէրդոս Բ. կայսրը, մեռաւ 1439ին, Տաճկաց դէմ ըրած արշաւանքի մը ժամանակ։ — Ասոր յաջորդող Վլատիսլաւոսն ալ՝ Վառնայի քով իյնալէն ետքը (1444), Լատիսլաւոս Յետնածին (posthumus) Ալբերդ Բ.ի որդին, ճանչցուեցաւ թագաւոր. ու

ցոյց. Հունիատի կը պատերազմէր, իբրեւ տէրութեան խնամակալ, յաջողութեամբ՝ Ցաճկաց դէմ։

3. Մատթիաս Կորվինոս (1458-1490), Հունիատիի որդւոյն կառավարութեանն ատեն, Հունգարիայի ամենէն փառաւոր ժամանակն էր։ Աշխարհակալեց ասիկայ Շլեզիան, Մորաւիան, Լաւսիցը. առաւ Վիէննան ու պատերազմեցաւ քաջութեամբ Ցաճկաց դէմ։ Հիմնեց Օֆէնի մէջ համալսարան ու մատենադարան մը։ Իր յաջորդացը, Վլատիսլաւոս Է. ի ու ասոր որդւոյն Լուդովիկոս Բ. ի ժամանակ († 1526 Մոհաչի քով) գերփեցին Ցաճիկք երկիրը։ — Հունգարիա, Փերդինանդոս Ա. ին (որ Լուդովիկոսի քրոջն Աննայի հետ ամուսնացած էր) ատեն՝ Աւստրիայի հետ միացաւ (1527). բայց երկրին կէսը՝ մինչեւ 1600, Ցաճկաց ձեռքն էր։ 1687ին, կորսնցուց Հունգարիա՝ իր ընտրական իրաւունքը. ու եղաւ՝ Պոհեմիայի պէս, աւստրիական տան ժառանգութիւն։

## 102. Երեսնամեայ պատերազմը 1618-1648.

1. Ե՞րբ ու ինչո՞ւ սկսաւ երեսնամեայ պատերազմը։ — 2. Ի՞նչ յաջողութեամբ մղուեցաւ 30ամեայ պատերազմը Դանիայի մէջ։ — 3. Ինչո՞ւ միջամուխ եղաւ Կուստ. Ադոլփոս 30ամեայ պատերազմին մէջ։ — 4. Գաղղիա ալ 30ամեայ պատերազմին մէջ մաս ունեցաւ։

1. Երբ Մատաթիայի մեռնելէն ետեւ 1619 ին, Փերդինանդոս Բ. (1619-1637) իր յաջորդը, Թուռն կոմսին առաջնորդութեամբ՝ մինչեւ Վիէննա յառաջացող Պոհեմիացիներէն վար առնուեցաւ, եւ Փրեդերիկոս Ե. Փալցի կայսրընտիր իշխանը Թագաւոր ընտրուեցաւ, Փերդինանդոս Բ. Սպանիայի հետ միացած Պոհեմիա մտաւ, եւ Բրակի ճակատը վաստըկելով՝ Փրեդերիկոս կորսնցուց իր Թագաւորութիւնը 1620ին։ Քիչ մը ետքը բոլոր Պոհեմիա

Նուաճուեցաւ. կայսրը Վեհափառութեան հրովարտակն ետ առաւ, եւ ապստամբք՝ գլխապարտութիւններով ու ստացուածքնին յարքունիս գրաւուելով՝ պատժուեցան։

Ասոր վրայ Էրնեստ Մանսֆէլտ կոմսը, բողոքական երկիրներուն մէջ Պոհեմիայի համար սկսաւ օգնութեան զօրք ժողովել. եւ կողոպտեց Ռենոսի քով եղած ուղղափառ հիմնարկութիւնները։ Ասոր հակառակ Գէորգ Փրետերիկոս՝ Պատըն-Տուրլախի սահմանակոմսը՝ Վիմբֆէնի՝ (1622) ու Քրիստիանոս Պրաունշվայկցին՝ Ստատլօյի քով (1623), Դիլլի զօրապետէն յաղթուեցան։

2. Քրիստիանոս Դ. Դանիացին, Գերմանիայի ազատութիւնն ու բողոքականութիւնը պաշտպանելու պատրուակաւ, Դիլլիի դէմ ելաւ. երբ անդին Մանսֆէլտ կոմսը, Վալէնշդայն կայսերական զօրապետէն Տեսսաուի քով յաղթուելով՝ ստիպուեցաւ Հունգարիա քաշուիլ, ուր մեռաւ ալ (1626)։ — Երբ ասոր վրայ Քրիստիանոս Դ. 1626ին Լուդդէրի քով Դիլլիէն յաղթուեցաւ՝ իր երկիրը Վալէնշդայնէն կողոպտուեցաւ։ Ասիկայ՝ Մէգլէնպուրկը բռնելէն ու դքսերը վերցնելէն ետեւ, 1629ին Մէգլէնպուրկն աւատ ընդունեցաւ։ Ասոր վրայ Ստրալսունտը պարապ տեղ պաշարելէն ետեւ, Դանիայի հետ Լիւպէքի խաղաղութիւնն ըրաւ։ Բայց իր ամբարտաւան վարմունքին համար, գերմանական իշխանաց խնդրելովը զօրապետութենէ վար առնուեցաւ (1630)։

Լիւպէքի խաղաղութենէն քիչ մը յառաջ՝ կայսրը Հատուցման հրովարտակը հանած էր (1629), որով կը հրամայուէր Բողոքականաց, որ Բասաուեան դաշնադրութենէն ետեւ գրաւուած եկեղեցական ստացուածները ուղղափառաց դարձընեն։

3. Գուստաւոս Ադոլփոս Շուետաց թագաւորն, — որ Լիվլանտի աշխարհակալութեամբ, ընտիր բանակ մը կազմած էր, — 1630ին Գերմանիայի բողոքականաց օգնութեան եկաւ։ Թէպէտ բռնեց Բոմերանիան, սակայն չկրցաւ Մակտէպուրկն ազատել. որ 1631ին Դիլլիէն առնուեցաւ, կողոպտուեցաւ. ու այրուեցաւ։

Գուստաւոս՝ Գէորգ Գուլիէլմոս աշխարհակալն իրեն հետ դաշնակցելու ստիպելէն ու վռընտուած դքսերը տէրերնին դարձընելէն ետեւ, Յովհ. Գէորգ, Սաքսոնիայի իշխանէն օգնութեան կանչուեցաւ։ Զարկաւ Դիլլին Լայբցիկի քով 1631ին (Սեպտ. 17), աշխարհակալեց Փրանկիան, անցաւ (1632) Լէխ գետն, ուր Դիլլի մահացու վէրք մը ընդունեցաւ. ու բռնեց Միւնխէնը։

Վալէնշդայն լիուլի իշխանութեամբ դարձեալ զօրապետ անուանուելէն ետեւ, փախուց Սաքսոնիացիքը Պոհեմիայէն, եւ Շուետաց յարձակումը՝ Նիւռնպէրկի քով մերժելէն ետեւ Սաքսոնիա մտաւ։ Հոն Լիւցէնի քով 1632ին (Նոյ. 16 ուր Գուստաւոս Ադոլփոս եւ Բափէնհայմ ինկան) Բեռնարդոս Վայմարցիէն յաղթուեցաւ։

Ասոր վրայ Վալէնշդայն, Շուետաց հետ գաղտնի բանակցութեան մէջ մտնելով, Բիգգոլոմինիէն մատնուեցաւ ու 1634ին Էկէրի մէջ կայսեր հրամանաւն սպանուեցաւ։

Փերդինանդոս արքիդուքսը՝ Վէրթ զօրավարին օգնութեամբ Շուետացիներուն վրայ Նէօրտլինկէնի քով յաղթութիւն մը վաստըկելէն ետեւ (1634), Սաքսոնիա կայսեր հետ (1635) Բրակայի խաղաղութիւնն ըրաւ, որուն զօրութեամբ Հաւտուցման հրովարտակն ետ առնուեցաւ. եւ դրաւու-

ած եկեղեցական ստացուածքները, քառասուն տարի ստացողներուն ձեռքը պիտ'որ մնային:

4. Գաղղիա՝ որ Ռիշլիէօ պաշտօնէին ժամանակ Շուետաց օգնած էր, 1636ին Սպանիայի եւ Աւստրիայի դէմ պատերազմ հրատարակեց: Պանէր Շուետացի զօրավարը յաղթեց Վիդշդոքի քով Սաքսոնիացւոց ու Աւստրիացւոց. եւ աւերելով մինչեւ Բրակ յառաջացաւ: Ֆերդինանդոս Գ. գահակալելէն ետեւ (1637-1657), աշխարհակալեց Բեռնարդոս Վայմարի դուքսը Պրայշախն ու Էլզասը. բայց սոր — հաւանականագոյն թունով — մեռնելէն ետեւ, Գաղղիացիք իրենց յափշտակեցին 1639ին իր աշխարհակալած երկիրները: Դորսդէնսոն, Պանէրի քաջ յաջորդը՝ վաստըկեցաւ Լայբցիկի քով փառաւոր յաղթութիւն մը Բիգգոլոմինիի վրայ, մտաւ Պոհեմիա ու Մորաւիա, աշխարհակալեց (1643) Եուդլանտը. զարկաւ Կալլաս զօրապետը (1644)՝ Եիւդէրպոքի, եւ Կէօց ու Հացֆէլտ զօրավարները (1645) Յանտաւի քով (Բոհեմիայի մէջ). եւ Վիէննայի կը սպառնար: Իր յաջորդը Վրանկէլ՝ Դիւրէնի առաջնորդութեամբ եղած գաղղիացիներովը (1646-1648) տակն ու վրայ ըրաւ Պաւիերան. իսկ Գէօնիկսմարք մտաւ Բրակա, այն միջոցին, որ Վեսդֆալիայի խաղաղութեան լուրն առաւ:

## 103. Վեսդֆալիայի խաղաղութիւնը 1648.

1. Ինչպէս լմնցաւ երեսնամեայ պատերազմը. ի՛նչ նոր բաժանում ընդունեցան երկիրները: — 2. Ինչ ազդեցութիւն ունեցաւ 30 ամեայ պատերազմը Գերմանիայի վրայ:

1. Խաղաղութեան բանակցութիւններն որ 1643ին Օսնապրիւքի ու Միւնսդէրի մէջ սկսած էին, հազիւ 1848ին լմնցան: Պատերազմող տէրութեանց հատուցում եղաւ Բոմերանիայի բաժ-

նուազումն եւ եկեղեցական ստացուածոց աշխարհականանալովը:

Գաղղիա ընդունեցաւ աւստրիական Էլզասը. հաստատուեցաւ Թուլ, Մէց ու Վէրտէօն եպիսկոպոսութեանց՝ եւ Պրայզախի վրայ ունեցած իշխանութիւնը, եւ իրաւունք ստացաւ Փիլիփպսպուրկի մէջ պահակապան զօրք պահելու: — Շուէտ. ընդունեցաւ յառաջակողմեան Բոմերանիան, Ռիւկէնը, յետնակողմեան Բոմերանիայի մէկ մասը՝ Վիզմար, Պրէմէն ու Վէրտէն եպիսկոպոսարանները եւ 5 միլիոն թալէր պատերազմի ծախք: — Աւկսպուրկի կրօնական խաղաղութիւնը տարածուեցաւ կալուինականաց վրայ ալ: Հելուետիայի՝ Գերմանիայէն, եւ միացեալ Ստորին Գաւառներուն՝ Սպանիայէն ազատ ըլլալը ճանչցուեցան:

2. Գերմանիա ինչպէս կը կարծուի, երեսնամեայ պատերազմին մէջ՝ իր բնակչաց կէսէն աւելին կորսնցուց: Արուեստներն ու երկրագործութիւնը մարդկան սակաւութեան պատճառաւ բոլորովին ինկան: Հարիւրաւոր քաղաքներ ու գեղեր մոխրոյ կոյտ դարձան: Մարգագետիններու եւ դաշտերու տեղ կը տեսնէր մարդ, վայրենացած անտառներ: Աւելի խեղճ վիճակի մէջ մնաց վաճառականութիւնն. որ արդէն Արեւելեան Հնդկաստանի ծովու ճամբուն խիստ հարուած մ'ընդունած էր: Վեստֆալիական խաղաղութեամբ, Գերմանիա, խել մը՝ կայսրմէ բոլորովին անկախ տէրութեանց բաժնուեցաւ:

Երեսնամեայ պատերազմով, Գաղղիացիք, որ արդէն այն միջոցին իրենց կենաց բարակութեամբն ու ազնուութեամբը անուանի էին, վաստըկեցան մեծ հեղինակութիւն գերմանական արուեստից, գիտութեանց, լեզուին ու բարոյիցը վրայ: Լուդովիկոս ԺԴ.ի գաղղիական տէրութեան տուած փառքը՝ մէկ դիէն, եւ գաղղիական երեւելի մատենագրաց ու մատենագրութեան զարգացումը մէկալ դիէն, արտաքոյ կարգի աճեցուցին այս ազդեցութիւնը: Գերմանացիք՝ Բարիզ կ'երթային գաղղիերէն լեզու եւ գաղղիական բարակութիւն սորվելու: Գաղղիական շռայլութիւն ամէն կողմ մուտք գտաւ:

## Բ. ՇՐՋԱՆ

*Վեսդֆալիայի խաղաղութենէն, մինչեւ գաղղիական յեղափոխութիւն 1648—1789:*

### 104. Գաղղիայի առաւել ազդեցութիւնը.

1. Ի՞նչ կը դնէ առջեւնիս Նոր պատմութեան երկրորդ շրջանը: — 2. Ո՞վ յաջորդեց Հենր. Դ.ի. Ո՞վ է Լուդովիկոս ԺԴ. Ի՞նչպէս կառավարեց: — 3. Ի՞նչ կառավարութիւն ունեցաւ Լուդ. ԺԴ. Ի՞նչ պատերազմներ բրաւ Սպանիայի, Աւստրիայի, Անգղիայի ու Հոլլանտայի դէմ. Ի՞նչ վաստըկեցաւ այս պատերազմներով: — 4. Ի՞նչ տեսակ քաղաքականութեան կերպ էր Լուդովիկոսի բռնածը. Ի՞նչ փոփոխութիւններ բրաւ տէրութեան վարչութեանը մէջ: — 5. Ի՞նչ արդիւնք ունեցաւ Լուդ. գաղղիերէն մատենագրութեան նկատմամբ:

1. Նոր պատմութեան երկրորդ շրջանին մէջ, անով երեւելապէս զարգացաւ ու զօրացաւ բացարձակ միապետութիւնն, որ Թագաւորական իշխանութիւնը չափաւորող կապերուն վերջին մնացորդներն ալ, գրեթէ ամէն տեղ վերցան: — Ինչպէս առաջին շրջանին մէջ՝ կրօնական, նոյնպէս ալ երկրորդին մէջ՝ առեւտրական շահերը քաղաքականութեան հետ սերտիւ միաւորեցան: Եւ որովհետեւ առուտուր եւ գործարաններ՝ ազգային հարստութեան գլխաւոր աղբիւրները կը համարուէին, անոր համար գաղթականութիւններն ու անոնց հետ ծովային տէրութիւնք, եւ յանուանէ Ստորին Գաւառք ու Անգղիա աւելի մեծ նշանաւորութիւն մը ստացան: — Առաջին շրջանին մէջ՝ Սպանիայի ունեցած առաւել ազդեցութիւնը, Վեսդֆալիայի խաղաղութենէն ետքը Գաղղիայի անցաւ: Հիւսիսային տէրութեանց մէջէն առաջինն էր ի սկզբան Շուետ, բայց ԺԸ. դարուն սկիզբներն սկսան զօրանալ Բրուսիա ու Ռուսիա: — Ըստ մասին առեւտրական շահերէ, ըստ մասին տիրապետելու տենչանքէ եւ ըստ մասին քաղաքական հաւասարակշռութիւնը պահելու ջանքէ յա-

ռաջ եկած յաճախ պատերազմները, տուին միայն զօրաց աւելի մեծ նշանակութիւն մը։

2. Մարմնով ու մտօք տկար **Լուդովիկոս ԺԳ.**ին (1610-1643) — Հենրիկոս Դ.ին որդւոյն — տեղ (Թ. 98) կը վարէր տէրութիւնն իր մայրը Մարիամ Մէտիչի։ 1624-1642 տէրութեան գլուխն անցնող Ռիշլիէօ կարդինալը ազնուականները հարստահարելով, Նորաղանդները զինաթափ ընելով ու ցամաքային եւ ծովային զօրութիւնը շատցընելով՝ ամրացուց թագաւորական իշխանութիւնը։ Ինք Գաղղիայի ազդեցութիւնն աւելցուց անով՝ որ Աւստրիայի ու Սպանիայի դէմ եղած պատերազմին մասնակից եղաւ։

3. **Լուդովիկոս ԺԴ.** (1643-1715) հօրը մեռած ատեն հինգ տարեկան էր։ Իր անչափահասութեան եւ մօրը՝ Աննա Աւստրիացւոյն խնամակալութեան ատեն, կը գործէր Մազարէն՝ Ռիշլիէօյի ոգւովը։ Բայց խռովութեանց պատճառ տուաւ իր կամայական կառավարութեամբը (1648). որով փրթաւ Պարսաւորաց (Fronde) ապստամբութիւնը։ Գաղղիա՝ Վեստֆալիայի խաղաղութեամբ խել մը երկիրներ առնելէն ետեւ, Պիւրենեան դաշամբ (1659) ընդունեցաւ Սպանիայէն Ռուսիյոն ու Արդուա գաւառները։

Երբ Լուդովիկոս Մազարէնի մահուանէն ետեւ (1661), տէրութեան սանձը ձեռքն առաւ, փառաւոր աշխարհակալութիւններով իր տէրութիւնը եւրոպական ամէն տէրութեանց առաջինն ըրաւ։

**Առաջին պատերազմ** սկսաւ 1667ին։ — Փիլիպպոս Դ. Սպանիայի թագաւորին մեռնելէն ետեւ, Լուդովիկոս — իր ամուսնոյն հրաժարման հակառակ — ժառանգութեան իրաւանց վրայ հիմնեալ՝ սկսաւ Սպանիայէն Ստորին Նահանգները պահանջել։ Բայց

Անգղիայի, Հոլլանտայի ու Շուէտի երրեակ դաշնակցութիւնէն ստիպուեցաւ (1668) Ախէնի խաղաղութեամբ, Փլանտրիայի մէջ բռած աշխարհակալութիւնները թողուլ։

**Երկրորդ պատերազմ** եղաւ 1672ին։ — Երբ Լուդ. Անգղիայի հետ միանալով՝ Հոլլանտացիներէն վրէժ առնուլ կ'ուզէր, ասոնք՝ իրենք զիրենք քաջութեամբ պաշտպանեցին։ Այն միջոցին որ Լուդովիկոս կը ստիպէր Փրեդ. Գուլիէլմոս, Պրանտենպուրկի կայսրընտիրը (1673) խաղաղութեան դաշինք դնելու, Աւստրիա ու Սպանիա պատերազմ հրատարակեցին Գաղղիայի դէմ։ Բայց Լուդովիկոսի զօրավարները՝ Դիւրէն († 1675ին Սասպախի քով.) ու Գոնտէ, թշնամիները հաւասարակշռութեան մէջ պահեցին. որով Սպանիա հարկադրեցաւ Նիմվէկի խաղաղութեամբ (1678) Փրանշ Գոնդէն եւ Սորբին գաւառաց սահմաններուն վրայ 12 տեղ Գաղղիայի տալ։

Ասոր վրայ Լուդովիկոս միաւորութեան Սենեակին քննել տուաւ, թէ ինչ երկիրներ կը վերաբերէին յառաջագոյն իրեն յանձնուած քաղաքներուն. եւ գրաւեց Ստրասպուրկը, Լուքսէմպուրկն եւ ուրիշ քանի մը քաղաքներ։ Ո՛չ Վիէննայի քով Տաճիկներէն նեղ մնած կայսրը, եւ ո՛չ ալ դեսպանաց առաջնութեան կռիւներուն զբաղած տէրութեան ժողովը՝ կրցան ասոր դէմ բան մ'ընել։

**Երրորդ պատերազմ** մը ձեռք զարկաւ Լուդովիկոս 1688ին, Լուվոա պատերազմի պաշտօնէին յորդորելովը՝ կայսեր, Սպանիայի, Անգղիայի, Հոլլանտայի ու Սաւոյայի դէմ։ — Աս պատերազմն սկսաւ բարբարոսական կերպով՝ շատ տեղուանք մոխիր ու անապատ դարձնելով։ Սորբին Գաւառաց մէջ՝ Լիւքսէմպուր մարաջախտին, եւ Իտալիայի մէջ՝ Գատինայի

յաղթութիւններովը՝ հասաւ Լուդովիկոս 1697ին Ռիզուիքի խաղաղութեան, որուն զօրութեամբ Գաղղիացիք Էլզասի մէջ ունեցած տեղերնին պահեցին։

4. Լուդովիկոսի արտաքին ձեռնարկութեանցը պէս նշանաւոր էր իր հնարած կառավարութեան կերպը։ Ազնուականաց զօրութիւնը՝ Լուդով. ԺԱ. էն ետքը, եւ մանաւանդ Ռիշլիէօյի ու Մազարէնի ձեռօք ջղատած ըլլալով, Լուդովիկոս ԺԴ. տէրութեան միութեանն արգելք դնող թումբ մը չգտաւ։ Ինք՝ կը նկատէր տէրութիւնն իբրեւ ամբողջ մը, զոր կեդրոնացուցած էր իւր անձին վրայ (l'état c'est moi). եւ տէրութեան մէջ՝ թագաւորին իշխանութենէն զատ՝ իշխանութիւն չէր ճանչնար։ Անոր համար, իր 72 տարուան կառավարութեանն ատեն, ոչ տէրութեան ժողով եւ ոչ ալ ազնուականաց խորհուրդ մ'եղաւ։ Եւ որպէս զի թագաւորին՝ տէրութեան մէջ ունեցած բարձր աստիճանը, նաեւ արտաքին ցոյցերով տեսնուի, արքունեաց սովորութիւններն (étiquettes) ամենաճիշդ կերպով որոշուեցան։

Որովհետեւ Մազարէնի մահուանէն ետեւ առաջին պաշտօնեայ (premier ministre) չընտրուեցաւ. անոր համար վարչութեան այլեւայլ ճիւղերուն համար առանձին պաշտօնեաներն հարկաւոր եղան. եւ Լուդ. անոնց ընտրութեանը մէջ, ըստ մեծի մասին բախտ ունեցաւ։ Անոնց մէջէն նշանաւոր են ի մասնաւորի Լուվուա պատերազմի ու Գոլպէր ելեւմտից պաշտօնեաները։ Վերջինը՝ տէրութեան ելեւմուտքը կարգաւորեց եւ առուտուրը յառաջացընելով ու գործարաններ դնելով՝ տէրութեան մուտքն աճեցուց։ Բայց որովհետեւ շարունակեալ պատերազմները, փառաւոր արքունիքն ու թագաւորին փառաւոր շինութիւնները (Վերսայլ, Մարլի եւ այլն) մեծ ստըկի գումարներ կը պահանջէին, անոր համար զօրութիւնն սպառած երկրին վրայ պարտուց մեծ ծանրաբեռնութիւն՝ իսկ քաղաքացւոց ու գեղացւոց վրայ անտանելի տուրքեր դրուեցան։ — Տէրութեան այս կերպ փոխուելովը բնական էր որ նոր կարգաւորութիւն մ'ըլլար նաեւ ոստիկանութեան մէջ։ Մինչեւ այն ժամանակ, խաղաղութեան ու կարգաւորութեան հոգը, տեղական վարչութեան յանձնուած էր։ Հիմակ մասնաւոր պաշտօնեաներ դրուեցան, որոնք չէ թէ միայն մարդիկներուն եւ ընչից ապահովութեանն, այլ նաեւ ընդհանրապէս տէրութեան խաղաղութեանն եւ բարօրութեանը վրայ պիտ'որ հսկէին։ Գաղտնի ոստիկանութիւն մըն ալ դրուեցաւ, որ առանձնականաց իրաւունքին դպչելէն զատ, նոյն իսկ նամակները բանալու իշխանութիւն ունէր։

5. Լուդովիկոսի կրթութեանը պզտիկուց հոգ տարուած չէր. սակայն բնական խելք ու սրամտութիւն այս

պատկառութիւնն ըստ մասին լեցուցին: — Լուդ. ԺԴ. ամենայն կերպով յառաջացուց արուեստներն ու գիտութիւնները: Իր արքունիքը ժողովեց Գաղղիայի առաջին գիտնականներն ու անոնց առատ եկամուտ կապեց: Ասանկով իր կառավարութեան ժամանակը գաղղիական մատենագրութեան ոսկեդարն եղաւ: Տէգարդ, Մոլիէր (†1673), Գոռնէյլ (†1684), Ռասին (†1699), Լաֆոնդէն, Պուալօ, Պոսիւէ, Ֆէնէլոն (†1715) Գաղղիայի մատենագրութեան աստղներն են: Լուդ. հիմնեց 1663ին Գրոց, 1666ին գիտութեանց ճեմարանները:

Լուդովիկոսի հնարած վարչութիւնը՝ շուտ մը օրինակ եղաւ գրեթէ ամէն եւրոպական տէրութեանց: Գաղղիական արքունեաց շքեղութեանը՝ բարակութեանն, ինչպէս նաեւ բարոյից ապականութեանը հետեւեցան ուրիշ արքունիքներն ալ: Գաղղիերէն լեզուին հետ, Եւրոպայի մեծ մասին մէջ՝ տարածուեցան նաեւ գաղղիական նորելուկ սովորութիւնները:

## 105. Աւստրիա, Սպանիա, Պորդուգալ.

1. Ինչպէս կառավարեց Լէոփոլտոս Ա. Տաճկական-Աւստրիական պատերազմներն ինչ հետեւութիւն ունեցան. Ե՞րբ սկսան Օսմանցիք տկարանալ. — 2. Ի՞նչ վիճակի մէջ էր Սպանիա՝ Փիլիպպոս Դ.ի ու իր յաջորդացն ատեն. ինչ էին իր անկման պատճառները: — 3. Ե՞րբ բաժնուեցաւ Բորդուկալ Սպանիայէն. Ի՞նչ կերպարանք առած էր Բորդուկալ ԺԸ. դարուն մէջ:

1. Գերմանիայի մէջ Փերդինանդոս Գ.ի յաջորդեց իր որդին Լէոփոլդոս Ա. (1658-1705): Ասոր ժամանակ արդէն տկարացած տէրութիւնը՝ տաճկական ու գաղղիական պատերազմներով շատ կրեց: Տաճիկք՝ 1683ին Հասան Գարա Մուստաֆայի առաջնորդութեամբ Վիէննայի առջեւ: Սակայն Ստարէնպէրկէն քաջութեամբ պաշտպանուած քաղաքը, Յովհաննէս Սոպիեսքի լեհացին ու Կարոլոս Լոթարինգիացին ազատեցին: Աւստրիացիք՝ ասկէ ետքը Լուդ. Պատընի իշխանին ու Եւգինէոս Սաւոյացւոյն յաղթութիւններովն այնչափ յառաջացան, որ Տաճիկք՝ 150 տարիէ վեր Հունգարիայի մէջ առած բոլոր երկիրները կորսնցուցին: Հունգարիա աւստրիական տան ժառանգութիւն եղաւ 1687ին. բայց պահեց իր յատուկ սահմանադրութիւնը: Գարլովիցի

խաղաղութեամբ (1699), կայսրն առաւ Դրանսիլուանիան ու Սլաւոնիան: Եւգինէոսի՝ Բեդէրվարտայնի ու Պելկրատի քով ըրած յաղթութիւններովը, վաստըկեցաւ Աւստրիա, Բասարովիցի խաղաղութեամբ՝ (1718) Խռուադիստանի, Պոսնիայի, Սերուիայի ու Վալաքիայի մէկ մասը. ուր անդիէն Վենետիկ՝ 1699 ին առած Մորէան, դարձեալ կորսնցուց: Անկէց ետքն սկսաւ Տաճկի տէրութեան մէջ անկարողութիւնն ու անտէրնչութիւնը. որով իր ազդեցութիւնը կորսընցուց: Թէպէտ ընդունեցան Օսմանեանք Պելկրատի դաշինքով (1739) Սավայի ու Դանուբի հարաւային դին եղած բոլոր երկիրները, բայց Ազովը Ռուսաստանի տալու հարկադրեցան:

2. Սպանիայի մէջ՝ Փիլիպպ. Գ.ի (1598-1621) ու Փիլիպպոս Դ.ի (1621-1665) ժամանակ՝ ինչպէս ժողովուրդն, անանկ ալ երկրագործութիւնն ու արուեստք տեսանելի կերպով իյնալու սկսան: Քաղաքներ ու գեղեր գրեթէ ամայի եղած էին. ուր անդիէն անտանելի տուրքերը շատ տեղուանք ապըստամբութիւններ յառաջ բերին: Սպանիա՝ Վեստֆալիայի խաղաղութեամբ հարկադրեցաւ Հոլլանտական հանրապետութիւնը ճանչնալու. եւ Պիւրենեան խաղաղութեամբ՝ 1659 ին Արդուան ու Ռուսիյոնը Գաղղիայի տալու: Տկար Կարոլոս Բ. (1665-1700) անյաջող պատերազմներէ ետեւ, Ախէնի խաղաղութեամբ 1668 ին Ֆլանտրիայի մէկ մասն. ու Նիմվէկի խաղաղութեամբ 1678 ին, Ստորին Նահանգներէն քանի մը գաւառ ու Ֆրանշ Գոնդէն Գաղղիայի տալու հարկադրեցաւ (104):

3. Բորդուկալ սպանիական գաւառ եղած ժամանակ (1580-1640) իր Արեւել. Հնդկաստանի երկիրները՝ Հոլլանտացւոց տալու հարկադրեցաւ: Բայց

Յովհաննէս Դ. Պրականցացիին վարչութեան ատեն (1640ին) Սպանիայէն բաժնուեցաւ։ Անկէ ետքը Անգղիա եղաւ Բորդուկալի դաշնակիցը. որ մանաւանդ անկարող Յովհաննէս Ե.ի ժամանակ (1705-1750) մեծ ազդեցութիւն սկսաւ բանեցնել Բորդուկալի ներքին իրողութեանց վրայ։ Յովսէփ Էմմանուէլի ատեն (1750-1777) յառաջացուց (Լիսապոնը՝ 1755ի երկրաշարժէն ետեւ նորէն ու աւելի փառաւոր շինել տուող) Բոմպալ պաշտօնեան՝ վաճառականութիւնը։ Սակայն խելագար Մարիամ Ա.ի ատեն — որուն տեղ 1799էն, կը կառավարէր տէրութիւնն իւր որդին Յով. Զ. — այն նորոգութեանց պտուղները փճացան։ Առուտուրը՝ բոլորովին Անգղիացւոց ձեռքն անցաւ. երկրի մշակութիւնը ծանր տուրքերուն եւ մարդու պակսութեանը պատճառաւ շատ ինկաւ։

## 106. Սպանիայի յաջորդութեան պատերազմը. 1700-1714.

1. Ի՞նչ պատճառաւ ծագեցաւ Սպանիայի մէջ յաջորդութեան պատերազմը։ — 2. Ի՞նչ ելք ունեցաւ. Ի՞նչ կերպարանք առաւ Սպանիա անկէց ետքը։

1. Կարոլոս Բ.ի ամենէն մօտիկ ժառանգը, Պաւիերայի կայսրընտիրը, 1699ին մեռած ըլլալով՝ Անգղիա ու Հոլլանտա թագաժառանգ որոշեցին կայսեր երկրորդ որդին զԿարոլոս։ Ասոր հակառակ Կարոլոս Սպանիացին, կտակին մէջ ժառանգ անուանեց Լուդ. ԺԴ.ին թոռը՝ զՓիլիպպոս, որ թագաւորին մահուանէն (1700) ետեւ իրօք գահն ելաւ։

Գաղղիայի ու Պաւիերայի դէմ՝ Լէոփոլտոս Ա.ին հետ միացան Բրուսիա, Անգղիա, Հոլլանտա ու Սաւոյա։ Պաւիերացիք՝ Տիրոլէն վռնտուելէն ետեւ, ասոնց հետ միացեալ Գաղղիացիքը՝ յաղթուեցան Եւգինէոս Սաւոյացիէն ու Մարլպըրըէն, Հոխշդէդի քով 1704ին։ Ասոր վրայ Կարոլոս արքիդուքսը Պարսելոնայի մէջ թագաւոր ճանչցուեցաւ։

2. Լէոփոլտոսի յաջորդեց Յովսէփ Ա. (1705-1711) իր որդին։ 1706ին Մարլպըրը, յաղթութիւն մ'ըրաւ Բելգիայի մէջ՝ Վիլլարուայի, իսկ Եւգինէոս՝ Դուրինի քով՝ Մարսէնի վրայ։ Քիչ մը ետքը (1708) երկու միացեալ զօրավարները յաղթեցին Վանտոմի (Ուտընարի քով) ու Վիլարի (Մալբլագէի քով), որով բովանդակ Իտալիա Աւստրիացւոց ձեռքն անցաւ։ Ասով Կարոլոս՝ Մատրիտի մէջ ալ թագաւոր ճանչցուեցաւ։ Այս նեղ վիճակէն Լուդովիկոս ԺԴ.— որ իր պատուոյն անարգանք բերող ամէն խաղաղութեան պայմանները միշտ հաստատութեամբ կը մերժէր — ազատեցաւ Մարլպըրըի ետ կանչուելովը, Վանտոմի քանի մը յաղթութիւններովը (Սպանիայի մէջ) եւ Յովսէփ Ա.ի մահուամբը։ Եւ որովհետեւ Յովսէփ Ա.ին յաջորդած էր, իբրեւ կայսր՝ իր եղբայրը Կարոլոս Զ. (1711-1740), անոր համար Սպանիայի՝ Աւստրիական պետութեան հետ միանալը՝ վտանգաւոր կ'երեւար, քաղաքական հաւասարակշռութիւնը պահելու համար։ Ուստի եւ Փիլիպպոս (1713ին) Անգղիայէն եւ Հոլլանտայէն ու քիչ մը ետքը (1714) նաեւ կայսրմէն Սպանիայի թագաւոր ճանչցուեցաւ։ Բայց կայսրն՝ անոր փոխարէն ընդունեցաւ Սպանիական Ստորին Գաւառները, Նէապօլիսը, Սարդինիան, Միլանն ու Մանդուան։ Իսկ Ճիպրալդարը թողուց Սպանիա՝ Անգղիացւոց։

Յաջորդութեան պատերազմով Եւրոպայի մէջ ունեցած ամէն երկիրներէն զրկուած Սպանիան՝ կորսնցուց տկար Փիլիպպ. Ե.ի (1700-1746) կառավարութեան ատեն՝ նաեւ իր սահմանադրութեան մնացորդները։ Փերդինանդոս Զ. (1746-1759) ու Կարոլոս Գ. (1759-1788) փորձեցին գիտութեան ու առեւտրի նոր կենդանութիւն մը տալ։ Գաղթականութեանց՝ առեւտրոյ ազատութիւնն ընդարձակուեցաւ։ Կարոլոս Դ. 1808ին թագէն հրաժարեցաւ։

## 107. Ռուսիա՝ Հիւսիսային պատերազմէն յառաջ.

1. Ե՞րբ ու ինչպէս եղաւ Ռուսիայի սկզբնաւորութիւնը. ինչպէս ընդարձակեցաւ։ — 2. Ո՞վ է Իվան, ինչպէս կառավարեց. իրեն ո՞վ յաջորդեց։ — 3. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Պետրոս Մեծ. ի՞նչ աշխարհակալութիւններ ըրաւ։

*1. Ազգաց մեծ գաղթականութեանն ատեն, Ռուսիայի մէջ տարածուած էին Ֆիննեան, սլաւեան ու Թաթարական ազգերը։ Հիւսիսային Ռուսիա 862ին Ռուրիկի առաջնորդութեամբ (Ռուսի ցեղէն), Վարեկեաններէն կամ Դանիացիներէն նուաճուեցաւ։ Ռուրիկի յաջորդները, Տնիէպերի երկայնութեամբ դէպ ի հարաւ տարածուեցան. եւ Կիեւ իրենց տէրութեան մայրաքաղաք ըրին։ Ռուրիկի թոռնորդւոյն՝ Վլատիմիրի ատեն, շուրջ 1000ին, մտաւ քրիստոնէութիւնը՝ Յունաստանէն։*

*Վլատիմիրի՝ խել մը պզտիկ իշխանութեանց բաժնուած տէրութիւնն 1237ին Մոնկոլները նուաճեցին (Թ. 73)։ Միայն հարուստ Նովկորոտին մէջ, Ռուրիկի ցեղին իշխանները մնացին անկախ։ Մոնկոլները տիրեցին Ռուսիայի 240 տարիի չափ։ Այս միջոցին (1320) Սպիտակ Ռուսիա (Մինսք, Մոհիլէվ, Վիդէպսք,) Վոլինիա, Բոտոլիա եւ Ուգրանիա՝ անցան Լիթուանիայի. 1339ին կարմիր Ռուսիա (Կալիցիա)՝ Լեհաստանի։ Բայց Դիմուրի յաղթութիւններովը՝ Ոսկեղէն բանակն այն աստիճանի տկարացաւ, որ Իվան Վասիլեւիչ կրցաւ 1477ին, տարեկան տուրքն ասոր զլանալ։*

*2. Իվան Ա. Վասիլեւիչ (1462-1505) վռնտեց Մոնկոլները՝ Ռուսիայէն. աշխարհակալեց Նովկորոտ ու եղաւ (1492) տէր բովանդակ Ռուսիայի։*

*Իվան Բ. Ահաւորն (1533-1584) առաջին Զարը կամ կայսրը, դրաւ առաջին կանոնաւոր զօրաց գունդը (Strelitz), եւ նուաճեց զԿազան ու զԱս-*

դրախան: Իր ժամանակ սկսաւ Սիպերիայի աշխարհակալութիւնը, Երմակի՝ գողազներու առաջնորդին ձեռօք: Իվանի որդւոյն հետ շիջաւ Ռուրիկի ցեղը 1598ին:

Ռուսք՝ Լեհերն երկրէն վռնտելէն ետեւ, 1613ին **Միքայէլ Ռոմանովի** տնէն ընտրեցին կայսր: Ասոր ցեղը տիրեց (մինչեւ 1762), Շուետաց ու Լեհաց հետ շարունակ պատերազմելով:

Մղուլական աշխարհակալութիւններէն յառաջ, Ռուսիայի մէջ, թէպէտ կրթութիւն մը կար, Յունաստանի հետ յարաբերութիւն ունենալուն. բայց զարգացման արգելք գնողն էր, Ռուսիայի՝ արեւմտեան Եւրոպայէն, լեզուաւ ու հաւատքով տարբեր ըլլալը: Մղուլական իշխանութեան ամենէն վնասակար հետեւութիւնն եղաւ Ռուսիայի համար, բարոյից ապականութիւն ու անզգայութիւն: Անոր համար էր, որ Զարերուն իշխանութիւնը մղուլականին պէս բացարձակ ու բռնաւորական էր: Ազնուականք՝ քաղաքներէն դուրս, բոլոր մշակուած երկիրներու տէրերն էին: Գեղացիք՝ դեռ մինչեւ 1858 գերի էին, իսկ քաղաքաց բնակիչները՝ իբրեւ իշխանաց սեպհական ստացուածքը կը նկատուէին:

3. **Պետրոս Ա. Մեծ** (1682-1725) եղբօրը Իվանին հրաժարելէն (1688) եւ Սոֆիայի ... Սորէլիցներուն ապստամբութիւնը նուաճելէն ետեւ, եղաւ միահեծան տէր: Պետրոս՝ Գերմանիա, Հոլլանտա ու Անգլիա ըրած ճանապարհորդութեանը մէջ (1697), սորվեցաւ եւրոպական կրթութիւն, զոր ամէն կերպ միջոցներով Ռուսիայի մէջ խոթելու ջանաց: Դրսի երկիրներ ճամբորդութիւն ընելու հրաման տրուեցաւ. եւրոպական տարազ մտցուեցաւ: Օտարականներ երկիր բերելով՝ արուեստք ու արուեստ յառաջացան. պատերազմական եւ ծովային զօրութիւնն եւրոպական ոճոյ փոխուեցաւ: Արխանկելի մէջ ծովային զինարան մը հիմնուեցաւ. Օսմանցիներէն Ազով առնուեցաւ. եւ Ինկերմանլանտ աշխարհակալուելէն ետեւ, 1703ին Բէդերսպուրկի հիմ

դրուեցաւ: 1721ին Պետրոս անուանեց ինք զինք կայսր ամենայն Ռուսաց:

## 108. Հիւսիսային պատերազմ 1700-1721.

1. Ի՞նչ է հիւսիսային պատերազմին պատճառը: — 2. Ի՞նչ պատերազմներ ըրաւ Պետրոս՝ Կարոլոս Շուէտացւոյն եւ Տաճկաց դէմ. Ի՞նչ երկիրներ վաստըկեցաւ Շուէտներէն: Ի՞նչ կերպարանք առաւ Ռուսիա հիւսիսային պատերազմով:

1. Շուէտաց՝ Արեւելեան ծովու երկիրներուն վրայ ունեցած իշխանութեան դէմ նախանձաւորութիւն մը, պատճառ տուաւ (1700ին) Դանիական, Լեհական ու Ռուսական դաշնակցութեան մը (1697-1718)՝ Կարոլոս ԺԲ. Շուէտաց երիտասարդ թագաւորին դէմ: — Կարոլոս յանկարծ Գոբէնհակնի վրայ յարձակելով՝ ստիպեց (1700) զՖրեդերիկոս Դ. Դանիայի թագաւորն, իրեն հետ խաղաղութիւն ընելու: Ասոր վրայ զարկաւ 8000 Շուէտներով Նարվայի քով՝ Պետրոսի առաջնորդութեան տակ եղած տասնպատիկ ռուսական բանակը. աշխարհակալեց (1703) բոլոր Լեհաստանը. Օգոստոս Բ.ը վար առնել ու Ստանիսլաւոս Լեշչինսքին թագաւորեցընել տուաւ: Թէպէտ Օգոստոս ստիպուեցաւ (1706) թագէն հրաժարիլ. բայց քիչ մը ետքը (1709) Ստանիսլաւոսը՝ Լեհաստանէն վռնտեց:

2. Աս եղած ժամանակ՝ աշխարհակալեց Պետրոս Ինկէրմանլանտն ու Լիվլանտի եւ Էսդլանտի մէկ մասը: Կարոլոս՝ Մազեբբա, Գոզագներու գնդապետէն՝ նենգութեամբ Ուգրանիա հրապուրուելով՝ կորսնցուց 1709ին, Բուլդավայի ճակատով իր տըկարացած բանակը: Ասոր վրայ Տաճկաստան փախչելով՝ զասիկայ Ռուսիայի դէմ պատերազմի գրգռեց: Պետրոս՝ Բրութի քով Տաճիկներէն պաշարուած, կըցաւ իւր Կատարինէ ամուսնոյն ձեռօք Բրութի

խաղաղութիւնը գնելով ազատիլ. սակայն հարկադրեցաւ Ազով Տաճկաց դարձրնել: Կարոլոս պարապ տեղ Տաճիկները նոր պատերազմի մը գրգռելէն ու Պենտէրի մէջ ինք զինք պաշտպանելէն ետեւ, 1714ին Սդրալզունտ դարձաւ: Քիչ մը ետքը (1718) Նորուեգիայի դէմ ըրած պատերազմին ատեն, Ֆրիտրիխսհալի քով դաւաճանութեամբ սպանուեցաւ:

Նիսդատի խաղաղութեամբ (1721ին) տուաւ Շուետ՝ Եսդլանտը, Լիվլանտն ու Ինկէրմանլանտը՝ Ռուսաց. որ տարի մը յառաջ արդէն հարկադրած էր, Պրէմէնը ու Վէրտէնը՝ Հաննովէրի, իսկ Բոմէրանիան մինչեւ Բէնէ Բրուսիայի տալու: Օգոստոս Բ. նորէն Լեհաց թագաւոր ճանչցուեցաւ:

Թէպէտ եւ Ռուսիա՝ այս պատերազմով, հիւսիսային առաջին տէրութիւնն եղաւ. բայց Պետրոսի յաջորդացն (1725 Կատարինէ Ա. 1727 Պետրոս Բ. 1730 Աննա. 1740 Իվան Պրաունշվայկցին. 1741 Եղիսաբէթ. 1762 Պետրոս Գ.) ատեն, քաղաքակրթութիւնը շատ նուազ յառաջադիմութիւն ըրաւ. եւ արուեստից նոր կենդանութիւն մը տալու ամէն ջանքերն ապարդիւն մնացին:

## 109. Պրանտէնպուրկ, Պրուսիա.

1. Ե՛րբ ու ինչպէս սկսաւ երեւան ելլել Պրանտենպուրկ. Ի՞նչ կերպարանք առաւ Օթոն Ա. էն ետեւ: — 2. Ի՞նչ վարչութիւն ունեցան Փրետերիկոս Ա. ու իր յաջորդները. Ե՛րբ ու որմէն նուաճուեցաւ Բրուսիա. Գերմանական կարգին զօրութիւնն ե՛րբ սկսաւ իյնալ. — 3. Ո՞վ եղաւ Բրուսիայի առաջին Թագաւորը. Ի՞նչպէս կառավարեց Փրեդ. Գուլիէլմոս Ա. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Փրեդ. Բ. Մեծ. Ի՞նչ կերպարանք առաւ երկիրը:

1. Հիւսիսային Արեւելեան Գերմանիայի մէջ՝ Ե. դարէն վեր կը բնակէին Սլաւները (Վէնտերը): Թէպէտ Հենրիկոս Ա. ու Օթոն Ա. Պրանտենպուրկն աշխարհակալելէն ետեւ՝ Վէնտերու երկիրն երեք սահմանակոմսութեան բաժնուեցաւ (963), բայց եւ այնպէս Վէնտերն արիւնահեղ պատերազմներէ ետեւ, ԺԱ. դարուն կրցան իրենք զիրենք Գերմանիայի լծէն ազատ ընել:

2. **Ալպրէխտ Արջ**, 1138ին Սաքսոնիայի դուքս կոչուելէն ետեւ, բռնեց (1142) քանի մը գաւառ, անուանեց ինք զինք Պրանտենպուրկի սահմանակոմս եւ ջանաց՝ Ստորին գաւառներէն եկած գաղթականներով իր երկիրը մշակելու։ Պրանտենպուրկի մէջ յաջորդեց իրեն՝ իւր երեց որդին **Օթոն** Ա. (1170-1184) ուր որ կրտսերագոյնը՝ (Բեռնարդոս) եղաւ դուքս Սաքսոնիայի (1180)։ — Սակայն լաւ միջոցին յաջորդեցին խառնակութեանց դարեր։ Սահմանակոմսութիւնը բաժին բաժին եղաւ։ Նոյմարգ ծախուեցաւ (1402ին) Գերմանական կարգին. Մնացած մասը գրաւեց Սիկիսմունդոս՝ 1388ին. բայց Պրանտենպուրկը տուաւ (1415) իբրեւ աւատ Փրեդերիկոս Հոհէնցոլլերնի կայսրընտրին, իրեն հաւատարմութեանը համար։

2. **Փրէտէրիկոս** Ա. (1415-1440) կրթեալ ու հզօր իշխանը, կարգի բերաւ խանգարեալ երկիրը։ Իրեն յաջորդեց երկրորդ որդին **Փրէտէրիկոս** Բ. (1440-1470)։ — **Յովակիմ** Ա. (1499-1535) նորոգողութեան սաստիկ թշնամի՝ հիմնեց (1506) Ֆրանգֆուրդի համալսարանը, ու 1516ին Պերլինի մէջ դատաստանարան մը։ Բրուսիան՝ իբրեւ աւատ ընդունող **Յովակիմ** Բ.ի ժամանակ (1535-1571) Բրուսիայի մէջ Նորաղանդութիւնն ընդհանուր եղաւ։ **Յովակիմ Փրէտէրիկոս**՝ (1598-1608) եղաւ գործակալ. ու անոր որդին **Յովհ. Սիկիսմոնտոս** (1608-1619) դուքս Բրուսիայի։

Մարեմեան կամ Գերմանական կարգը, Բրուսիայի մէջ 1228էն վեր՝ հեթանոս բնակչաց հետ կը կռուէր։ 50 ամեայ պատերազմէ մ'ետեւ նուաճեց կարգը Արեւելեան Բրուսիան, որ շուտ մը գերմանացաւ։ 1347ին գնուեցաւ դանիական Եսդլանտը. 1402ին նուաճուեցաւ Նայմարգն ու Սամոկեանները. այնպէս որ կրօնին իշխան

թիւնը ԺԵ. դարուն սկիզբները՝ Ֆիննեան ծոցէն մինչեւ Օտէր կը տարածուէր։

Բայց կոտրեցաւ Կարգին զօրութիւնը 1410ին Դանէնպէրկի քով՝ Վլատիսլաւոս Եակէլլոնէն։ Անկից ետքն իր իշխանութիւնը երթալով նուազեցաւ։ 1466ին հարկադրեցաւ կրօնը Արեւմտեան Բրուսիան՝ Լեհաստանի տալ։ Ցովհ. Սիկիսմունդոս միացուց 1618ին Բրուսիան՝ Պրանտէնպուրկի հետ։

**Գէօրգ Գուլիէլմոս** (1619-1640) անկարող իշխանին ատեն Պրանտէնպուրկ, երեսնամեայ պատերազմին պատճառաւ անապատ դարձաւ. եւ հազիւ վրայ եկաւ **Փրէտէրիկոս Գուլիէլմոս** իմաստուն ու հզօր իշխանին ժամանակ (1640-1688). որ 1654ի շուետական-լեհական պատերազմը յօգուտ գործածեց ու ինք զինք Լեհաստանի աւատային իշխանութենէն ազատ ըրաւ։ Փրեդ. Գուլիէլմոս՝ Լուդովիկոս ԺԴ. ին դէմ (104) կրցաւ 20.000 զօրաց բանակ մը հանել։

3. **Փրէտէրիկոս Գ.** (1698-1713) կայսրընտիր իշխանն՝ ինք զինք (1701) Գէօնիկսպէրկի մէջ Բրուսիայի թագաւոր պսակել տուաւ (Փրեդերիկոս Ա.)։ Ասիկայ հիմնեց Հալլէի համալսարանն ու գիտութեանց ճեմարանը։

**Փրէտ. Գուլիէլմոս Ա.** (1713-1740), բիրտ, կծծի, բայց կարգասէր իշխանն՝ առաւ Շուետներէն 1720ին Բոմերանիան։ Իր լաւ վարչութեան ատեն՝ յառաջացան գիտութիւն, արուեստ ու բարօրութիւն։ Գեղացւոց վիճակը թեթեւցուց, օտար տէրութեանց վաճառքները՝ իր երկիրը խոթելն արգելեց. հիմ դրաւ ժողովրդեան դպրոցաց Բրուսիայի մէջ, կազմեց 80.000ի բանակ մը եւ թողուց ինը միլիոնի գանձ մը։

**Փրէտէրիկոս Բ. Մեծ** (1740-1786) գահն ելաւ՝ այն բացորոշութեամբ որ Բրուսիան, առաջին

կարգի տէրութեանց կարգը բարձրացընէ: Առաջին շլեզիական պատերազմով առաւ Շլեզիան. իսկ երկրորդով ու Եօթնամեայ պատերազմով՝ նոյնն իրեն պահեց:

Այս պատերազմներէն ելաւ Բրուսիա՝ իբրեւ առաջին կարգի տէրութիւն: Երկրին տրուած վէրքերը՝ Փրեդերիկոսի իմաստուն վարչութեամբը բժշկուեցան: Արուեստ, գործարաններ. մշակութիւն ու առեւտուր շուտով զարգացան: Գիտութիւնք յառաջացան, դատաստանական գործողութիւնները պարզեցան: Փրեդ. Թողուց իր եղբօրորդւոյն, Փրեդերիկոս Գուլիէլմոս Բ.ի (1796-1797) 6 միլիոն բնակչով 3600 քռ. մղ. տարած. երկիր ու 200.000ի եւրոպական ամենակիրթ բանակ մը:

## 110. Շլէզւական պատերազմները. — Աւստրիայի յաջորդութեան պատերազմը. 1740-1748.

1. Ի՞նչ պատճառաւ ծագեցան շլեզիական պատերազմները. ի՞նչպէս սկսաւ առաջին պատերազմը. ի՞նչ վախճան ունեցաւ: — 2. Փրեդ. Բրուսիացին, ինչո՞ւ սկսաւ երկրորդ պատերազմը. ի՞նչ նոր երկիր վաստըկեցաւ Բրուսիա:

1. Կարոլոս Զ. Թողուց (1740ին) Իրական վաւերագրութեան (sanction pragmatique) համեմատ իր դուստրը՝ զՄարիամ Թերեզա՝ աւստրիական երկիրներու թագաժառանգ՝ ընդ հակառակն Կարոլոս Ալպրէխտ Պաւիերացին, իբրեւ Աննայի (Փերդինանդոս Ա.ին երէց դստեր) զաւակը՝ աւստրիական պետութիւնն առնուլ կ'ուզէր. եւ իրեն պաշտպան եղան Գաղղիա, Սպանիա, Շուետ, Սաքսոնիա ու Բրուսիա:

Առաջին շլէզւական պատերազմ (1740-1742) սկսաւ, երբ Փրեդերիկոս Բրուսիացին Շլեզիա յարձակեցաւ ու զարկաւ Աւստրիացիքը՝ Մոլուիցի քով, 1741ին: Փրեդերիկոս յաջորդ տարին Չասլաւի քով Կարոլոս Լոթարինգիացւոյն յաղթելով՝ ստիպեց զԱւստրիա, Պրեզլաւի խաղաղութիւնն ընդունելու. որով Բրուսիա առաւ Շլեզիա գաւառն ու Կլաց կոմսութիւնը:

Այս եղած ժամանակ՝ Կարոլոս Ալպրէխդոս Աւստրիա մտած ու ինք զինք Պոհեմիայի Թագաւոր, քիչ մը ետքն ալ Ֆրանգֆուրդի մէջ՝ **Կարոլոս Է.** (1742-1745) անուամբ կայսր պսակել տուաւ։ Սակայն Հունգարացւոց հզօր օգնութեամբը՝ Գաղղիացիք ու Պաւիերացիք Աւստրիայէն վռնտուեցան. երբ անդիէն Գէորգ Բ. Անգղիայի Թագաւորը, Ռենոսի քով՝ Գաղղիացւոց վրայ քանի մը յաղթութիւններ ըրաւ։

2. **Երկրորդ շլէզիական պատերազմ** (1744-1745) սկսաւ Փրէդերիկոս, վասն զի Աւստրիացւոց զինուց յաջողութիւններն աչքը վախցուցած էին։ Ուստի յանկարծ Պոհեմիա յարձակեցաւ ու Բրական առաւ։ Բայց Կարոլոս Լոթարինգիացին զինքը Պոհեմիայէն ելլելու եւ Շլեզիա քաշուելու ստիպեց։ Քիչ մը ետքը Փրեդ. երկու ճակատ վաստըկելով՝ Շլեզիան ապահովցուց (1745)։ Ասոր վրայ Տրեզտայի խաղաղութեամբ որոշուեցաւ որ Շլեզիա Բրուսիայի մնայ. բայց Փրեդ. զՖրանկիսկոս Ա. ճանչնայ (Կարոլոս Է. այս միջոցիս մեռած էր) իբրեւ կայսր։

**Ֆրանկիսկոս Ա.** (Լոթարինգիայի դուքսը) Մարիամ Թերեզիայի էրիկը՝ կառավարեց իբրեւ Գերմանիայի կայսր 1745-1765։ Կարոլոս Է.ին որդին, Մաքսիմիլիանոս Յովսէփ, 1745ին Աւստրիայի վրայ ունեցած ամէն պահանջմունքներէն հրաժարելէն ետեւ ալ՝ Գաղղիացիք պատերազմը շարունակեցին, մինչեւ Ախէնի խաղաղութիւնը (1748). որով Շլեզիայէն դուրս բոլոր աւստրիական երկիրները՝ Մարիամ Թերեզիայի ձեռքը մնացին։

## 111. Եօթնամեայ պատերազմ 1756-1763.

1. Ի՞նչ պատճառաւ սկսաւ եօթնամեայ պատերազմը. Ի՞նչ յաղթութիւններ ըրաւ Փրեդերիկոս. Ո՞ւր յաղթուեցաւ։ 2. Լաւտոն ի՞նչ յաղթութիւններ ըրաւ Բրուսիացւոց վրայ. Ի՞նչ պատճառաւ ազատեցաւ Պերլին. ինչպէս լմնցաւ եօթնամեայ պատերազմը։

1. Բրուսիայի նոր ստացած զօրութիւնը կոտրելու համար, միաբանեցան Փրեդերիկոսի դէմ՝ Մարիամ Թերեզիա, Լուդ. ԺԵ. Գաղղիայի թագաւորն ու Եղիսաբէթ Ռուսիայի կայսրուհին։ Այս դաշնակցութեան հոգին էր Գաունից՝ Աւստրիայի պաշտօնեան։

Այս սպառնացուած վտանգին առջեւն առնելու համար՝ Փրեդեր. (1756ին) Անգղիայի, Հեսսէնի եւ Պրաունշվայկի հետ միացած՝ պատերազմ սկսաւ։ Սաքսոնիա յարձակեցաւ ու զարկաւ Աւստրիացիքը՝ Լովոսիցի քով։ Թէպէտ երկրորդ տարին, Կարոլոս Լոթարինգիացւոյն վրայ Բրակի քով յաղթութիւն մ'ըրաւ, բայց Տաուն մարաջախտէն Գոլլինի քով (Յուլ. 17) յաղթուելով՝ հարկադրեցաւ Բոհեմիայէն ելլել։ Այս եղած ժամանակ Գաղղիացիք՝ Բրուսիայի Ռենոսի գաւառները բռնեցին։ Երկրորդ գաղղիական բանակի մը յաղթեց Փրեդ. Ռոսպախի քով՝ Սայտլիցի առաջնորդութեամբ՝ ձիաւոր զօրաց յանդուգն յարձակմամբը։ Ասոր վրայ Լայթէնի քով, Կարոլոսի դէմ ճակատ մը վաստըկելով՝ գրեթէ կորսուած Շլեզիան ազատեց։ Բայց Ռուսք՝ Աբրաքսին զօրապետին առաջնորդութեամբ՝ Լէվալտ Բրուսիայի սպարապետին վրայ յաղթութիւն մ'ըրին։

Այն միջոցին որ Փերդինանդոս Պրաունշվայկցին, Գաղղիացւոց վրայ կը յաղթանակէր, Փրեդ. 1758ին Մորաւիա մտաւ. սակայն ետ դառնալու հարկադրեցաւ Օլմիւցը պարապ տեղ պաշարելէն ետեւ,

եւ զարկաւ Ռուսերը Չոռնտորֆի քով. ուր դարձեալ Սայտլից յաղթութիւնն որոշեց:

2. Միացեալ Ռուսերն ու Աւստրիացիք Լաւտոնի առաջնորդութեամբ՝ Գունէրստորֆի (Ֆրանգֆուրդէն քիչ մ'անդին) քով Բրուսիացւոց յաղթեցին 1759ին: Պերլին՝ միայն զօրավարաց իրարու դէմ ունեցած նախանձովը ազատեցաւ. սակայն Տրէզտա Տաունէն առնուեցաւ: — 1760ին վաստըկեցաւ Փրեդ. Լիկնիցի յաղթութեամբ՝ Շլեզիայի մեծագոյն մասն ու Դորկաւի յաղթութեամբ՝ Սաքսոնիան: Բայց Ռուսք երեք օր Պերլին բռնեցին, եւ անկէ մերժուելով՝ անապատ դարձած Բրուսիա գաւառն անցան, զոր ա՛լ իրենց ստացուածքը կը համարէին:

Եղիսաբեթի՝ Ռուսիայի կայսրուհւոյն մահը, 1762ին, ամենայն ինչ կերպարանափոխ ըրաւ: Իր քեռորդին Պետրոս Գ. բոլոր աշխարհակալութիւններն ետ դարձուց. եւ ասոր յաջորդը՝ Կատարինէ Բ. խաղաղութիւնը հաստատեց:

Հուպերդսպուրկի խաղաղութեամբ (1763 փետր. 15), երկիրներն ինչպէս որ պատերազմէն յառաջ էին, այնպէս մնացին: Փրեդերիկոսի շահն ան եղաւ որ Բրուսիա՝ եւրոպական մեծ տէրութիւն ճանչցուեցաւ:

Յովսէփ Բ. (1765-1790) Փրանկիսկոս Ա.ի ու Մարիամ Թերեզիայի որդին, բռնեց 1777ին Պաւիերան՝ ասոր արական գիծն սպառելու ատեն. բայց երբ Փրեդերիկոս Պոհեմիա մտաւ, Աւստրիա Դեշէնի խաղաղութեամբ ստիպուեցաւ Պաւիերան Կարոլոս Թէոդորոս Փալցի կայսրընտրին դարձընել. որով միայն Ին բաժինը մնաց Աւստրիայի: Յովսեփայ՝ Պաւիերան, Ստորին Գաւառաց հետ փոխելու փորձը, պարապի հանեց Փրեդերիկոս (1785):

## 112. Լեհաստանի բաժանումը 1772. 1793. 1795.

*1. Ի՞նչ պարագաներ օգնեցին Ռուսիայի եւրոպական տէրութեանց կարգը մտնելու։ — 2. Ե՞րբ սկսաւ երեւան ելլել Լեհաստան. Եակելլոնեան ցեղը մինչեւ երբ տիրեց Լեհաստանի վրայ։ — 3. Ի՞նչ վիճակի մէջ էր երկիրն ընտրական թագաւորաց ատեն։ — 4. Աւգոստ. Գ.էն ետեւ ո՞վ ընտրուեցաւ թագաւոր. ի՞նչ պատճառաւ եղաւ Լեհաստանի առաջին բաժանումը։ — 5. Ե՞րբ եղաւ երկրորդ ու երրորդ բաժանումը։*

1. Կատարինէ Բ. Ռուսիայի կայսրուհին (1762-1796), *իր էրիկը՝ Պետրոս Գ. մերժելէն ետեւ, արուեստից, առեւտրոյ ու ժողովրդեան կրթութեանը նոր կենդանութիւն տալով, ցամաքային ու ծովային զօրութիւնը լաւցընելով, Տաճկաց դէմ ըրած յաղթութիւններով — որոնք Չէշմէի ծովամարտէն* (1770) *ետեւ, Քիւչիւք-Գայնարճըի* (1774) *խաղաղութեամբ, Խրըմի մէկ մասն ու Պուկի քով եղած երկիրը, եւ Եաշի խաղաղութեամբ* (1792)՝ *մինչեւ Տնիէստէր, Ռուսաց յանձնելու հարկադրեցան, — բայց մանաւանդ Լեհաստանի վերջ տալովը՝ ըրաւ իր տէրութիւնը Եւրոպայի ամենէն հզօր պետութիւններէն մէկը։*

2. *Լեհաստան՝ մինչեւ* 1370 *առաքելեալ Բիաստի ցեղին թագաւորաց տակն էր. մինչեւ ԺԷ. դար՝ սլաւեան ամենէն զօրաւոր տէրութիւնն էր։ Բոլեսլաւոս Ա.* (*որուն հօրը՝ Միեչգոյի ատեն, ժողովուրդը քրիստոնէութիւնն ընդունեցաւ* 965) 1000*ին ատեններն առաջին անգամ միացուց Լեհերը, Մազովիացիքը, Գրագովիացիքն ու Շլեզիացիքը։ Բայց վերջինները բաժնուեցան Լեհաստանէն ԺԲ. դարուն։ — Գազիմիր Մեծ* (1333) *աշխարհակալեց Կարմիր Ռուսիան (Կալիցիան), տուաւ գրաւոր օրէնք, շինեց քաղաքներ ու յառաջացուց գիտութիւնը։ Իր քեռորդին Լուդովիկոս՝ Հունգարիայի ու Լեհաստանի թագաւորը* (1370-1382) *տուաւ ազգային ազատութեան գրաւոր ապահովացուցում մը։*

*Եակելլոնեան ցեղը տիրեց Լեհաստանի վրայ* 1386-1572։ — *Վլատիսլաւոս Եակելլոն, Լիթուանիայի մեծ դուքսը, Լուդովիկոսի կրտսերագոյն աղջկանը, Հետուիկի հետ ամուսնանալով՝ եղաւ թագաւոր Լեհաստանի։ Յաղթեց ու տկարացուց* 1410*ին Գերմանական կարգը։ — Իր երէց որդին Վլատիսլաւոս Գ. —* 1440*էն վեր թա*

գաւոր նաեւ Հունգարիոյ, — ինկաւ 1444ին Վառնայի քով Տաճկաց դէմ։ Կրտսեր որդին Գազիմիր Դ. ընդունեցաւ 1466ին Արեւմ. Պրուսիան։ Վերջին Եակելլոնեանց ատեն, հասաւ Լեհաստան իր ամենամեծ բարձրութեանը. որովհետեւ Սիկիսմունդոս Աւգոստոս՝ 1561ին Վիլնայի դաշինքովն ընդունեցաւ Լիվլանտը, ու Գուրլանտի վրայ վերին աւատապետութիւն մը։

3. Ընտրական Թագաւորներ կառավարեցին Լեհաստան 1572էն մինչեւ 1795։ — Այն միջոցին որ Թագաւորաց իշխանութիւնն երթալով ազնուականներէն կը չափաւորուէր, 1617ին Սիկիսմունդոս Գ.ի ատեն, Լիվլանտիա՝ Շուետք, եւ 1664ին Յովհաննէս Գազիմիրի ատեն՝ Ուգրանիա՝ Ռուսք առին։ Երկարատեւ անտէրնչութենէ մ'ետեւ, 1673ին Յովհաննէս Սոպիէսքի զօրավարն ընտրուեցաւ Թագաւոր։ Ասիկայ յաջողութեամբ պատերազմեցաւ Օսմանցւոց դէմ եւ ազատեց անոնցմէ (1683) պաշարուած Վիէննան։ Աւգոստոս Բ. Սաքսոնիայի կայսրընտիրն (1697-1733) եւ իր որդին Աւգոստոս Գ. գահակալեցին Ռուսիայի օգնութեամբը՝ Ստանիսլաւոս Լեզչինսքիի դէմ (Թ. 108)։ — Պետութիւնը վերջի աստիճանի տկարացած էր։

4. Աւգոստոս Գ.ի մահուանէն ետեւ (1763) Թագաւոր ընտրուեցաւ Կատարինէի ազդեցութեամբ Ստանիսլաւոս Աւգոստ. Պոնիաթովսքի (†1798)։ Թագաւորին՝ ռուսական արքունիքէն կախում ունենալուն, եւ Այլակրօններուն տրուած իրաւանց վրայ տժգոհ ազնուականք՝ Պար քաղքին մէջ դաշնակցելով ու Տաճիկներէն օգնութիւն գտնելով՝ զէնք առին Ռուսիայի ու տկար Թագաւորին դէմ։ Ասոր հակառակ՝ Ռուսիայի հետ միացան Պրուսիա ու Աւստրիա եւ որոշեցին Լեհաստանի առաջին բաժանումը (1772)։ Պրուսիա՝ առաւ Արեւմ. Պրուսիան (ի բաց առեալ Տանցիկ ու Թոռն) 600 քռ. մղ. երկիր. Աւստրիա՝ Կալիցիան ու Լոտոմերիան, 1500 քռ. մղոն երկիր. իսկ Ռուսիա՝ Տինայի ու Տնիէբէրի արեւելեան դին 2000 քռ. մղոն երկիր։

5. Լեհերը՝ Ռուսիայի ծանր հարստահարութիւններէն ազատելու խել մը փորձեր փորձելէն ետեւ, Պրուսիայի հետ միաբանած (1791) Նոր սահ-

մանադրութիւն մը (ժառանգական թագաւոր, տէրութեան ժողով՝ երկու սենեկով եւ այլն) շինեցին. սակայն ասիկայ ռուսական բանակներէն փճացաւ, թէեւ Գոշիուսգօ երկիրն անոնց դէմ դիւցազնաբար պաշտպանեց։ Երկրորդ բաժանման ժամանակ առաւ (1793) Ռուսիա՝ Վոլինիան, Բոտոլիայի մէկ մասը, Լիթուանիայի կէսը՝ 4500 քռ. մղոն երկիր։ Բրուսիա՝ Բօզէնը, Կնէզէնը, Գալիշ, Տանցիկ, Թոռն, 1000 քռ. մղոն երկիր։

Մատալինսքիի եւ Գոշիուսգօյի առաջնորդութեամբ ելած Լեհաց ընդհանուր ապստամբութիւնն արիւնահեղ պատերազմներէ ետեւ՝ Ռուսիայի, Բրուսիայի ու Աւստրիայի բանակներէն նուաճուեցաւ։ Սուվարոֆ յարձակմամբ առաւ Բրական 1794 ին։ Բոնիադովսքի ստիպուեցաւ թագէն հրաժարիլ։ Ամենէն ազնուական Լեհերը դուրս գաղթեցին։ — Երրորդ բաժանման ատեն, 1795ին՝ առաւ Բրուսիա 1000 քռ. մղոն երկիր եւ Վարսաւիա քաղաքը։ Ռուսիա՝ Պուկի եւ Նիէմէնի արեւելեան դին՝ 2000 քռ. մղ. երկիր։ Աւստրիա՝ Լեհաստանի հար. մասը 800 մղոն երկիր։ Այսպէս Լեհաստան տէրութեանց կարգէն ջնջուեցաւ։

## 113. Անգղիայի ծովային փիրապետութիւնը.

1. Ի՞նչպէս կառավարեցին Գէորգ Ա. ու Գէորգ Բ։ — 2. Ի՞նչ նոր երկիրներ վաստըկեցաւ Անգղիա Գէորգ Գ.ի ատեն։ — 3. Ի՞նչ պարագաներ օգնեցին Անգղիայի ծովային տիրապետութեանը։ — 4. Ե՞րբ վաստըկուեցան Պենկալայի, Պահարի ու Մայսուրի երկիրները։ Ի՞նչ տեսակ վարչութիւն խաթուեցաւ նոր ստացուած երկիրներուն մէջ։

1. Գէորգ Ա. Հաննովէրի կայսրընտիրը, Աննայի իբրեւ ամենէն մօտիկ ազգականը 1714ին գահ ելլելով՝ (99) Յակոբ Ստուարդին, Անգղիա դառնալու փորձերը պարապի հանեց։

Գէորգ Բ.ի (1727-1760) ատեն, կը ծաղկէր Անգղիա Վալբոլ խաղաղասէր պաշտօնէին վարչութեամբը. եւ պատերազմեցաւ Աւստրիայի յաջորդութեան պատերազմին մէջ՝ յաջողութեամբ Գաղղիացւոց դէմ։ Եօթնամեայ ծովամարտը (1756-1763) երիցագոյն Բիդի ձեռօք (ետքէն Շադամ կոմս, † 1778) մեծ ուժգնութեամբ մղուեցաւ։ Վոլֆս զօրավարին, Գիպէքի քով (1759) ըրած յաղթութեամբը՝ Գանատա, եւ քիչ մը ետքը արեւմտեան Հնդկաստանի կղզեաց մեծագոյն մասն աշխարհակալուեցան։

2. Գէորգ Գ. (1760-1820) Բարիզի խաղաղութեամբ (1763) վաստըկեցաւ Գաղղիայէն բոլոր Գանատան, արեւմտեան Հնդկաստանի մէջ խել մը կղզիներ ու Սենեկալի երկիրը. իսկ Սպանիայէն՝ Ֆլորիտան։ Բայց 1783ին հարկադրեցաւ Հիւսային Ամերիկայի գաղթականութեանց անկախութիւնը ճանչնալ եւ Ֆլորիտան՝ Սպանիացւոց դարձընել։ Ուիլեըմ Բիդի լաւ վարչութեան ատեն (1783-1806) աճեցաւ միօրինակ Անգղիայի հարստութիւնն ու ազդեցութիւնը, բայց նոյն աստիճանաւ նաեւ ազգային պարտքը։

3. Գաղղիայի ու Սպանիայի՝հետ մղած եօթնամեայ ծովամարտով որոշուեցաւ Անգղիայի ծովային տիրապետութիւնը։ — Նոր պատմութեան սկիզբը՝ ընդհանուր վաճառականութիւնն ու ծովու վրայ տիրապետութիւնը՝ Սպանիացւոց ու Բորդուկալցւոց ձեռքն էր։ Ասոնցմէ անցաւ ԺԶ. դարուն վերջերը՝ Հոլլանտացւոց։ Անգղիայի ծովային զօրութեանը հիմ դրուեցաւ Եղիսաբեթի ատեն, (որ ժողովրդեան ձեռնարկութեան հոգին արթընցուց) ու Գրոմուելի նաւագնացութեան հրովարտակովը (Թ. 99)։ Աս ժամանակէն՝ միշտ նորանոր գաղթականութիւններ հիմնուեցան Արեւել. ու Արեւմ. Հնդկաստանի, ինչպէս նաեւ Հիւս. Ամերիկայի մէջ. ու երբ եօթնամեայ պատերազմով՝ Գաղղիայի ծովային զօրութիւնը փճացաւ, Եւրոպայի առեւտուրն ու ծովային վերին իշխանութիւնն անցաւ Անգղիայի։

Surelé



4. Եօթնամեայ պատերազմին ժամանակ Արեւելեան Հնդկաստանի մէջ վաճառականներ իշխան եղած էին տէրութեան մը՝ որ շուտ մը թէ տարածութեամբ ու թէ բնակչաց թուովը մայր երկիրը գերազանցեց։ Գաղղիացիք հարկադրեցան Անգղիայի առաւել զօրութեանը միշտ տեղի տալ։ Ուրիշ կողմանէ երկրին աշխարհակալութիւնը դիւրինցուցին մեծ Մողուլի տեղակալներուն (Նապապ) անմիաբանութիւնը։ Ցոսկայի արիւնհեղութիւններէ ետեւ՝ (1765) Պէնկալայի, Պահարի եւ Օրիսայի տէրութիւններուն վարչութիւնն՝ Անգղիացիք ձեռք անցուցին։ Ուարրէն Հէսդինկսի՝ Հայտէր Ալիի, Մայսուրի սուլդանին յաղթելովը՝ Անգղիացւոց իշխանութիւնն աւելի ընդարձակուեցաւ։ 1799ին ինկաւ հնդկական վերջին հզօր իշխանը՝ Դիբբօյ Սահիպ, Հայտէր Ալիին որդին, իւր մայրաքաղաքը՝ Սերինկաբադամ պաշտպանած ատեն։

Ուիլեըմ Բիդի ձեռօք ընդունեցաւ Արեւելեան Հնդկաստանի ընկերութիւնը լաւագոյն սահմանադրութիւն մը։ Վերատեսուչները՝ կառավարութենէ դրուած մասնաժողովի մը տակ ձգուեցան. առանց ասոր նոյն իսկ ընդհանուր կառավարը՝ յարձակողական պատերազմ չէր կրնար սկսիլ։ Այս ժամանակէն ընկերութեան երկիրները տարուէ տարի շատցան։ 1843ին Սինտ ու 1849ին Բէնճապ (Սիխներու երկիրը) աշխարհակալելէն ետեւ, փորձեցին Անգղիացիներն՝ Յետնակողմեան Հնդկաստանի մէջ ալ երկիրնին ընդարձակել։ (Բեկու՝ Ավայի մեծ մասն առնուեցան 1854ին)։ Բայց աշխարհակալութեան տենչանքն եւ արտաքոյ կարգի խստութիւնը՝ յառաջ բերաւ 1857-1858 սոսկալի ապստամբութիւն մը, որ արիւնահեղ պատերազմներէ ետեւ, Անգղիացիներէն նուաճուեցաւ։ Աս պատերազմին հետեւութիւնն ան եղաւ, որ Արեւելեան Հնդկաստանի ընկերութիւնը լուծուեցաւ. երկիրներն ու Անգղիայի պաշտպանութեան տակ եղած տէրութիւնները, մեծն Բրիտանիայի թագին հետ կապուեցան (1858ին. Նոյ. 1)։ Ասոնք կը պարունակեն՝ Յետնակողմեան Հնդկաստանի երկիրներն ալ մէկտեղ առնելով, 3.887.590 քառ. հազարամետր երկիր եւ 190 միլիոն բնակիչ։ Կառավարութիւնը փոխարքային կամ ընդհանուր կուսակալին ձեռքն է. որուն անընդմիջական իշխանութեան տակն են երկրին միայն մէկ քանի մասերը. ուր անդիէն, Մատրասի ու Պոմպայի կուսակալութիւնները, առանձին կուսակալներու կամ դահերէցներու, իսկ Պէնկալայի կուսակալութիւնը՝ կէս մը ընդհանուր կառավարին եւ կէս մը գահերէցի փոխանորդի մը տակ են։ (Անընդմիջական երկիրները կը պարունակեն 2.905.500 քառ. քիլոմետր երկիր ու 137 միլիոնէն աւելի բնակիչ։) Զանազան ծովերու մէջ՝ Նոր աշխարհակալութիւններ ըրաւ Անգղիա՝ Ճէմս Գուքի երեք գիտնական ճանապարհորդութիւններովը (1768-1779)։

## 114. Հիւս. Ամերիկայի տէրութեանց անկախութիւնը. 1776.

1. Ի՞նչ պատճառաւ սկսան Ամերիկայի գաղթականութիւնները: — 2. Ե՞րբ անկախ հրատարակուեցան Միացեալ տէրութիւնք: — 3. Ի՞նչ վիճակի ու կրթութեան աստիճանի մէջ են հիմակ Հիւս. Միացեալ տէրութիւնները:

1. Կրօնի եւ քաղաքական ազատութեան տենչանքը ԺԸ. դարուն մէջ՝ երեք միլիոն մարդ Ամերիկա գաղթելու յորդորած էր: Երկրագործին աշխատութիւնն առատութեամբ վարձատրող հողը, երկրին գրեթէ ամէն տեղ հաճոյական եւ առողջարար օդաբաժինը, ազատ ու մաքսով ամենեւին չկոպարաւորուած առուտուրը՝ պատճառ եղան ժողովրդեան օր աւուր վրայ բազմանալուն: Նոյն չափով կը մեծնար նաեւ բարօրութիւնը. այնպէս որ գաղթականութիւնք՝ առեւտրոյ եւ արուեստի կողմանէ մայր երկրին հետ մրցելու սկսան:

2. Երկրագործութեան վրայ հիմնուած այս գաղթականութեանց շուտ զարգանալը՝ բնական էր, որ անկախութեան բաղձանք զարթուցանէր: Երկայն վէճ ըլլալէն ետեւ, թէ անգղիական խորհրդարանն իրաւունք ունի՞ գաղթականութեանց վրայ տուրք դնելու, թէ չէ. (1763ին գրուած) կնքանշանի օրինագիրը (acte du timbre) ետ առնուեցաւ: Բայց թէյի վրայ դրուած տուրքը 1773ին, Պոստընի մէջ հանեց յեղափոխութիւն մը, որ շուտ մը բոլոր երկրին վրայ տարածուեցաւ: Անգղիայի հետ առեւտրական յարաբերութիւնը դադրեցաւ եւ 1776ին, 13 միաբանեալ տէրութիւններն իրենք զիրենք անկախ հրատարակեցին: Մեծն Ուաշինքդն պաշտպանեց Գաղղիայի ու Սպանիայի օգնութեամբ, Հիւսիսային Ամերիկայի ազատութիւնը՝ անգղիական կրթեալ բանակներուն դէմ. եւ ստիպեց (1777) Գանատայէն

4. Եօթնամեայ պատերազմին ժամանակ Արեւելեան Հնդկաստանի մէջ վաճառականներ իշխան եղած էին տէրութեան մը՝ որ շուտ մը թէ տարածութեամբ ու թէ բնակչաց թուովը մայր երկիրը գերազանցեց։ Գաղղիացիք հարկադրեցան Անգղիայի առաւել զօրութեանը միշտ տեղի տալ։ Ուրիշ կողմանէ երկրին աշխարհակալութիւնը դիւրինցուցին մեծ Մողուլի տեղակալներուն (Նապապ) անմիաբանութիւնը։ Սոսկալի արիւնհեղութիւններէ ետեւ՝ (1765) Պէնկալայի, Պահարի եւ Օրիսսայի տէրութիւններուն վարչութիւնն՝ Անգղիացիք ձեռք անցուցին։ Ուարրէն Հէսդինկսի՝ Հայտէր Ալիի, Մայսուրի սուլդանին յաղթելովը՝ Անգղիացւոց իշխանութիւնն աւելի ընդարձակուեցաւ։ 1799ին ինկաւ հնդկական վերջին հզօր իշխանը՝ Դիբբոյ Սահիպ, Հայտէր Ալիին որդին, իւր մայրաքաղաքը՝ Սէրինկաբադամ պաշտպանած ատեն։

Ուիլեըմ Բիդի ձեռօք ընդունեցաւ Արեւելեան Հնդկաստանի ընկերութիւնը լաւագոյն սահմանադրութիւն մը։ Վերատեսուչները՝ կառավարութենէ դրուած մասնաժողովի մը տակ ձգուեցան. առանց սոր նոյն իսկ ընդհանուր կառավարը՝ յարձակողական պատերազմ չէր կրնար սկսիլ։ Այս ժամանակէն ընկերութեան երկիրները տարուէ տարի շատցան։ 1843ին Սինտ ու 1849ին Բէնճապ (Սիխներու երկիրը) աշխարհակալելէն ետեւ, փորձեցին Անգղիացիներն՝ Ցետնակողման Հնդկաստանի մէջ ալ երկիրնին ընդարձակել։ (Բեկու՝ Ավայի մեծ մասն առնուեցան 1854ին)։ Բայց աշխարհակալութեան տենչանքն եւ արտաքոյ կարգի խստութիւնը՝ յառաջ բերաւ 1857-1858 սոսկալի ապստամբութիւն մը, որ արիւնահեղ պատերազմներէ ետեւ, Անգղիացիներէն նուաճուեցաւ։ Աս պատերազմին հետեւութիւնն ան եղաւ, որ Արեւելեան Հնդկաստանի ընկերութիւնը լուծուեցաւ. երկիրներն ու Անգղիայի պաշտպանութեան տակ եղած տէրութիւնները, մեծն Բրիտանիայի թագին հետ կապուեցան (1858ին. Նշ. 1)։ Ասոնք կը պարունակեն Ցետնակողման Հնդկաստանի երկիրներն ալ մէկտեղ առնելով, 3.887.590 քռ. հազարամէտր երկիր եւ 190 միլիոն բնակիչ։ Կառավարութիւնը փոխարքային կամ ընդհանուր կուսակալին ձեռքն է. որուն անընդմիջական իշխանութեան տակն են երկրին միայն մէկ քանի մասերը. ուր անդիէն, Մատրասի ու Պոմպայի կուսակալութիւնները, առանձին կուսակալներու կամ դահերէցներու, իսկ Պէնկալայի կուսակալութիւնը՝ կէս մը ընդհանուր կառավարին եւ կէս մը դահերէցի փոխանորդի մը տակ են։ (Անընդմիջական երկիրները կը պարունակեն 2.905.500 քռ. քիլոմէդր երկիր ու 137 միլիոնէն աւելի բնակիչ։) Զանազան ծովերու մէջ՝ Նոր աշխարհակալութիւններ ըրաւ Անգղիա՝ Ճէմս Գուգի երեք գիտնական ճանապարհորդութիւններովը (1768-1779)։

## 114. Հիւս. Ամերիկայի գաղթականաց անկախութիւնը. 1776.

1. Ի՛նչ պատճառաւ սկսան Ամերիկայի գաղթականութիւնները: — 2. Ե՛րբ անկախ հրատարակուեցան Միացեալ տէրութիւնք: — 3. Ի՛նչ վիճակի ու կրթութեան աստիճանի մէջ են հիմակ հիւս. Միացեալ տէրութիւնները:

1. Կրօնի եւ քաղաքական ազատութեան տենչանքը ԺԸ. դարուն մէջ՝ երեք միլիոն մարդ Ամերիկա գաղթելու յորդորած էր: Երկրագործին աշխատութիւնն առատութեամբ վարձատրող հողը, երկրին՝ դրեթէ ամէն տեղ հաճոյական եւ առողջարար օդաբաժինը, ազատ ու մաքսով ամենեւին չկոպարաւորուած առուտուրը՝ պատճառ եղան ժողովրդեան օր աւուր վրայ բազմանալուն: Նոյն չափով կը մեծնար նաեւ բարօրութիւնը. այնպէս որ գաղթականութիւնք՝ առեւտրոյ եւ արուեստի կողմանէ մայր երկրին հետ մրցելու սկսան:

2. Երկրագործութեան վրայ հիմնուած այս գաղթականութեանց շուտ զարգանալը՝ բնական էր, որ անկախութեան բաղձանք զարթուցանէր: Երկայն վէճ ըլլալէն ետեւ, թէ անգղիական խորհրդարանն իրաւունք ունի՞ գաղթականութեանց վրայ տուրք դնելու, թէ չէ. (1763ին դրուած) կնքանշանի օրինագիրը (acte du timbre) ետ առնուեցաւ: Բայց թէյի վրայ դրուած տուրքը 1773ին, Պօստընի մէջ հանեց յեղափոխութիւն մը, որ շուտ մը բոլոր երկրին վրայ տարածուեցաւ: Անգղիայի հետ առեւտրական յարաբերութիւնը դադրեցաւ եւ 1776ին, 13 միացեալ տէրութիւններն իրենք զիրենք անկախ հրատարակեցին: Մեծն Ուաշինգդն պաշտպանեց Գաղղիայի ու Սպանիայի օգնութեամբ, Հիւսիսային Ամերիկայի ազատութիւնը՝ անգղիական կրթեալ բանակներուն դէմ. եւ ստիպեց (1777) Գանատայէն

յառաջացող բանակ մը, Սարատոկայի քով զէնքերը թափելու, ուրիշ (1781ին) մըն ալ Եորքդաունի քով անձնատուր ըլլալու. երբ անդիէն Բենիամին Ֆրանգլին, Վերսայլի խաղաղութեան պայմաններուն վրայ կը բանակցէր։ Այս դաշամբ Անգլիա 1783ին Միաբանեալ տէրութեանց անկախութիւնը ճանչցաւ։ Դաշնակցութեան սահմանադրութիւնը, երկարատեւ ներքին կռիւներէ ետեւ 1788ին որոշուեցաւ։

3. Հիւսիսային Ամերիկայի 37 ազատ տէրութեանց մէջ կայ հիմակ 40 միլիոնէն աւելի բնակիչ։ Տէրութեանց պատգամաւորներէն կազմուած (ծերակոյտ եւ պատգամաւորաց սենեակ) համաժողովըն (congrès) գլուխ կեցած է չորս տարի մէյ մը ընտրուող նախագահ մը։ — Տէրութեան գլխաւոր զբաղմունքն է երկրի մշակութիւն ու արուեստ, որ երթալով յառաջանալու վրայ են։ Ճամբաներու, երկաթուղիներու եւ ջրանցքներու թիւն անհաւատալի կերպով կը բազմանան։ Առուտուրը՝ տարածութեան կողմանէ, միայն անգղիականէն ետ է. բայց ընդհանրական գիտութիւն ու ճարտարութիւն պակաս է։ Հարաւային տէրութեանց ապստամբութիւնը՝ հինգամեայ արիւնահեղ պատերազմով (1861-1865), նուաճուելէն ետեւ՝ վերցաւ գերութիւնը, Միաբանեալ Նահանգաց մէջ։

## 115. Հայք՝ Բագրատունեաց վերջնալէն ետքը.

1. Ի՞նչ վիճակի մէջ էր բուն Հայաստան Բագրատունեաց թագաւորութեան վերջնալէն ետեւ։ — 2. Ի՞նչ փոփոխութիւններ կրեց երկիրը ԺԵ-ԺԸ. դարերուն մէջ։ — 3. Տպագրութեան գիւտն ազդեցութիւն մ'ունեցաւ Հայերէն մատենագրութեան վրայ։ — 4. Ե՞րբ ու որո՞ւն ձեռքով եղաւ Հայերէն մատենագրութեան վերանորոգութիւնը։

1. Բագրատունեաց թագաւորութեան վերջնալէն ետեւ՝ բուն Հայաստանի արեւմտեան մասը՝ Յոյնք, արեւելեանը՝ Պարսիկք, իսկ հիւսիսայինը՝ Վիրք բռնած էին։ Վերջինները բաւական ժամանակ (1160-1220) երկրին մեծ մասին առանձին տիրեցին։ — ԺԳ. դարուն սկիզբները՝ երկիրը շատ հեղ Թաթարաց աշխարհակալութեանց աւար եղաւ։ Անի, Կարին եւ ուրիշ քաղաքներ քանի մը անգամ

գետնյատակ եղան: Անկէ կործանմանէն ետեւ, բնակչաց մէկ մասն առաջին հեղ (1320) Խրիմ, Լեհաստան ու Մոլտաւիա գաղթեց: — ԺԴ. դարուն կէսերը, Թաթարաց տէրութիւնը քայքայելով՝ երկիրը 60 տարի մը խաղաղցաւ: Բայց շատ չանցաւ, արիւնհեղութեան ահագին փոթորիկը նորէն փըրթաւ, որ զՀայաստան աղէտից ծով մը դարձուց: Լէնկթիմուր իր աւերիչ աշխարհակալութիւններովը Հայաստանի մինչեւ խորքը հասաւ:

2. Բարբարոսաց արշաւանքէն ետեւ, Օսմանեան Տաճիկք զօրանալով՝ հետ զհետէ (1473-1585) Հայաստանի մեծ մասին տիրեցին: Թէպէտ քիչ մը ետքը (1603) Պարսիկք՝ Շահաբասի առաջնորդութեամբ՝ Արարատեան գաւառը բռնեցին ու քանի մը զօրաւոր բերդեր առին. բայց Օսմանեանց տեղի տալու ստիպուեցան: Շահաբաս՝ բնակչաց մեծ մասը հետը տարած ատեն, ասոնք ճամբուն տառապանքէն եւ մանաւանդ Երասխէն արտորնօք անցնելու ժամանակ շատ նեղութիւն կրեցին: Պարսկաստան հանող սակաւաթիւ մնացորդները Շահաբաս Նոր Ջուղայի կողմերը բնակեցընելով՝ իրենց շատ առանձնաշնորհութիւններ ըրաւ: Երբ ասոր վրայ, Օսմանեանց ներքեւ եղած ապստամբ իշխաններէն՝ Հայաստանի ժողովուրդը շատ կը նեղուէր, երկրորդ գաղթականութիւն մը գնաց (1606ին) դէպ ի Լեհաստան, Մոլտաւիա ու Աժտէրխան: Քանի մը տարի ետքը, Օսմանցւոց ու Պարսից մէջ՝ խաղաղութիւն ըլլալով (1613), երկրին արեւմտեան մեծ մասն առին Օսմանցիք. իսկ արեւելեան փոքրագոյն մասը Պարսիկք: Բայց երկու ազգին մէջ նորէն պատերազմ բացուելով, Օսմանեանք յաղթեցին ու բոլոր Հայաստանի տէր եղան (1727): Սակայն Պարսիկք

Հանդարտ չկեցան, մինչեւ որ իրերը հոն բերին որ Հայաստան (1746ին) երկու ազգաց մէջ բաժնուեցաւ։ Ասոր վրայ երկիրը 80 տարիի չափ (1746-1826) երեւելի փոփոխութիւն մը չկրեց։ — 1826 Պարսիկք Ռուսաց երկիրը յարձակեցան։ Նիկողայոս կայսրը, Բասգեւիչի առաջնորդութեամբ բանակ մը խաւրեց Պարսից վրայ։ Ասիկայ (1827). Էջմիածին բռնելէն ետեւ, Երիւանու առջեւը հասաւ, եւ Պարսկաստան ալ մտնելով՝ Պարսիկները դաշինքի մը ստիպեց (1828 փետր. 22). որուն զօրութեամբ Երասխ եւ Կուր գետերուն մէջի երկիրը՝ Ռուսաց պիտի անցնէր։ — Քանի մը ամիս ետքը (Յունիս 14)՝ Ռուսք Օսմանեանց դէմ ալ պատերազմ հրատարակելով՝ Բասգեւիչ Կարսը բռնեց ու Ախլցան, եւ քիչ մը ետքը Պայազիտն առնելէն ետեւ՝ 1829ին սկիզբները, երկու ճակատով Օսմանցւոց յաղթեց եւ Կարնոյ առջեւ հասաւ, որ քանի մը օր ետքն անձնատուր ըլլալու հարկադրեցաւ։ Ասոր վրայ, Ադրիանուպոլսոյ խաղաղութեամբ (Սեպտեմբ. 14) Հայաստանի հիւս. արեւելեան մէկ մասը Ռուսիայի անցաւ։ 1877-1878ին Ռուսական-տաճկական պատերազմը լմընցաւ՝ երբ Ռուսք Հայաստանի մեծագոյն մասին տիրելէն ետեւ, Կարին մտան, (1878 Մարտ 16ին) ու Ս. Ստէֆանոյի դաշամբ եւ Պերլինի համաժողովին որոշմամբ (Յուլ. 13) Հայաստանի հիւսիսային արեւելեան մասը՝ Կարս, Արտահան ու Պաղում, իրենց շրջակայ տեղերովը՝ (կամ մէկ կողմանէ, Ճորոխ ու Բէննէգ գետերուն արեւելեան ու մէկալ կողմանէ՝ արեւմտեան Երասխայ հիւսիսային դին եղած երկիրները) Ռուսաց տրուեցան (Թ. 133)։

3. Հայաստան՝ ԺԴ. ու ԺԵ. դարերուն մէջ՝ շարունակեալ պատերազմաց ու աւարառութեանց ասպարէզ մ'եղած էր. բարբարոսք զիրար կը փոխանակէին։ Ինչ որ Ճէնկիզխանայ Թաթարները թողուցին, սպառեցին Լէնկթիմուրի խումբերը։ Քանի՜ պատմական գրութիւններ ու յիշատակարաններ կորսուեցան, որչափ մենաստաններ ու մատենադարաններ հրոյ ճարակ եղան։ — Երբ այս խռովութեանց պատճառաւ գիտութիւնք արեւելք ինկած էին, նոր կեանք առին արեւմուտք տպագրութեան գիւտովը։ Յեղափոխութիւնը՝ զոր ըրաւ տպագրութեան գիւտը գիտնական աշխարհքիս վրայ, առանց ազդեցութեան չմնաց Ասիայի նկատմամբ։ Եւ կը տեսնենք թէ արեւելեան ազգաց մէջ Հայք առաջինն եղան՝ որ այս նոր գիւտին օգտակարութիւնը ճանչնալով՝ նոյնն իրենց հայրենիքը փոխադրելու փութացին։ Աբգար Թոգաթցին 1563ին Եւրոպա ճանապարհորդեց, որպէս զի տպագրութեան վրայ տեղեկութիւն առնու եւ հայերէն գիր ձուլել տայ։ Իր բախտովն ու առատաձեռն ոգւոց ձեռնտուութեամբը երեւան ելած կը տեսնենք առաջին Հայերէն տպագրութիւնը Վենետկի մէջ 1565ին։ Աբգար տպել տուաւ Սաղմոսը։ Վենետիկի տպագրութեան յաջորդեց քանի մը տարի ետքը (1584) Հռոմինը։ — ԺԷ. դարուն մէջ՝ Եւրոպայի եւ Ասիայի գրեթէ ամէն երեւելի քաղաքները կը գտնենք Հայերէն ապագրութիւններ։ Այսպէս (1616 ին) Լէմպէրկ, (1624ին) Միլան, (1630) Բարիզ, (1640) Ջուղա, (1640) Լիվոռնոյ, (1660) Ամսդէրտամ, (1673) Մարսիլիա, (1677) Կոստանդինուպոլիս, (1680) Լայբցիկ, (1690) Բատուա։ Ասոնց մէջ առաջին տեղին ունի Ամսդէրտամինը։ — Իրաւ է, որ ԺԶ եւ ԺԷ. դարերուն մէջ տպագրութեամբ հրատարակուած հայերէն գրքերը, ո՛չ գիտութեան եւ ո՛չ ալ լեզուի կողմանէ. ներքին մեծ արժէք մ'ունին, վասն զի բստ մեծի մասին աղաւաղուած լեզուաւ գրուած են (Խեչեղչն դար). բայց յաջորդ (ԺԸ.) դարն, իբրեւ թէ եղածին փոխարէն մ'ընելու համար, մեր առջեւ կը դնէ, ազգին լեզուին ու մատենագրութեան վերանորոգութեան միջոցը.

4. Հայերէն լեզուին զարգացմանը շատ օգնեցին ԺԷ. ու ԺԸ. դարերուն զանազան տեղեր հաստատուած այլեւայլ հիմնարկութիւնները։ ԺԸ. դարուն սկիզբը (1705) հիմնուեցան Լիբանանու լերան վրայ երկու արդիւնաւոր միաբանութիւններ։ — Բայց կը մնայ անժխտելի ճշմարտութիւն մը թէ ԺԸ. դարուն առաջին մարդն եղաւ Մխիթար Սեբաստացին (ծնած 1676, † 1749). որ հիմ դրաւ իւր անուամբը կոչուած կրկին (Վենետկոյ ու Վիէննայի) Միաբանութեանց. վերանորոգեց Հայ լեզուն եւ մատենագրութիւնը՝ զանիկայ իւր նուաստութենէն հանելով՝ կոկելով ու մաքրելով։ Մխիթար կրցաւ տեսնել — որ քիչ մահկանացուի շնորհուած է — իր կենդանութեան

տեն, իւր անխոնջ աշխատանաց պտուղը։ – Տպագրութեամբ լոյս ընծայած աշխատասիրութիւններէն կը յիշենք միայն Պատկերազարդ Աստուածաշունչը, Մատթէի Մեկնութիւնն ու Հայկազնեան լեզուի Բառգիրքը։ — Իւր կրկին դպրոցներուն առաջինին քիչ պատիւ չեն ըներ ի մէջ այլոց Հայոց Պատմութիւնը (1784 – 86 Չամչեան) սկիզբէն մինչեւ ԺԸ. դարուն կէսերը. Հայաստանեայց Հնախօսութիւնը (1835 Ինճիճեան), Երկհատոր Մեծ Բառարանը (1836-37 Աւգերեան), Հայերէն Քերականութիւնը (1852) ու Հայկ Դիւցազնը (1858 Բագրատունի)։ — Բայց ոսկեդարու ընտիր լեզուին բանալին գտնել վերապահուած էր երկրորդ՝ նուազ ծանօթ դպրոցին։ Իրենն է ու իրեն կը մնայ արդիւնքը, որ երկարատեւ յուզարկութենէ ու քննադատութենէ ետեւ, կրցաւ ցուցընել գործնականապէս՝ Հայերէն մատենագրութեան վերածնութիւնն իր թարգմանութեանցը (Բոսուէ, Կուրտիոս, Աւանկլինի, Ռասին, Նեպոտ) ու երկասիրութեանցը (Ճարտարախօսութիւն, Տիեզերական Պատմ. Նկարագիր Ուսմանց, Ուսողութիւն եւ այլն) մէջ։ — Յիշեալ դպրոցն այսչափով ալ չշատացաւ։ Վերանորոգեց նաեւ կամայականութեան, անձնական ախորժակաց, սեպհական քմաց վրայ դրուած աշխարհաբարը. բերաւ զանիկայ օրէնքի մը, մաքրեց, պարզեց ու մօտեցուց հին լեզուին։

---

## Դ. ՀԱՏՈՒԱԾ

### Գաղղիական յեղափոխութենէն մինչեւ մեր ժամանակը. 1789-1878։

### 116. Յեղափոխութեան պատճառները.

1. Ի՞նչ էին մեծ յեղափոխութեան պատճառները. Ո՞վ յաջորդեց Լուդովիկոս ԺԴ.ի։ — 2. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Լուդովիկոս ԺԶ.

1. Ինչպէս որ ԺԶ. դարուն սկիզբն եկեղեցին նորոգելու հարկաւորութիւնը՝ յառաջ բերաւ Նորաղանդութիւնը, ասանկ ալ ԺԸ. դարուն վերջը, ընկերական կենաց կերպը փոխելու դիտաւորութիւնը՝ յառաջ բերաւ յեղափոխութիւն մը, որ Գաղղիայէն սկսելով, Եւրոպայի մեծագոյն մասին վրայ տարածուեցաւ։ Ասոր հետեւութիւնն ան եղաւ, որ բացարձակ միապետութիւնները սահմանադրական տէրութեանց փոխուեցան։

Գաղղիայի մէջ Լուդ. ԺԴ.ի (104) յաջորդեց, իր հինգամեայ թոռնորդին Լուդովիկոս ԺԵ. (1715-1774)։ Անուանարկ Օրլէանի դքսին խնամակալութեան ատեն, արքունիքն արդէն բարոյից ապականութեան ու զեղխութեան տեղի եղած էր։ Ողորմելի ու կանանց գերի եղած թագաւորին գահակալելէն ետքը, ապականութիւնն ու շռայլութիւնը աւելցաւ։ Ելեւմուտքը խեղճ վիճակի մէջ էր (4000 միլ. պարտք). ժողովուրդը կը հեծէր ճնշիչ տուրքերուն տակ։ Ազնուականաց ձեռքն էին ամէն զինուորական ու քաղաքական պաշտօնները. ուր անդիէն՝ անկրօն մատենագիրներ (encyclopédistes, Ռուսօ † 1778, Վոլդէր † 1778, Տիտըրօ, Տալամպէր † 1788)։ ժողովրդեան մէջ անհաւատութիւն, հասարակապետական կարծիքներ ու տէրութեան կարգադրութեանց դէմ տժգոհութիւն տարածելու ետեւէ եղան։

2. Լուդովիկոս ԺԶ. (1774-1793) բարեպաշտ ու խելացի, բայց անկարող իշխանին ատեն, — Գաղղիա՝ Հիւս. Ամերիկայի հետ խիստ բարեկամական յարաբերութեան մէջ մտնելով — օրինաւոր ազատութեան ջանքն երթալով ընդհանրացաւ։ Եւ որովհետեւ անգղիական պատերազմը ազգային պարտքն աւելցուց, եւ շարունակ փոխուելու վրայ եղող պաշտօնեաներէն եւ ոչ մէկը տեւական դարման մը կրցաւ ընել, անոր համար Բարիզի խորհրդարանը պահանջեց, որ տէրութեան կարգաժողովը գումարուի, զոր Նեքեր իրօք գումարեց (1789), երբ ազնուականաց ժողովն ալ առանց արդիւնքի մնաց։

## 117. Գաղղիայի յեղափոխութիւնը. 1789.

1. Ե՛րբ ու ինչպէս սկսաւ յեղափոխութիւնը։ — 2. Ի՛նչ պատճառի համար փախաւ թագաւորն, երբ բանտ դրուեցաւ։ — 3. Ազգային խորհրդարանին առաջին գործքն ինչ եղաւ. Ինչո՞ւ գլխատուեցաւ Լուդ. ԺԶ. Ուրիշ ինչ սպանութիւններ ըրաւ արհաւրաց իշխանութիւնը։ — 4. Ե՛րբ կազմուեցաւ վերատեսչաց վարչութիւնը. Ի՛նչ կարգաւորութիւններ ըրաւ։

1. Երրորդ կարգը՝ — որմէ ազնուականք ու եկեղեցականք բաժնուեցան — Յունիսի 17ին, ինք զինք իբրեւ ազգային Վերանորոգիչ սահմանադիր ժողով հրատարակեց 1789ին։ Ըսինկայ Բարիզի մէջ զօրք ժողվուելուն եւ Նեքէրի վար առնուելուն վրայ զայրացած՝ խուժանի ձեռօք Յուլիսի 14ին Պասդիյլը կործանելէն, եւ Լաֆայէդի առաջնորդութեամբ ազգային պահապան զօրք ժողվելէն ետեւ, վերցուց Աւգոստ. 4ին գիշերը, ազնուականաց ու եկեղեցականաց ամէն արտօնութիւնները։ Ասոր վրայ բովանդակ երկրին մէջ անիշխանութիւնը տարածուեցաւ։ Գեղացւոց բռնութիւնները պատճառ եղան շատերուն դուրս գաղթելուն։ Խուժանին ոտք ելլելն ստիպեց զթագաւորը հոկտեմբ. 6ին Վերսայլէն Բարիզ երթալու. ուր փոխադրուեցաւ նաեւ ազգային ժողովը։ Ասոր մէջ՝ հզօրագոյնն եղաւ Ռոպէսբիէրէն առաջնորդուած եւ Յակոբեաններէն, Տանդոնի ու Մարայի առաջնորդութեամբ օգնութիւն գտած՝ լեռնականներուն կողմնակցութիւնը։ Վանքերը վերցուեցան, թագաւորին ու եկեղեցականաց ինչքերը գրաւուեցան, թղթադրամը գործածութեան մէջ դրուեցաւ։

2. Յեղափոխութիւնն արգելուլ ջանացող Միրաբոյի մահուանէն ետեւ, ամէնէն թող տրուած թագաւորը՝ 1791ին փախաւ. բայց Վարէնի քով բռնուեցաւ ու Բարիզ բերուեցաւ. ուր հարկադրեցաւ նոր սահմանադրութեան մը երդումն ընելու։

Ազգային օրէնսդիր ժողովը 1791ին յակոբեան պաշտօնարանին ձեռօք ստիպեց զԹագաւորն՝ Աւստրիայի դէմ պատերազմ հրատարակելու։ Ասոր վրայ Թագաւորը (1792, Աւգ. 10)՝ Մարսիլիացւոց հետ միացած Բարիզի խառնիճաղանճէն զզուելի արիւնահեղ տեսարաններով, Դանբլ բերուեցաւ իբրեւ բանտարկեալ. ուր անդիէն Տանդոն, արդարութեան պաշտօնեան (2—4 Սեպտ.) բռնուած ազնուականներն ու եկեղեցականները՝ ժողովրդեան վրէժխնդրութեան մատնեց։

3. Ազգային դաշնաժողովն իր առաջին նիստին մէջ 1792ին Սեպտ. 12ին, զԳաղղիա հրատարակեց անբաժանելի հանրապետութիւն մը։ Լուդովիկոս, Գաղղիայի Թշնամեաց իբրեւ գաղտնի խորհրդակից ամբաստանուելով՝ մահուան դատապարտուեցաւ եւ 1793 Յունուար 21ին գլխատուեցաւ։ Ասոր վրայ նաեւ աւելի կրԹեալ ու քիչ մը չափաւորեալ Ժիրոնտեանք՝ ահարկուներէն (terroristes) մերժուեցան։ Յակոբեաններէն կազմուած հասարակաց փրկութեան մասնաժողով մը դրուեցաւ. եւ ասով սկիզբ եղաւ արհաւրաց իշխանութեան մը։ Ասոր գլուխն անցած էին Ռոպէսպիէր, Տանդոն ու (Յուլիսին Շարլոտ Գորտէյէն սպանուած) Մարա։ Ամէն կողմ յեղափոխական մասնաժողովներ կազմուեցան, որոնց վճիռները՝ աստին անդին պտըտող գնդերը գլխատութեան մեքենայով (guillotine) ի գործ կը դնէին։ Նոր տումար մը խոԹուեցաւ. քրիստոնէութիւնը վերցուեցաւ, եւ անոր տեղ հրամայուեցաւ բանաւորութեան պաշտօնը. ամէն բարոյական ու մտաւոր կրթութիւն մէկդի նետուեցաւ։ Վանտէի մէջ՝ ուր ժողովուրդը, Թագաւորին գլխատմանէն ետեւ, անոր որդւոյն Լուդ. ԺԷ.ին համար (որ 1795

ին բանտի մէջ մեռաւ) զէնք առած էր, կը ճարակէր քաղաքական պատերազմը: Իսկ իրենք զիրենք դաշնաժողովոյն դէմ հրատարակող քաղաքներն՝ ինչպէս Մարսէյլ, Պորտօ, Լիոն, Դուլոն, անլուր անագորոյնութեամբ նուաճուեցան:

Յուլիսի մէջ (1794), Ռոբէսպիէր, արեան հեղեղներ թափելէն (Մարիամ Անդուանէդ, Ժիրոնտները, Էկալիդէ, Տանդոն, Տէմուլէն,) եւ Աստուծոյ հաւատքն ու հոգւոյ անմահութիւնը վերցնելէն ետեւ, ամբաստանուեցաւ ու գլխատուեցաւ: Յակոբեանց ժողովը գոցուեցաւ:

4. Երրորդ սահմանադրութեամբ դրուեցաւ Վերատեսչաց կառավարութիւն մը (directoire) 1795-1799: գործադիր իշխանութիւնն յանձնուեցաւ հինգ վերատեսուչներու, օրէնսդիր իշխանութիւնը՝ հինգ հարիւրոց, իսկ անոր հաստատութիւնը՝ ծերոց խորհրդոյն: Չափաւորեալ կողմնակցութիւնն սկսաւ կամաց կամաց զօրանալ. բայց եւ այնպէս Մրգաբեր ամսոյն 18ին (Սեպտ. 4) 1797ին, երկու թագաւորամիտ վերատեսուչները (Գառնոյ եւ Պարթըլըմի) Պոնաբարդէի օգնութեամբ՝ մէկալներէն (Պարրա, Ռէօպէլ ու Լա-Ռըվէյլէր) մերժուեցան:

## 118. Առաջին Նիզակակցութիւն Գաղղիոյ դէմ 1793.

1. Ինչո՞ւ Գաղղիա՝ Աւստրիայի դէմ պատերազմ հրատարակեց. Ե՞րբ կազմուեցաւ առաջին նիզակակցութիւնը Գաղղիոյ դէմ: — 2. Ո՞վ է Պոնաբարդէ. Ինչպէս սկսաւ իր ասպարէզը: — 3. Նաբոլէոնի՝ եգիպտական արշաւանքն ի՞նչ հետեւութիւն ունեցաւ:

1. Փրեդ. Գուլիէլմոս Բ. Բրուսիացին ու Լէոբոլտոս Բ. կայսրը, Բիլնիցի մէջ 1791ին, Գաղղիայի հին վիճակը նորէն հաստատելու համար իրարու հետ կը խօսակցէին: Ասոր վրայ զառնացած Գաղղիան՝

*1792ին իւր հօրը յաջորդող Փրանկ. կայսեր դէմ պատերազմ հրատարակեց։ Բրուսիացիք՝ Պրաւնշվայկի դքսին առաջնորդութեամբ սպառնալից յայտարարութիւն մը հանեցին ու Գաղղիա մտան. բայց Վալմին գնդակոծելէն ետեւ, սաստիկ կոտորածով ետ դառնալու ստիպուեցան։ Ասոր վրայ Գաղղիացիք Մայնց, Վորմս ու Ֆրանգֆուրդ քաղաքներն առին։ Աւստրիացիք ալ Ժէմաբի քով յաղթուելէն ետեւ, Ստորին Գաւառներէն ելլելու հարկադրեցան։*

*Ուիլեըմ Բիդ (1793ին) կազմեց Առաջին Նիզակակցութիւնը (Coalition) Գաղղիայի դէմ։ Ցիւմուրիէ զօրապետը, Նէրվինտէնի քով՝ Գոպուրկի իշխանէն յաղթուելով, դաշնաւորաց կողմն անցաւ. Մայնց ալ նորէն առնուեցաւ։ Սակայն 1795ին յաղթեց Ժուրտան, Ֆլէօրիւսի քով։ Բիշկրիւ ձմեռը՝ բովանդակ Հոլլանտան աշխարհակալեց. կառավարը փախաւ ու Հոլլանտա (1795) պադաւեան հանրապետութեան փոխուեցաւ։ Գաղղիացիք՝ Ռենոսի ձախ եզերքը բռնելէն ետեւ՝ Դոսգանա, Բրուսիա ու Սպանիա Պազէլի խաղաղութիւնն ըրին. որով Բրուսիա՝ Ռենոսի ձախ դին ունեցած երկիրներն ու Սպանիա՝ Սէն-Տոմէնկօ կղզւոյն վրայ ունեցած մասը, Գաղղիայի տուին։ — Ժուրտան եւ Մորօ Գերմանիա յարձակեցան (1796). բայց Կարոլոս արքիդքսէն յաղթուելով՝ Մորօ վերին Ռենոսի կողմերը քաշուեցաւ։*

2. *Աս եղած ժամանակ, 27 ամեայ* **Նաբօլէօն Պօնաբարդէն** *(1768ին՝ Ճենովացիներէն առնուած Գորսիգա կղզւոյն Այաչչիօ քաղաքը ծնած, 1769ին) Միլլէզիմոյի ճակատովը 1796ին Սարդինիայի Թագաւորը՝ Սաւոյայէն ու Նիցցայէն հրաժարելու ստիպեց, եւ Աւստրիացիքը՝ Լոտիի ու Արգոլէի քով*

ետ մղեց. ուր անդիէն Բարմայի դքսին, Պիոս Զ. քահանայապետին ու Ֆերդինանդոս Դ. Նէապոլսոյ թագաւորին՝ Գաղղիայի հետ խաղաղութեան դաշինք դնել տուաւ: Ասոր վրայ (1797ին) Ռիվոլիի քով յաղթելէն, Մանդովան առնելէն, ու Աւստրիացիքը Լէոպէնի նախակարգ դաշինքն ընդունելու ստիպելէն ետեւ՝ Վենետիկը գրաւեց. ու կազմեց Ճենովայէն՝ Լիկուրեան. իսկ Մանդովայէն, Մոտենայէն, Պոլոնեայէն ու Ֆէրրարայէն՝ Կիսալպեան հասարակապետութիւնը: Գամբոֆորմիոյի խաղաղութեամբ, Աւստրիա՝ Ստորին Գաւառներէն ու Իտալիայէն հրաժարեցաւ. եւ ընդունեցաւ փոխարէն, Վենետիկ ու անոր երկիրները՝ Իստրիան ու Դալմատիան: Պէրթիէ զօրապետն Եկեղեցւոյ տէրութիւնը, 1798ին հռոմէական հասարակապետութեան փոխեց. Գաղղիացիք՝ Բիէմոնդը բռնեցին, ու Պէռն առնելէն ետեւ, Զվիցերի՝ հելուետական, ու Նէապոլիս՝ (1799ին) կարճատեւ պատերազմէ մ'ետեւ, պարթենոպեան հասարակապետութեան փոխուեցան: Բայց եւ այնպէս Սիկիլիա փախչող թագաւորը՝ նոյն տարին ամառը՝ Նէապոլիս դարձաւ:

3. Պոնապարդէ, Անգղիացւոց՝ Գաղղիացիներէն առած գաղթականութեանց տեղը լեցընելու համար, 1798ին Գուլոն նաւ մտաւ, Եգիպտոս աշխարհակալելու մտօք: Անցած ատեն՝ առաւ Մալդա, ցամաք ելաւ Ապուքիրի քով եւ բռնեց Աղեքսանդրիան. ու Բիրամիտներու ճակատէն ետեւ՝ Գահիրէն: Եւ որովհետեւ Նելսըն՝ գաղղիական նաւատորմիղը Ապուքիրի քով փճացուցած էր, յառաջացաւ Պոնապարդէ 1799ին Ասորիքի մինչեւ Ակրա (Պտղոմայիս) քաղաքը, ու Գլէպէրն Եգիպտոս թող տալով՝ դարձաւ առանձին Գաղղիա:

## 119. Երկրորդ Նիզակակցութիւն. Պոնաբարդէ առաջին հիւպատոս 1799.

1. Ինչպէս կազմուեցաւ երկրորդ նիզակակցութիւնը Գաղղիայի դէմ: — 2. Ե՛րբ լուծուեցաւ 500ոց խորհրդարանը: Չորրորդ սահմանադրութիւնն ինչ նոր կարգադրութիւններ բերաւ: — 3. Պոնաբարդէի յաղթութիւններով ինչ կերպարանք առաւ Իտալիա:

1. Անգղիա 1799ին՝ Աւստրիայի, Ռուսիայի, Նէապոլսոյ ու Դրան հետ Գաղղիայի դէմ Երկրորդ նիզակակցութիւն մը կազմեց: Ռաշդատի դեսպանաժողովը (congrès) լուծուեցաւ ու Գաղղիայի պատգամաւորները՝ աւստրիացի զինաւորներէն սպանուեցան: Կարոլոս արքիդուքսը՝ Գաղղիացիները Գերմանիայէն վռնտեց. իսկ Սուվորոֆ, Դրէպիայի ու Նովիի յաղթութեամբ Իտալիան ազատելով՝ պարթենոպեան հանրապետութեան վերջ տուաւ: Բայց որովհետեւ Ձիւրիխի քով Մասսէնայէն բոլորովին յաղթուած Գորսագովի հետ միանալ չյաջողեցաւ, եւ Աւստրիա՝ Ռուսիայի հետ աւրուեցաւ, Սուվորոֆ իր բանակովը ետ կանչուեցաւ:

2. Պոնաբարդէ՝ տժգոհ կողմնակցութենէն օգնութիւն գտած՝ լուծեց զինու զօրութեամբ 1799 ին, Նոյ. 9ին (18 Պրիւմէր), 500ոց խորհրդարանը եւ ինք զինք առաջին հիւպատոս անուանել տուաւ: Չորրորդ սահմանադրութիւնը կ՛որոշէր 100 հոգիէ բաղկացող Ռամկապետաց ժողով մը (tribunat), 300 հոգիէ օրինադիր ժողով մը, եւ 80 անդամէ Պահպանիչ ծերակոյտ մը (sénat conservateur): Վերատեսուչներուն տեղ դրուեցան տասը տարուան համար երեք հիւպատոս: Ասոնց առաջինը՝ միապետական իշխանութիւն ունէր. ուր մէկալ երկուքին (Գամպասէրէս եւ Լըպրէօն) միայն խորհրդատու ձայն տրուեցաւ:

3. Պոնաբարդէ 1800ին Ալպեաններն անցաւ. զարկաւ Յունիս 14ին Աւստրիացիքը Մարէնկօյի քով. ուր անդիէն Մորօյ Գերմանիա մտաւ, Յովհ. արքիդքսին յաղթեց ու Սալցպուրկը բռնեց։ Լիւնէվիլի խաղաղութեամբ (1801ին), Ռենոսի ձախ եզերքը Գաղղիայի տրուեցաւ. Աւստրիա՝ Ստորին գաւառներն եւ Իտալիայի մէջ ունեցած երկիրները մինչեւ Ատիճէ՝ Գաղղիայի տալու հարկադրեցաւ. պատաւեան, հելուետական, լիկուրեան ու կիսալպեան հանրապետութիւնները ճանչցուեցան. Դոսգանա, իբրեւ Հետրուրիայի թագաւորութիւն՝ Բարմայի տան տրուեցաւ։ Ասոր վրայ նաեւ Նէապոլսոյ, Սպանիայի, Ռուսիայի, Դրան ու 1802ին Ամիէնի մէջ՝ Անգղիայի հետ (որ բոլոր աշխարհակալութիւնները, Դրինիտատ ու Սէյլան դուրս առնելով՝ ետ պիտ՚որ դարձընէր, եւ յոնիական հանրապետութիւնը պիտի ճանչնար) խաղաղութեան դաշինք դրուեցաւ։ Սակայն յաջորդ տարին նոր պատերազմ մը փրթաւ՝ զոր սկսաւ Անգղիա՝ գաղթականութիւններն, իսկ Գաղղիա՝ Հաննովէր գրաւելով։

## 120. Նաբոլէոն՝ Գաղղիայի Կայսր. 1804-1814.

1. Նաբոլէոն ինք զինք երբ կայսր անուանել տուաւ. — 2. Ի՛նչ փոխման ունեցաւ երրորդ նիզակակցութիւնը։ — 3. Ի՛նչ պատճառի համար Նաբոլէոն Բրուսիայի ու Ռուսիայի դէմ պատերազմ հրատարակեց. Երբ կազմուեցաւ չորրորդ նիզակակցութիւնը։ — 4. Ինչո՛ւ դրաւ Նաբոլէոն ցամաքային դրութիւնը. Ռուսական-տաճկական պատերազմով ի՛նչ վտարկեցաւ տուաջէնը։

1. Պոնաբարդէ 1802էն ետքը՝ իտալական (մինչեւ այն ատեն Կիսալպեան) հանրապետութեան գահերէց եւ ցկեանս հիւպատոս՝ Գաղղիայի տէրութիւնը կառավարեց, զօրութեամբ եւ շրջահայեցութեամբ. կարգաւորեց ելեւմուտքը, եւ հաստատեց նորէն ուղղափառ կրօնը։ Դաւաճանութեան մը յայտ-

նուելէն ետեւ, (որուն հետեւութեամբ՝ Գատուտալ գլխատուեցաւ, Էնկիէնի դուքսը Պատընէն Գաղղիա բերուեցաւ ու 1804ին հրացանի բռնուեցաւ, Մորոյ աքսորուեցաւ ու Բիշկրիւ բանտի մէջ կենացը վերջ տուաւ.) Պօնաբարդէ 1804ին Մայ. 20ին ինք զինք ժառանգական կայսր անուանել ու Պիոս Է.էն պըսակել տուաւ։ Երկրորդ տարին ինք զինք նաեւ Իտալիայի թագաւոր անուանել տալէն ետեւ, Լիկուրեան հանրապետութիւնը Գաղղիայի հետ միացուց։

2. Բիդ կազմեց՝ 1805ին, Անգղիայի, Ռուսիայի, Աւստրիայի ու Շուետի հետ Երրորդ Նիզակակցութիւնը՝ Գաղղիայի դէմ։ Ասոր մէջ մտաւ ետքէն Նէապոլիս ալ։ Իսկ Նաբոլէոն դաշնակցեցաւ Պաւիերայի, Վիւրդեմպէրկի ու Պատընի հետ։ Ասոր վրայ Ուլմի քով 23.000 Աւստրիացի գերի բռնելէն ետեւ, առաւ Վիէննան եւ ղարկաւ Աւստերլիցի քով միացեալ Աւստրիացիքն ու Ռուսերը՝ Դեկտեմբ. 2ին։ Ֆրանկիսկոս Բ. Բրէսպուրկի խաղաղութեամբ վենետական երկիրներն Իտալիայի թագաւորութեան տուաւ, Դիրոլը՝ Պաւիերայի. եւ առաւ ասոնց փոխարէն Սալցպուրկը։ Պաւիերա ու Վիւրդեմպէրկ եղան թագաւորութիւն։

Նաբոլէոն 1806ին՝ Նէապոլսոյ վրայ իր Յովսէփ եղբայրը, Հոլլանտայի վրայ Լուդովիկոս եղբայրը թագաւոր դրաւ։ Եւգինէոս Պօհառնէ՝ Նաբոլէոնի որդեգիրը՝ եղաւ Իտալիայի փոխարքայ։ Նաբոլէոնի պաշտպանութեան տակ եղած Ռենոսի դաշնակցութեան կազմուելովը՝ գերմանական պետութիւնը (1806) լուծուեցաւ։ Ֆրանկիսկոս Բ. անուանեց ինք զինք կայսր Աւստրիայի (Ֆրանկ. Ա.)։

3. Բրուսիայի ու Ռուսիայի հետ նոր պատերազմ մը (Չորրորդ Նիզակակցութիւն 1806-

1807) անոր համար սկսաւ, վասն զի Բրուսիա՝ որմէ 1806ին Հաննովէր նորէն պիտ'որ առնուէր, Հոկտ. 8ին Գաղղիայի դէմ պատերազմ հրատարակեց։ Սակայն վեց օր ետքը (Հոկտ. 14) Եէնայի քով Նաբոլէոնէն ու Ցաուէն բոլորովին յաղթուեցաւ ու Պերլին Գաղղիացիներէն առնուեցաւ։ Շուտ ու ըստ մասին ամօթալի կերպով յանձնուեցան բերդերը։ Այլաւի անորոշ ճակատէն (1807), եւ Ցանցիկ, Պրեզլաւ ու Շվայտնից քաղաքներուն իյնալէն ետեւ Ֆրիզլանտի քով միացեալ Բրուսիացւոց ու Ռուսաց յաղթուելէն ետեւ՝ գրուեցաւ Դիլզիդի դաշինքը 1807ին։ Էլպայի ու Ռենոսի մէջ եղած երկիրներէն (զոր Բրուսիա հարկադրեցաւ Գաղղիայի տալ) կազմուեցաւ Վեսդֆալիայի թագաւորութիւնը՝ Ցերոնիմոս Պոնաբարդէի համար. եւ հարաւային Բրուսիայէն՝ Վարսաւիայի դքսութիւնը, Սաքսոնիայի թագաւորին համար։

4. Անգղիայի դէմ, որ 1805ին Դրաֆալկարի քով՝ գաղղիական-սպանիական նաւատորմիղը ոչընչացուցած (Նէլսոն †) էր, դրաւ Նաբոլէոն ցամաքային դրութիւնը (système continental)։ Ասոր մէջ մտան Բորդուկալէն ու Դանէն զատ՝ ամէն եւրոպական տէրութիւնները։ Բայց Անգղիացիք՝ Գոբէնհակ ռմբակոծելով, կրցան յաջողցնել դանիական նաւատորմիղին իրենց յանձնուիլը։

Ռուսական տաճկական պատերազմը, զոր բորբոքեց Նաբոլէոն 1806ին Դեկտեմբերի՝ լմնցաւ 1812ին Պուքարէշդի խաղաղութեամբ. որով Ռուսիա՝ իր սահմանը մինչեւ Բրութ ընդարձակեց։ Շուէտացիներէն՝ — որոնց Կուստաւոս Դ. Ատոլփոս թագաւորը, Նաբոլէոնի դէմ անհաշտ թշնամութեամբ պատերազմը կը շարունակէր — աշխարհակալեցին Ռուսք 1808ին Ֆինլանտիան։ Շուէտի թագաւորը, դաւաճանութեամբ հրաժարելու ստիպուելէն ետեւ, իր հօրեղբայրը Կարոլոս ԺԳ. թագաւոր անուանուեցաւ, որ 1810ին զՊեռնատոդ մարաջախտն (1818էն վեր Կարոլոս ԺԴ. Յովհաննէս) իրեն թագաժառանգ որոշեց։

Որովհետեւ Պիոս Է. Գաղղիայի հետ դաշինք դնել ու նաւահանգիստները Անգղիայի առջին գոցել յանձն չառաւ, Եկեղեցւոյ տէրութիւնն եւ Հռոմ քաղաքը (զոր

Նափոլէոն արդէն 1808ին բռնած էր) 1809ին Մայիսի, գաղղիական երկիր հրատարակուեցաւ։ Նափոլէոնին վրայ նզովք կարդացող քահանայապետը բռնուեցաւ եւ Ալպեաններէն Կրընոպլը, անկից ալ Սաւոնա տարուեցաւ. մինչեւ որ Նափոլէոնի նսեմացող բախտը՝ զինք Պապին հետ աւելի զիջողութեամբ վարուելու ստիպեց։

## 121. Պատերազմ Սպանիոյ, Աւստրիոյ ու Ռուսիոյ դէմ 1808—1812.

1. Ինչո՞ւ պատերազմ բացուեցաւ Սպանիայի դէմ. — 2. Ի՞նչ նոր երկիրներ ընդունեցաւ Գաղղիա՝ Աւստրիայէն. — 3. Ի՞նչ վախճան ունեցաւ աւստրիական-գաղղիական պատերազմը։

1. Նափոլէոն 1807ին Բորդուկալ բռնելէն ու Փերդինանդոս Է. Սպանիացին 1808ին, Պայոնի մէջ թագէն հրաժարելու ստիպելէն ետեւ, իւր Յովսէփ եղբայրը Սպանիայի ու քեռայրը՝ Յովակիմ Միւրան, Նէապոլսոյ թագաւոր անուանեց։

Ուելզլի առաջնորդութեամբ՝ Անգղիական օգնական գունդ մը, Բորդուկալն աշխարհակալեց։ Յովսէփ ստիպուեցաւ Մատրիտ թողուլ. բայց Նափոլէոնի ձեռօք նորէն գահ ելաւ։ Այն միջոցին որ կայսրը՝ Աւստրիա կանչուեցաւ՝ ելաւ բոլոր Սպանիայի մէջ ընդհանուր ապստամբութիւն մը։ Թէպէտ Սարակոսա դիւցազնական պաշտպանութենէ մ'ետեւ ինկաւ, բայց յաղթեցին Անգղիացիք Ուելզլի (ետքը Լորտ Ուելլինկդն) առաջնորդութեամբ Գալաւերայի քով 1809ին։ Ասոր վրայ սկսան բովանդակ երկրին մէջ Գաղղիացւոց շատ վնասակար պաշտպանողական պզտիկ կռիւները (guerilla)։ Ուելլինկդն յաղթեց 1812ին Սալամանգայի քով Գաղղիացւոց, վերցուց Գատիզի պաշարումն եւ անուանուեցաւ բոլոր սպանիական բանակին վերին հրամանատար։

2. Նափոլէոն, 1809ին, իրեն դէմ պատերազմ հրատարակող Աւստրիայի վրայ քալեց, մեծաւ մա-

սամբ գերմանական զօրքերով. եւ Լանտսհուդի, Էքմիւլի, Ռեկենսպուրկի յաղթութիւններէն ետեւ պատերազմի ելքն որոշեց։ Ասոր վրայ Ասբէռնի քով (Մայ. 21) Կարոլոս արքիդքսէն Դանուբէն անդին մղուելէն ետեւ, Վակրամի յաղթութեամբ՝ Աւստրիան, Վիէննայի խաղաղութիւնն ընելու ստիպեց։ Այս դաշինքով Աւստրիա, Սալցպուրկը՝ Պաւիերայի, Լիւրիկեան գաւառները՝ Նաբոլէոնի ու արեւմտեան Կալիցիան՝ Վարսաւիայի տուաւ։ — Նաբոլէոն 1810ին իւր Ցովսեփայ կողակցէն բաժնուելով՝ ամուսնացաւ Մարիամ Լուդովիկայ արքիդքսուհւոյն հետ. որ ծնաւ իրեն 1811ին Հռոմի թագաւորը։ Անկէ ետքը Նաբոլէոն, ա՛լ իր զօրութեան գագաթն ելած՝ միացուց իւր տէրութեանը հետ Ետրուրիան, Հոլլանտան ու հիւս. Գերմանիայի մէկ մասը։

Աւստրիայի համար, Պաւիերայի դէմ, դիւցազնաբար պատերազմող Դիրոլցիները նուաճուեցան։ Թէեւ ընդունեցան ընդհանուր թողութիւն, բայց իրենց առաջնորդը. Անդրէաս Հոֆէր, Գաղղիացւոց ձեռքն իյնալով՝ 1810ին հրացանի բռնուեցաւ։ Շիլ, որ իր ազատական զօրքերովը հիւս. Գերմանիայի մէջ կը պատերազմէր, ինկաւ 1809ին. Ստրալզունտը պաշտպանած ատեն։

3. Ռուսական պատերազմին պատճառ տրուեցաւ անով՝ որ Աղեքսանդր Ռուսաց կայսրը 1812ին, Օլտէնպուրկի դքսին երկիրներուն յափշտակուելուն վրայ զայրացած, ցամաքային դրութենէն ելաւ։ — Նաբոլէոն՝ զԱւստրիա եւ զԲրուսիա իրեն հետ դաշնակցելու ստիպելէն ետեւ, սկսաւ յարձակողականը՝ Ռուսիայի դէմ, կէս միլիոն զօրքով ու 1300 թնդանօթով — եւ կենդրոնական բանակովը դէպ ի Մոսկուա յառաջանալով։ Ռուսք մէկ դիէն պատերազմելով ու մէկալ դիէն ամէն կողմ աւըրշտըկելով ետ ետ քաշուեցան։ Սմոլէնսք առնուեցաւ. Գուդուսով՝ Մոսգաւ գետին քով յաղթուեցաւ եւ

Նաբոլէոն՝ մտաւ Սեպ. 14ին ամայի Մոսկուա քաղաքը։ Ռոստոբչինի գրգռելովը քաղաքն այրելէն ետեւ, — որովհետեւ խաղաղութեան ամէն առաջարկութիւնները մերժուեցան — հարկադրեցաւ սարսափելի ցրտին, բազմապատիկ նեղութիւններու, ամէն կերպ դժբախտութեանց տանելով՝ անապատ տեղերէն ետ քաշուիլ։ Ազատած բանակին մեծագոյն մասը, Պերեզինան անցնելու ատեն խեղդուեցաւ. այնպէս որ Նաբոլէոնը, միայն 1000 զինաւորուած մարդով կրցաւ անցնիլ։ Նաբոլէոն Բարիզ աճապարեց, նոր պատերազմի պատրաստութիւններ տեսնելու. ուր անդիէն Եօրգ՝ բրուսիական օգնական բանակին հրամանատարը, Ռուսաց հետ չէզոքութեան պայմանադրութիւն մ'ըրաւ։

## 122. Ազատութեան պատերազմը 1813—1814.

1. Նաբոլէոնի դէմ ո՞վ սկսաւ ազատութեան պատերազմը։ — 2. Ո՞ւր եղան գլխաւոր ճակատները։ — 3. Ի՞նչ հետեւութիւն ունեցաւ Լայբցիկի ճակատամարտը։ — 4. Դաշնակիցք ե՞րբ մտան Բարիզ. ի՞նչ կերպարանք առաւ Գաղղիա՝ Բարիզի առաջին խաղաղութեամբ։

1. Բրուսիայի թագաւորը, փետրուար 3ին, (1813ին) Պրեզլաւէն ազատակամ որսորդաց զօրաժողով մը հրամայելէն, Մարտի 17ին Ռուսիայի հետ դաշնակցելէն ու Գաղղիայի դէմ պատերազմ հրատարակելէն ետեւ, բովանդակ ազգին ու զինուորաց յայտարարութիւններ հանեց, որոնցմով ամէնքը զէնք առնելու եւ հայրենեաց անկախութեան համար պատերազմելու կը յորդորէր։ Պերլինի վրայ քալող Իտալիայի փոխարքան, բրուսիական ռուսական զօրքէն (Ապր. 5.) յաղթուեցաւ։ Բայց դաշնակիցք՝ Նաբոլէոնէն երկու տեղ (Կրոսկէօրշէնի քով՝ Մայիս 2, եւ Պաուցէնի քով Մայիս 20) ետ մղուեցան։ Յունիսի 4ին եղած զինադա-

դարման ժամանակ՝ Շուետ ու Աւստրիա դաշնակիցներուն կողմն անցան. միւս կողմանէ Անգղիա ալ ասոնց հետ դրամական օգնութեան դաշինքը (traité de subsidi) դրաւ:

2. Դաշնակիցք երեք բանակ կազմեցին: 120.000է կազմուած բրուսիական, ռուսական ու շուետական բանակը՝ Շուետաց թագաժառանգին ու Պիւլովի առաջնորդութեան տակ՝ զարկաւ Ուտինոն Կրոսպէրէնի (Աւգոստ. 23) քով. Պլիւխէր՝ իր 90.000 Ռուսերովն ու Բրուսիացիներովը յաղթեց Մագտոնալը, Աւգ. 26ին՝ Գացպախի քով. երբ անդիէն Շվարցէնպէրկէն առաջնորդուած մեծ բանակը (230.000 Աւստրիացի, Ռուս ու Բրուսիացի) Տրէզտէնի վրայ յարձակում ըրաւ, բայց Նաբոլէոնէն յաղթուեցաւ (26 եւ 27 Աւգ. ուր Մորօ †): Երբ ասոր վրայ Վանտամ՝ Գլայսդէն (30 Աւգ.) Գուլմի քով, Նէյ՝ Պիւլովէն (6 Սեպտ.) Տէննէվիցի քով ու Պէրդրան՝ (3 Հոկտ.) Եորգէն, Վարդէնպուրկի քով յաղթուեցան, հարկադրեցաւ Նաբոլէոն իր բանակը Լայբցիկի քով ժողովել:

3. Դաշնակիցք՝ Լայբցիկի շրջակայքը միանալէն ետեւ, Հոկտ. 18 եւ 19ին, նոյն քաղքին քով եղած որոշիչ ճակատամարտովը — որուն 400.000 մարդ մասնակից եղաւ, — Նաբոլէոն ստիպուեցաւ ետ քաշուելու: Սաքսոնիացիք՝ պատերազմին բախտը չորոշուած դաշնաւորաց կողմն անցան. որոնց հետեւեցան շուտ մը Պաւիերացիք ալ: Սակայն Նաբոլէոն, Հանաւի քով իրեն ճամբայ մը կրցաւ բանալ: Ամրութեանց մեծ մասը, նոյն տարին ինկան. Հոլլանտան գրաւեց Պիւլով, Հելուետիան՝ Շվարցէնպէրկ. իսկ Ուելլինկդն Վիգդորիայի յաղթութենէն ետեւ, Սպանիայէն Գաղղիա մտաւ:

4. Թէպէտ Դաշնակիցք (1814ին Յունուար 1ին) Ռենոսն անցան. բայց եւ այնպէս Նաբոլէոն, առանձին առանձին բանակները զարնելէն ետեւ՝ իրեն եղած խաղաղութեան առաջարկութիւնները մերժեց։ Լաոնի յաղթութեամբ (9 Մարտ) մեծ բանակն սկսաւ նորէն յառաջանալ. ասով Նաբոլէոն՝ Արսիի պարտութենէն ետեւ՝ դէպ ի Ռենոս քաշուեցաւ։ Դաշնակիցք՝ Բարիզի վրայ քալեցին եւ Մոնմարդր յարձակմամբ առնելով (Մարտ. 31) մայրաքաղաքն յանձնուելու ստիպեցին։ Նաբոլէոն՝ ծերակուտէն վար առնուելով՝ հրաժարեցաւ ու (Ապր. 11ին) իբրեւ վեհապետ Էլպա գնաց։ Դաշնաւորք՝ Լուդովիկոս ԺԸ. գահ հանեցին, որ նոր սահմանադրութիւն մը տուաւ։ — Բարիզի առաջին խաղաղութեամբ, Գաղղիա՝ իր 1792ին ունեցած երկիրներուն վրայ ամփոփուեցաւ։ Քահանայապետն, Սպանիայի ու Սարդինիայի թագաւորները, Դոսգանայի ու Մոտենայի դքսերը, ինչպէս յառաջագոյն Գերմանիայի իշխանները, իրենց երկիրները դարձան։

## 123. Վիեննայի արքայաժողովը. 1815 Երրորդ փարիզին.

1. Ե՞րբ սկսաւ Նաբոլէոնի երկրորդ իշխանութիւնը։ — 2. Ի՞նչ վախճան ունեցաւ Նաբ. Պոնաբարդէ. Ի՞նչ երկիրներ կորսնցուց Գաղղիա՝ Բարիզի երկրորդ խաղաղութեամբ։ — 3. Ի՞նչ հետեւութիւն ունեցաւ Վիեննայի արքայաժողովը. Երկիրներու ի՞նչ նոր բաժանմունքներ եղան։

1. Այն միջոցին որ Ռուսիայի, Բրուսիայի, Աւստրիայի, Պաւիերայի, Վիւրդէմպէրկի ու Դանիայի վեհապետներն եւ ուրիշ տէրութեանց իշխանները կամ դեսպանները՝ Վիեննայի արքայաժողովին մէջ եւրոպական իրողութեանց կարգաւորութեանը հետ կ՚ըլլային (1814 Սեպտ. — 1815 Յունիս), Նաբոլէոն, Միւրայի ընկերութեամբ 1815ին՝ Մարտի

մէկին Գաղղիա ցամաք ելաւ. եւ իրեն դէմ խաւրուած բանակին գլուխն անցած՝ Բարիզ մտաւ: Միւրա՝ Աւստրիացւոց ձեռօք, Նէապոլսէն վռնտուեցաւ եւ Ֆերդինանդոս Դ.ին դառնալէն ետեւ Գալապրիայի մէջ բռնուեցաւ ու հրացանով զարնուեցաւ:

2. Թէպէտ Եւրոպայի գլխաւոր տէրութիւններէն մերժուած Նաբոլէոնը, Լինեիի ճակատումն (16 Յունիս) զՊլիւխէր ետ քաշուելու ստիպեց, սակայն Նէյ, նոյն օրը՝ Գադրէպրայի քով ետ մղուեցաւ, եւ Յունիս 18ին Նաբոլէոն ալ Վադէրլոյի կամ Պելալիանսի ճակատին հետեւութեամբը՝ փախչելու ստիպուեցաւ: Դաշնակիցները Բարիզ երկրորդ անգամ առին: Նաբոլէոն՝ Ռոշֆորի քով ինք զինք անգղիացւոց յանձնեց. բայց իբրեւ գերի Ս. Հեղինէ տարուեցաւ, ուր մեռաւ 1821ին Մայ. 5ին: Լուդ. ԺԸ. Բարիզ դարձաւ: — Բարիզի երկրորդ խաղաղութեամբ, Գաղղիա՝ 1790ին ունեցած սահմանին մէջ ամփոփուեցաւ եւ դաշնակցաց զօրքէն (մինչեւ Ախէնի արքայաժողովը՝ 1818) երկրին ապահովութեանը համար 150.000 զինուոր Գաղղիա մնաց:

3. Վիէննայի արքայաժողովին մէջ՝ աւստրիական ու բրուսիական պետութիւնները նորէն հաստատուելէն, եւ Գերմանիայի տէրութիւնները, գերմանական դաշնակցութեամբ իրարու հետ միանալէն ետեւ՝ ստորագրեցին Բարիզի սուրբ դաշանց, Աղեքսանդր Ա., Ֆրեդերիկոս Գուլիէլմոս Գ., Ֆրանկիսկոս Ա. եւ գրեթէ ամէն եւրոպական տէրութիւնները 1815ին Սեպտ. 26ին: Ժողովին անդամներն իրենք զիրենք պարտաւորեցին Ս. Գրոց խօսքերուն համեմատ, եղբայրական սիրով միացեալ ըլլալու, իրարու միշտ օգնութեան հասնելու եւ իրենց ժողովուրդը հայրաբար կառավարելու:

Վիէննայի արքայաժողովին մէջ ընդունեցաւ Աւստրիա՝ Իլլիրական գաւառները, որոնցմէ կազմեց Լիւրիկէի ու Դալմատիայի թագաւորութիւնները. դարձեալ վերին Իտալիան՝ մինչեւ Բոյ ու Թիչինոյ (Լոմպարտական-վենետական թագաւորութիւն), Տիրոլ եւ Սալցպուրկ: — Բրուսիա՝ Սաքսոնիայի թագաւորութեան հիւս. արեւն. մէկ մասը, Բոզէնի մեծ դքսութիւնը, Եիւլիխ, Սաարէն Ռենոսն, Վեստֆալիան ու շուէտական Պոմերանիան: — Հաննովէր եղաւ թագաւորութիւն. եւ ընդունեցաւ Բրուսիայէն արեւելեան Ֆրիզլանտը, Հիլտէսհայմը եւ այլն: Պաւիերա՝ ընդունեցաւ Վիւրցպուրկ, Աշաֆէնպուրկ Անսպախ ու Պայրայթ:

Ռուսիա՝ Կալիցիան Աւստրիայի դարձուց ու անոր տեղ ընդունեցաւ Վարսաւիայի մեծ դքսութիւնը (Բոզէնէն զատ), իբրեւ Ռուսաստանէն զատեալ, Լեհաց թագաւորութիւն: Կրակաւ եղաւ հանրապետութիւն (բայց 1847ին Աւստրիայի անցաւ): Սարտինիա առաւ Ճենովայի դքսութիւնը: Բարման ու Մոտենան ընդունեցաւ Նափոլէոնի ամուսինը. սակայն անոր մահուանէն ետեւ (1847) նոյն դքսութիւններն ինկան Լուգայի դքսին: Յունական-վենետական կղզիներէն կազմուեցաւ Յոնիական կղզեաց հասարակապետութիւնը՝ անգղիական պաշտպանութեան տակ: Անգղիա՝ ընդունեցաւ նաեւ Մալթան: Նորուեգիա՝ միացաւ Շուէտի հետ:

## 124. Եւրոպա 1815 էն ետքը — Գաղղիա.

1. Ի՞նչ էր 1830ին, Յուլիսի յեղափոխութեան պատճառը. — 2. Իրերն ատով շարունակուեցան: Ե՞րբ երեւան ելաւ երկրորդ հանրապետութիւնը. — 3. Ի՞նչ վիճակի մէջ է այսօրուան օրս Գաղղիա:

1. Լուդովիկոս ԺԸ.ի՝ զԳաղղիան հին վիճակը դարձնելու ջանքերն ընդհանուր դժգոհութեան առիթ տուին: Կարոլոս Ժ.ին ատեն (1824-1830) դժգոհութիւնն աճեցաւ. այնպէս որ նոյն իսկ Ալճէրիի աշխարհակալութիւնը (1830 Յուլ. 5) չկրցաւ ժողովրդեան միտքը փոխել: Պոլինեաք պաշտօնէին հրամաններն՝ որոնցմով մամուլին չափ կը դրուէր եւ ուրիշ քանի մը կարգաւորութիւններ՝ Բարիզի մէջ (1830) յառաջ բերին Յուլիսի 27ի յեղափոխութիւնը: Ասոր հետեւութեամբ՝ Պուրպոնի տունը, Գաղղիայէն աքսորուեցաւ եւ Լուդ. Փիլիպպոս, Օր-

լէանի դուքսը՝ Գաղղիացւոց թագաւոր ընտրուեցաւ ։ Սահմանադրութեան մէջ փոփոխութիւններ եղան. ատենակալաց (pairs) ժառանգական ըլլալը վերցուեցաւ (1831) եւ Կարոլոսեանց ու հասարակապետականաց հանած ապստամբութիւնները — ոչ առանց արեան — նուաճուեցան ։

2. Դժգոհութիւնը՝ որուն պատճառ տուաւ Լուդ. Փիլիպպոս իր անձնական շահերը յառաջ տանելով եւ պատգամաւորաց ընտրութեան իրաւանց ընդարձակուելուն ընդդիմանալով՝ յառաջ բերաւ Բարիզի մէջ փետրուարի (23 — 1848ին) ապստամբութիւնը ։ Թագաւորն ի նպաստ իւր թոռան, Բարիզի կոմսին, թագէն հրաժարեցաւ ու Անգղիա փախաւ ։ Հանրապետութիւնը (փետ. 24) հրատարակուեցաւ ու առժամանակեայ կառավարութիւն մը դրուեցաւ, որուն գլուխն էր Լամարդին ։ Մայիսի 4ին բացուած եւ ընդհանուր քուէարկութեամբ ընտրուած ազգային ժողովը՝ Գավեննեագ զօրավարին յանձնեց քաղաքային ու զինուորական իշխանութիւնը. հրատարակեց Նոյ. 12ին հանրապետութեան սահմանադրութիւնն ու ընտրեց Դեկտ. 20ին ($5\frac{1}{2}$ մլ. ձայնով) Լուդ. Նաբոլէոն Պոնաբարդէ իշխանը հասարակապետութեան գահերէց ։ Ասիկայ ցրուեց (Դեկտ. 2ին 1851ին) ազգային ժողովն եւ 1852ին ինք զինք Գաղղիայի կայսր անուանել տուաւ Նաբոլէոն Գ. անուամբ ։ Նաբոլէոն մէկ կողմանէ ոստիկանութեան եւ զինուորական զօրութեան վրայ յեցած՝ երկաթեայ բանակով մը երկրին խաղաղութիւնը կանգուն բռնած ատեն, մէկալ կողմանէ ջանաց իւր իշխանութիւնն ամրացընել՝ դաղղիական ազգայնութիւնն ու փառքը շողքորթող արտաքին յաջող քաղաքականութեամբ ։ Բրիտանիայի հետ դաշնա-

կցելով՝ սուրբ դաշնադրութեան ազդեցութիւնը կոտրելու ջանաց։ Ռուսիայի (131) եւ Աւստրիայի (126) վրայ ըրած յաղթութիւններով՝ Եւրոպական քաղաքականութեան մէջ՝ Գաղղիայի առաւել իշխանութիւն մը տուաւ. որ հազիւ 1871ին (132) Գերմանիայի նոր կերպարանք առնելովը վերցաւ։ Նաբոլէոն Գ. ամուսնացաւ 1853ին Եւգինէա Մոնդիխոյ Սպանիացւոյն՝ Դէպայի կոմսուհւոյն հետ. որմէ ունեցաւ 1856ին կայսերական իշխանը։ — Մեռաւ Նաբոլէոն Անգղիայի Չիզըլհուրստ գեղը 1873։

Գաղղիա (528.000 քռ. հազարամէդրատարած. եւ 36½ միլ. բն.) Ցուլիսի յեղափոխութենէն ետեւ, արուեստից, առեւտրոյ, մշակութեան ու ազգային զարգացման մէջ շատ յառաջացաւ։ Փետրուարի յեղափոխութենէն ետեւ բարօրութիւնն ինկաւ եւ ազգային պարտքը 12.000 միլ. ֆրանգի ելաւ։ Նաբոլէոն շատ հոգ տարաւ ընկերական ու ազգային իրաց. մեծագործ ջրմուղներով, ճամբաներով ու շինութիւններով, ջանաց գործավարաց զբաղում մը գտնել եւ անոնց վիճակը լաւցընել. ուր անդիէն առեւտուր եւ արուեստ՝ գիտութեանց եւ արուեստից համաշխարհական հանդէսներով (1855, 1867, 1878) ինչպէս նաեւ առեւտրական դաշինքներով յառաջացան։

## 125. Սպանիա ու Բորդուգալ.

1. Ի՞նչ վիճակի մէջ էր այս դարուս սկիզբները Սպանիա։ — 2. Ո՞վ յաջորդեց Փերդինանդոս Է.ի. Ի՞նչ վարչութիւն ունեցաւ Իզաբէլլա։ — 3. Ի՞նչ են Սպանիայի իյնալուն գլխաւոր պատճառները. Ե՞րբ ու ինչո՞ւ ազատ հրատարակուեցան հարաւային Ամերիկայի սպանիական երկիրները։ — 4. Ի՞նչ փոփոխութիւններ կրեց Բորդուգալ 1820էն ետքը։

1. Փերդինանդոս Է. դառնալէն ետեւ, ազգային ժողովոյն (Գորդէզներու) 1812ին շինած սահմանադրութիւնը վերցուց եւ հալածեց անոր պաշտպանները։ Թէպէտ Ամերիկա երթալու որոշուած գնդերուն ապստամբութեամբը՝ թագաւորն ստիպուեցաւ (1820) գորդէզներու սահմանադրութեան երդում ընել, բայց Վերոնայի արքայաժողովին մէջ

1822ին որոշուեցաւ հին կարգաւորութիւնը Սպանիայի մէջ հաստատուն պահելու. եւ 1823ին գաղղիական բանակ մը, որուն յանձնուած էր այս որոշման գործադրութիւնը, զթագաւորն իր յառաջուան իշխանութեանը մէջ հաստատեց։

2. Ֆերդինանդոսի յաջորդեց (Սալեան օրինաց վերցուելէն ետքը) 1833ին իւր դուստրը՝ Իզապէլլա Բ. որուն տեղ վարեց իշխանութիւնն իր մայրը Քրիստինէ։ Բայց որովհետեւ Պասգեան գաւառներն ու Նավառրա՝ Ֆերդինանդոսին եղբայրը Կարոլոսը կ'ուզէին, անոր համար քաղաքային կռիւ մը փրթաւ, որ եօթը տարի մոլեգնութեամբ ու կատաղութեամբ շարունակեցաւ։ Վերջապէս Կարոլոս (Էսբարդէրոյէն յաղթուելով) ստիպուեցաւ 1839ին Գաղղիա անցնիլ։ Էսբարդէրոյ՝ խնամակալ թագուհւոյն հրաժարմանէն ետեւ, 1841ին ընդհանուր խնամակալ ճանչցուեցաւ. բայց 1843ին Սպանիայէն աքսորուեցաւ։ 1868ին (Սեպտ.) Գատիզի մէջ ապստամբութիւն մ'ելաւ, որ Սերրանոյի առաջնորդութեամբ, բոլոր երկրի վրայ տարածուեցաւ։ Իզապէլլա թագուհին Գաղղիա փախաւ. Պուրպոնեանք գահէն մերժուած հրատարակուեցան։ Առժամանակեայ կառավարութիւնն՝ ազգային ժողով կանչեց, որ ապագայ սահմանադրութիւնն որոշէ։ Ասիկայ՝ հանրապետական զօրաւոր կողմնակցութեան մը հակառակ, Աոստայի դուքսը, Իտալիայի Վիկտ. Էմմանուէլ թագաւորին երկրորդ որդին, Սպանիայի թագաւոր ընտրեց (1872)։ Բայց Աոստայի դուքսը՝ տիրող խռովութեանց պատճառաւ երկու տարիէն հրաժարելով՝ նորէն հանրապետութիւն հրատարակուեցաւ. մինչեւ որ 1874ին Դեկտ. 30 Իզապէլլայի որդին 18 ամեայ Ալփոնսոս. ամենէն թագաւոր ճանչցուեցաւ։

3. Սպանիա (495.000 քռ. հազարամէտր տարած. ու 16 միլ. ատեն մը քառասպատիկ բնակչով) Գաղղիայի հետ ունեցած պատերազմներուն եւ Ամերիկայի գաղթականութեանց իրմէն բաժնուելովը՝ շատ ինկաւ։ Առուտուր, նաեւ արուեստ երկար ձգուած, երկրագործութիւնն ինկած ու ելեւմուտքը շատ ողորմելի վիճակի մէջ են։ 1837ին՝ քանի մը փոփոխութիւններով՝ 1812ին սահմանադրութիւնը խոթուելով, երկրին նոր կենդանութիւն մը տրուեցաւ։ Սակայն դահակալութեան կռիւներն ու յաճախ ապստամբութիւնները, սկսուած գործքը ապարդիւն թողուցին։

Սպանիայի գաղթականութիւնները՝ Ամերիկայի մէջ, կը պահանջէին 1810էն վեր, մայր երկրին հետ հաւասար իրաւունք եւ առեւտրի ազատութիւն։ Եւ որովհետեւ այս բանս իրենց միշտ կը զլացուէր, անոր համար կազմուեցան Վենեզուելայի, (1819ին Պոլիվարի առաջնորդութեամբ արիւնահեղ պատերազմներէ ետեւ, Գոլումպիա ազատ տէրութիւն մ'եղաւ. բայց 1830ին Վենեզուելայի, Նոր Կրանատայի ու Եգուատորի ազատ հանրապետութեանց բաժնուեցաւ.) Պոլիվիայի (վերին Բերու), Բերուի (երկուքն ալ Պոլիվարի առաջնորդութեամբ անկախ եղան 1824ին), Չիլիի (1818ին Սան Մարդէնի ձեռօք), Լաբլադայի, Բարակուայի (1817-1837 Ֆրանցիա բռնապետի ատեն) եւ Ուրուկուայի հանրապետութիւնները։ — Կուադէմալա ինք զինք անկախ հրատարակեց 1821ին, եւ Մեքսիկայի պէս (1824էն վեր) դաշնակցեալ հանրապետութիւն մըն է։ Այս ամէն տէրութեանց մէջ շփոթութիւններն ու յուզմունքը կը շարունակուին, անոր համար սահմանադրութիւննին դեռ հաստատուն չէ. եւ բարօրութիւնը — թէեւ երկիրն արտաքոյ կարգի արգաւանդ է, — դեռ շատ ետ է։ 1864ին, Մաքսիմիլիանոս Աւստրիայի արքիդուքսը՝ Նաբոլէոն Գ.ին առաջարկելովը, Մեքսիկայի կայսր անուանուեցաւ։ Սակայն Գաղղիացւոց Մեքսիկայէ քաշուելովը՝ հասարակապետականներէն յաղթուեցաւ ու 1867ին հրացանի բռնուեցաւ։

2. Երբ Բորդուկալի մէջ (1820ին) զօրաց ապստամբութենէ մ'ետեւ, ազգային ժողովը (Գորդէզ) Սպանիայի սահմանադրութեան նման սահմանադրութիւն մը տուաւ եւ Յովհաննէս Զ. թագաւորը ետ դարձաւ, Պրազիլիա՝ Բորդուկալէն բաժնուեցաւ. եւ Պետրոս Ա.ին ատեն ինք զինք անկախ կայսրութիւն հրատարակեց։ Պետրոս՝ հօրը մահուանէն

(1826) ետեւ, ի նպաստ իւր Մարիամ Բ. դստերը, Բորդուկալէ Թագէն հրաժարեցաւ։ Բայց Պետրոսի եղբայրը Միքայէլ՝ իրեն յափշտակեց իշխանութիւնն ու իւր կառավարութիւնը հաստատուն պահեց՝ ինչքերը յարքունիս գրաւելով եւ գլխապարտութիւններով։ Պետրոս հարկադրեցաւ (1831) Պրազիլիան թողուլ (ուր որդին Պետրոս Բ. իրեն յաջորդեց)։ 1832ին Օբորդոյ ու քիչ մը ետքը Լիսաբոն մտնելով՝ ազգային ժողովը դարձեալ հաստատեց (1833)։ Իր մահուանէն ետքը 1834ին յաջորդեց իրեն Մարիամ Բ. իւր դուստրը, որ Փերդինանդոս Գոպուրկի իշխանին հետ ամուսնացաւ եւ 1822ին հաստատուած սահմանադրութիւնն (1838ին) ընդունեցաւ։ Մարիամ Բ.ին յաջորդեց 1853ին, որդին Պետրոս Բ.։ Ասոր ալ 1861ին Լուդովիկոս Ա.։

Թէպէտ Բորդուկալ (3 1/2 միլ. բնակչով ու 95.000 քառ. հրմղր. տարածութեամբ) պտղաբեր երկիր մըն է. բայց եւ այնպէս Եւրոպայի ամենէն աղքատ գաւառներէն մէկն է։ Երկրին կէսէն աւելին անմշակ է. գործարանները շատ քիչ են, առեւտուրը գրեթէ միայն Անգղիացւոց ձեռքն է, ժողովրդեան կրթութիւնն ալ երեսէ ձգուած։

## 126. Իտալիա.

1. Իտալական խռովութեանց սկզբնապատճառն ինչ էր. — Ի՞նչ վախճան առին Սիկիլիայի, Հռոմի, Նէապոլսոյ եւ այլն, ապստամբութիւնները։ — 3. Ե՞րբ ու ինչպէս միացաւ թագաւորութեան մը վրայ բովանդակ Իտալիա։ — 4. Ի՞նչ վիճակի մէջ է հիմակ երկիրը։

1. Իտալիայի մէջ՝ Գաղղիացւոց տիրապետութենէն ետեւ, իտալական միութեան ետեւէն ինկող Գարպոնարեանց ընկերութիւնը տարածուեցաւ։ Նէապոլսոյ մէջ ելած յեղափոխութիւն մը, ստիպեց զՖերդինանդոս Ա. 1820ին, սպանիական սահմանադրութիւնն ընդունելու։ Նոյնպէս խռովութիւններ ստիպեցին նաեւ Բիէմոնդի մէջ՝ զՎիկտոր Էմմանուէլ

Սարդինիայի թագն՝ իր եղբօրը Կարոլոս Փելիքսի տալու։ Սակայն թէ Նէապոլիս ու թէ Բիէմոնդ 1821ին աւստրիական բանակով մը յառաջուան վիճակը բերուեցան։ Մոտենայի, Բարմայի ու Եկեղեցւոյ տէրութեան մէջ ելած ապստամբութիւններն ալ (1831) Աւստրիացւոց ձեռօք նուաճուեցան։

2. Պիոս Թ. քահանայապետին՝ տէրութեան խորհուրդ մը հաստատելու համար հանած հրովարտակէն ետքը (1847 Հոկտ. 14) գրեթէ Իտալիայի ամէն կողմն ազատական կարգադրութեանց հոգին արթնցաւ։ 1848 Յունուար 12ին Բալէրմոյի մէջ ելած ու շուտ մը բոլոր Սիկիլիայի վրայ տարածուած ապստամբութիւն մը, թագաւորական գունդերը՝ կղզին թող տալու ստիպեցին։ Առժամանակեայ վարչութիւն մը դրուեցաւ, որ 1812ին սահմանադրութեան վերատուչութիւնը պահանջեց (Ապր. 13) եւ Պուրպոնի տունը Սիկիլիայի գահէն մերժուած հրատարակեց։ Երբ խռովութիւնները սաստկացան, երկու Սիկիլիայի ու Սարդինիայի թագաւորներն եւ Տոսգանայի մեծ դուքսը՝ սահմանադրական վարչութիւն խոստացան։ Բարմայի դուքսը՝ փախաւ. Մոտենայինը՝ վռնտուեցաւ. իսկ Նէապոլսոյ ապըստամբութիւնը (15 Մայ.) թագաւորական զօրքէն նուաճուեցաւ։ Կարոլոս Ալբերդոս՝ Սարդինիայի թագաւորէն գրգռուած Լոմպարտացւոց ապստամբութեամբ (Մարտ 18), Աւստրիացիներն ստիպուեցան Միլան ու Վենետիկ թող տալու եւ Ադիճէի հիւսիսին քաշուելու։ Թէեւ Կար. Ալբերդոս՝ Յունիս 18ին, Լոմպարտիան իր տէրութեանը հետ միացած հրատարակեց, բայց Գուստոզզայի քով (Յուլ. 25) Ռատեցքիէն յաղթուեցաւ, որ Օգոստ. 6ին Միլանը բռնեց եւ թագաւորը՝ զինադադար ընելու ստիպեց։

Հռոմի մէջ ալ ապստամբութիւն մ՚ելաւ եւ Ռոսսի պաշտօնէին սպանուելէն ու քահանայապետին (Նոյ. 15) կայէտա փախչելէն ետեւ՝ Հռոմի մէջ 1849ին փետր. 9ին հանրապետութիւնը հրատարակուեցաւ. ուր անդիէն Դոսգանայի մեծ դուքսը՝ Ֆիորէնցայէն փախաւ։ — Կարոլոս Ալբերդոս զինադադարն աւրելէն, բայց Ռատէցքիէն (Մարտ. 24) Նովարայի քով յաղթուելէն ետեւ, հրաժարեցաւ թագէն ի նպաստ իւր Վիկտոր Էմմանուէլ Բ. որդւոյն։ Չորս ամիս ետքն ալ Օբորդոյի մէջ մեռաւ։ Ֆիորէնցան՝ Մայիսի, Անգոնան՝ Յունիսի մէջ Աւստրիացիք, իսկ Հռոմ՝ Յուլիսին Գաղղիացիք առին, Ուտինոյի առաջնորդութեամբ. որ քահանայապետին աշխարհական իշխանութիւնը դարձեալ հաստատեց։ Դոսգանայի մեծ դուքսը՝ Բարմայի ու Մոտենայի դքսերը տեղերնին դարձան. Վենետիկ (Աւգ. 22) Աւստրիացւոց հպատակեցաւ։

3. Գաղղիայի եւ Սարդինիայի դէմ ըրած պատերազմին մէջ կորսնցուց Աւստրիա 1859ին՝ Մաճենդայի (Յունիս 4) ու Սոլֆէրինոյի (24 Յունիս) ճակատամարտներէն ետեւ՝ Վիլլաֆրանգայի խաղաղութեամբ՝ Լոմպարտիան մինչեւ Մինչիոյ։ Աս երկիրն առաւ Վիկտոր Էմմանուէլ (ու փոխարէն տուաւ Գաղղիայի՝ Նիցցան ու Սաւոյան)։ Միացուց ասոր վրայ իր տէրութեանը հետ՝ Դոսգանան, Բարման, Մոտենան, Եկեղեցւոյ տէրութեան մեծ մասը. եւ կարիպալտիի յաղթութիւններովը՝ նաեւ երկու Սիկիլիայի թագաւորութիւնն (ուր իր հօրը Փերդինանդոս Բ.ին յաջորդած էր 1860ին Փրանկիսկոս Բ.) եւ ինք զինք հրատարակեց 1861ին Մարտի մէջ՝ թագաւոր Իտալիայի։ 1866ին ընդունեցաւ, Բրուսիացւոց՝ Աւստրիայի վրայ ըրած յաղթու-

թեամբ՝ Վենետիկն (127.4). ու գրաւեց՝ գերմանական-գաղղիական պատերազմին ժամանակ (1870) նաեւ զՀռոմ։ 1878 Յունուար 9ին մեռնող Վիկտոր Էմմանուէլի յաջորդեց որդին Հումպէրդ։

Իտալիա՝ ամենէն բազմամարդ երկիրներէն մէկն է։ (295.000 քառ. քիլոմէդր տար. եւ 26 միլ. բն.) Երկրին հիւսիսային կողմերը կը ծաղկին երկրագործութիւն ու արուեստ։ Վերջին տարիներուն յեղափոխութիւններէն ու պատերազմներովը՝ բարօրութիւնը շատ կրեց։ Ժողովրդեան կրթութիւնը, գրեթէ բոլորովին երեսէ թողուած է։ Բայց սահմանադրական վարչութեամբ երկիրը նոր զարգացում առնելու սկսած է։

## 127. Գերմանիա, Աւստրիա, Իտալիա.

1. Ի՛նչ փոփոխութիւններ կրեց Գերմանիա 1815էն ետքը. Ի՛նչ պատճառաւ 1848ին Գերմանիոյ զանազան կողմերը յեղափոխութիւններ ելան։ — 2. Ի՛նչչափ յաջողութիւն ունեցան 1848ին, Աւստրիոյ մէջ եղած ապստամբութիւնները։ — 3. Ի՛նչ կերպարանք առաւ Իտալիա 1848ին ապստամբութենէն ետեւ։ — 4. Ի՛նչ հետեւութիւն ունեցաւ 1866ին պատերազմը. Ե՛րբ լուծուեցաւ Գերմանական մեծ դաշնակցութիւնը. Ո՛վ անցաւ Հիւսիսային գերմանական դաշնակցութեան գլուխը։ — 5. Ի՛նչ կերպարանք առած են այսօրուան օրս Աւստրիա, Իտալիա։

1. Գերմանական պետութեան տեղ, ելաւ 1815ին, 38 անկախ տէրութիւններէ կազմուած գերմանական դաշնակցութիւնը, որուն սահմանադրութիւնը կատարելագործուեցաւ 1820ին որոշմունքներովը։ Յուլիսի յեղափոխութեան ցաւերը կրեցին նաեւ գերմանական քանի մը պզտի տէրութիւններն (կարոլոս՝ Պրաունշվայկի դուքսը վռնտուեցաւ.) որով անոնք ալ հարկադրեցան սահմանադրական վարչութիւն խոթել։

Գաղղիական՝ Փետրուարի եւ Մարտի (1848) յեղափոխութեան հետեւութեամբը՝ քանի մը գերմանական տէրութեանց մէջ խռովութիւններ ելլելով՝ ամէն տեղ մամլոյ ազատութիւն շնորհուելէն ետեւ, Ֆրանքֆուրդի մէջ (Մայ. 18) ընդհանուր ընտրութեամբ գումարուած գերմանական ազգային ժո-

ղով՝ մը բացուեցաւ։ Ասիկայ (Յունիս 29) ընտրեց Յովհ. Արքիդուքսը պետութեան առժամանակեայ տեղակալ. գերմանական Դաշնակցութեան ժողովը լուծուեցաւ (12 Յուլ.) եւ Գաղղիայէն ու Հելուետիայէն ներս յարձակած հասարակապետական գընդերն ետ մղուեցան։ Ներսն ալ հասարակապետական կողմնակցութեան հանած զանազան յեղափոխութիւնները՝ զինու զօրութեամբ նուաճուեցան։ Ազգային ժողովէն 1849ին (Մարտ 18) հրատարակուած սահմանադրութիւնը Բրուսիա չընդունեցաւ։ Երբ ասոր վրայ Բրուսիայէն առաջարկուած (1850) միութեան սահմանադրութիւնը՝ տէրութեանց մեծագոյն մասին ընդունելի չեղաւ, Աւստրիայի ջանքովը (1851) դարձեալ գերմանական դաշնակցութեան հին սահմանադրութիւնը հաստատուեցաւ։

Գերմանական ազգը՝ նկատմամբ գիտութեանց ու քաղաքաքաքակրթութեան՝ անշուշտ առաջինն է։ Բրուսիայէն (1828) հնարուած մաքսի ընկերութեամբ — որուն մէջ մտան Աւստրիայէն զատ, ամէն գերմանական տէրութիւնները. — ներքին առուտուր ու արուեստ աւելի ընդարձակ ու արագ զարգացում մ'առին։ Կրթութիւնը՝ Գերմանիայի հասարակ ժողովրդեան մէջ, ուրիշ ամէն ազգերէն աւելի է։

2. Աւստրիական կայսրութիւնը, Մարտի 13ի (1848) ապստամբութեամբ — Մեդդեռնիկ իշխանին երկիրը թող տալէն, 1835ին՝ Փրանչիսկոս Բ.ի յաջորդող Փերտինանտոս Ա. կայսեր՝ Բրակ փախչելէն ու մամլոյ ազատութիւն եւ սահմանադրական կառավարութիւն խոստացուելէն ետեւ, — արիւնահեղ ներքին պատերազմաց ասպարէզ մ'եղաւ։ Բրակայի մէջ (Յունիս 17ին) ելած սլաւեան ապստամբութիւնը՝ նուաճեց Վինտիշկրեց, Յուլիսի մէջ. ոտք ելած Լոմպարտացիներուն՝ յաղթեց Ռատեցքի. Վիէննա, (ուր պատերազմի պաշտօնեան, Լադուր

Հոկ. 6ին սպանուեցաւ) Հոկտ. 31ին Վինտիշկրեցէն նուաճուեցաւ։ Ասոր վրայ նաեւ Հոկտ. 8ին, Գոշուդը՝ Պաշտպանութեան մասնաժողովոյն գաՀերէց ընտրող Հունգարիացիքը, Վինտիշկրեցէն ու Եըլաչիչէն ետ քաշուելու Հարկադրեցան։ Բայց երբ (Դեկտեմբ. 2ին) Փերդինանդոս Ա. ի նպաստ իւր Փրանչիսկոս Յոզէֆ Ա. եղբօրորդւոյն, գաՀէն Հրաժարեցաւ, եւ 1849ին Մարտի 4ին աւստրիական կայսրութեան Համար նոր սաՀմանադրութիւն մը Հրատարակուեցաւ, Հունգարական ազգային ժողովը, Տէպրէցինի մէջ (Ապր. 14) Հապսպուրկեան-Լոթարինգեան ցեղն Հունգարիայի գաՀէն ինկած Հրատարակեց, եւ Գոշուդը Հունգարական Հանրապետութեան գաՀերէց ընտրեց։ Թէպէտ աւստրիական բանակները՝ Սոլնոգի, Վայցէնի, Բէշդի ու Գոմոռնի ճակատներովը, մինչեւ Բրէսպուրկ մղուեցան, բայց Բասգեվիչի տակ՝ Յունիսի մէջ յառաջացող ռուսական բանակին առջեւ Հունգարացիք տեղի տալու ստիպուեցան։ Ասոր վրայ ազգային ժողովէն (28 Յուլիս), Գոշուդի տեղ Հրամանապետ անուանուած Կէօրկէին անձնատուր եղաւ, երբ Աւստրիացիք՝ Հայնաուի առաջնորդութեամբ Թայսի եւ Վիլակոշի քով (Աւգոստ. 7 եւ 13) յաղթեցին։ Գոշուդ, Պէմ եւ բանակին մէկ մասը Տաճկաստան փախաւ. որով Արատի, Բէդէրվարտայնի ու Գոմոռնի ամրութիւններն յանձնուելէն ետքը, ապստամբութիւնը՝ Սեպտեմբերի մէջ լմընցաւ։

3. Թէպէտ 1840ին Փրէտ. Գուլիէլմոս Գ. Բրուսիայի թագաւորին յաջորդող Փրէտ. Գուլիէլմոս Դ. 1848ին, Մարտ 18ին, խոստացած էր որ Գերմանիան դաշնակցեալ տէրութիւն մ՚ընէ, դաշնակցեալ բանակով ու նաւատորմղով՝ եւ սաՀմա-

նադրական վարչութիւն մը տայ, բայց եւ այնպէս նոյն օրը Պերլինի մէջ արիւնահեղ ապստամբութիւն մ'ելաւ. որով զօրքերը քաղքէն հեռանալու ստիպուեցան: Բողէնի ապստամբութիւնը Մայիսի մէջ նուաճուելէն եւ խել մը քաղաքներու մէջ, զինու զօրութեամբ խաղաղութիւնը դարձեալ հաստատուելէն ետքը, ընդհանուր ընտրութեամբ գումարուած ժողովը (Դեկտ. 5ին) լուծուեցաւ եւ այն օրը հրատարակուած սահմանադրութեան հրովարտակը պատգամաւորաց սենեակներուն հաւանութեամբը՝ Յունուար 31ին (1850) տէրութեան իբրեւ հիմնական օրէնք ճանչցուեցաւ: Փրեդերիկոս Գուլիէլմոս Դ.ին յաջորդեց (1861ին) իր եղբայրը՝ Գուլիէլմոս Ա., որ (1862ին) Պիզմարգի գահերէցութեամբ կազմուած պաշտօնարանին յանձնեց տէրութեան իրողութեանց վարչութիւնը: Դաւաճանութեամբ վիրաւորուած թագաւորը՝ 1878ին Յունիսի՝ տէրութեան վարչութիւնն իր Փրեդ. Գուլիէլմոս թագաժառանգ որդւոյն յանձնեց:

4. Կաստայնի պայմանադրութեան գործադրութեան եւ գերմանական դաշնակցութեան սահմանադրութիւնը քննելու համար Բրուսիայէն առաջարկուած գերմանական խորհրդանոցին վրայօք եղած կարծեաց տարբերութիւնը՝ յառաջ բերին գերմանական պատերազմը (1866 Յունիս): Այն միջոցին, որ Բրուսիայի բանակները Հաննովէր ու Տրէզտան բռնեցին, միացան Բրուսիայի երեք գլխաւոր բանակներն իրարու հետ. ու յաղթեցին (Յուլ. 3.) Աւստրիացւոց՝ Գէօնիկկրէցի քով: Հաննովէրի թագաւորը զինաթափ եղաւ. ու Աւստրիա՝ Վենետիկը Գաղղիացւոց կայսեր տուաւ, թէպէտ եւ Ալպրէխտ Աւստրիայի արքիդուքսը՝ Բրուսիայի հետ դաշնակից

Իտալացւոց յաղթած էր Գուստոցցայի քով։ Պաւիերացիք Մայնէն անդին անցնելու հարկադրեցան ու Բրուսիացիք Ֆոկէլ զօրապետին առաջնորդութեամբ Ֆրանգֆուրդ մտան։ Այս. եղած ժամանակ, զարկին Աւստրիացիք Իտալական նաւատորմիղը Լիսսայի քով։ Նիգոլսպուրկի նախակարգ խաղաղութեան պայմանագրութենէն ետեւ, Վիւրդէնպէրկ, Պաւիերա՝ ու Պատէն՝ Բրուսիայի հետ պաշտպանողական ու յարձակողական դաշնաւորութիւններ ըրին։ Իսկ Աւստրիա՝ Աւգ. 23ին Բրուսիայի հետ Բրակի խաղաղութիւնն ըրաւ. որուն մէջ հաւանեցաւ՝ Գերմանական դաշնակցութեան լուծուելուն. աւելի անձուկ դաշնակցութեան մը կազմուելուն, զոր՝ Բրուսիայի թագաւորը, Մայնին հիւսիսային կողմը պիտի հիմնէր. եւ լոմպարտական վենետական թագաւորութեան՝ Իտալիայի հետ միանալուն։ Բրուսիայի թագաւորը՝ Շլէզուիկ, Հոլշդայն, Հաննովէր, Հէսսէն Գասսէլ, Նասսաւ ու Ֆրանգֆուրդն՝ իր տէրութեան հետ միացընելէն ետեւ, հիւսիսային գերմանական դաշնակցութեան գլուխն անցաւ. ասոր մէջ մտան Գերմանիայի տէրութիւնները՝ Աւստրիայէն, Պաւիերայէն, Վիւրդէմպէրկէն ու Պատընէն զատ։ Ասոր վրայ հարաւ. Գերմանիայի տէրութիւնները, դրին Բրուսիայի հետ պաշտպանողական ու յարձակողական դաշինք մը, իրարու սահմաններն ամբողջ պահելու ապահովացուցմամբ։

Աւստրիայի մէջ, դժբախտ պատերազմէն ետեւ, սկսաւ վերանորոգութիւն մը։ Յառաջուան հունգարական սահմանադրութիւնը հաստատուեցաւ՝ Փրանկ. Յովսէփ կայսեր Բէշդի մէջ (1867) հանդիսութեամբ Հունգարիայի թագաւոր պսակուելովը։

5. Աւստրիա (1878ին առած 70.000 քռ. հազարամէտր տարած. եւ 1¼ միլ. բն. ունեցող Պոսնիան ու Հերցեկովինան մէկ տեղ առնելով — 36½ միլ. բն. եւ 650.000 քռ. հազարամէտր տար.) ամենալաւ հողով ու երկրամշակութեամբ, բերքերու կողմանէ Եւրոպայի ամենահարուստ երկիրն է. բայց երկարատեւ պատերազմներով բարօրութիւնը շատ կրած ու ելեւմուտքը խեղճ վիճակի մէջ է։

Բրուսիա (450.000 քռ. հզրմտր. տար. 23½ միլ. բն.) Եւրոպայի հինգ առաջին տէրութեանց մէջէն, տարածութեամբ, ինչպէս նաեւ բնակչաց կողմանէ ամենէն աղքատն ու պզտիկն է. բայց իր զինուորական դրութեամբը, իր կանոնաւորեալ վարչութեամբն ու ժողովրդեան քաղաքակրթութեամբը՝ Եւրոպայի վրայ շատ մեծ ազդեցութիւն ունի։

Հիւսիսային գերմանական դաշնակցութիւնը՝ 475.000 քռ. հզրմէտր. տարած. եւ 29 միլ. բն. ունի։ Դաշնակցութեան օրէնսդրութիւնը կ'ըլլայ դաշնակցութեան խորհրդոյն (որուն մէջ Բրուսիա ունի 17, Սաքսոնիա 4, Շվերին ու Պրաւնշվայկ՝ երկերկու, իսկ մնացածները մէյմէկ ձայն), եւ ընդհանուր ուղղակի ընտրութեամբ եղած ազգային ժողովին ձեռօք։ Դաշնակցութեան գահերիցութիւնը Բրուսիայի ձեռքն է. որ դաշնակցութիւնն ըստ ազգաց իրաւանց ներկայացընելու, պատերազմ՝ հրատարակելու, խաղաղութիւն եւ դաշինք դնելու, դեսպաններ խրկելու եւ այլն, իրաւունք ունի. եւ դաշնակցութեան ցամաքային ու ծովային զօրաց վրայ վերին հրամանատար է (Թ. 132)։

## 128. Հելուետիա, Հոլլանտա, Բելգիա.

1. Ե՞րբ աւելցան եօթն արտաքին գաւառները նախընթացներուն վրայ։ Ի՞նչ վիճակի մէջ է հիմակ Հելուետիա։ — 2. Ի՞նչ փոփոխութիւններ կրեցին Ստորին գաւառաց երկիրները վերջին 50 տարուան մէջ։ — 3. Ի՞նչ վիճակի մէջ են հիմակ Հոլլանտա ու Բելգիա։

1. Հելուետիայի (83 Թ.ին մէջ յիշուած) 15 գաւառներուն վրայ՝ Գաղղիայի յեղափոխութեան խառնակութիւններէն ետեւ, աւելցան 1815ին դաշնակցութեան ժողովին ձեռօք՝ եօթը արտաքին գաւառներն ալ. այսինքն՝ Ս. Կալլէն, Արկաւ, Թուրկաւ, Դէասին, Վատ, Նէօշադել ու Կէնֆ։ 1830ին ծագած շփոթութիւններէն ետեւ, քանի մը գաւառներու մէջ նոր (ռամկապետական) սահմանադրութիւն խոթուեցաւ։ Իսկ եօթն ուղղափառ

գաւառներուն մասնական դաշնակցութիւնը, դաշնակցութեան զօրքովը 1847ին լուծուեցաւ։

Հելուետիայի (40.000 քռ. հզմղր. տարած. $2^{1}/_{2}$ միլ. բն.) իրողութիւններն եւ մանաւանդ պատերազմներն ու դաշնակցութիւնները՝ խորհրդարանին մէջ կ'ըլլան, որ ամէն երկու տարի մէյ մը Զիւրիխի, Պեռնի եւ Լուցեռնի մէջ կը ժողովի։ Ժողովուրդն ալ փոխանորդներով կամ գաւառական հասարակութեանց ձեռօք օրէնքներ կու տայ. որոնց գործադրութիւնը, օրէնսդիր իշխանութենէն անուանուած՝ տէրութեան խորհրդարանը կը հոգայ։

2. Յուլիսի ապստամբութեան հետեւութեամբ՝ Պրիւսէլի մէջ (1830ին) Աւգ. 26 յեղափոխութիւն մ'ելաւ, որ Ստորին գաւառաց հարաւ. ուղղափառ մասին վրայ ալ շուտ մը տարածուեցաւ։ Օրանիայի տունը մերժուեցաւ, եւ Անգղիայի ազդեցութեամբ՝ Գոպուրկի Լէոփոլտոս իշխանը 1834ին թագաւոր ընտրուեցաւ։ Լոնտոնի դեսպանաժողովոյն մէջ՝ խաղաղութեան համար եղած նախակարգ խորհուրդները՝ Հոլլանտայի թագաւորը չընդունեցաւ։ Հոլլանտացիք՝ Օրանիայի իշխանին առաջնորդութեամբ Բելգիայի մէջ յաղթութեամբ յառաջացան. բայց գաղղիական բանակի մը՝ Բելգիա մտնելովը՝ հարկադրեցան ետ քաշուիլ։ Ասոր վրայ 1832ին (դեկտ. 23) Անդուերբիա, Հոլլանտացիներէն առնուեցաւ։ Երկու տէրութեանց մէջի իրողութիւնները (1839ին) Լոնտոնի դեսպանաժողովոյն վերջնական որոշմունքներովը կարգի խոթուեցան։ Նաբոլէոն կայսեր ու Հոլլանտայի թագաւորին մէջ՝ Լուքսէմպուրկի մեծ դքսութիւնը գնելու վրայ եղած բանակցութիւնները՝ Բրուսիայի դիմադրութեամբ խափանուեցան։ 1867ին Լոնտոնի դեսպանաժողովին մէջ՝ (որ Իտալիա վեցերորդ մեծ տէրութիւն ճանչցաւ,) Դքսութեան չէզոքութիւնը՝ մեծ տէրութիւններէն ճանչցուեցաւ, եւ ընդ հակառակն յառա-

ջադոյն գերմանական դաշնակցութեան վերաբերող Լուքսէմպուրկի ամրութիւնները քանդուեցան։

3. Հոլլանտա (3½ միլ. բն. ու 29·500 քռ. հազարմետր. տար.) առեւտրոյ կողմանէ, դեռ մեծ եւրոպական տէրութեանց շարքը կը գերազանցէ. երկրագործութիւնն բաւ բաւական ծաղկեալ է. գործարաններ ալ չեն պակսիր։ Ժողովրդեան բարօրութիւնը՝ հին ժամանակէն մնացած ազգային մեծ հարստութեան հետեւութիւնն է։ Թագաւորին իշխանութիւնը (Գուլիէլմոս Ա.ին հրաժարելէն ետեւ 1840ին իր որդին Գուլիէլմոս Բ. ու 1849էն վեր Գուլիէլմոս Գ.) չափաւորուած է ընդհանուր կարգաժողովներուն ձեռքովը։

Բելգիա, Հոլլանտայէն քիչ մը պզտիկ, բայց մէկ միլիոն բնակչով աւելի, 1865էն վեր Լէոպոլտոս Բ.ին տակ, արուեստից մէջ միայն Անգղիայէն ետ է։ Առեւտուրն օր քան զօր ընդարձակուելու վրայ է (երկաթուղիներ, երկաթի ու հանքային ածխոյ առատութիւն)։ Ժողովրդեան կրթութիւնը՝ Հոլլանտայի չափ չէ։ Սահմանադրութիւնը, Գաղղիայի 1830ի սահմանադրութեան կաղապարին վրայ շինուած է։

## 129. Անգղիա, Դանիա, Շուէտ, Նորուէգիա.

1. Ի՞նչ փոփոխութիւններ կրեց Անգղիա 1820էն ետքը. ի՞նչ աստիճանի քաղաքակրթութեան մէջ է այսօր։ — 2. Ե՞րբ միացաւ Շլեզուիկ Դանիայի հետ. ի՞նչ պատճառաւ ծագեցաւ պրուսիական-դանիական պատերազմը. ի՞նչ հետեւութիւն ունեցաւ. ի՞նչ վիճակի մէջ կը գտնուին այսօրուան օրս Դանիա, Շուէտ ու Նորուէգիա։

1. Անգլիայի մէջ, Գէորգ Գ.ին յաջորդեց Գէորգ Դ. (1820-1830)։ Ասոր ատեն Գէննինկ (✝ 1827) իր ժամանակին ամենամեծ քաղաքագէտը, անգղիական սահմանադրութեան մէջ ըլլալու նորոգութիւնները նախապատրաստեց (Ազատութիւն ուղղափառաց)։ Գուլիէլմոս Դ.ին ժամանակ (1830-1837) Կրէյ դուքսը՝ գլուխ հանեց նորոգութեան օրինագիրն ու գերեաց ազատութիւնը։ Իրեն յաջորդող Վիկտորիայի (1840էն — որ Սաքսէն Գոպուրկի, Ալբերտոս իշխանին հետ ամուսնացած էր) ատեն՝ պարապի ելաւ, Մէլպուռնեան Հուիկ պաշտօնարանին՝ աղքատ ժողովրդեան վիճակը լաւացընե-

ներլու փորձը՝ Դորքներու ընդդիմանալովը. մինչեւ որ (1846ին), Բիլեան՝ Դորքի պաշտօնարանը, ցորենի օրէնքը վերցընելով՝ աղքատ ժողովրդեան վիճակն ըստ մասին լաւագունեցաւ:

Անգղիայի՝ (33 միլ. բն. 310.000 քռ. հազրմղր. տար.) սահմանադրական միապետութեան հայրենիքին մէջ, քաղաքական կեանքը՝ ուրիշ ամէն երկիրներէն աւելի ժողովրդեան մէջ թափանցած է: Գործարանները՝ շոգեշարժ մեքենաներուն գիւտովը (հանքային ածխոյ անհատնելի մթերք), արտաքոյ կարգի տարածութիւն առած են: Վաճառականութիւնը՝ բովանդակ հողագունդը բռնած է. վասն զի անգղիական գաղթականութիւնները (բնակ. ամէնը 120 միլիոնէն աւելի) բոլոր երկրիս վրայ տարածուած են: Ներքին առուտուրը՝ անթիւ ջրանցքներով, ճամբաներով ու երկաթուղիներով շատ դիւրինցուած է: Անկէց է չափազանց հարստութիւնը:

2. Դանիայի մէջ, Փրէտէրիկոս Զ.ին յաջորդեց 1839ին, Քրիստիանոս Ը. եւ ասոր ալ 1848ին՝ իր որդին Փրէտէրիկոս Է: Արդէն Քրիստ. Ը. իր Բոյց Ըղըոյք վճռած էր (8 Յուլ. 1848,) դքսութեանց Դանիայի հետ մի ըլլալը: Փրեդերիկոս Է. Կոբէնհակի մէջ եղած յեղափոխական շարժմամբ մը, ստիպուեցաւ Շլեզուիկի՝ Դանիայի հետ միանալը հրատարակելու: — Շլեզուիկի ու Հոլշդայնի վտանգի մէջ դրուած անկախութիւնը պաշտպանելու համար 1848ին, Ապր. 4ին, գերմանական դաշնակցութեան գնդեր Հոլշդայն մտան ու Եիւդլանտը բռնեցին: Բայց երբ Աւգոստ. 26ին դրուած զինադադարը, յաջորդ տարին (փետր.) Դանիայի ձեռօք լուծուեցաւ, թշնամութիւններն Ապրիլի մէջ նորէն սկսան. սակայն 1850ի խաղաղութեամբ լմընցան. որուն համեմատ Շլեզուիկ ու Հոլշդայն, Դանիայի հետ յառաջուան յարաբերութիւնը պիտ'որ ունենային: 1852ին; Լոնտոնի դաշամբ, Քրիստիանոս իշխանը՝ դանիական աէրութեան թագաժառանգ ճանչցուեցաւ: Երբ սոփ-

կայ՝ գահակալութեան ատեն, (1863 Քրիստիանոս Թ.) Շլեզուիկը, Դանիայի տէրութեան մէջ առաւ՝ Սաքսոնիացիք ու Հաննովէրցիք, Հոլշթայնը բռնեցին. իսկ Պրուսիացիք ու Աւստրիացիք (1864ին) Շլեզուիկ մտան. եւ Իւթլանտիան առնելէն ետեւ՝ Վիէննայի խաղաղութեամբ՝ Քրիստիանոս Թ. Էլպայի դքսութիւնները Պրուսիայի ու Աւստրիայի տուաւ: Կաստայնի դաշինքով՝ Պրուսիա ընդունեցաւ 1865ին Լաուէնպուրկն ու Շլեզուիկի վարչութիւնը. իսկ Աւստրիա՝ Հոլշթայնի վարչութիւնը: 1866ին Շլեզուիկ ու Հոլշթայն՝ Պրուսիայի հետ միացան:

Դանիա (38.000 քռ. հազրմէտր. տարած. եւ 1½միլ. բն.) Անգղիայի հետ բրած վերջին պատերազմովը՝ յառաջուան բարօրութիւնը կորսնցուց: Արտաքին առեւտուրը շատ նուազած է. իսկ ներքինը՝ գէշ ճամբաներուն համար ոչինչ: Նաեւ արուեստը՝ երկրին կարօտութիւնը լեցնելու բաւական չէ: Փրեդերիկոս Է. խոթեց սահմանադրական կառավարութիւն:

Շուետ ու Նորուեգիա (750.000 քռ. հազրմէտր. տար. եւ 6 միլ. բն. — 1813էն վեր Կարոլոս ԺԴ. Յովհ. Պեռնատոթի, 1844էն ասոր որդւոյն Ոսգարի, 1859էն Կարոլոս ԺԵ.ի տակ.) իր բերքերուն քիչութեանը պատճառաւ նուազ առեւտուր ու արուեստ ունի. բայց երկրագործութեան շատ խնամք կը տարուի: Թագաւորին իշխանութիւնը՝ թէ Շուետի եւ թէ Նորուեգիայի մէջ իւրաքանչիւր տէրութեան առանձին խորհրդանոցին ձեռօք չափաւորուած է:

## 130. Ռուսիա, Լեհաստան.

1. Ինչու համար Ռուսիա Օսմանեանց դէմ պատերազմ հրատարակեց. — 2. Ինչ վախճան ունեցաւ Լեհաց 1830ին ապստամբութիւնը: — 3. Ինչ վիճակի մէջ է հիմակ Ռուսիա:

1. Նիկողայոս Ա. (1825էն՝ Ռուսիայի կայսր) Դրան դէմ պատերազմ հրատարակեց 1828ին, յառաջուան դաշինքները չյարգելուն համար: Ռուսք աշխարհակալեցին Մոլտաւիան ու Վալաքիան, բռնեցին Վառնան ու 1829ին Սիլիստրիան. ուր անդիէն Պասգեվիչ՝ Երեւանէն (զոր 1828ին Պարսիկներէն

առած էր) Հայաստան յառաջ կը քալէր։ Տիպիչ Պալքաններն անցաւ. եւ Ադրիանուպոլիս բռնելով՝ Դուռը խաղաղութիւն ընելու ստիպեց։ Ասով քանի մը գաւառներէն զատ, ընդունեցան Ռուսք, խել մը առեւտրական առանձնաշնորհութիւններ։ Դուռը Յունաստանի անկախութիւնը ճանչցաւ։

2. Լեհաստանի մէջ, նախնական անկախութեան յիշատակը դեռ մեռած չէր։ Ռուսաց դէմ անմոռաց ատելութիւն, ինչպէս նաեւ Գաղղիայի օրինակը՝ յառաջ բերին 1830ին, Նոյեմբ. 29ին, Վարսաւիայի ապստամբութիւնը. որ ռուսական գնդերը հալածելէն ետեւ, բոլոր երկրի մէջ տարածուեցաւ։ Խլոբիցքի հրամանատարը շուտ մը կարգ կանոն դրաւ։ Ազգային ժողովը՝ Լեհաստանի գահը դատարկացած հրատարակեց (1831 Յունվ.)։ Ժողովուրդը զէնքի վազեց. Ռուսք՝ Տիպիչի առաջնորդութեամբ շատ մեծ ընդդիմութիւն գտան։ Բասգեւիչ անցաւ Վայքսէլ գետն ու առաւ Վարսաւիան (Սեպտ. 7ին)։ Ասոր վրայ Լիթուանիայի ու Վոլինիայի մէջ ելած ապստամբութիւնն ալ նուաճուեցաւ։ Լեհական առանձին գունդերը՝ աւստրիական ու բրուսիական երկիրը փախան։ Բասգեւիչ (Վարսաւիայի իշխանն) եղաւ Լեհաստանի փոխարքայ։ Լեհաստան (1832ին) ռուսական պետութեան հետ միացաւ։ Լեհական նոր ապստամբութիւն մը (1863ին) մեծ սաստկութեամբ (Մուրաւիէֆ) զսպուեցաւ։

3. Եւրոպայի կէսն ու Ասիայի մէկ երրորդական մասը. (ընդ. ամէնը հողագնդիս $^{1}/_{25}$ մասը. կամ $5^{1}/_{2}$ միլիոն քառ. հղմէդր.) պարունակող եւ 80 միլիոն բնակիչ ունեցող Ռուսիան, քաղաքակրթութեան ամէն ճիւղերուն մէջ Եւրոպայէն դեռ շատ ետ է։ Ժողովուրդն ուսումնական կրթութիւն գրեթէ ամենեւին չունի։ Գործարանները՝ քիչ. բայց ընդ հակառակն առեւտուրն ընդարձակ է։ Երկրամշակութիւն, բովագործութիւն ու որսորդութիւն

ազգային հարստութեան աղբիւրներ են։ Աղեքսանդր Բ., (1855էն վեր,) աշխարհակալեց 1858ին Ամուրի երկիրը. նուաճեց 1859ին, Կովկասու դեռ անկախ ժողովուրդները եւ վերցուց 1860ին գերութիւնը։ Յաղթեց 1878ին Տաճկաց ու ընդունեցաւ նորէն Պեսարաբիան։

## 131. Տաճկաստան, Յունաստան.

1. Ե՞րբ ճանչցաւ Տաճկի տէրութիւնը՝ Յունաստանի ազատութիւնը։ — 2. Եգիպտոսի ու Դրան մէջ եղած անհամաձայնութիւնն ինչպէս շարունակուեցաւ. — 3. Ի՞նչ է 1853ին ռուսական-տաճկական պատերազմին պատճառը. ի՞նչպէս լմնցաւ։ — 4. Ի՞նչ վիճակի մէջ են այսօր Յունաստան, Տաճկաստան։

1. Մոլտաւիայի մէջ, 1821ին Աղեքսանդր Իբսիլանդիի առաջնորդութեամբ յեղափոխութիւն մ'ելաւ, որ թէպէտ շուտ ու խստութեամբ նուաճուեցաւ, բայց ասիկայ ան հետեւութիւնն ունեցաւ որ բոլոր Յոյն ժողովուրդն ոտք ելաւ։ Տաճիկները՝ հետ զհետէ բերդերը քաշուելու հարկադրեցան եւ 1822ին Յունաստանի անկախութիւնը հրատարակուեցաւ։ Թէ՛ ցամաքի (Ոդիսեւս, Գոլոգոդրոնի, Պոծարիս) եւ թէ՛ ծովու վրայ (Միաուլիս, Գանարիս) Յոյները մեծ քաջութեամբ պատերազմեցան։ Սակայն (1825ին) Իպրահիմ, Եգիպտոսի փաշային որդին, Մորէա ցամաք ելլելով՝ բռնեց Միսոլունկին (1826) եւ ապականեց երկիրը. որ նոյն իսկ Գաբոտիսդրիայի գահերէցընտրուելէն ետքը՝ մեծ խառնակութեան մէջ մնաց։ — Լոնտոնի դաշնագրութեամբ (1827), Անգղիա, Գաղղիա եւ Ռուսիա ետեւէ եղան, Դուռը հաւանցընելու, որ Յունաստան ազատ թողու։ Ասոնց միացեալ նաւատորմիղը Նաւարինի քով տաճկական-եգիպտական նաւատորմիղն ոչնչացընելէն եւ գաղղիական բանակ մը, Եգիպտացիները՝ Մորէայէն վռնտելէն ետեւ, Դուռը՝ ճանչցաւ Ադրիանուպոլսոյ խաղաղութեամբ, 1829ին Յունաստանի անկախութիւնը։ Գաբոտիսդրիայի

սպանուելէն ետեւ, 1832ին Պաւիերայի Օթոն իշխանն ու ասոր մերժմանէն ետեւ, 1863 Դանիայի Գուլիէլմոս իշխանը, իբրեւ Գէորգ Ա. Յունաստանի թագաւոր ընտրուեցան։

2. Մէհէմմէտ Ալիի, Եգիպտոսի գրեթէ բոլորովին անկախ փաշային դէմ, հարկ եղաւ որ Սուլդան Մահմուտ Բ. (1833) ռուսական բանակ մը օգնութեան կանչէ։ Ռուսք թէպէտ արգելեցին Իպրահիմի յառաջ քալելը. բայց Սուլդանը հարկադրեցաւ՝ Ասորիքը փաշային աւատ տալու. որ թէ հոն ու թէ Եգիպտոս, զանազան նորոգութիւններ խոթեց։ 1839ին, Մէհէմմէտ Ալի՝ ապստամբ հրատարակուեցաւ. բայց իր որդին Իպրահիմ, փճացուց տաճկական բանակը Նիսիբի քով։ Իսկ Մահմուտի մահուանէն ետքը (1 Յուլ. 1839), նաւատորմղի պաշտօնեան՝ բոլոր նաւատորմիղովը Եգիպտացւոց կողմն անցաւ։ Չորից (Անգղիայի, Ռուսիայի, Աւստրիայի, Պրուսիայի) դաշնաւորութեամբն (1840 Յուլիս 15) Իպրահիմ փաշան Ասորիքէն վռնտուեցաւ ու Մէհէմմէտ Ալի († 1849) Եգիպտոսի ժառանգական իշխան ճանչցուեցաւ՝ բայց բարձրագոյն Դրան վերին իշխանութեանը տակ։

3. Ռուսական տաճկական պատերազմն որ ելաւ 1853ին, (վասն զի Ռուսիա, բոլոր Տաճկաստանի մէջ գտնուած յոյն քրիստոնէից վրայ պաշտպանութիւն կը պահանջէր,) սկսաւ Կորչաքովի առաջնորդութեամբ՝ ռուսական բանակի մը, Մոլտաւիա ու Վալաքիա մտնելովն եւ Սինոպի նաւահանգստին մէջ տաճկական նաւատորմիղը փճանալով։ Սիլիստրիան պարապ տեղ պաշարելէն ետեւ՝ Ռուսք հարկադրեցան Դանուբի իշխանութիւնները թողուլ (1854)։ Գաղղիական-անգղիական (ետքէն սար-

դինիականով մը զօրացած) բանակ մը՝ Սէնդ-Առնոյի եւ Ռակլանի առաջնորդութեամբ Սեպ. 14ին, Խրիմ ցամաք ելաւ. յաղթեց Պալաքլաւայի ու Ինկերմանի քով: Ասոր վրայ Բելիսիէ Սեպտեմբ. 8ին, 1855ին (Մալաքով յարձակմամբ առնելով) տիրեց Սեւաստոպոլի հարաւ. մասին. երբ անդիէն ռուսական բանակ մը, Մուրաւիէֆի առաջնորդութեամբ, Նոյեմբերի մէջ Կարսը բռնեց: 1856ին (Մարտի 16ին) Բարիզի խաղաղութեամբ՝ Ռուսիա, Դանուբի բերանն եղած երկիրը՝ Մոլտաւիայի տուաւ. եւ Դանուբեան իշխանութեանց վրայ ունեցած պաշտպանութենէն հրաժարեցաւ:

Յունաստան, հին Հելլադը (Պելոպոնեսոս ու Եւբէա, Կիկլադեաններն ու 1863էն վեր Յոնիական կղզիները, 50.000 քռ. հզրմէտր. տարած. եւ 1½ միլ. բն.) ազատութեան պատերազմովը ապականած ու անմարդաբնակ եղած է: Երկրի մշակութիւնը, ժողովրդեան կրթութիւնն ու արուեստք շատ ետ են. բայց առեւտուրը բանուկ է: Լեզուն եւ հին բնաւորութեան հետքը՝ մնացած են ազգին վրայ. բայց երկայնժամանակեայ բռնակալութեամբ ապականած: 1848ին Ոթոն Թագաւորն ապստամբութենէ մը ստիպուած՝ ժողովրդեան սահմանադրական վարութիւն տուաւ:

Տաճկաստան (Պերլինի համաժողովով՝ Պոսնիա-Հերցէկովինան, Մոնթէնեկրոն, Սերուիան, Ռումէնիան, Պուլկարիայի ու Հայաստանի մէկ մասն եւ Կիպրոս կղզին, ընդ ամէնը 270.000 քռ. հազարմտր. երկիր ու 6 միլիոնէն աւելի բն. կորանցընելէն ետեւ,) 1.900.000 քռ. հազարամտր. տար. եւ 22 միլիոն բնակչով — շատ տկարացած է: Սուլդան Մահմուտ Բ. արիւնահեղ պատերազմէ մ'ետեւ վերցուց Ենիչէրիները. եւ իր բանակը եւրոպական կարգաւորութեան մտուցուց: 1839ին իրեն յաջորդող Ապտիւլ Մէճիտ որդին Կիւլհանէի հադդիշէրիֆով խոստացաւ տէրութեան մէջ եղած քրիստոնեաներուն վիճակը լաւացընել, զանոնք զինուորական ծառայութեան առնուլ եւ իրենց ամէն բանի մէջ հաւասարութիւն ու ազատութիւն շնորհել. սակայն խոստմունքները մնացին թղթի վրայ: Մէճիտի յաջորդեց իր ընչաքաղց եղբայրն Ապտիւլ Ազիզ (1861ին). որուն մեծ արդիւնքն եղաւ, որ տաճկական նաւատորմղին նոր կենդանութիւն տուաւ: Սակայն վերանորոգութիւն ու եւրոպական սահմանադրութիւն պահանջող ժողովրդէն վար առնուեցաւ

(1876 Յունիս 1.) ու ետքը գահ հանուեցաւ եղբօրորդին, Մուրատ Ե. բայց աս ալ մտաց անկարողութեան համար երեք ամսէն հրաժարելու ստիպուելով՝ Թագաւոր հռչակուեցաւ (Սեպտեմբ. 1.) անոր եղբայրը՝ Ապտիւլ Համիտ։ Այս միջոցին Հերցեկովինայի, Մոնթէնեկրոյի եւ քիչ մը ետքը Պուլկարիայի մէջ ելած ապստամբութիւնը ճնշուած ատեն, պատերազմ հրատարակեց Սերուիա Դրան դէմ. սակայն Ճունիշի պատերազմով (Ապտիւլ Գէրիմ) յաղթուեցաւ։ Թէպէտ անոր վրայ խոստացուած սահմանադրութիւնը տրուեցաւ (1876 Դեկտ. 23). բայց եւ այնպէս տժգոհ ու քրիստոնէից պաշտպանութիւն պահանջող Ռուսիան, Դրան դէմ պատերազմ հրատարակեց (1877. Ապր. 24, Թ. 133)։

## 132. Գերմանիական-Գաղղիական պատերազմ. 1870-1871.

1. Ի՛նչ պատճառաւ ծագեցաւ գերմանական-գաղղիական պատերազմը։ — 2. Ո՛ւր եղաւ Սետանի ճակատամարտը. ի՛նչ հետեւութիւն ունեցաւ։ — 3. Թշնամութիւնները ի՛նչպէս լմնցան. ի՛նչ կորսնցուց Գաղղիա աս պատերազմով։

1. Երբ սպանիական առժամանակեայ կառավարութիւնն (125) Սպանիայի թագը Լէօբոլտոս Հոհէնցոլէրնի իշխանին՝ Բրուսիայի տիրող տան մերձաւոր ազգականին տալ կ'ուզէր, Նաբոլէոն Գ. այս բանս Բրուսիայի դէմ շատոնց բաղձացած պատերազմին իբրեւ յարմար առիթ առաւ։ Բրուսիա թէպէտ սպանիական թագը մերժեց, բայց եւ այնպէս Գաղղիա՝ պատերազմ հրատարակեց Բրուսիայի դէմ (1870 Յուլ. 19)։ Գուլիէլմոս՝ Բրուսիայի թագաւորը (2 Աւգ.) մինչեւ այն ատեն չլսուած շտութեամբ գումարուած գերմանական հզօր բանակին (600.000 հոգի) վերին հրամանատարութիւնը վրան առած՝ զանիկայ երեք ճիւղի բաժնելով դէպ ի սահման յառաջացաւ։ Երկու օր ետքը (Աւգ. 4) Բրուսիայի թագաժառանգին առաջնորդութեան տակ եղած Երրորդ բանակը, զարկաւ Գաղղիացիքը Վայսէնպուրկի քով. Աւգ. 6ին ալ՝ Վէօրդի քով՝

Մագ Մահոնի վրայ փառաւոր յաղթութիւն մը կանգնեց։ Յաղթուած գաղղիական բանակները դէպ ի Մէց քաշուեցան. բայց հոս (Աւգ. 14ին) գերմանական Առաջին բանակէն դարձեալ յաղթուեցան։ Մար-լա-Դուրի եւ Վիոնվիլի (16 Աւգոստ.) 12 ժամուան սաստիկ պատերազմէն ետեւ, Գաղղիացիք Մէց վռնտուեցան. եւ վերջապէս Աւգ. 18ին, բովանդակ գաղղիական բանակը Ռեզոնվիլի եւ Կրավըլոդի քով՝ Գուլիելմոս թագաւորէն յարձակում մը կրելով՝ բոլորովին յաղթուեցաւ, եւ Մէցի մէջ պաշարուելով՝ Փարիզի հետ ունեցած յարաբերութիւնէն կտրուեցաւ։

2. Մագ Մահոնի՝ Մէցի օգնութեան հասնելու պարապ փորձէն ետեւ (ուր գաղղիական բանակը, Պազէն մարաջախտին հետ գերմանական Երկրորդ բանակէն փակուած էր) Պոմոնի փառաւոր ճակատով (Աւգ. 30) Մագ Մահոն մեծ կորստով Սըտան քաշուելու հարկադրեցաւ։ Հոն՝ Սեպտ. մէկին ու երկուքին, կրկնուեցաւ ահագին պատերազմը, եւ 150.000 մարդէ կազմուած գաղղիական բանակն այն աստիճանի կոտորած կրեց, որ բանակին մնացորդը, Սեպտեմբ. 2ին կէս օր, Սըտանի ամրութեանցը հետ յանձնուելու ստիպուեցաւ։ Նաբոլէոն Գ. ինք զինք յանձնեց Գուլիելմոսի. իսկ Գաղղիայի կառավարութիւնը՝ Եւգինէ կայսրուհւոյն։ — Այս պարտութեանց հետեւութեամբ՝ Փարիզի մէջ, կայսրը վար առնուեցաւ. եւ հանրապետութիւն հրատարակուեցաւ, զոր բոլոր Գաղղիա առանց կաթիլ մը արեան ընդունեցաւ։ Պատերազմը յառաջ տանիլը՝ վրան առաւ Ազգային պաշտպանութեան կառավարութիւնը։ Կայսրուհին, որդւոյն հետ Անգղիա փախաւ։

3. Սեպտեմբերի մէջ, Բարիզ ամէն կողմանէ փակուեցաւ. եւ Լաոնի, Գուլի ու Ստրասպուրկի (Սեպտ. 27) բերդերն առնուեցան։ Հոկտ. 27ին յանձնեց Պազէն Մարաջախտն իր բանակը (173.000 զինուոր) ու Մեց բերդը՝ Փրեդերիկոս Կարոլոս իշխանին։ Գաղղիայի պատերազմի պաշտօնէին, կամպէդդայի, Պորտոյի մէջ ըրած ամէն ջանքերը՝ նոր բանակով Բարիզի մօտենալու, անկարելի եղաւ։ Ասոր վրայ Գաղղիական հիւսիսային բանակը, Ամիէնի քով եւ Մղուելէն (Նպ. 27) ետեւ, Յունուար 19ին (1871) Ս. Գէնդէնի քով բոլորովին յաղթուեցաւ։ Լուարի նոր բանակը՝ փճացուց Փրեդերիկոս Կարոլոս (Յունուար 6 — 12). իսկ Պուրպագիի առաջնորդութեան տակ եղած հարաւային բանակը, Վէրտէր զօրապետը՝ Պէլֆորի քով (Յունուար 15 — 17)։ Այս միջոցին, ստիպուեցաւ նաեւ Բարիզ, վերջի աստիճանի նեղ մտնելէն, եւ խել մը արիւնահեղ՝ բայց միշտ անօգուտ յարձակմունքներ ընելէն ետեւ (1871. Յունվ. 28) յանձնուելու։ Երեք շաբթուան զինադադար եղաւ. Բարիզի ամրութիւնները Գերմանացւոց յանձնուեցան, Բարիզ քանի մ'օր գերմանական զօրքերէն բռնուեցաւ։ Պորտոյ կանչուած ազգային ժողովն զԹիէր՝ Գաղղիայի կառավարութեան գլուխ դրաւ. որ Գերմանիայի ատենադպրին՝ Պիզմարգ իշխանին հետ, խաղաղութեան դաշինք դրաւ։ Ասոր զօրութեամբ գերմանական Լոթարինգիան՝ Մեցի հետ, եւ Էլզաս գաւառը, Գերմանիայի տրուեցաւ։ Գաղղիա՝ վճարեց 5000 միլ. Ֆր. պատերազմի ծախք։

Աս եղած ժամանակ Գերմանացի իշխանները՝ Գուլիէլմոսի ընծայեցին կայսրութեան թագը — որ նոյնը յանձն առաւ — իրեն՝ եւ Բրուսիայի գահին վրայ իրեն յաջորդներուն համար։

## 133. Ռուսական-տաճկական պատերազմ. 1877-1878.

1. Ինչ պատճառաւ ծագեցաւ 1877ին ռուսական-տաճկական պատերազմը. ինչ ճակատներ եղան Հայաստանի մէջ։ — 2. Ե՛րբ անցան Ռուսերը՝ Դանուբը. Ի՛նչ յաջողութիւն ունեցան ռուսք Տաճկաց դէմ, Եւրոպայի մէջ. Ինչ կը պարունակէ Ս. Ստեփանոյի դաշինքը։ — 3. Ե՛րբ եղաւ Պերլինի համաժողովը. Անոր մէջ ինչ որոշումներ եղան։ — 4. Անգղիայի ու Դրան մէջ եղած յարձակողական ու պաշտպանողական դաշանք ինչ ընդունեցաւ առաջինը։

1. Երբ Աւստրիայի արտաքին գործոց պաշտօնէին, եւ ասոր վրայ Բրուսիայի եւ Ռուսիայի, քրիստոնէից հաւասարութիւն պահանջող յիշատակագիրները Դուռը չընդունեցաւ, եւ Կոստանդինուպոլսոյ մէջ վեց մեծ տէրութեանց դեսպանաժողովն անօգուտ տեղ աշխատելէն ետեւ լուծուեցաւ, Ռուսիա՝ Բարձրագոյն Դրան դէմ պատերազմ հրատարակեց (1877 Ապր. 24). եւ Նիկողայոս մեծ դքսին առաջնորդութեամբ՝ անմիջապէս ահագին բանակ մը Բրութէն անցուց. ուր անդիէն Կովկասեան բանակը՝ Լորիս Մելիքովի առաջնորդութեամբ Տաճկի սահմանն անցաւ։ Ասիկայ քիչ մը ետքը Արտահան բերդաքաղաքը՝ Հայմանի առաջնորդութեամբ առաւ։ Թէպէտ ասոր վրայ Հայաստանի մէջ եղող ռուսական երկրորդ բանակը՝ Սէվլինի քով ետ քաշուելու հարկադրեցաւ, բայց եւ այնպէս Ռուսք ետեւէ ետեւ Հայաստանի մեծ մասին տիրեցին. եւ քիչ մը ետքը (Մարտի 16ին 1878) Կարին մտան։

2. Աս եղած ժամանակ, անդին Արեւմտեան բանակն ոչինչ կորուստով մը Դանուբն անցաւ (27 Յունիս 1877). Նիկոպոլիս յանձնուեցաւ (Յուլ. 15) ու Պալքանները (Շիբքայի անցքը) Կուրգոյի առաջնորդութեամբ բռնուեցան։ Ռուսք՝ Բլէվնայի քով (Յուլ. 29 ու 30) Օսման փաշայէն յաղթուելէն ու ետ քաշուելու ստիպուելէն ետեւ, Բլէվնա

նոր զօրութեամբ ամէն կողմանէ պաշարուեցաւ (Դոտլէպէն)։ Ամրացած քաղաքը՝ մեծագոյն զօրութեան չդիմանալով՝ յանձնուեցաւ (Դեկտ. 12)։ Ասոր վրայ բռնեցին Ռուսք նաեւ Ադրիանուպոլիսն ու քիչ մը ետքը (փետր.) Կոստ. Պոլսոյ առջեւ հասան։ Դուռը յուսացուած ամէն օգնութենէն զրկուած՝ ստորագրեց իր առջեւը դրուած Ստեֆանոյի դաշինքին. որով կը ճանչնար Ռումենիա, Սերուիա ու Մոնդէնեկրոյ աւատական իշխանութեանց անկախութիւնը. դարձեալ՝ Պուլկարիայի, աւատատու իշխանութիւն ըլլալը, ժառանգական իշխանի մը տակ։ Ռուսիա պիտ'որ ընդունէր պատերազմի ծախքին տեղ, Հայաստանի մէկ մասը։

3. Բայց աս դաշանց դէմ անմիջապէս ու բողոքանդակ, զօրութեամբ ոտք կոխեց մանաւանդ Մեծն Բրիտանիա. որով Ռուսիա ստիպուեցաւ Ս. Ստեֆանոյի դաշինքը՝ Պերլինի մէջ գումարուած մեծ տէրութեանց ժողովոյ մ'առջեւ դնել (Յունիս 13-Յուլ. 13)։ Ասոր մէջ Ս. Ստեֆանոյի դաշինքն ըստ գոյութեան ջնջուելէն ետեւ, որոշուեցաւ որ Պուլկարիայի մէկ մասն ըլլայ ազատ իշխանութիւն, բայց Տաճկի հարկատու. իսկ մէկալ մասն՝ ընդունի քրիստոնեայ կուսակալ մը։ — Ռուսիա՝ ետ առաւ Ռումենիայէն Պեսարաբիան. բայց վերջինն ընդունեցաւ ասոր դիմացը՝ Տոպրուճան։ Հայաստանի հիւս. արեւմ. մասը (Կարս, Արտահան ու Պադում) իրեն սահման ունենալով մէկ կողմանէ Ճորոխ ու Բէննէդ գետերը, — մէջն առնելով նաեւ Օլթի քաղաքը — իսկ մէկալ կողմանէ, Երասխ գետն՝ անցաւ Ռուսիայի։ Ռումենիա, Սերուիա ու Մոնդէնեկրոյ եղան բոլորովին անկախ իշխանութիւններ։ Աւստրիա՝ ընդունեցաւ հրաման, Պոսնիան ու Հերցէկովինան իր զօր-

*քօվը բռնելու (ուր մնաւ Յուլ. 29) իսկ Պարսիկն առաւ, սահմանակից խոլթուրը։*

*Համաժողովին 61 երորդ յօդուածովը՝ Բարձրագոյն Դուռը, պարտաւորեց ինք զինք, առանց յապաղման, Հայաստանի մէջ ամէն հարկաւոր վերանորոգութիւններն ընելու, որոնց երկիրը պէտք ունի Չէրքէզներէն ու Քիւրտերէն ապահով ըլլալու համար. ճանչնալով աւտոր Նկատմամբ՝ եւրոպական տէրութեանց կրկին հըսկողութիւնը։*

*4. Եւ որովհետեւ արդէն Յունիսի 4ին Անգղիա, Դրան հետ յարձակողական ու պաշտպանողական դաշնակցութիւն մ՚ըրած էր, որուն զօրութեամբ Անգղիա կը պարտաւորէր ինք զինք, Ասիայի մէջ եղած տաճկական երկիրները պաշտպանելու, անոր համար ասոր դիմացն ընդունեցաւ Տաճկի տէրութենէն Կիպրոս կղզին։*



# ՑԱՆԿ

ՆԱԽԱՇԱՒԻՂ

## ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### Ա. Հատած. — Պատմութիւն արեւելեան ազգաց.



### Բ. Հատած. — Պատմութիւն Յունաց.



### Գ. Շրջան. — Պարսկական պատերազմէն մինչեւ Հելլենական ազատութեան վերնալը 500—338.

### Գ. Հատուած. — Յունական-Մակեդ. պետութիւն.



### Դ. Հատուած. — Պատմութիւն Հռովմայեցւոց.



### Ա. Շրջան. — Հռովմայ հիմնարկութենէն մինչեւ Թագաւորութեան վերնալը 753-509.



### Բ. Շրջան. — Թագաւորութեան վերնալէն մինչեւ պունիկեան պատերազմները 509—264.



### Գ. Շրջան. — Պունիկեան պատերազմէն մինչեւ Գրակքեանց շփոթութիւնները 264-133.



### Դ. Շրջան. — Գրակքեանց շփոթութիւններէն մինչեւ Աւգոստոս 133—30.



### Ե. Շրջան. — Աւգոստոսէն մինչեւ արեւմտեան հռովմէական տէրութեան կործանումը 30—476.

## ՄԻՋԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### Ա. Հատուած. — Արեւմ. Հռոմէական պետութեան կործանումէն, մինչեւ Վերտէնի դաշինքը 476—843.



### Բ. Հատուած. — Վերտէնի դաշինքէն մինչեւ Խաչակիրք 843—1096.



### Գ. Հատուած. — Խաչակրութիւնք 1096 — 1291.

## Գ. Հատուած. — Խաչակրաց լմննալէն մինչեւ Նորոգողութեան 1191 — 1517.



# ՆՈՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Ա. Հատուած. — Նորոգողութենէն՝ մինչեւ Վեստֆալեայ խաղաղութիւնը 1517 — 1648.